Gelzer, Heinrich
Hamarotutiwn ...

Հ. ԳԵԼՑԵՐ

# ՀԱՄԱՌՕՏՈՒԹԻՒՆ

# ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐՆԵՐԻ

# ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

ԳԵՐՄԱՆԵՐԷՆԻՑ ԹԱՐԳՄԱՆԵՑ
ՄԵՍՐՈՊ ՎԱՐԴԱՊԵՏ ՏԷՐ ՄՈՎՍԻՍԵԱՆ



ՀՐԱՄԱՆԱՒ
Տ. Տ. ՄԿՐՏՉԻ Ա.
Վեհափառ եւ Սրբազնագոյն Կաթուղիկոսի
ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ՎԱՂԱՐՇԱՊԱՏ
Տպարան Մայր Աթոռոյ Ս. Էջմիածնի
1901

## ՆԱԽԱԲԱՆ ԹԱՐԳՄԱՆՉԻ

«Ով երբ և իցէ պարապել է բիւզանդական անցեալի ասպարիզում, նա գիտէ թէ ինչքան զգալի և ցաւալի է, որ դեռ չկայ բիւզանդական պատմութեան համառօտ, վստահելի և գիտութեան նոր պահանջներին համապատասխան մի նկարագրութիւն։ Ահա այդ պակասը այժմ լրացել է. արքունական խորհրդական Գ. Հ. Գելցերը, Ենայի պատմութեան պրոֆեսորը՝ յանձնառու է եղել իմ խընդիրքով տալ Բիւզանդական Պատմութեան նկարագրութիւնը, որ գրքիս յաւելուածն է կազմում (էջ 911—1067)։ Գրուածքի արժանիքի և թերութեան բացարձակ պատասխանատուն ինքը Գ. Հ. Գելցերն է»։*

Այս խօսքերը գրողը Կարլ Կրումբախերն է իւր Բիւզանդական Մատենագրութեան Պատմութեան յառաջաբանի մէջ։ Եթէ մինչև այսօր նոյն իսկ գերմաներէն լեզուով պակասել է բիւզանդական պատմութեան յարմար գործածելի մի ձեռնարկ, դա ունի իւր պատճառները։ Մինչդեռ յունական դասական անցեալի իւրաքանչիւր երևոյթ, գրական—պատմական, գեղարուեստական, փիլիսոփայական ևն. սկսած

---

* Տես. Karl Krumbacher, Geschichte der byzantinischen Litteratur, München, 1897 էջ XI, յառաջաբան։

միջին, մանաւանդ վերածնութեան դարերից քաղաքակիրթ Եւրոպայի խորը և բազմակողմանի ուսումնասիրութեան առարկայ էր և է, նոյն յունական կեանքի անմիջական ժառանգն ու շարունակողը՝ Բիւզանդիոնը իւր յայտնի արևելա—յունական քաղաքակրթութեամբ անուշադիր էր թողնուել և մինչև անգամ արհամարուել. միայն վերջերս են զգացել այդ ընթացքի սխալը և մեծ եռանդով սկսել թերին լրացնել. Նոր ուղղութեան ամենազօրեղ զարկ տուողը եղաւ Միւնխէնի պրոֆեսոր յիշեալ Կ. Կրումբախերը, որ 1890 թ. հրատարակեց առաջին անգամ բիւզանդական գրականութեան պատմութեան առաջին ընտիր ձեռնարկը և հաստատ օրինակներով ապացուցեց, որ ոչ միայն արհամարհելի չէ, այլ և անհրաժեշտ է լաւ ուսումնասիրել բիւզանդական անցեալը մարդկային քաղաքակրթութեան կապն ու ընթացքը լաւ ըմբռնելու համար։ Նրա զուտ գիտնական հիմունքների վրայ դրած գիրքը, թէև իբրև առաջին փորձ ոչ զուրկ թերութիւններից, մեծ յաջողութիւն ունեցաւ և ամենակարճ ժամանակում տարածուելով՝ վառակեց բիւզանդական անցեալով հետաքրքրուող բաւական թուով բարեկամներ։ Երկու տարի անց՝ 1892 թ. նա սկսեց հրատարակել „Byzantinische Zeitschrift"—Բիւզանդական Լրագիր» և յաջողացրեց որ բաւարական տէրութիւնը Միւնխենի համալսարանում բիւզանդական առարկաների համար առանձին պրոֆեսորութիւն հաստատի։ Օրինակը խրախուսեցուցիչ էր. նոյն առարկաների համար այս մի քանի տարուայ ընթացքում պրոֆեսորութիւններ են հաստատուել Ռուսաստան՝ Պետերբուրգում, Հոլանդիա, Լեյդենում, Հունգարիա՝ Բուդապեշտում. բացի այդ

1894 թուից սկսած Պետերբուրգի կայսերական ակադեմիան Վասիլեւսկու խմբագրութեամբ հրատարակում է «Византійскій Временникъ—Բիւզանդական ժամանակագիր» թերթը. եւ վերջոյ Կրումբախերի գրքի առաջին հրատարակութիւնը ամենակարճ ժամանակում սպառուելով, նա 1896 թ. հրատարակել է նոյնը երկրորդ անգամ, որը առաջինի համեմատութեամբ առ նուազն երեք անգամ աւելացրած է, թէ թերի մասերի լրացումներով և թէ նոր գլուխների աւելանալով, որ չկային առաջինի մէջ։ Որև է հինգ վեց տարուայ ընթացքում սկսած և այդքան մեծ չափով ծաւալ ստացած բիւզանդական ուսումնասիրութեան գործը ամենից շատ մեզ Հայերիս համար է մխիթարական և ամենից շատ մեզ պիտի հետաքրքրէ և ուրախացնէ։

Ո՞ւմ յայտնի չէ, որ մեր պատմական համարեա ամբողջ անցեալը ամենասերտ կերպով միացած էր յունական և մանաւորապէս բիւզանդական կեանքի հետ. մանաւանդ սկսած այն ժամանակից, երբ Բիւզանդիոնում և Հայաստանում հաստատուեց քրիստոնէութիւնը՝ որով երկու հարևան ազգերի մէջ աւելի ամրացան քաղաքական և մտաւորական կապերը. Հայերը անընդհատ շփման մէջ էին Յոյների հետ, երբեմն իբրև դաշնակից և բարեկամ, երբեմն իբրև թշնամի կամ հալածեալ և ընկճեալ. թէ հալածուած և թէ բարեկամ ժամանակ միշտ ընդունել են Յոյներից ահագին քաղաքակրթական պաշար, փոխարէնը Բիւզանդիոնի գահին այնպիսի հայազն գահակալներ տալով, որոնց իշխանութեան ժամանակամիջոցը բիւզանդական կայսրութեան ամենափայլուն և ամենածաղկեալ շրջանն է համարուած, որոնք քանիցս ազատել են բիւզանդական գահը ապահով

կորստից, իսկ ընդհանուր մարդկութեան համար պահպանել են դարերի քաղաքակրթութիւնը բարբարոսանալուց և անհետանալուց: Մինչև օրս այդ փոխադարձ յարաբերութիւնների մասին մեր ունեցածն ու գիտեցածը գլխաւորապէս, կամ համարեա բացառապէս, ծագել է հայկական աղբիւրներից, որը բացի այն որ բնականաբար միակողմանի է եղել, շատ մասերով էլ թերի էր: Մեզ համար շատ դժուար էր մտնել բիւզանդական գրականութեան ահագին և խիտ անտառը և այնտեղից անհրաժեշտ օգուտն ստանալ. իսկ այօր շնորհիւ Եւրոպացի անխոնջ գիտնականների ջանքերին բացուած և գիւբացած են անտառի ճանապարհները. այսօր այլ ևս ներելի չէ, որ Հայոց պատմութեամբ և մատենագրութեամբ պարապենք առանց ամեն քայլափոխում բիւզանդականի օգնութեանը դիմելու: Ահա այդ անհրաժեշտութիւնից առաջնորդուած, թարգմանում ենք պրոֆեսոր Գելցերի աշխատութիւնը ամբողջովին, որ որոշուած էր մաս մաս տպելու. «Արարատի» մէջ. բայց յետոյ յարմար դատուեց հրատարակել առանձին գրքով:

Գելցերը յունական պատմութիւնը* սկսում է 395 թ. և հասցնում է մինչև 1453 թուականը՝ իննը շրջանների բաժանելով: Համարեա հազար տարուայ զանազան անցքերով բազմահարուստ պատմութիւնը՝ գրքի ծաւալի պատճառաւ ստիպուած լինելով ընդամենը միայն 156 մեծադիր ութածալ էջերի մէջ ամփոփելու, չափազանց համառօտել է. բայց

*Abriss der byzantinischen kaisergeschichte. Bearbeitet von H. Gelzer.

անկախ այդ հանգամանքից՝ նա կարողացել է մեծ վարպետութեամբ ոչ միայն քաղաքական այլ և կրօնական հարցերին և ժամանակակից հասարակական ամենից աւելի աչքի ընկնող երևոյթներին բաւական չափով տեղ տալ իւր նկարագրութեան մէջ· Թէ նա իբրև պատմաբան ինչ առաւելութիւններ ու թերութիւններ ունի, այդ մասին ոչինչ չենք կարող ասել· միայն նա հայկական տեսակէտից իւր դասակից մասնագէտներից այն բացարձակ առաւելութիւնն ունի, որ լաւ գիտէ Հայոց գրականութիւնն ու պատմութիւնը և Հայերի մասին կարծիքներ յայտնում է իւր ունեցած գիտութեան հիման վրայ՝ անկողմնապահ և անկանխակալ։ Նա պատմութեան ընթացքում շարունակ յիշում է բիւզանդականի հետ կապ ունեցող հայկական դէպքերը, որ հայերէն չիմացողի ուշադրութիւնից կարող էին վրիպել։ Նախընթացում յիշածի հետ՝ այս հանգամանքն էլ բաւական կարևոր և դրդիչ էր, որ ես օգտակար համարեցի թարգմանել այս գործը։ Չափազանց համառօտութեան շնորհիւ ասացուածքների մէջ մեծ խրթնութիւններ և մինչև անգամ անորոշութիւններ կան, որ արտայայտուելու են նաև թարգմանութեան մէջ, որ այդ պատճառով սաստիկ դժուար էր։ Այս յայտնի լինելով, պահանջուում է ընթերցողի ուշադրութիւնը աւելի մեծ չափով։

ՄԵՍՐՈՊ ՎԱՐԴԱՊԵՏ

1897 թ. Յունիս 24.
Ս. Էջմիածին

# ՆԱԽԱԲԱՆ

Ընդհանուր պատմության ընթացքում շրջաններ և սահմանափակումներ ընդունելը ուղղակի պատահական է և դրա համար միանգամայն քմահաճոյական, քանի որ պատմությունն ինքը, որի մէջ անցած և յաջորդող դէպքերը միացած են պատճառական կապերով, բաժանմունքներ չէ ընդունում· նա մի շարունակուող յարատևություն է։ Այդ պատճառով ոչ մի ձեռնարկություն այնքան անխորհուրդ չէ կարող լինել քան այն որ կամենում են, հետևելով մեր սովորական գործածական դարձած ընդհանուր պատմություններին, հաստատապէս որոշել հռովմէական տէրութեան վախճանը և հին ու միջին դարերի սահմանը։ Մեր դպրոցներում ժամանակագրական կարգով որոշուում էր կամ որոշուում է մազաչափ ճշտութեամբ՝ ընդհանուր պատմական տեսակէտից այդ նշանաւոր դարագլխի նոյն իսկ տարին։ Եւ այն էլ սովորաբար ուշադրութեան են առնում միմիայն արևմուտքը· մինչդեռ այդ հակապատմական է, որ գերադաս

*են համարում միայն արևմտեան մասը և ինկատի առնում նրա պատմական զարգացումը և ըստ այնմ՝ առանց այլևայլութեան՝ Հռովմայեցւոց կայսրութեան և հին դարի վերջը* 476 *թիւը ընդունում, որովհետև այդ թուին հռովմէական տէրութեան*—Imperium Romanum—*արևմտեան բաժնի վերջին օրինական կայսրը գահից զրկուեց և թոշակի կապուեց. որ, եթէ ընդհանուր պատմութեան տեսակէտից դատենք, այնքան նշանաւոր դէպք էր, ինչքան Սերբիայի Միլան թագաւորի հրաժարականը* 1892 *թուին։ Բայց ժամանակակիցները այդ այդպէս ասուած ընդհանուր պատմական կարևորութիւն ունեցող եղելութեանը այնքան քիչ նշանակութիւն են տուել, որ նոքա—և ամենից առաջ յաղթանակող Գերմանացիները—առաջուայ պէս շարունակել են Օդովակրի և յետոյ Թէոդորիխի երկիրը Հռովմայեցւոց տէրութեան մի մասը համարել, իրենց հպատակներին կայսեր հպատակներ ճանաչել և պահպանել են կայսերական տէրութեան վերաբերեալ տրուած կարգադրութիւնները։*

*Ահա այդ էր պատճառը, որ ոսկեդրամը նոյն իսկ գերմանական կոչուած տէրութիւնների մէջ կտրւում էր կայսեր պատկերով։ Մինչև անգամ Գոթերը վստահանում էին Յուստինիան կայսեր դէմ յանդիման յայտա-*

լարել, թէ նոքա միշտապէս յարգել են կայսեր առանձնաշնորհութիւնը։ Իսկ տէրութեան արեւելեան մասը, որը կարողացաւ պահպանել հնուց ժառանգած քաղաքակրթութիւնն աւելի մեծ եռանդով և յաջողութեամբ քան արեւմտեան մասը, ոչ մի կերպ չէ կարող երկու մասերի՝ հին և միջին դարերի բաժանուել. յամենայն դէպս Իտալիի երեւալուց ոչ առաջ, որովհետեւ միայն Հերակլ կայսեր իշխանութիւնից յետոյ, այն զարմանալի կռուով, որ վարեց Բիւզանդիոնը սեմիտական ցեղի ահեղ յարձակման դէմ, սկիզբն է առնում դարուկէս շարունակուող մթաւոր խաւարը, որը պարզ կերպով սահմանում է տիեզերքի նոր օրերի մուտքը։ Բայց եթէ, օրինակի համար, համառօտ բիւզանդական պատմութիւնը սկսուէր Լևոն Իսաւրացու գահակալութիւնից, ընթերցողը կզրկուէր իսկապէս ամենակարևոր և ընդհանուր—պատմական ամենանշանաւոր դարու ծանօթութիւնից, մի շրջանի՝ որի մէջ պէտք է որոնել այն նախապայմանները և սկսուածքները, որոնք վերջը բիւզանդական առանձնայատուկ դարաշրջանի պատմական զարգացումն են ցոյց տալիս։

Սակայն նոյնքան էլ պարզ է և հասկանալի, որ հեշտութեամբ չենք կարող մերժել պատմական նիւթի շրջանների և սահմանա-

փակումների բաժանումն։ Բայց մեր մէջ պէտք է կենդանի լինի այն գիտակցութիւնը, թէ մենք իսկապէս միմիայն յեցափայտ ենք գործ դնում, որպէս զի կարողանանք առարկայի մասին ձեռք բերել մի ընդհանուր հայեացք։ Հէնց այդ իսկ պատճառով, ցանկալի է հեռու մնալ այն ընդհանրացած պրոֆեսորական և վարժապետական իմաստակութիւնից, որ ոչ մի պատմական գրուածք կամ դասագիրք վաճառքի չեն հանում, մինչև որ նա չունենայ աւելի լաւ պատճառաբանուած շրջաններ, կամ կլորըտուած չլինի տրամաբանօրէն ուղիղ համարուած բաժանմունքներով։ Սակայն մենք ևս այս դէպքում էլի նպատակահարմար ենք գըտնում թողնել, որ աւանդական ընդունուածը մնայ։ Մենք շատ վաղուց է վարժուել ենք՝ Արկադիոսից մինչև Կոնստանդին Թ (395—1453) կայսրների պատմութիւնը միացնել և ընդունել իբրև արևելահռովմէական կամ բիւզանդական պատմութիւն։ Այս անգամ էլ միմիայն գործնական հայեցակէտին գերակշռութիւն տալով, կըպահպանենք մենք ևս այդ հին՝ Փրանկական դասաւորութիւնը. թէև շատ լաւ յայտնի է, որ այդ բաղմիցս ժխտուել է անգամ այն գիտնականների կողմից, որոնք սկըզբունքով պատմական շրջանների բաժանման ոգևորուած կողմնակիցներ են: Բաւական ար-

*դարացի կերպով շեշտուել է, թէ չնայած որ Թէոդորի մահուանից յետոյ տէրութիւնը բաժանուել է, ժամանակակիցները դեռ երկար դարեր հասկացողութիւն ունէին միայն մի հռովմէական տէրութեան մասին—* Res publica *կամ* Manus publica *— սովորաբար այդպէս էին անուանում Է և Ը դարերում Սպանիայում և Փրանկների թագաւորութեան մէջ: Ուստի կարելի է արևմտահռովմէական տէրութեան — ինչպէս նաև բնականաբար արևելահռովմէական տէրութեան — մասին խօսել միայն Կարլոս Մեծի արևմտահռովմէական կայսրութեան հաստատուելուց յետոյ: Այդ էլ այն չափով է ուղիղ և յարմար, բայց և այն չափով աւանդական, ինչպէս իրաւաբանների լեզուի մէջ գործածական է, որ նոքա Օգոստոսից մինչև Դիոկղետիանոսի ժամանակը—* Dyarchia *– երկպետութիւնն են կոչում, իսկ մնացած շրջանը—* Monarchia *—միապետութիւն: Նոյնպէս իրաւ է և ուղիղ՝ եթէ սահմանադրութիւնը աչքի առաջ ունենալով ասենք, որ այդ շրջանում տէրութիւնը բաժանուած էր կայսեր և սենատի մէջ: Սակայն ինչպէս արդարացի են նաև պետական իրաւունքի մէջ այնքան տգէտ համարուած տարեգիրները, որոնք Կեսարի և Օգոստոսի ժամանակից են սկսում հռովմէական միապետութիւնը՝ և այդպէս էլ է*

*Իրապէս, թէկուզ ժամանակակիցները և մի քանի գիտնականներ ուրիշ կերպ են հասկանում Թէոդոսի մահուանից մինչև Կոստանդնուպոլսի անկումը գոյութիւն ունեցող տէրութիւնը արևելահռոմէական է, իսկ Զ, մանաւանդ Է դարից ի վեր զուտ յունական է։*

*Որպէս զի գործնական կարիքներին բաւականութիւն տանք և ոչ թէ որ և է բարձր «պատմական - փիլիսոփայական» հայեցակէտի համար յենարան ստեղծենք, նիւթը բաժանում ենք հետևեալ ստորաբաժանումների, որ հնուց մեզ է անցել։*

# Ա.

# ՆԱԽԱՅՈՒՍՏԻՆԻԱՆ ՇՐՋԱՆ

## (396—518)։

*Թէոդոսիոս Մեծը* (379—395), մեծ հօր հանճարեղ որդին, այն զօրավարների և տէրութեան փրկողների երկար շարքի վերջին անդամն էր, որոնք Կլաւդիոս Գոթիկոսից մինչև Վալէնտինիանը երկաթեայ բռունցքներով վերստին կռել են հիմնից ի վեր խախտուած տիեզերական իշխանութիւնը։ Նա ներկայանում է Վալէնտի սարսափելի հարուածից՝ Ադրիանուպօլսի—bellum lacrimabile—արիւնահեղ կռուից յետոյ իբրև գերմանական վտանգից տէրութեան ամենափայլուն կերպով պահպանող և ազատիչ։ Մի անգամ ևս տէրութեան հողից յետ մղուեց գոթական ժողովրդի ալիքը։ Ներքուստ էլ նրա կառավարութիւնը դարաշրջան է կազմում. և այդ այն յաղթութիւնով, որ տարաւ ուղղափառ եկեղեցին արիանոսութեան դէմ՝ յենուած կայսերական ծանրակշիռ ազդեցութեան վրայ. բացի այդ՝ եռան-

դուն միջոցներ ձեռք առնուեցան վերջացնելու հին հեթանոսութեան մնացորդները, որ դեռ կուռ էր հռովմէական արիստոկրատիայի մէջ։ Նա իւր մահուան ժամանակ՝ 398 թ. Յունուարի 17՝ ամբողջ տէրութիւնը թողեց կառավարելու իւր երկու որդիներին՝ Արկադիոսին և Հոնորիոսին։ Վերջինը ստացաւ արևմտեան կէսը. Իտալիա (Իտալիա և Աֆրիկա) և Գալլիա (Գալլիա—Սպանիա—Բրիտանիա) պրէֆեկտորութիւնները, մինչդեռ նրա աւագ եղբայրը արևելքի վրայ էր իշխում. Իլլիւրիկա (Դակիա և Մակեդոնիա) և Արևելք (Ասիա, Պոնտոս, Օրիենտ, Թրակիա և Եգիպտոս) պրէֆեկտորութիւնները։

Թէոդոսի մղած պատերազմը իւր գահակից կայսեր Եւգենիոսի դէմ, զրկել էր ամբողջ արևելքը զօրքերից։ Եւ ահա մինչդեռ Հոները Ծորայ պահակով ներս մտնելով՝ յարձակուել էին տէրութեան արևելեան մասի վրայ, գոթական դաշնակիցները, որ բանակել էին Միւսիայում և Թրակիայում, իրենց արքայական զօրապետի առաջնորդութեամբ աւերում էին Իլլիւրիկայի հիւսիսային մասը և սպառնում էին մայրաքաղաքին։ Միայն երբ Ստիլիքոնը արևմուտքից վրայ հասաւ, Գոթացին ստիպուեց ամրանալ Թեսալիայում։ Բայց որովհետև Արկադիոս կայսրը Ռուֆինոսի դրդմամբ,

*գուցէ ոչ առանց պատճառի, պահանջեց որ Ստիլիքոնը հեռանայ և արևելեան գնդերը Իտալիայից յետ ուղարկի Կոստանդնուպօլիս, վերջինները Գայնասի հրամանատարութեան տակ յարձակուեցին մայրաքաղաքի վըրայ: Ռուփինոսը նոցա զոհ գնաց. և նրա տեղը բռնեց իբրև ղեկավարող մինիստր Եւտրոպիոս ներքինին. և ահա Ալարիքը ձեռնարկեց իւր զարհուրելի արշաւանքը Յունաստանի դէմ Թերմոպիւլէի անցքով: Ելեւսիսը, Պիրէյոսը, Մեգարան, Կորինթը, Արգոսը և Սպարտան ընկան գոթական հրոսակների ձեռքը. իսկ մոլեռանդ վարդապետները նոցա քրիստոնէական և բարբարոսական եռանդը բորբոքել էին մինչև վայրենի կատաղութիւն՝ հեթանոսութեան վերջի ապաստանարանների և ամրութիւնների դէմ: Սակայն երբ նոքա արշաւում էին Էլիսի վրայ, հետևից նոցա վրայ ընկաւ վերադարձած Ստիլիքոնը և գոթական զօրքը փակեց արկատեան Փոլօէ սարահարթում: Սպասածին հակառակ՝ խաղաղութիւն կայացաւ և արևելահռովմէական կառավարութիւնը երկիւղ ազդող Գոթին նշանակեց Իլլիւրիկայի զօրաց հրամանատար*—magister militum per Illyricum.

*Աւելի վտանգաւոր դարձաւ Փռիւգիայում բնակեցրած Գրութունգների և Օստգոթ-*

ների ապստամբութիւնը Կոմէս Տրիբիգիլդի առաջնորդութեամբ։ Արեւելահռովմէական արքունիքում գերակշռում էր հռովմէական ազգային կուսակցութիւնը. Գերմանացիների զօրապետները, զօրեղ Գայնասը և նրա կողմնակիցները, սաստիկ վիրաւորուած էին։ Իրաւ է Տրիբիգիլդը կորստաբեր հարուած ստացաւ Պեօփիդիայի քաջ ժողովրդից, բայց երբ Գայնասը նրա դէմ ուղարկուեց և ծածուկ միացաւ նրա հետ, հռովմէական Լեոն զօրապետը, իւր պաշտօնակցից դաւաճանուած, պարտութիւն կրեց Գոթացու ձեռքից։ Գայնասը և Տրիբիգիլդը ընդհանուր կացութեան տէր դարձան և ստիպեցին կայսեր արձակել իւր մինիստրին։

Գայնասը եկաւ Քաղկեդոն. և սարսափած Արկադիոսը պարտաւորուած էր մայրաքաղաքում բնակարան տալ Գոթերի զօրքին։ Այնպէս էր թւում, թէ արեւելքը նոյնպիսի բեկորների պիտի բաժանուի, ինչպէս յետոյ արեւմուտքը։ Գերմանական ցեղից թագաւորը պատրաստ էր այստեղ Թէոդոսի հարստութեան տեղը բռնելու։ Սակայն մայրաքաղաքի ժողովուրդը ոտքի կանգնեց, երբ որ արիոսեան Գոթերը սկսեցին վիրաւորել նրա կրօնական զգացմունքները։ Գոթերը ստիպուած էին քաղաքից հեռանալ. ով ուշացաւ, ենթարկուեց ժողովրդի կատա-

ղութեան։ Գայնասը տարի առնելով Թրակիան՝ պատրաստուեց Աբիւդոսի մօտից Ասիա անցնել, բայց Փռաւիտա հաւատարիմ Գոթը հռովմէական նաւատորմիղով ոչնչացրեց նրա զօրքը։ Հոների թագաւոր Ուլդէսը կայսերական արքունիք ուղարկեց դէպի Թրակիա փախչող ապստամբի գլուխը։ Փռաւիտան՝ տէրութեան ազատարարը, կոնսուլի աստիճան ստացաւ, թէեւ ինքը հեթանոս էր։

Նոյն Արկադիոսի ժամանակ Բիւզանդիոնում բորբոքուեց տէրութեան—imperium եւ հոգեւորականութեան—sacerdocium հին կռիւը, որի ելքը կառավարութեան եւ եկեղեցու համար Արեւելահռովմում տիպիքական մնաց։

Յովհաննէս Անտիոքացին, որ յետոյ եկեղեցուց Ոսկեբերան մականուանուեց, ոյժ ստացած իւր ճարտասանութեամբ եւ ժողովրդից վայելած յարգանքով, Շոտլանդիոյ պուրիտանների նման, ոչ կայսերական տան փարթամութիւնն էր լռութեան տալիս եւ ոչ էլ հարուստների բարքուվարքի ապականութիւնը։ Նա ինքն անձամբ ճգնաւորական ամենախիստ կեանք էր վարում եւ մի եւ նոյն ժամանակ իբրեւ կրօնապետ՝ պապական իշխանապետութեան գիտակցութիւն ունէր։ Ասիան, որի գլխաւոր կեդրոն Եփեսոսը հպարտ էր Յիսուսի սիրելի աշակերտի հիմնած եկեղեցիով,

Յովհանն իւր այցի ճանապարհորդութեան ժամանակ անխնայ ուժով ենթարկեց Նոր-Հռովմի քահանայապետների իշխանութեան, որոնք 381 թուից հաւասարուել էին Հին-Հռովմի քահանայապետներին։ Նրա թշնամիները գլուխ բարձրացրին։ Իրաւ է, նա շատ հեշտութեամբ ազատուեց մայրաքաղաքի իւր հակառակորդ դատարկ և անընդունակ ճարտասան Սիւրիացի Սեվերիանոս եպիսկոպոսից, բայց իրերի դրութիւնը աւելի ծանրացաւ, երբ կառավարութիւնը նրա դէմ հանեց նրա ոխերիմ թշնամի՝ Աղեքսանդրիայի փառասէր և սկզբունքներից զուրկ Թէոփիլոս պատրիարքին։ Աղեքսանդրիացին 391 թ. նոր էր կործանել Սերապէյոնը և առանձին մեծ ու փայլ հռչակ ունէր իբրև կուռքի կործանիչ։ Ս. Աթանասից և նրա յաջորդ Պետրոսից ի վեր, որը 381 թ. տիեզերական ժողովի ղեկավարն էր, արևելքը սովորել էր Ս. Մարկոսի գահի յաջորդներից սպասել հոգևոր գործերի վերջնական վճիռը։ Թէոփիլոսը կարողացաւ իւր մեքենայութիւններին սուրբ գործի կերպարանք տալ. դրա համար նա գըրաւեց և գործակից արաւ Կոստանտիայի գրեթէ հարիւրամեայ ուսումնական, բայց սաստիկ սահմանափակ Եպիփանին՝ հերձուածողների դէմ մարտնչողին։ Նոքա՝ այսպէս ասած «կաղնիի» մօտ կայացած ժողովում՝ Նոր-Հռ-

ռովմի քահանայապետին յայտարարեցին պաշ-
տօնից զրկուած. սակայն սա, օգտուելով մայ-
րաքաղաքի ժողովրդի յուզմունքից, փառա-
ւոր յաղթութիւն տարաւ: Թէոփիլոսը փա-
խաւ և կառավարութիւնը փոքրոգութեամբ
յետ նահանջեց. մինչդեռ Յովհաննէսը՝ իւր
յաջողութիւնով աւելի համարձակ դարձած,
կայսրուհուն իսկ անձնապէս խիստ վիրաւորեց:
Ժողով գումարուեց 404 թ., որով նա վերջ-
նականապէս գլորուեց, թէև արևմտահռով-
մէական կառավարութիւնը և արևմուտքի Ին-
նոկենտ Բ պապը մեծ եռանդով նրա համար
աշխատեցին: Նամակագրութիւններով նա պահ-
պանեց իւր ազդեցութիւնը նոյն իսկ Կոկի-
սոնում՝ իւր աքսորման տեղում, ուստի տէ-
րութիւնը որոշեց քշել նրան հեռու Կովկաս.
բայց դժբաղդ ծերը Պիթիոս՝ իւր աքսորա-
վայրը չհասած, ճանապարհին մեռաւ: Ընդ-
հանուր եկեղեցին բարձր է պահպանել «տիե-
զերական ուսուցչի» յիշատակը. Պրոկղոս պատ-
րիարքը 438 թ. հանդիսաւոր կերպով նրա
նշխարները բերեց մայրաքաղաք, և Թէոդոս
Բ.ը ծնկաչոք սրբի մատրան առաջ թողու-
թիւն էր խնդրում իւր մեղաւոր ծնողների
համար: Բայց չնայած այդ հաճոյական և մե-
ծահոգի ձևերին, այնու ամենայնիւ կայսերա-
կան իշխանութիւնը սկզբունքով մեծ յաղթու-

թիւն էր տարել։ Նա առաջին անգամն էր՝ հիմնուած իւր գերիշխանութեան վրայ, կարգաւորել իւր դէպի եկեղեցին ունեցած յարաբերութիւնը, և այդ առանձին. նշանակութիւն ունէր Բիւզանդիոնում։

Երբ 408 թ. Արկադիոսը մեռաւ, նա թողեց մի անչափահաս որդի, Թէոդոս Բ Փոքրին, որը իբրև ճշմարիտ ծիրանածին՝ իւր երկարամեայ իշխանութեան ժամանակ 408—450 երբէք չափահաս չդարձաւ։ Մինչև 414 թ. տէրութեան գործերը կառավարում էր թիկնապահների առաջնորդ-praefectus praetorio-Անթեմիոսը, որ ունէր կոնսուլ և պատրիկիոս բարձրագոյն պատուոյ տիտղոսները և միանգամայն խելացի քաղաքագէտ էր։ Յետոյ կառավարութիւնն անցաւ կայսեր քաղաքագէտ Պուլքերիա քրոջ ձեռքը, որ կառավարում էր սենատի խորհրդակցութեամբ։ Նա իւր եղբօրը 421 թ. պսակեց մի փիլիսոփայի լաւ կրթուած աղջկայ՝ Աթենայիսի հետ, որի քրիստոնէական անունն էր Եւդոկիա. սա շատ շուտով միացած Քրիսափիոս ներքինու հետ մեծ ազդեցութիւն ձեռք ձգեց կառավարչական գործերի վրայ։ Եւդոկիայի անկումի յետոյ վերջինս կայսեր միանգամայն իւր ձեռքըն առաւ մանաւանդ նրա իշխանութեան վերջին տարիներում։ Պուլքերիան դժգոհ,

առանձնացել էր իւր մասնաւոր պալատը։

Մինչդեռ արևմուտքը աւերակ էր դարձել, և Գոթերը՝ Սուեբներն ու Վանդալները անկախ տէրութիւններ էին հաստատել Գաղղիայում, Սպանիայում և Աֆրիկայում, իսկ արևմուտքի անուանական կայսրը իրապէս սահմանափակուած էր միայն Ապեննինեան թերակղզու մէջ, տէրութեան արևելեան մասը այդ վտանգաւոր շրջանում դիմացաւ բախտաւոր և բաւականաչափ հանդարտ կերպով։ Թէոդոս Բ-ի երկար իշխանութիւնը ընդհանրապէս շատ աղքատ է արտաքին պատահարներով։ Հոնորիոսի մահից յետոյ Արտաբուրիոս և իւր որդի Ասպար զօրավարները բաւական յաջող կերպով կարգաւորեցին Իտալիայի գործերը․ նոքա վերահաստատեցին օրինաւոր իշխանին, որը Յովհաննէս բռնապետից հեռացրուած էր, և նորից գերակշռող դարձրին արևելքի ազդեցութիւնը։

Թէոդոս Մեծի ամենամեծ քաղաքական սխալը, մեծ եռանդով փորձեց նորից ուղղել Թէոդոս Փոքրի՝ բազմիցս արհամարհուած կառավարութիւնը։ Տրդատից և Գրիգոր Լուսաւորչից յետոյ հայկական, ինքնուրոյնութիւնը կորցրած՝ բայց առանձին կարևոր նշանակութիւն ունեցող թագաւորութիւնը դաշնակցութեամբ միացած էր հռովմէական տէրութեան

հետ, բայց 365 թ. Յոբիանոս կայսեր ամօթալի խաղաղութեան շնորհիւ, կորել էր այդ ազդեցութիւնը։ Իրաւ է, Վաղէնտինը խելացիութեամբ Պապին թագաւոր էր նշանակել և օգնել էր, բայց երբ Հռովմայեցիք անազնիւ ճանապարհով սպանեցին նրան, սաստիկ պատերազմ սկսուեց Հայոց քրիստոնեայ—կղերական և զրադաշտական նախարարների մէջ։ Եթէ Հռովմայեցիները լաւ հասկանային իրենց քաղաքական շահերը, նոքա պէտք է ամէն կերպ, ինչպէս որ Կոստանդինի տան կայսրներն էին արել, պաշտպանէին Մամիկոնեաններին, որոնք հոգեւորական կուսակցութեան առաջնորդներն էին։ Փոխանակ դրան՝ միանգամայն անհասկանալի կուրութեամբ—այդ բանում նրան կարելի է համեմատել Փրիգրիխ Մեծի հետ—Թէոդոսը 387 թ. Պարսից տէրութեան հետ համաձայնութիւն կայացրեց և բաժանեց Հայկական թագաւորութիւնը. մի բաժանմունք՝ որի մէջ առիւծաբաժինը արևելցիներին ընկաւ։ Նախկին Մեծ Հայոց թագաւորութեան միայն մի հինգերորդ մասն ընկաւ Հռովմայեցիներին՝ Թէոդոսուպոլիս (Կարին) գլխաւոր քաղաքի հետ։ Մնացած մասը, որտեղ շարունակեց էլի 40 տարի գոյութիւն ունենալ Պարսիկներից նշանակուած Հայոց անուանական թագաւորութիւնը, պարսկական իշխանութեան

տակ ընկաւ։ Պարսիկները թոյլ էին տալիս իբրև եկեղեցական և ուսումնական լեզու միայն ասորերէնը․ յունարէնի ոչնչացման համար կռիւ յայտարարուեց։ Հայաստանի երկու մեծ հանճարները, ս․ Սահակը և Մեսրոպը, որոնք տառերի գիւտից յետոյ մայրենի լեզուով թարգմանել էին Ս․ Գիրքը, ստիպուած էին Պարսից իշխանաւորների հալածանքներից փախչել յունական բաժինը։ Հռովմի այն ժամանակուայ արքունիքը, այդ դէպքում անհամեմատ աւելի հեռատես քան հարստութեան նախահայրը, Հայերի սկսուածքը հանրական կողմից ըստ կարելւոյն օգնում էր և տէրութեան միջոցներով նպաստում էր երկու մեծ Հայերի թարգմանչական դպրոցին։ Այդ հոգևոր դպրոցի ջանքերով առաջ եկաւ Հայոց թարգմանական հարուստ գրականութիւնը, (Ոսկեայ դար Հայոց գրականութեան) որ միանգամայն կախումն ունէր յունականից․ և ժողովուրդը, որ մինչև այդ ժամանակը գրականութիւն չունէր, մտաւ քաղաքակիրթ ազգերի շարքը։ Դրանով Հայաստանը վերջնականապէս անջատուեց արևելքի բարբարոսութիւնից և ընդ միշտ միացաւ արևմտահելլենական բարեկրթութեան հետ։ Այդ ծառայութեան մի մասը որոշ չափով պատկանում է արհամարհուած Թէոդոս Փոքրին։

Բայց դառնանք այժմ և հետևենք քաղաքական արտաքին դէպքերին: Այդ շրջանում տէրութեան համար իսկապէս վտանգաւոր դարձաւ Հոների մեծացած իշխանութիւնը: Անթեմիոսը 412 թ. յաջողութեամբ յետ էր մղել այդ բարբարոսների յարձակումը, իսկ Դանուբի վրայ մի նաւատորմիղ պահպանում էր տէրութեան սահմանը. բայց 424-ից ի վեր կայսրը թափառականների թագաւորին հարկ էր վճարում: Դրութիւնը աւելի վատացաւ, երբ քաջամարտիկ Ատտիլան իւր զօրքով բանակ դրեց Պաննոնիայում. 441 թ. բացի Հոներից Պարսիկներն էլ սկսեցին սպառնալ տէրութեան սահմաններին, իսկ Վանդալներն ու նոցա հետ միացած ծովահէնների նաւատորմիղը թալանում էին տէրութեան ծովային ափերը: Դանուբի ամրոցները՝ Վիմինացիում և Սինգիդունում, Մարգոս և առաքելանման Կոստանդնի ծննդավայր Նաիսոս, Փիլիպուպօլիս և տէրութեան ուրիշ կարևոր քաղաքներն ընկան Հոների թագաւորի հարուածների տակ: Մայրաքաղաքը արդէն դողում էր. բայց անառիկ Ասեմոս քաղաքի բերդակալը քաջ զօրքը յաջողութեամբ պաշտպանուեց և նորից վերակենդանացրեց հռոմայեցիների թուլացած քաջութիւնը: Անատոլիոսը 443 թ. խաղաղութիւնը գնեց վճա-

րելով 6000 ֆունտ ոսկի և տարեկան 700 ֆունա հարկ։ 447 Թ. վերսկսեցին թշնամութիւնները, բայց վերջ դրուեցին Մասիքմոսի դեսպանութեամբ։ Նրան ուղեկցում էր ճարտասան Պրիսկոսը քարտուղարի պաշտօնով. սա թողել է մեզ Հոնների գլխաւոր բանակի վերին աստիճանի հետաքրքիր և շատ կենդանի նկարագրութիւնը։ Խաղաղութիւնը վերահաստատուեց բայց մինչև Թէոդոսի մահը շարունակեցին հարկ վճարել։

Այդ կառավարութիւնը աւելի կարևոր էր և համարեայ վճռողական նշանակութիւն ունեցաւ եկեղեցական ժամանակակից խնդիրների վերաբերութեամբ։ Քրիստոնեայ կառավարութիւնը պաշտօնապէս և բռնի կերպով ճընշել էր աստուածների հին պաշտամունքը, բայց եկեղեցին «լայն բացեց իւր դռները» և խելացի անտեսութեամբ դիւրացրեց հնահաւատների մուտքը նոր համայնքի մէջ։ Նոքա նորից գըտնում էին իրենց հին հեթանոսական աստուածներին քրիստոնեայ սրբերի մէջ, միայն տարբեր տարազով։ Ամբոխի և մանաւանդ կանանց մէջ պահանջ էր դիմել շատ անուն ունեցող բնութեան մեծ Աստուածուհուն, դրա համար եկեղեցին բարձրացրեց Աստուածածնի պաշտամունքը. հեթանոսներն էլ ծաղրում էին Մարիամի ջերմ պաշտամունքը և նրան անուա-

նում էին «Նոր Նիւբելէ» կամ «Նոր Իզիս»։

Ալէքսանդրեան աստուածաբանները հետեւելով Որիգէնի այլաբանական բացատրութեան, ներկայանում էին մոդայի աստուածաբանութեան ամենաջերմ պաշտպաններ, մինչդեռ Անտիոքի դպրոցը իւր մեծ ղեկավարներով՝ Դիոդորոս Տարսոնացու եւ Թէոդորոս Մոպսուեստացու ձեռքով, թէեւ առանց հետեւանքի, կռուում էր ժամանակի ամենաուժեղ հոսանքի դէմ եւ փորձում հաստատուն պահպանել Սուրբ Գրքի լուրջ եւ ուսումնական մեկնաբանական արուեստը։ Նեստորը, մայրաքաղաքի նոր պատրիարքը, որ ծագում էր Գերմանիկէ քաղաքից եւ հաւատարիմ էր իւր հայրենիքի աւանդութիւններին, թէ ճառերով եւ թէ գրութիւններով կռուում էր theotókos — աստուածածին դարձուածի դէմ, որ իւր կարծիքով հակաստուածեան էր, որով նա չափազանց յուզեց մայրաքաղաքի ժողովրդի բարեպաշտական զգացմունքները։ Սուրբ Կիւրեղը, որ Թէոփիլոսի եղբօրորդին էր եւ Աղէքսանդրիայի առաքելական գահի վրայ նրա յաջորդը, եւ որ հռչակուած էր իբրեւ եկեղեցական ատենաբան եւ հեղինակ, եւ քաջ տեղեակ էր եկեղեցական քաղաքագիտական վարչական գաղտնիքներին, անցաւ նրա հակառակորդների գլուխը։ Ի զուր էր աշխատում Նեստորը, որին կայսերական

իշխանութիւնը մի ժամանակ հովանաւորում էր, իւր ընթացքը փոխել։ Աղէքսանդրիայի աթոռակալը չկամեցաւ ձեռքից բաց թողնել ցանկալի առիթը՝ առանց խոնարհացնելու մայրաքաղաքի իւր հակառակորդին, որը շատ էր դէպի բարձրը ձգտում։ Եփեսոսում 431 թ. գումարուեց տիեզերական ժողով։ Արևմուտքի պատրիարքը՝ Կեղեստինոս պապը, որ սահմանափակ մէկն էր և անտեղեակ էր եկեղեցական վէճի իսկական պատճառներին, քրիստոնէութեան առաջի գահի ծանրակշիռ հեղինակութիւնը դրեց Կիւրեղի կշռի նժարի վրայ։ Ժողովը սկսեց իւր գործերը և չսպասեց որ գային արևելքի եպիսկոպոսները, որոնք հակուած էին Նեստորի կողմը, և ոչ էլ ուշադրութեան առաւ կայսերական ներկայացուցչի ընդդիմութիւնը։ Նեստորին հրապարակեցին պաշտօնից զրկուած։ Սակայն երբ հասաւ Յովհաննէս Անտիոքացին, երկրորդ ժողով գումարեցին կայսերական իշխանութեան համաձայնութեամբ. սոքա էլ պաշտօնազուրկ արին Կիւրեղին և Մեմնոն Եփեսացուն։ Բայց հոգևորականութեան և ժողովրդեան ահագին բազմութեան տրամադրութեան առաջ սաստիկ թուլացան թէ կառավարութիւնը և թէ Անտիոքի եպիսկոպոսը։ Կիւրեղին դուր գալու համար, որը չէր խնա-

յել արքունիքի ազդեցիկ անդամներին դրամական նուէրներ տալու, զօհեցին Նեստորին. Նա մեռաւ աքսորում: Ասորական հոգևորականութիւնը միութեան դաշն կապեց Եգիպտոսի պատրիարքի հետ և այն էլ այնպիսի պայմաններով, որի տակ կարող էր ստորագրել՝ առանց խղճի խայթի նաև Նոր Հռովմէական պատրիարքը, որը ենթարկուել էր նզովքի: Կիւրեղի բազմաթիւ վկայութիւնները, որով նա փորձել է պաշտպանել այդ միութիւնը, ցոյց են տալիս նրա դաւանաբանական շփոթութիւնը և ապացուցանում են բացարձակապէս, որ Աղէքսանդրիայի մեծ եկեղեցականի համար այնքան հաւատը չունէր նշանակութիւն, ինչքան իշխանական իրաւունքը: Եւ իսկապէս այդ հոգևորական փարաւոնը տէրութեան մէջ ամենազօրեղ մարդն էր դարձել. մայրաքաղաքում եկեղեցական բարձր պաշտօնները ղեկավարում էին նրա արբանեակները: Տէրութիւնը ծանր պարտութիւն էր կրել—և այդ տեսնում էր ամեն ոք—և այդ պատահում է ամեն անգամ, երբ բիւրոկրատիան, որը հաւատի գործերում իսկապէս անտարբեր է, փորձում է կռուել գաղափարի ներկայացուցիչների դէմ՝ ինչպէս է եկեղեցին: Այնպէս էր թւում, որ կարծես թէ հոգևորական տիեզերական իշխանութեան

գործիքն էր։ Եփեսոսում՝ եգիպտական յաղթանակի տեղում, տիեզերական նոր ժողով գումարեցին՝ (449 Թ. աւազակային ժողով կոչուած). այդ սուրբ համարուած ժողովում իշխում էր բռնի ոյժը, բայց իսկապէս ասած՝ ոչ աւելի քան այն ժողովներում, որ ընդունում է եկեղեցին։ Չնայած Հռովմի բողոքին, Եգիպտոսը միանգամ էլ ամեն կերպ յաղթող դուրս եկաւ, և այն ուսմունքը, որ յետոյ—Monophysitismus—մի բնութեան դաւանութիւն էր կոչւում, կարծես թէ բոլոր արևելցիների ընդունած հաւատն էր դարձել, երբ յանկարծ մեռաւ Թէոդոսը 450 Թ. յուլիսի 20-ին։ Քաղաքագէտ Պուլքերիա կոյսը իւր ձեռքը առաջարկեց ծեր սենատոր Մարկիանոսին և բարձրացրեց նրան կայսերական գահ։ Սա առաջին կայսրն էր, որ օծուեց մայրաքաղաքի պատրիարքի ձեռքով։ Իշխանութեան փոփոխութիւնով նշան տրուեց կառավարչական հիմնական նոր ուղղութեան։ Աղեքսանդրիայի պատրիարքը Եփեսոսի երկու յաղթութիւնով կանգնած էր ամենալաւ ճանապարհի վերայ թէ տէրութեան մէջ առաջին ոյժը լինելու և թէ Արևելահռովմը դարձնելու մի եկեղեցական պետութիւն։ Ահա այդ պատճառաւ կեանքի և մահու հարց էր բիւզանդական կառավարութեան համար եգիպտական պատրիար-

քի անկումը։ Բիւզանդիանը խելացի կերպով հասկացաւ զիջել և լաւ դաշնակիցներ դարձընել արևմտահռովմէական կառավարութիւնը և Հին Հռովմի պատրիարքին։ Քաղկեդոնում 451 թ․ ժողով գումարուեց, որտեղ ստիպեցին արևելքի չափազանց ինքնակամ պատրիարքներին ընդունել հաւատոյ այն դաւանութիւնը, որ նախապէս կազմուած էր Հռովմի գիտութեամբ, դիմելով նոյն իսկ սարսափ ազդող միջոցների․ կայսերական զինուոր ներկայացուցիչները գործում էին միանգամայն պապի դեսպանի համաձայնութեամբ։ Դիոսկորոսին պաշտօնից զրկեցին և աքսորեցին, ինչպէս երբեմն Նեստորին։ Վերջինիս ամենահաւատարիմ կողմնակիցները՝ Թէոդորիտոս Կիւրոսացին և Իբաս Եդեսացին վերահաստատուեցին իրենց աթոռներում։ Արևելահռովմէական տէրութիւնը եկեղեցական գործերում էլ յաղթանակելով, նորից ամրացրեց իւր գերիշխանութիւնը։

Արտաքին գործերից յիշուելու է այն, որ Մարկիանոսը վերջ տուաւ Հոներին հարկ վճարելը․ Ատտիլան զբաղուած լինելով արևմուտքում, չկարողացաւ զօրեղ կերպով Բիւզանդիոնի դէմ գործել։ Նրա արագ անկումը ազատեց ընդմիշտ արևելեան տէրութիւնը այդ վտանգից։

*Թուում էր թէ արևելցիները իրենց սարկական բնաւորութեամբ անկամ և լուռ համակերպուել են և ընդունել Քաղկեդոնի որոշումները։ Բայց այդպէս միայն թուում էր։ Աղեքսանդրեան ուսումը, որով առանձնապէս շեշտուում էր Քրիստոսի Աստուածութիւնը, իսկ Նրա մարդկութիւնը ընդհակառակը համարեա թէ անհետանում էր, արևելեան բարեպաշտ ժողովրդի հաւատն էր։ Փոքր Ասիայում, Ասորիքում և մանաւանդ Եգիպտոսում շարժուեցին Կիւրեղի և Դիոսկորոսի ուսման հետևողները, որոնք միայն սպասում էին բայց չէին յուսահատուել։ Արևելահռովմէական տէրութեան համար Քաղկեդոնի որոշումը, քաղաքական տեսակէտից նայած, գուցէ նրա ամենամեծ դժբախտութիւնն էր։ Ցանկացել էին գլորել Աղեքսանդրիայի տիեզերական պապին, բայց դրա փոխարէն ստեղծել էին ներքին կրօնական պառակտումներ ամբողջ տէրութեան մէջ։ Այն դարաշրջանում, երբ որ և է քաղաքական միաձուլութիւն բխուում էր եկեղեցական գիտակցութիւնից, ասորական և եգիպտական ազգային գիտակցութիւնը, որ հակայունական էր, սկսեց ամուր կպչել Հակաքաղկեդոնեան վարդապետութեանը։ Եւ այդ հանգամանքը արդէն Մարկիանոսի յաջորդ Լևոն Ա (457—474) զգաց շատ որոշակի։*

Լևոն, մեծ մականուանեալ, օրթոդոք-Ցոյն էր՝ ծագումով Թրակիայից. նա իւր զահակալութեամբ պարտական էր արևելեան զօրաց հրամանատար—magister militum per orientem—ամենազդեցիկ Ասպար Ալանին. արիւնեան հաւատը սրան իրեն արգելք եղաւ գահ բարձրանալու, բայց Լևոնի իշխանութեան առաջին շրջանի ամբողջ ընթացքում կառավարութեան ղեկը կենդրոնացած էր նրա ձեռում: Լևոնը և Մարկիանի պէս օծուեց մայրաքաղաքի պատրիարք Անատոլիոսի ձեռքով 457 թ. Փետրուարի Դ-ին: Ասպարը, ինչպէս Գայնասը, յենուել էր զօրքի գերմանական տարրերի վրայ. և թւում էր, թէ նա էլ ինչպէս միաժամանակ Ռիկիմերը Իտալիայում կամենում էր թագաւորներ կարգելու դեր կատարել:

Բայց այդ նպատակի համար սխալ հաշիւ էր արել Լևոնի ընտրութեան մէջ: Դա Անթեմիոսի կամ Ոլիւբրիոսի նման անուանական կայսր չէր: Նա Գերմանացիների գերակշիռ ազդեցութեան դէմ՝ հանդէս բերեց իւր հայրենակիցների Իսաւրացի թիկնապահ զօրքը որ նոր էր ժողովել: Նոցա առաջնորդ Թարազիկոդիսային, որ խորամանկ և սուր զգացմունքներով մի բարբարոս էր, հելլենացրեց, տալով նրան Զենոն քաղցրահնչիւն անունը

և ամուսնացրեց կայսեր Արեանդնէ աղջկայ վրայ։ Ասպարը մեծ դժուարութեամբ կարողացաւ վերջապէս կատարել տալ կայսեր տուած խոստումը, իւր որդի Պատրիկոսին կեսար հրատարակել տալու։ Կայսեր մեծայոյս նաւատորմիղը, որ ուղարկեց Ափրիկայի ծովահինութեամբ պարապած Վանդալների սարսափելի տէրութեան դէմ, անյաջող ելք ունեցաւ նաւատորմղի հրամանատար՝ կայսեր Բազիլիսկոս փեսայի բացարձակ անընդունակութեան շնորհիւ։ Ասում են՝ որ Ասպարը նախանձից նպաստել էր անպէտք և ժլատ զօրապետի նշանակելուն, որովհետև նա չէր ցանկանում որ կայսրը պատերազմական փառքի արժանանար։ Սակայն 471 թ. Ասպարին և նրա որդի Արտաբուրիոսին սպանեցին կայսեր հրամանով։ Այդ հարուածը, որով Թագաւորն ազատուեց ճնշող խնամակալութիւնից (Majordomat)և տէրութիւնը գերմանական իշխանութիւնից, զօրեղ տպաւորութիւն թողեց ժամանակակիցների վերայ և երկար ժամանակ պահուում էր առակներում։

Եկեղեցական գործերում Լևոնը անշեղ շարունակեց իւր նախորդի քաղաքականութիւնը։ Մարկիանոսի մահից անմիջապէս յետոյ Աղէքսանդրացիք սպանել էին Պրոտերիոս պատրիարքին, որ բռնութեամբ կարգուել էր

Նոյա վրայ։ Ողորմելին բացարձակ արժանի էր այդ վիճակին, որովհետև սկիզբը Դիոսկորոսի արբանեակը լինելով՝ վերջը բոլորովին ենթարկուել էր նրա հակառակորդներին և անպիտան գործիք դարձել։ Դիոսկորոսի ամենաջերմ կողմնակիցներից մէկին՝ Տիմոթէոսին, մեծ ցոյցերով ս. Մարկոսի գահը բարձրացրին։ Լևոնը այդ բանին լրջօրէն վերաբերուեց. դժուար էր նոր ժողով գումարել, այդ հաւասար կլինէր բացարձակ կերպով անվստահութիւն արտայայտել Քաղկեդոնի ժողովին։ Դրա փոխարէն կայսրը հաւաքեց բոլոր եկեղեցական նահանգների մետրապոլիտների և եպիսկոպոսների և իւր տէրութեան յայտնի աստուածաբանների կրօնական կարծիքները. դոցանից մեծագոյն մասը յօգուտ Քաղկեդոնի էր։ Բռնաւորին հալածեցին և Տիմոթէոսին Բ ա զ ի լ ի կ ո ս. (արքայական) մականուն տալով — առաջին անգամն էր, որ օրթոդոքս կուսակցութիւնը ճանաչուեց իբրև կառավարութեան կուսակցութիւն (Melchites Մելքիտես)—նստեցրին Աղեքսանդրեան գահի վերայ։ Հազուադիւտ դէպքերից մէկն էր, որ բիւզանդական կառավարութիւնը յաջող ձեռք առնեցաւ եկեղեցական գործերում որ շատ զգուշութեամբ պիտի շարժել։ Տիմոթէոսը—ինչ որ այն ժամանակները շատ անսպասելի էր—իրան ցոյց

տուեց մեղմ և համբերող։ Նա մինչև անգամ իւր եկեղեցական հակառակորդների սէրը և յարգանքը գրաւեց, թէև հրաժարուեցին սրա հետ էլ միանալուց։

Լևոնը իւր մահուանից յետոյ, 474 թ. փետրուարի 3-ին, իշխանութիւնը կտակեց իւր համանուն անչափահաս թոռ Արեադնէի և Զենոնի որդուն։ Փոքր Լևոնը 474 թ. հանդիսաւոր կերպով իւր հօրը կայսրակից օծեց և այնքան յանկարծակի մեռաւ, որ Զենոնը, որը այդպիսով գահի միակ տէրը դարձաւ, բնականաբար ենթարկուեց ամենատեսակի կասկածների։

Նոր կայսր Զենոնը, որը յենուած էր իւր հայրենակից կոպիտ և ատուած Իսաւրացիների վրայ, շատ անժողովրդական էր։ Այդ պատճառով կայսրամայր փառասէր Վերինան փորձեց գահ բարձրացնել իւր անընդունակ եղբօրը՝ Բազիլիսկոսին։ Իսաւրացի ամենանշանաւոր զօրավարներից մէկը՝ Իլլուսը դաշնակից էր դաւադրութեան։ 475 թ. վերջին Զենոնը ստիպուեցաւ իւր կնոջ հետ փախչել իւր հայրենի երկիրը։ Կոստանդնուպօլսում ժողովրդեան կատաղութիւնն արտայայտուեց Իսաւրեան երեկոյով։ Բազիլիսկոսը յենուեց միաբնակների կուսակցութեան վրայ, որոնք 20—25 տարիներից ի վեր ճնշուած էին։

Աքսորուած Տիմոթէոսը վերադարձաւ Աղեքսանդրիա, ժողովրդեան մեծ ուրախութիւն պատճառելով: Ասիայի եպիսկոպոսները շտապեցին յայտնել իրենց համաձայնութիւնը կայսրութեան Նոր հաւատի մասին: Սակայն Բազիլիսկոսը մի աններելի սխալ գործեց: Հետեւելով սահմանափակ Եգիպտացու խորհրդին, փորձեց մայրաքաղաքի եպիսկոպոսապետին պատրիարքական իրաւունքից զրկել, որ հիմնուել էր Յոհան Ոսկեբերանից և հաստատուել Քաղկեդոնում և Եփեսոսին՝ Յովհաննէս Աստուածաբանի քաղաքին, նորից վերադարձնել նրա աւագութեան հին իրաւունքը: Այդպիսով նա վիրաւորեց Ակակիոս պատրիարքին, որը իւր բարեպաշտութեամբ և խելացիութեամբ չափազանց սիրուած էր ժողովրդից: Վերջինս, վստահացած ժողովրդի համակրանքի վրայ, ամուր պահպանեց Քաղկեդոնի օրթոդոքսութիւնը, և Բոսփորի ափին Դանիէլ սիւնակեանցը իւր սիւնից յայտարարեց որ ուղղահաւատութիւնը վտանգուած է: Այն ժամանակ Բազիլիսկոսը այլ ևս ի զուր փորձեց յետ վերցնել իւր սեպհական շրջաբերականով յայտարարած հաւատը: Իլլուսը և իւր եղբայր Տրոկունդոսը անցան Զենոնի կողմը. Բազիլիսկոսին և նրա ընտանիքը փակեցին Իսաւրեան մի ամրոցում և սովամահ արին:

Զենոնը իւր վերահաստատութեամբ (477) ամենից առաջ պարտական էր մեծ պատրիարքին։ Ուստի կառավարութեան կողմից խելացի կարգադրութիւն էր, որ կրօնական խնդիրների կարգաւորութիւնը թողին այդ պատրիարքին, որ այնքան մեծ չափով քաղաքական հասկացողութիւն էր ցոյց տուել։ Ակակիոսը օրինակելի կերպով դուրս եկաւ այդ փշալից հարցերի միջից։ Նրա շարադրած Հենոտիկոնը-հաւատոյ դաւանանքը (482), որ Զենոնը հրատարակեց, պահպանեց երկու սերնդի համար եկեղեցու խաղաղութիւնը։ Նրա մէջ ամուր պահուեց Նիկիայում և Եփեսոսում հաստատուած և ընդունուած հին հաւատը, իսկ Քաղկեդոնի դժբախտութիւն բերող որոշումները իսկապէս մի կողմ նետուեցին։ Ս. Կիւրեղի հին դաւանութիւնը վերահաստատելով, Աղէքսանդրիայի և Անտիոքի պատրիարքներին միջոց տրուեց վերստին հաղորդուիլ պետութեան եկեղեցու հետ. պատրիարքների օրինակին հետևեցին նոցա հօտը, բացառութիւն կազմեցին մի քանի աննշան մոլեռանդներ։ Դրանով է բացատրւում այն, որ միաբնակ եկեղեցին օրացոյցների մէջ՝ սրբերի կարգին է դասում Զենոնին և Անաստասին, որ նրա յաջորդն էր և նրա պէս էր մտածում։ Ամբողջ տէրութեան մէջ քրիստոնեայ եկեղեցու

վերահաստատուած խաղաղութեան օգուտը անսահման էր, որի դէմ առանձին նշանակութիւն չունէր այն հանգամանքը, որ Հին Հռովմի պապ Փելիքս Գ-ը հանդիսաւոր կերպով իրան բաժան յայտնեց։ Ազգովին և քաղաքականապէս Լատինները արդէն բաժանուած էին, հետևապէս եկեղեցական բաժանումը միայն դրա անհրաժեշտ հետևանքն էր։ Հաւանական է, որ Ակակիոսը՝ խաղաղութիւնը հաստատելուց յետոյ՝ ընդունած լինի տիեզերական պատրիարքի տիտղոսը՝ իբրև միացեալ եկեղեցու առաջնակարգ հոգևոր պետ, իսկ դա յետոյ շատ անգամ վէճի առարկայ էր։

Քաղաքական խնդիրներում Զենոնի կառավարութիւնը շարունակեց յետոյ էլ բաւական անհանգիստ դրութիւն ունենալ։ Իրաւ է, Մարկիանոս իշխանի ապստամբութիւնը շուտով խաղաղացրին, բայց վտանգաւոր դարձաւ մի ուրիշ անձնաւորութիւն։ Զօրականների առաջնորդ Իլլուսը արքունիքում աստիճանաբար ձեռք էր բերել այնպիսի ամենակարող մի դիրք, որ իսկապէս այդ տարիներում նրան պէտք է համարել արևելեան պետութեան իրական կառավարիչ։ Զօրքը, ամենից առաջ նրա հայրենակից Իսաւրացիք, անպայման ենթակայ էին նրան։ Բացի այդ, նա հովանաւորում էր ուսումնականներին և հեղինակներին, դոցա մի-

չից շատ անգամ դուրս էին գալիս տէրութեան բարձր պաշտօնեաներ և դոցա մէջ էին հեթանոսութեան յայտնի և ծածուկ բազմաթիւ հետևողներ, այդպէս Լևոնտիոսը՝ Թրակիան զօրքի հրամանատարը, Պամպրեպիոսը՝ որ պրոֆեսոր էր սկզբը Աթէնքում, յետոյ մայրաքաղաքում և քաղաքական խնդիրներում առաջնակարգ հեղինակաւոր անձն էր, Մարսոսը և ուրիշները։ Իլլուսը շատ յաճախ հըպարտանում էր իւր դիրքի կարևորութեամբ, իսկ այդ հանգամանքը տեղիք էր տալիս ընդհարումների նրա և չափից դուրս ինքնահաւան Արէադնէ կայսրուհու մէջ և որ վերջը յառաջ բերեց պառակտում։ Ուստի շատ զարմանալի էր, որ կայսրը արևելքի զօրաց հրամանատարութիւնը այդ անխիղճ յանցապարտին հաւատաց։ Երևում է, նա չէր կարող ուրիշ կերպ վարուել։ Իլլուսը դէն ձգեց դիմակը. նա միացաւ առաջակարգ փառասէր կայսրամայր Վերինայի հետ, որ ընդունեց նորա բոլոր ծրագիրները։ Իլլուսի դրդմամբ նա Լևոնտիոսին Տարսոնում կայսր օծեց մի մատուռի մէջ և ներկայացրեց հպատակներին. 484 թ. Յունիսի 27 ին հանդիսաւոր կերպով մտաւ Անտիոք։ Նոր կայսրը և նրա կողմնակիցները իսկապէս Իլլուսի ձեռքին պարզ գործիք էին և անվիճելի է այն ենթադրու-

թիւնը, իբր թէ նոքա մտածել են նորից վերականգնել հեթանոսութիւնը. այդ առաջ է եկել նրանից, որ Զենոնի վերահաստատուած կառավարութիւնը շատ փիլիսոփաների և քերականների արիւնոտ մարտիրոսութեան ենթարկեց։ Ընդհակառակը նորահաստատ կառավարութիւնը իւր ծրագրի մէջ ընդունել էր քաղկեդոնական ուղղահաւատութեան պաշտպանութիւնը. դրանով նա գրաւեց արևելքի բարձր հոգևորականութիւնը, որի ամենայայտնի անդամները մերժել էին Հենոտիկոնը։

Բայց ժողովրդի մէջ քչերն էին հետևում այդ ուղղութեան. ժողովուրդը վարդապետների և քարոզիչների ազդեցութեան տակ էր, իսկ դոցա մեծ մասը միաբնակներ էին։ Նոր կառավարութիւնը ժողովրդի մէջ յենարան չունէր, ուստի Զենոնի ուղարկած Գոթացի Յոհաննէս զօրավարը առանց դժուարութեան յաղթեց Իլլուսին և փակեց Իսաւրեան այն Պապիրիոն դղեակի մէջ, որի մէջ երբեմն մնացել էին Վերինա կայսրուհին և Մարկիանոսը իրենց աքսորի ժամանակ։ 488 ապստամբների գլուխները ուղարկուեցին Կոստանդնուպոլիս։ Այդ բոլորի բնական հետևանքը այն եղաւ, որ արևելքի շատ եպիսկոպոսներ պաշտօնազուրկ եղան, ամենից առաջ Անտիոքի Կալանդիոն պատրիարքը։ Քաղկեդոնա-

կանութեան հետեւողները ծանր պատժուեցին Իլլուսի կողմնակցութեան համար։ Անտիոք եկաւ Զենոնի հին սիրելիներից մէկը, Պետրոսը, որին մի անգամ արդէն պաշտօնից զրկել էին, որովհետեւ միաբնակ ուղղութեան ծայրայեղ կողմնակից էր, բայց այժմ ընդունեց Ակակիոսի միարարական բանաձեւը։ Արեւելքում կատարուած քաղաքական նոր փոփոխութեան հետ կապ ունի Եդեսիայի պարսկական ուսումնարանի փակումը 489 թ., որը Նեստորի հետեւողների վերջին ապաստանարանն էր։ Քաղաքական տեսակէտից նայած, շատ խելացի կարգադրութիւն էր, որ արեւելեան նահանգներում պաշտպանում էին միաբնակ ուղղութիւնը։ Որովհետեւ նեստորականները պաշտօնապէս Պարսից տէրութեան մէջ ճանաչուած քրիստոնեայ հաւատացեալներն էին, իսկ Հըռովմը խելացի կերպով պաշտպանութիւն ցոյց տուեց նոյա ոխերիմ թշնամիներին, որոնք այդպիսով իրենց հաւատի շնորհիւ, աներկբայ հաւատարիմ կը մնային հռովմէական տէրութեանը։

Զենոնի ժամանակ իրերի դրութիւնը անհամեմատ աւելի կասկածելի էր տէրութեան եւրոպական մասում։ Գոթերը, թողնելով իրենց բնակավայրերը Պաննոնիայում, անընդհատ ձգտում էին դէպի հարաւ և նորից

սկսեցին տէրութեան համար անվերջ վտանգ դառնալ։ Զենոնի* համար առանձին բախտաւորութիւն էր, որ Ամալների թագաւորական ցեղից անկախ, ժողովրդի մէջ զօրեղ կողմնակիցներ ձեռք բերեց հասարակ ծագումից՝ մի զինուոր՝ Թէոդերիխը, որին Յոյները—Strabos—Ստրաբոս կամ Տիարիոսի որդի էին կոչում։ Զօրքի երկու առաջնորդների հակառակութիւնը տէրութեան փրկութիւնն էր։ Կառավարութիւնը, որ ոսկի չէր խնայում, կարող էր ապահով լինել, որ, եթէ Թէոդորիխներից մէկը կամ միւսը իր դէմ կռուէր, միւսը անպատճառ իրան կօգնէր։ Թէև այս էլ կար, որ իւրաքանչիւր անգամուայ դաշնակիցը Մակեդոնիայում և Թրակիայում աւելի մեծ աւերումներ էր կատարում քան բացարձակ թշնամին։ 478 և 481 թ. Տրիարիոսի որդին յարձակուեց մայրաքաղաքի վրայ, իսկ 487 թ. Թէոդորիխ մեծը։ Երկուսն էլ յաջողութեամբ յետ մղուեցին։ Վերջինիս դէմ Հռովմայեցիներից դուրս եկաւ մի հակառակորդ, որ թէ քաջ էր և թէ յաջող՝ Սաբինեան զօրապետը։ Բայց սա շուտ մեռաւ և տէրութիւնը նոր նեղութիւնների մէջ ընկաւ. մանաւանդ երբ Տրիարիոսի որդին մի հասարակ զինուորից սպանուելով, Գոթերի թագաւորը հակառակորդից ազատուեց, որին Հռովմայե-

ցիները, կոչում և պատրիկիոս տիտղոսներ շնորհելով, ի զուր աշխատել էին գրաւել: Անզուսպ «գ ա շ ն ա կ ի ց ն ե ր ի ն» նոր բնակութեան տեղեր տուին Դանուբի հովտում. այդ ժամանակ Ռուգեր ազգի փախստական իշխանի դեսպանութիւնը Մեծ Գոթի ուշքը դարձրեց Իտալիայի վրայ: Ինչպէս որ Օդոակրը ձգտել էր, որ Բիւզանդիոնը նրան ճանաչէր արեւմուտքի կայսերական զօրապետ և կուսակալ, այնպէս էլ այժմ որովհետև տիրում էր այն հասկացողութիւնը թէ հռովմէական տէրութիւնը անբաժան է, Զենոն կայսրը թոկապէս առանձին դաշնագրութեամբ Թէոդորիխին նշանակեց իր յաջորդ և իշխանութեան մէջ երկրորդ, իսկ նրա ձեռքի տակ միացած Գերմանացիները կայսերական զինուորներ էին համարւում: Նա պահանջեց կայսրից ծիրանի և ստացաւ նրա յաջորդ Անաստասիոսից: Թէոդորիխը միշտ չեշտում էր իր կախումը կայսրից: Իսկ սա, որ քաղաքական իրաւունքների ձեւապաշտ հետևող չէր, այլ շատ սառը դատող դրական քաղաքագէտ էր, միայն այն ժամանակ թեթևացած շունչ քաշեց, երբ նրա «հաւատարիմ հպատակը» Վերոնայի մօտ յաղթեց Օդոակրին և վերջնականապէս տիրաց Իտալիային: Ահա այդպիսով է տէրութիւնը վերջնականապէս ազատուել գերմանական ցե-

ղից իշխողներ ունենալու վտանգից։

Զենոնի մահուան ժամանակ 491 թ. Ապրիլի 11-ին երեւան եկաւ, թէ ինչքան ուժեղ է թագաւորական ցեղի նշանակութիւնը ժողովրդի մէջ։ Կայսեր ընտրութիւնը կախուած էր այրի կայսրուհի Արեադնէից, Լեւոն Ա-ի աղջկանից. և նա կայսր ընտրեց և միեւնոյն ժամանակ իւր համար ամուսին մի քաջածանօթ աշխարհական պաշտօնեայ՝ Անաստաս Սիլենտիարացուն, (491-518) որը — ինչ որ շատ բնորոշ էր այդ ժամանակների համար շատ չանցած քիչ էր մնացել, որ Անտիոքի պատրիարք ընտրուէր։ Սրա կառավարութիւնը համեմատած Զենոնի հետ, համեմատաբար խաղաղ էր։ Իրաւ է հէնց սկզբում ընդհարումներ եղան Իսաւրացիների հետ. նոցա հայրենակից Զենոնը մի տեսակ պրետորեաների դերը էր տուել մայրաքաղաքի մէջ՝ Փոքր Ասիայի հարաւային լեռնոտ երկրի այդ կոպիտ և կռուասէր հրոսակներին. Զենոնի ազգականները և կողմնակիցները ստացել էին զինուորական ամենակարևոր պաշտօնները։ Սակայն խռովարար ամբոխը, գրգռուած իրենց առաջնորդներից, քաղաքական կռիւ սկսեց։ Բայց կայսրը ցոյց տուեց իւր եռանդը։ Նա Իսաւրացիներին զրկեց իրենց ստացած ցորենի բաժնից։ Նոքա արիւնալից կռուից յետոյ

*քաղաքից դուրս վռնդուեցին։ Սակայն Զենոնի եղբայր՝ Լոնգինոսը, որը ձգտել էր թագի, անցաւ ապստամբների գլուխը։ Պատերազմը շարունակուեց վեց տարի Փոքր Ասիայի հարաւում։ Ապստամբութեան գլխաւորները, որոնք մի տեսակ ազգային բնաւորութիւն տուին, բոլորից սիրուած անձինք էին։ Նոցա հետ էր Ապամէի նախկին արքեպիսկոպոս՝ Կոնոնը, որ իւր աղօթագիրքը փոխել էր սրի հետ։ Բայց Կոտիէի յաղթութիւնից յետոյ* 493 *թ. ապստամբութիւնը նուազեց, միայն շարունակուեց պատահական յարձակումներով և ամրոցների պաշարումներով և լոկ տեղային բնաւորութիւն ունէր. արևելահռովմէական կառավարութիւնը ազատուեց Իսաւրեան պատուհասից։*

*Տէրութեան եւրոպական մասի հիւսիսային նահանգները Գոթերի հեռանալուց յետոյ ժողովրդից զրկուելով, ենթարկուեցին երկրի ներսում ապրող բարբարոսների անընդհատ յարձակումներին։* 493, 505 *և* 517 *թ. յիշուում են Գետերի արշաւանքներ. սոցա մասին կարծում են թէ այն ժամանակուայ սլաւոնական թափառական ցեղերից էին։ Նոքա յաղթում են հռովմէական զօրաւորներին և թալանելով ներս են խուժում Թրակիա, Մակեդոնիա և Թեսալիա։* 499 *թ. փիննական*

*Բուլղարները ծանր հարուած են հասցնում Հռովմայեցիներին Զուրտա գետի մօտ, իսկ 502 թ. ասպատակում են Թրակիան։ Կայսրը երկար պարիսպ քաշելով պաշտպանեց մայրաքաղաքը։ Այդ շրջանից է սկսում Բալկանեան թերակղզու ժողովուրդների սլաւոնացումը, որ տիեզերական պատմութեան համար առանձին նշանակութիւն ունեցաւ։*

*Անաստասի ժամանակուայ բոլոր պատերազմներից ամենակարեւորը Պարսից դէմ մղուածն էր, որի մասին շատ լաւ տեղեկութիւն ունինք Զուքնինի վանքի վարդապետ՝ Ասորացի Յեսուայ սիւնակեացի ժամանակակից պատմութիւնից։ Երկու իշխանութիւններն էլ խախտել էին հին դաշինքները, բայց պատերազմի իսկական պատճառը տուին Հռովմայեցիները, երբ նոքա Պարսից բաժնի Հայոց քրիստոնեայ նախարարներին իրենց հովանաւորութեան տակն առան։ Քրիստոնեայ Հայերը Յոյներին բարեկամ էին, մինչեւ որ, Յուստինիանի անմիտ քաղաքականութեան շնորհիւ, կորաւ այդ հարեւան տէրութեան համակրանքը։ 502 թ. Կաւատը սկսեց պատերազմը, տիրեց Թէոդոսուպօլսին (Կարին, Էրզրում)՝ Յունաց բաժնի Հայաստանի գլխաւոր քաղաքին։ 503 թ. սկզբին երեք ամսուայ պաշարումից յետոյ մատնութեամբ ընկաւ Ամիդ քաղաքը, որը*

տէրութեան. ամենազօրաւոր ամրոցն էր Միջագետքում: Դժբախտ քաղաքը զգաց դաժանաբարոյ յաղթողի ամբողջ կատաղութիւնը, որ Հռոմէացիներին նորից վերադարձրուեց միայն 504 թ.: Հռոմէացւոց զօրապետների մէջ աչքի էր ընկնում մանաւանդ գործակալների առաջնորդ (Celer) Կելերը: Թէ Յունաց և թէ Պարսից Միջագետքը սարսափելի կերպով աւերուում էր թէ թշնամիներից և թէ բարեկամներից, երբ վերջապէս երկու կողմն էլ ուժասպառ եղան, 506 թ. խաղաղութիւն հաստատեցին՝ հիմք ընդունելով պատերազմից առաջ գոյութիւն ունեցող կացութիւնը: Հիւսիսային ժողովուրդները Պարսիկներին նեղն էին լծել, կայսրը օգուտ քաղեց այդ հանգամանքից և հակառակ դաշնադրութեան՝ շինեց Դարա կարևոր ամրոցը, որ սպառնում էր Մծբին քաղաքին:

Ներքուստ կառավարութիւնը եռանդուն կերպով պարապած էր վերանորոգութիւններով: Թէ ժամանակակիցները և թէ յետագաները շատ են գովում կայսեր այն կարգադրութիւնը, որով նա վերացրեց ոսկու և արծաթի հարկը, որ շատ էր ճնշում բոլոր դասակարգերը: Նա փորձեց նմանապէս պաշտօնների վաճառման դէմ կռուել: Բնորոշ է ժամանակի ճգնաւորա—վարդապետական. Հա-

յեացքների համար, որ ժողովրդին արգելում էին նոյն իսկ բարեկենդանի անմեղ զուարճութիւնները, որոնց մէջ իբր թէ գտնում էին հեթանոսութեան մնացորդներ։ Ինչպէս որ Անաստասի ժամանակակից Գելասիոս պապը Հռոմում վերջնականապէս արգելեց Լուպերկուլիան տօները, այնպէս էր կայսրը արգելեց աղջկայ շորեր հագած տղայ պարողների պարերը, ինչպէս նաև Բրիւտայի մայիսեան տօները իրենց ժողովրդական հանդիսաւոր պարերով, որովհետև ամբոխը հարբում էր, չափը կորցնում և ծագում էին շատ անգամ արիւնահեղ վախճան ունեցող ծեծկռտոց։ Սակայն կառավարութիւնը ցոյց տուեց իւր իսկական քրիստոնէական առաքինութիւնը, երբ վերջացրեց չափազանց ժողովրդականութիւն ստացած մեծ տօները՝ գլադիատորների և վայրենի գազանների մենամարտութիւնները կրկէսում։

Անաստասի կառավարութիւնը առանձին կարևոր նշանակութիւն ունի ոչ այնքան քաղաքական, ինչքան եկեղեցական տեսակէտից։ Կայսրը, իւր նախորդի նման, լոկ քաղաքագիտական միտումներից դրդուած չէր միաբնակներին բարեկամ, այլ նա հետևում էր եկեղեցական այդ ուղղութեանը իւր սրտի խորին համոզմամբ։ Նրա գլխաւոր խորհրդատուն՝

*Մարինոս Ասորին նոյնպէս բացարձակ միաբընակ էր։ Չնայած դրան, կայսրը եկեղեցական քաղաքականութեան մէջ ընտրեց միջին ճանապարհը։ Որովհետև Եւրոպան և մանաւանդ մայրաքաղաքը հակուած էին դէպի քաղկեդոնականութիւնը, նա առժամանակ համբերեց Եփիմէոս պատրիարքին, որը նոյնպէս քաղկեդոնական էր, և երբ 496 թ. նրան հրաժարեցրին, նրա յաջորդ Մակեդոնիոսը թէև ստորագրեց հենոտիկոնին, բայց իրան ցոյց էր տալիս կայսեր եկեղեցական քաղաքականութեան կամակոր հակառակորդ։ Արևելեան նահանգներից Եգիպտոսը բացարձակ միաբնակ էր, մինչդեռ Պաղեստինը իւր բազմաթիւ վանքերի վարդապետներով օրթոդոքս էր։ Ասորիքում տիրում էր Փլաբիանի մեղմ, միջին կուսակցութիւնը։ Հենոտիկոնը ընդհանրապէս ընդունում էին իբրև տէրութեան հանգանակ. բայց նրա մեկնութեան մէջ արտայայտուում էր կուսակցութիւնների խորը հակառակութիւնը։ Եգիպտացիք և ծայրայեղ մոնոփիզիտները յայտնում էին, թէ նրա միջոցաւ մերժուում է քաղկեդոնականութիւնը, մինչդեռ ընդհակառակը՝ մայրաքաղաքում բացատրում էին որ նրա մէջ իսկապէս արտայայտուած է այն ժողովի որոշումների ընդունելութիւնը։ Միջին կուսակցութիւնը խելացի*

կերպով կարծիք չէր յայտնում այդ դժուար հարցի մասին, այլ մոնոֆիզիտներից մղուած առանց իւր համոզմանը հակառակ, բայց Նեստորից, նզովում էր նաև Անտիոքի դպրոցի միւս ներկայացուցիչներին, մանաւանդ Դիոդորոս Տարսոնացուն և Թէոդորոս Մոպսուեստացուն։ Անաստասը շատ գովելի միտք էր բանել։ Նա թոյլ էր տալիս, որ նահանգներումը, որտեղ ծագումով, լեզուով և արտամութիւնով միմեանցից բոլորովին տարբերւում էին, պարզօրէն պահպանուեն տեղային սովորութիւնները և գոյութիւն ունեցող հայեացքները։ Կառավարութիւնն էր, առանց յետին մտքի, պատով աշխատում էր պահպանել խաղաղութիւնը և միութիւն ստեղծել։ Նոյն իսկ Հռոմի՝ ուղղափառութեան կենդրոնի հետ թէ կայսրը և թէ նրա պատրիարքները քանիցս հաշտութեան փորձեր արեցին։ Անաստաս Բ. խաղաղասէր պապի օրով բանակցութիւնները ընթանում էին բաւական յաջող, սակայն նրա վաղաժամ մահը ի դերև հանեց խաղաղութեան յոյսերը։ Որովհետև Հռոմի յամառ պահանջը՝ թէ պէտք է Ակակի անունը հանել եկեղեցական գրքերից, Արևելահռոմի պատուին դէմ էր և անընդունելի։ Միւս կողմից՝ ծայրայեղ մոնոֆիզիտները անընդհատ մայրաքաղաք էին ուղարկում վար-

դասպետներից դեսպանութիւններ. սոցա առաջնորդները՝ հանճարեղ Սեվերոսը և եռանդոտ Քսենայիաս Հիերապոլսեցին կայսեր շատ դուրեկան էին: Մեկը միւսի հետևից ժողովներ էին գումարում, բոլորն էլ առանց հետևանքի: Արքունական մատուռներում սուրբ Աստուածը երգում էին մոնոֆիզիտների յաւելուածով. (Աստուած) «որ վասն մեր խաչեցար»: Կոստանդնուպոլսի խռովարար ժողովուրդը, որը սովորաբար ոգևորւում էր և տաքանում միայն կրկեսի ձիարշաւներով և ձեռնածուներով, նոյն յախուռն զգացմունքներով իր վերայ առաւ օրթոդոքսութեան պաշտպանի դերը և վտանգաւոր կերպով աղմկում էր հաւատի համար: Բարկացած կայսրը 512 թ. Սիդոնում ժողով գումարեց, որի վրայ պարտք դրուեց մի այնպիսի պատասխան խմբագրել, որ այլ ևս կասկածների տեղիք չը լինի: Ժողովի բանիմաց և չափաւոր ղեկավարները՝ Փլաբիան Անտիոքացին և Եղիա Երուսաղէմացին դէմ էին որևէ ծայրայեղ կարգադրութեան, որով վշտացրին կամարիլայից պաշտպանուած մոլեռանդներին: Կայսրը փոքր առ փոքր ծերացել էր, յոգնել և դիւրագրգիռ դարձել: Նա ձանձրացել էր շարունակ բանակցելով երբեք խելքի չեկող աստուածաբանների հետ, և որոշեց միանգամից միա-

նալ մոնոֆիզիտների հետ, որոնք աւելի վճռողական էին։ Այդ էր պատճառը, որ նա գիտակցօրէն թողեց իւր մինչև այդ ժամանակուայ եկեղեցական չափաւոր քաղաքականութիւնը։ Նրա մասին մեղմօրէն վկայում է Ցեսուա սիւնակեանցը, թէ նա յիմարացել էր ինչպէս ծերացած Սողոմոնը։

Մակեդոնին հեռացրին և նրա տեղը կարգեցին Տիմոթէոսին, որ ծայրայեղ մոնոֆիզիտ էր. սա իսկոյն յարաբերութիւն հաստատեց արևելքի եկեղեցիների հետ։ Փլաբիան Անտիոքացին, շուտով նաև Եղիա Երուսաղէմացին աքսոր քշուեցին, և Անտիոքի առաքելական գահը բարձրացաւ մոնոֆիզիտների առաջնակարգ ուղղութիւն տուող Սեվերոսը։ Տիւրոսի 513 թ. ժողովում հանդիսաւոր կերպով վերստին ընդունեցին հենոտիկոնը և նզովեցին քաղկեդոնականութիւնը։ Բայց այս անգամ էլ կայսրը ցոյց տուեց իւր մեղմութիւնը. նա յատուկ արգելեց Լիբանեան Փիւնիկիայի կուսակալին, որ վերջինս ոյժ չգործ դնէ Եպիփանէի և Արեթուզայի ըմբոստ եպիսկոպոսների դէմ. «նա չէ ցանկանում պատիժ գործ դնել նոյն իսկ այն ժամանակ, երբ կասկածելի և վտանգաւոր պատահարներ տեղի կունենան, եթէ պատժելով մի կաթիլ արիւն անգամ թափուի»։

*Բայց անհնար էր, որ կայսեր քաղաքականութեան փոփոխութիւնը եւրոպական նահանգներում ընդունուէր առանց հակառակութեան։ 512թ. մայրաքաղաքում ծագեց մի այնպիսի սարսափելի յեղափոխութիւն, որ մինչև կայսերական թագն անգամ վտանգի մատնեց. բնականաբար ըմբոստացել էին, որպէս զի պաշտպանած լինէին վտանգի ենթարկուած օրթոդոքսութիւնը։ Մարինոսի և Պլատոն պրեֆեկտի տները կողոպտեցին և այրեցին. ժողովրդի կատաղութեան զոհ գնացին մի քանի դժբախտ մոնոֆիզիտ վարդապետներ։ Այդ սարսափների ժամանակ ամբողջ օրերով ամբոխը կրկէսներում երգում էր օրթոդոքս բնագրով շարականներ։ Արդէն Արիոբինթոսին կայսր հրատարակեցին, երբ յանկարծ կրկէսն եկաւ Անաստասը՝ առանց թագի և կայսերական զարդարանքի և մունետկի միջոցով յայտարարեց, թէ ինքը պատրաստ է հրաժարուելու, բայց բազմագլխեան ամբոխի կառավարութիւնը անհնար մի բան է, պետութեան կառավարութիւնը միայն մէկին պիտի յանձնել։ Ծերացած գահակալի աներկիւղ լեզուն ազդեց ամբոխի վերայ դիւթիչ զօրութեամբ, աղմկալից ուրախութիւնով նրան նորից կայսր ճանաչեցին և ցրուեցին իրենց տները։ Կառավարութիւնը մեծ եռանդով*

շուտով վերականգնեց խաղաղութիւնը։

Արեւմտեան նահանգների այդ տարամադրութիւնից օգուտ քաղեց մի զօրավար՝ Վիտալիանը, ծագումով Միւսիայից, որ մի կոպիտ և փառասէր անձն էր, 514 թ. Դանուբի նահանգներում բարձրացրեց ապստամբութեան դրօշը։ Օրթոդոքս հաւատը նրա համար այնքան նշանակութիւն ունէր, ինչքան երբեմն Իլլուսի համար. բայց նա գիտէր, որ եթէ իւր ծրագրի մէջ մտցնի քաղկեդոնականութեան պաշտպանութիւնը, գրաւած կըլինէր Եւրոպայի հոգեւորականութեան և ժողովրդի համակրութիւնը։ Զօրեղ զօրքի գլուխ անցած, ըստ ոմանց 50,000 «Հոնների» հետ, 514 թ. արշաւեց մայրաքաղաքի վրայ և կայսեր այնպէս սարսափեցրեց, որ սա խաղաղութեան համար բանակցութեան մէջ մտաւ և խոստացաւ ժողով գումարել արեւմուտքի հետ միութիւն հաստատելու։ Հազիւ հազ յետ էր քաշուել Վիտալիանը, նրա դէմ ուղարկեցին Կիւրեղ զօրավարին, որը սակայն յաղթուեց։ Սարսափելի ջարդ կրեց նաև կայսեր հօրեղբօրորդին՝ Հիւպատիոսը, նրա զօրքի մեծ մասը կոտորուեց, ինքն էլ գերի ընկաւ։ Ինչպէս առաջ Օդեսոս և Անքիալոս, այժմ էլ Սոզոպօլիսը ընկաւ ապստամբների ձեռքը. նա սպառնում էր մայրաքաղաքին ծովի կողմից էլ։

Կայսրը ստիպուած եղաւ գնել իւր հօրեղբօրորդուն, 5000 ֆունտ ոսկի վճարել, իսկ Վիտալիանին պաշտօնապէս ճանաչել Թրակիայի զօրքի հրամանատար—magister militum per Thraciam։ Հերակլէի ժողովը չկայացաւ, թէև Հորմիզդաս պապը Թէոդորիխի թոյլտուութեամբ ուղարկել էր իւր ներկայացուցիչներին. և դրա պատճառը այնքան կայսեր երկդիմութիւնը չէր, ինչպէս Թէոփանէսն է յայտնում, ինչքան Հռովմի եկեղեցական քաղաքականութիւնը և աւանդապահական հայեցակէտը, որի հետ այն ժամանակուայ Բիւզանդիոնը չէր կարող ոչ և է միութիւն հաստատել։ 515 թ. պատերազմներ տեղի ունեցան ապստամբ Սկիւթացոց և կայսեր միջ. սակայն Մարինոսը հրձինքին յաղթեց նոցա ծովի վրայ՝ Սիւկիայի (Բերութ) մօտերքում և մայրաքաղաքին հանդստութիւն պարգևեց։ Վիտալիանը յետ քաշուեց դէպի հիւսիս. նրա արշաւանքը վերջնականապէս անյաջող ելք ունեցաւ։

Ծերացած կայսեր անընդհատ գլխացաւութիւն էր՝ պատճառում հոգևորականութիւնը։ Պաղեստինում մեծ ոյժ ունէին վանականները և ճգնաւորները. նոքա սուրբ Սաբայի և նրա ընկերների ղեկավարութեամբ մեծ համախմբումներ էին կատարում և բողոքում այն արքունի աստուածաբանութեան դէմ, որ

տիրում էր Կոստանդնուպոլսում։ Աղէքսանդրիայում գործը մինչև անգամ փոքրիկ ապըստամբութեան հասաւ. որովհետև 517 թ. քաղաքի Յունաց ազնուականներին, առանց ժողովրդի և հոգևորականութեան կամքը հարցընելու, Դիոսկորոսին պատրիարք էին նշանակել։ Բայց Ճարպիկ եպիսկոպոսը հասկացաւ գրաւել իւր հակառակորդներին և, անձամբ Կոստանդնուպոլիս ճանապարհորդելով, հաշտեցրեց իւր հետ նաև կառավարութիւնը։ 515 թ. Արէադնէն արդէն մեռել էր. 518 թ. ապրիլի 9-ն նրան հետևեց իւր զառամեալ ամուսինը։ Զառամելութիւնից յիմարացած ծերը կորցրել էր որ և է վճռողականութիւն և գործելու ցանկութիւն, այնպէս որ նա իւր յաջորդների մասին անմտաբար ոչինչ կարգադրութիւն չէր արել, թէև նա ունէր ազդեցիկ և հանճարեղ ազգականներ։

Անաստասի մահով վերջանում է Արևելահռովմի պատմութեան առաջին շրջանը։ Երկու անգամ տէրութեանը վտանգ էր սպառնացել արևմուտքի պէս գերմանական զինուորական դասակարգի իշխանութեան ենթարկուելու, երկու անգամն էլ յաջող և վերջնականապէս ազատուել էր։ Այդպիսի շրջանում, երբ կրօնական և եկեղեցական խնդիրներն այնքան սուր կերպարանք ստացան, ինչքան գուցէ

միմիայն ԺԶ դարում, կայսերական կառավարութիւնը ընդհանրապէս առած՝ ցոյց էր տուել մեծ չափաւորութիւն և հմտութիւն։ Եթէ հաշուի չառնենք Անաստասի վերջի տարիների սխալները, ամեն ինչ ամենալաւ գոյնով է ներկայանում. յուզուած մտքերը աստիճանաբար խաղաղուեցին։ Առանձին նշանակութիւն չունէր, որ արևմուտքը նեղացած ուռչում էր։ Բայց այդ բոլոր յուսալից պայմանները ոչնչացրեց մի պետ, որը իւր սահմանափակութեան մէջ չափազանց փառասէր էր և միութեան ախտով հիւանդ։

## Բ.

## ՅՈՒՍՏԻՆԻԱՆԻ ԵՒ ԻՒՐ ՅԱՋՈՐԴՆԵՐԻ ԴԱՐԱԳԼՈՒԽ (518—610)

Երբ գահը թափուր մնաց, իշխանութեան յաջորդի մասին մտածում էր ամենակարող սենեկապետ Ամանթիոսը։ Նա մտադրուել էր իւր եղբօրորդի Թէոկրիտոսին կայսր հրատարակել տալ։ Այդ նպատակի համար նա հարուստ միջոցներ տուեց Իլլիւրիացի Յուստինին, որը ունէր արքունի ամենաաչքի ընկնող մի պաշտօն՝ պալատի պահապանների հրամանատարութիւնը—comes excubitorum (կանանոցի հրամանատար) և նա պիտի գրաւէր այդ

ազդեցիկ պրետորեաններին ներքինու ծրագրի համար։ Սակայն խարդախ Իլլիւրիացին բարբարոսին վայել խորամանկութեամբ այդ միջոցները գործ դրեց իրեն կայսր հրատարակելու։ Սենատը և ժողովուրդը, ինչպէս միշտ, այս անգամ էլ համաձայնուեցին։ Յուստինը ճանաչուած էր իբրև հմուտ զինուոր, բնաւորութեամբ կոպիտ և որթոդոքսութեան ջերմ կողմնակից։ Որ Ամանթիոսին իսկոյն մի կողմ ձգեցին, շատ բնական էր այն ժամանակուայ բարք ու վարքի համար։ Իրերի վիճակը հիմնովին փոխուեց և այդ արտայայտուեց նրանով, որ Վիտալիանը փայլուն դիրք ստացաւ։ Նա ստացաւ զինուորական բարձր հրամանատարութիւն, իսկ 520 թ. հիւպատոսութիւն։ Յուստինի (518—527) կառավարութիւնը արտաքին պատահարներով շատ աղքատ է, թէ և ոչ աւելի քան անիշխանութեան ժամանակ. Նա մի տեսակ նախապատրաստութիւն էր իւր եղբօրորդու երկարամեայ և նշանաւոր թագաւորութեան համար։ Միայն կովկասեան մանր իշխանների պատճառաւ Պարսից և նրա մէջ տեղի ունեցաւ ընդհարում, որը սակայն շուտ վերջացաւ։ Յուստինի կառավարութեան ամենակարևոր դէպքը Հին Հռոմի հետ հաւատոյ միութեան վերահաստատութիւնն է 519 թ. որ պապականութեան ամենամեծ յաղթանակնե-

րից մէկն էր, և որը պարսկական անունով Հորմիզդաս Կամսարականցի պապի գործն էր: Վիտալիանը իբրև օրթոդոքսութեան գլխաւոր նեցուկ՝ կանգնած էր ամենառաջին կարգում: Նրա թելադրութեամբ դատապարտուեց մոնոֆիզիտների հոգևոր պետը՝ հանճարեղ Սևերոս Անտիոքացին: Անհերքելի է, որ կառավարութեան կասկածը գնալով աճում էր, երբ նա տեսնում էր այդ բռնակալ և անսկըզբունք մարդու գործողութիւնները, որը սակայն շատ էր սիրուած զինուորներից: Երբ նա հոգևորականութեան համակրանքն էլ գրաւէր, թագաւորութեան համար այնպիսի քաղաքական վտանգ կը ներկայացնէր, ինչպէս երբեմն Սեւերոսի տան համար թիկնապահների առաջնորդ Պլաւտիանն էր: Ուստի շատ պարզ է, որ կառավարութիւնը հետևեալ տարին արդէն յետ չնահանջեց անհրաժեշտ չարագործութեան առաջ և ոչնչացրեց կայսեր իրական պաշտօնակցին, և հազիւ թէ սխալ լինի հասարակական կարծիքը, որ կայսեր եղբօրորդուն էր համարում յանցանքի սկզբնապատճառ: Մի առժամանակ կառավարութիւնը ստիպուած էր կամայ թէ ակամայ եկեղեցական քաղաքականութեան մէջ ընթանալ Վիտալիանի բռնած ճանապարհով: Միութիւնը կընքուեց, որի համար Արևելահռովմը չափա-

զանց թանգ վճարեց: Դատապարտեցին իրենց ազգային եկեղեցու ամենաթանգ պետերի յիշատակը, յուշարձանների միջից ջնջեցին Մեծ Ակակիոսի և նրա յաջորդների անունները: Դրա միակ բացատրութիւնը այս կարող է լինել, որ գահաժառանգ Յուստինիանը, որի համաձայնութիւնը ձեռք բերելու համար հռովմէական հոգևոր ատեանը առանձին եռանդով աշխատում էր՝ լաւ և ուղիղ ըմբռնած լինելով նրա կարևորութիւնը, հէնց այն ժամանակն էր մտածում և ծրագիրներ կազմում արևմտեան տէրութիւնը նորից միացնելու: Եթէ հարկաւոր էր գրաւել արևմտեան լատինախօս նահանգների և նրա ազդեցիկ ու թունդ օրթոդոքս հոգևորականութեան համակրանքը, ամենաառաջին պայմանն էր Հռոմի հետ հաշտութիւն կայացնել, և դրա համար ոչ մի գին բարձր չէր: Ամենամեծ խստութեամբ տէրութեան նոր հաւատը ընդունել տուին արևելքում և Փոքր Ասիայում. յիսունից աւելի եպիսկոպոսներ, մեծաւ մասամբ բարեպաշտ, ուսումնական և ծերացած մարդիկ զրկուեցին պաշտօններից և ենթարկուեցին խիստ աքսորի: Միայն չհամարձակուեցին Եգիպտոսին ձեռք տալ. դեռ էլի յիսուն տարի շարունակ մոնոֆիզիտները այդտեղ ապաստան էին գտնում և Փոքր Ասիայի և Ասորիքի այդտեղ փախած

եկեղեցական պետերը անդադար վիճում էին Քրիստոսի մարմնի ապականութեան և անապականութեան մասին: Արևելահռոմի համար քաղկեդոնութեան վերահաստատութիւնը մի անուղղելի քաղաքական սխալ էր: Վեցերորդ դարում նկատելի էր, որ ամեն տեղ արթնանում էր ազգայնութեան գիտակցութիւնը, բայց դարու հոգու համեմատ՝ այդ արտայայտւում էր եկեղեցու միջոցաւ: Ասորական և եգիպտական եկեղեցիները, որ սկիզբն առան Յուստինիանի ժամանակ, անկախութեամբ տէրութիւնից երես դարձրին. այդ շատ կարևոր նահանգների մէջ սկսեց արթնանալ հակատէրունական և հակաթագաւորական զգացմունքը: Այն ժամանակուայ ամբողջ արևելքում նկատելի դարձաւ հակահռոմէական ուղղութիւնը: Նոյն բնազդական ժողովրդական անկյութիւնը ոգևորում էր նաև Յոյներին՝ Լատինների դէմ: Յուստինիանով է սկսում այն դարձը, երբ փորձում են թոթափել լատինական պաշտօնական պալատական և դատաստանական լեզուի անհաճոյ շղթան: Ուստի տէրութեան օգտի տեսակէտից կարելի է միայն ցաւել, որ Հռոմի հետ միութիւն կայացաւ: Սակայն Վիտալիանը և Յուստինիանը ընդունել տուին իրենց ուզածը և 525 թ. Զատկին՝ Կոստանդնուպօլի-

ող ներկայ եղաւ մի հանդիսի՝ թէ ինչպէս Յովհաննէս պապը, որին Թէոդորիխը յանձնարարել էր մի բաւական չարագուշակ պաշտօն՝ գնալ և համոզել որ Արևելահռովմը մեղմութեամբ վարուի արիանոսների հետ, մայրաքաղաքի պատրիարքական եկեղեցու մէջ պատուոյ տեղը նստեց՝ տիեզերական պատրիարքից բարձր և պատարագ մատոյց լատիներէն լեզուով։ Յուստինիանն արդէն իրապէս իւր ձեռն էր առել կառավարութեան իսկական ղեկը, երբ 525 թ. ապրիլի 1-ին Յուստինը նրան կայսերակից հրատարակեց և օծեց։ Միևնոյն ժամանակ նրա ամուսին Թէոդորան ևս, որ առաջ կրկէսում պարող կին էր, իւր կայսերական հօրեղբօր ձեռքից ստացաւ թագ։ Կայսրուհու, որին Յուստինիանը այնքան յարգում էր, նախկին կեանքը, ինչպէս որ պիտի եզրակացնել նրա առաջուայ քաղաքացիական ապրուստի եղանակից, արատներից անաղարտ չէ եղել. բայց մի բան չպէտք է մոռանալ, որ այն հայհոյանքները, որ դարերի ընթացքում թափուել են նրա գլխին, ծագում են մի գըրքից, որ յիշատակարանների՝ ամենականուանածաւոր գրականութեան (Memoiren litteratur) կատարելագոյնն է։ Թէ արքունիքի մթնոլորտից հեռացրած սննեկապետը՝ իւր գաղաղուած ծերութեան մէջ՝ անլուր և թունա-

ւոր ստեր է հնարել, հեշտ է շատ դեպքերում ապացուցանել, որով ստիպում է զգոյշ լինել նրա միւս ցուցումների վերաբերմամբ ևս։ Յամենայն դէպս, Թէոդորայի վարքը իբրև թագուհու, անարատ է։ Նրա թշնամիներն էլ չեն կարող ժխտել, որ նա արտակարգ հասկացողութիւն և խելք ունէր քաղաքական և թէ եկեղեցական գործերում։ Եթէ Յուստինիանը իւր արտասովոր կնոջ խրատներին աւելի լսած լինէր, դրանից տէրութեան համար դժբախտութիւն չէր ծագիլ։

527 թ. օգոստոսի 1-ն մեռաւ Յուստինը և Յուստինիանը (527—565) իբրպէս միապետ դարձաւ։ Յուստինիանի կառավարութիւնը բիւզանդական պատմութեան մէջ կազմում է կարևոր յեղաշրջան. Արևելահռոմի պետը նորից փորձում է դրաւել արևմտեան տէրութիւնը, որ խլել էին Գերմանացիները, և վերականգնել նախկին տիեզերական միապետութիւնը։ Անկուն հետևողութիւնը, որով նա իւր կառավարութեան ամբողջ ժամանակամիջոցում առաջ տարաւ իւր աշխարհակալական ծրագիրը, վերջ ի վերջոյ յաջողութեամբ պսակուեց և նրա անունը մեծացրեց յետագայ սերունդների առաջ։ Սակայն տիրապետութեան այդ յանդուգն քաղաքականութիւնը վեր էր տէրութեան զինուորական և տըն-

տեսական ուժերից և դա էր իսկապէս հիմքը, որ յետագայ դարերում քայքայումը անխուսափելի դարձաւ։ Արեւելահռոմի այս տօնուած կայսեր թէ արտաքին և թէ եկեղեցական քաղաքականութիւնը հաւասարապէս վնասակար էր և կործանիչ տէրութեան համար։

Պատերազմները, որ մղում էին գլխաւորապէս օտար երկրներից վարձուած զինուորներով, կայսրից պահանջում էին ահագին միջոցներ։ Անսատափ հարուստ գանձարանը դատարկուել էր մասամբ Յուստինի ժամանակ, որ ոչ մի կերպ տնտեսարար չէր կառավարում և մանաւանդ նրա եղբօրորդու շռայլերովը, որ ուզում էր ժողովրդեան համակրանքն իրան գրաւած ունենալ։ Մեծածախս կառավարութեան միշտ աճող կարիքներին սահպուած էր բաւարարութիւն տալ՝ ելեւմից ղեկավար թիկնապահների զօրապետ (praefectus praetorio) Յովհաննէս Կապպադովկացին, որ կոպիտ և բռնակալ մի անձն էր, իւր միջոցների մէջ ընտրութիւն չէր անում, բայց իւր անընկճելի եռանդով՝ տնտեսական գործերում մի արտակարգ հանճար էր։ Այն մութ պատկերը, որով ժամանակագիրները ներկայացնում են նրա ագահութիւնն ու կաշառակերութիւնը, ապահովապէս մեծաւ մասամբ հաստատ է. բայց

չպէտք է մոռանալ, որ արևելքին սովոր է կառավարութեան վրայ նայել իբրև իւր երդուեալ թշնամու վրայ, որը ծծում է իւր հպատակների տնտեսական միջոցները, իսկ նրա ելևմտից մինիստրին համարում է ամենազզուելի գործիք այն իշխանութեան, որը կողոպտում է մասնաւոր մարդկանց փողի քսակները։ Յուստինիանը լաւ հասկացաւ իւր մինիստրի կարևորութիւնը և նրան պաշտօնի մէջ պահեց իւր կառավարութեան ամբողջ առաջին կիսում։

Ներքուստ կառավարութիւնը մեծ եռանդով գործեց ամենից առաջ ձիարշաւի խմբակցութիւնների դէմ, որոնք չափազանց ուժեղացել էին։ Անարդար կլինէր, եթէ կրկեսի կուսակցութիւնները համարէինք լոկ սուլթանական քմահաճոյքով կառավարուած մայրաքաղաքի անզուսպ ամբոխի խմբակցութիւններ կամ նէապոլիտանական խուժանի (Maffia) նման ազատ որմնադիրների ամբոխում։ Խմբերը կոչւում էին «դեմոյք» — «ժողովրդականք» և ունէին իրենց կանոնաւոր ընտրած առաջնորդներին։ Ծախահելլենական քաղաքացիութեան գիտակցութիւնը նրա մէջ իւր վերջին ապաստարանը, իւր մարմնացումն էր գտել։ Ամենից շատ կարելի է նրանց համեմատել նախկին Պտղոմէյանների ժամանակ մակե-

*գոնական* «ekklesia Alexandrias —*Աղէքսանդրիայի ժողովներին»: Կրկեսի այդ խմբերը, շնորհիւ մայրաքաղաքի արտակարգ նշանակութեանը, այնպիսի ազդեցութիւն էին ձեռք ձգել, որ կառավարութիւնը ստիպուած էր նոցա հետ հաշուի մտնել. արքունիքը և պաշտօնեաները պարտաւոր էին որոշ գոյնի պատկանել: Մինչդեռ Անաստասի ժամանակ իշխել էին կանաչները, Յուստինիանի ժամանակ ղէկն անցաւ կապոյտների ձեռքը: Կառավարութիւնը* 532 *թ. սկզբում փորձեց անկողմնակալ կերպով խառնուել նոցա գործերին, պատժելով երկու խմբերից չարագործներին, որպէսզի այդպիսով կարողանայ վերջապէս ազատուել կուսակցութիւնների խնամակալութիւնից: Սակայն դրա պատճառաւ ծագեց Նիկայի կոչուած խռովութիւնը: Քաղաքում սոսկալի հրրդեհ պատահեց և աւելի մեծացրեց յեղափոխականների կատաղութիւնը: Ի զուր անցան կայսեր զիջողութիւնները՝ պաշտօնից հեռացնել ամենաատելի պաշտօնեաներին, թէև ինքըն էլ անձամբ, ինչպէս երբեմն Անաստասը, կրկեսի մէջ խոնարհութիւն ցոյց տուեց: Ըրեան եկան ղեկավարների նպատակները. յունուարի* 19*-ին Հիպատիոսը՝ Անաստասի եղբօրորդին, հակաթոռ կայսր հրատարակուեց: Դրութիւնը չափազանց վտանգաւոր էր: Կայսրը*

և նրա դիւանը, նոյն իսկ Բելիզար հռչակաւոր զօրապետը, որոշել էին փախչել: Այդ րոպէում Թէոդորան իր վճռողականութեամբ ազատեց թագաւորութիւնը: Նորընտիր կայսրը վճռողական րոպէում չունեցաւ անհրաժեշտ եռանդը: Կապոյտներին դրամի միջոցաւ և խոստումներով նորից գրաւեցին, մինչդեռ Բելիզարը և Մունդոսը ապստամբութիւնը խեղդեցին արեան մէջ: Պաշտօնաթող ծառայողները նորից բռնեցին-իրենց տեղերը: Նիկայի ապստամբութեան յաղթական ճնշումը մի տեսակ սահմանաքար է կազմում արևելահռովմէական զարգացման համար: Ժողովուրդը և սենատը դադարում են գերակատար լինելուց քաղաքականութեան մէջ: Բացարձակ միապետութիւնն առանց սահմանափակման, իշխող է դառնում:

Այժմ վերջապէս կարող էր Յուստինիանը հետամուտ լինել իր վաղուց փայփայած աշխարհակալական ծրագրերին: Բնորոշ է, որ արդէն հետևեալ տարին Վանդալների տէրութեան հետ հաշիւները վերջացրին: 532 թ. սեպտեմբերին Պարսիկների հետ յաւիտենական խաղաղութեան դաշն կապուեց, որով կարելի եղաւ արևմուտքի դէմ յարձակողական պատերազմ սկսել: Գերմանական ծովահէնների աֆրիկեան տէրութիւնը վաղուց

ընկել էր իւր բարձրութիւնից։ Տիրապետող սակաւաթիւ վանդալները կասկածանքով էին նայում իրենց հպատակների բազմութեան վերայ, որ թէ ծագումով և թէ կրօնով իրենցից տարբերւում էին։ Ազատասէր Մաւրիտանցիների դէմ պատերազմը անյաջող էր։ Հիլդերիքսը (523—530) այն կարծիքն էր ունեցել, թէ տէրութիւնը կարելի է փրկել մերձենալով Բիւզանդիոնի հետ և ոյժ տալով կաթոլիկ հպատակներին։ Գելիմերը (530—533) ընդհակառակը գերադասեց «ազգային» քաղաքականութիւնը։ Յուստինիանի քաղաքական միջամտութիւնը յօգուտ գահազուրկ թագաւորի, մնաց առանց հետևանքի, ինչպէս որ յուսացել էր արևելահռոմէական դիւանը։ Սակայն կայսերական խորհրդատուները արդարացի կերպով զինուորական և տընտեսական պատճառներով ամենածանր կասկածներ էին յայտնում։ Կայսրը սկսել էր տատանուել, մանաւանդ երբ լսեց ելևմտից մինիստր Յովհաննէսի ծանրակշիռ կարծիքը. բայց արևելքի մի եպիսկոպոսի «աստուածային» երազը նրան թելադրում է հաստատուն մնալ իւր սկզբնական որոշման մէջ։ Անկասկած որոշման օգնել են Տրիպոլսի և Սարդինիայի ապստամբութիւնները, որոնք բարեկամաբար յակուած էին դէպի Հռովմայեցինե-

*րը։ 533 թ. Կոստանդնուպոլսի նաւահանգըստից արշաւեց նաւատորմիղը, որ ունէր 10.000 հետեւակ և 5000 ձիաւոր զինուորներ, Բելիզարի անսահման հրամանատարութեան տակ։ Աֆրիկա անցնել շատ դիւրացրեց Օստգոթների կառավարութիւնը, որը անհեռատեսութեամբ օգնեց նոցա. Սիկիլիայի պաշտօնեաները պատուէր էին ստացել հռովմէական նաւատորմիղին ամեն տեսակ նպաստ հասցնել։ Բախտը նպաստեց Բելիզարին սպասածից աւելի։ 533 թ. սեպտեմբերին նա իջաւ Աֆրիկա և գրաւեց բնիկների համակրանքը. մինչդեռ Վանդալները անպատրաստ կերպով յարձակման էին ենթարկուած, միայն այն ժամանակ մտածեցին պաշտպանութեան, երբ թշնամին իրենց հողի վրայ էր։ Տասներորդ մղոնաչափի մօտ Գելիմերը անհամեմատ մեծ զօրքով յարձակուեց թշնամու վերայ։ Բելիզարի յաղթութիւնը բացեց նաև մայրաքաղաքի դռները, որը ողջունեց յաղթողին ուրախ աղաղակներով։ Յաղթուած Թագաւորը փախաւ Բուլլա Ռեգիա։ Նա իւր եղբօր՝ Ցազոնի զօրքով ուժեղացած, որը նորից ընկճել էր ապստամբ Սարդինիան, նորից դուրս եկաւ Բելիզարի դէմ։ 533 թ. դեկտեմբերին Տրիկամարոնի մօտ Վանդալները յաղթուեցին երկրորդ անգամ։ Թագաւորը փախաւ Նումիդեան լեռները։*

Նա շուտով անձնատուր եղաւ և զարդարեց յաղթողի իրաւացի արժանացած յաղթական գնայքը մայրաքաղաքում։ Վանդալների թագաւորութեան մաւրիտանիական և կղզիների տիրապետութիւնները անձնատուր եղան առանց ընդդիմութեան։ Չորամսեայ արշաւանքով Հռովմայեցիները նորից ձեռք էին բերել Աֆրիկան։ Բելիզարը գլխաւոր հրամանատարութիւնը յանձնել էր Դոմեստիկոս Սոլոմոն քաջ զօրապետին. սա արշաւեց, աւրասեան լեռնային երկրի խորքերը, որ անջատուել էր Վանդալների անկանոն իշխանութեան ժամանակ։ Ամրոցներով ապահովացրին Հռովմայեցիների նոր գրաւած երկիրները։ Թէև հետևեալ տարիներում Հռովմայեցիները բաւական յաճախ անգամ ստիպուած էին կռիւներ մղել թէ Մաւրերի և թէ նոյն իսկ իրենց ապստամբ զօրագնդերի փառասէր առաջնորդների դէմ՝ ընդհանրապէս հռովմէական իշխանութիւնը հաստատուեց Աֆրիկայում։ Կարթագէնը այն թեմի գլխաւոր քաղաքը դարձաւ, որ համարեա դարուկէս ենթակայ էր արևելեան տէրութեանը։

Համարեա Վանդալների տէրութեան կործանումից անմիջապէս յետոյ, սկսւում է Իտալիայի Օստգոթների դէմ պատերազմը։ Նա տևեց մօտ 20 տարի և դրա պատճառը Յուս-

տինիանի կառավարութեան եղանակի մէջ պիտի ունենալ: Պատերազմը սկսուեց շատ թերի միջոցներով եւ մեծաւ մասամբ այդպէս էլ շարունակուեց: Ինչքան դիւրիչ եւ յանդուգն էր աշխարհակալական քաղաքականութիւնը, այնքան ողորմելի եւ խեղճ էր զինուորական ոյժը: Թէեւ իրաւ է այդ զգացումը աւելի ոյժ ստացաւ վերջին Ամալների միանգամայն անմիտ քաղաքականութեամբ, որով Նոքա ժողովրդի մէջ ծագեցրել էին չափազանց հակառակութիւն եւ ատելութիւնն էլ թուլացրել: Ամալասվինտան՝ Թէոդորիկոս Մեծի աղջիկը, եւ նմանապէս Թէոդահատը, որ յետոյ առաջինի կառավարչակից եւ սպանողը դարձաւ, երկուսն էլ իրենց հռովմէական կրթութեամբ եւ ուսումնականութեամբ օտարացել էին իրենց ցեղից: Ամալասվինտան Հռովմայեցիներին նըպաստում էր եւ պաշտպանում. ատելութեան կառավարութեան ղեկը յանձնուած էր Հռովմայեցի մարդկանց: Երկու կառավարիչներն էլ ինքնակործան դաւաճան յարաբերութեան մէջ էին մտել Արեւելահռովմի հետ: Բայց երբ սպանեցին Թագուհուն, որ դաշն էր կապել Յուստինիանի հետ, կայսրը ցանկալի պատճառ ունեցաւ պատերազմ յայտարարելու: Բելիզարը 535 Թ. Սիկիլիայում ափ իջաւ 7500 մարդկանցով. Համարեա ամբողջ կղզին ըն-

կայ Նրա ձեռքը· մինչդեռ Մունդոսը յարձակուեց Դալմատիայի վերայ: Ողորմելի Ամալը (Թէոդահատը) արդէն որոշել էր իւր գահը Յուստինիանին տալու, երբ Օստգոթների զէնքի յաղթութիւնը Դալմատիայում փոխեց նրա մտադրութիւնը, և ազգային պատերազմասէր կուսակցութեան ձեռքը ձգեց կառավարութիւնը: Բելիզարը անյապաղ մտաւ Սարին Իտալիա, որի բնակիչները բացառապէս Հռովմայեցիներ էին: Միայն Նէապոլը կարճ ժամանակով ընդդիմացաւ: Մինչ այդ Թագաւորը անգործ սպասում էր մայրաքաղաքում: Այդ ժամանակ ժողովրդի կատաղութիւնը փոխուեց բացարձակ ապստամբութեան: Ամալներին հրատարակեցին գահազուրկ· Թէոդահատը փախչելիս սպանուեց, և Վիտիգէսին, որ թագաւորական ծագումից չէր, վահանների վերայ բարձրացրին (թագաւոր կարգեցին): Սակայն գործը հնարաւոր էր· ազատել հիմքից խախտուած տէրութիւնը, այդ թէև քաջ, բայց սահմանափակ և ընդհանուր կացութիւնը ըմբռնելու անկարող մարդու ոյժերից միանգամայն վեր էր: Փոխանակ Հռովմը պաշտպանելու, նա շտապեց Ռաւեննա, այնտեղ պսակուեց Ամալասվինթայի դստեր՝ Մատասվինթայի հետ, որպէսզի օրինական դարձնէ իւր թագաւորութիւնը: Միևնոյն ժամանակ

*կարծում էր, որ հիւսիսում հեշտ կլինի հետևել Փրանկների ընթացքին, որոնց երկու կողմն էլ աշխատում էին գրաւել: Այն ժամանակ Բելիզարը 536 թ. Դեկտեմբերի 9-ին հոգևորականութեան, սենատի և ժողովրդի հրաւիրելով գրաւեց Հռոմը, որ շատ թոյլ էր պաշտպանուած: Ռոմանական բնակիչների համակրանքը Նրան դիւրութիւն տուեց հեշտութեամբ վերցնել Միջին—Իտալիայի կարևոր տեղերը: Վիտիգէսը ամենայն ուժով աշխատեց ուղղել իւր սխալը: Նա գոթական բոլոր զօրութիւնով արշաւեց Հռոմի վերայ. և սկսեց այն հռչակաւոր պաշարումը, որ տևեց մի ամբողջ տարի. և չնայած որ կայսերական կառավարութիւնը կարողանում էր շատ քիչ օգնութիւն հասցնել, բայց Բելիզարի հանճարեղ ղեկավարութեամբ առաջնորդուած, պաշտպանութիւնը վերջացաւ Գոթերի կատարեալ անյաջողութիւնով, երբ Բելիզարին ստորադրեալ Յովհաննէս զօրավարը գրաւեց Արիմինում կարևոր քաղաքը. միւս կողմից էլ Նրա Իսաւրացիները ստիպեցին Վիտիգէսին 538 թ. Մարտին յետ նահանջել: Միաժամանակ Բիւզանդիոնից նոր օգնութիւն հասաւ: Նարսէս ներքինին երևաց Պիցենումում 7000 ընտրեալ զօրքով: Սակայն նրա ունեցած հրահանգութիւնը, որ կայսերական դիւանից դիտմամբ*

անորոշ էր խմբագրուած, Նրան տալիս էր համարեա թէ Բելիզարից անկախ դիրք։ Թէ ինչքան էր ընկել Գոթերի վարկը, այդ երեւում է նրանից, որ Մայլանդն էլ է փորձում Բելիզարի կողմն անցնել։ Մունդիլասը Լիգուրիայից այնտեղ անցաւ և գրաւեց այդ նշանաւոր քաղաքը և հարեւան տեղերը։ Բայց այդ ժամանակ վերջապէս Գոթերի թագաւորը Ֆրանկների թագաւորի հետ դաշն կապեց, նոցա տալով Պրովանսը։ Գոթերը և Թէուդեբերտից ուղարկուած Բուրգունդիոնները առին Մայլանդին։ Տասն չանցած Աւստրազեան թագաւորը ինքը երեւաց Վերին Իտալիայում, սարսափի մէջ ձգելով ոչ պակաս Գոթերին քան Յոյներին։ Երբ Ֆրանկները յետ քաշուեցին, Բելիզարը առեց Փեզուլէ և Աւքսիմում և 539 թ. պաշարեց Գոթերի Ռաւեննա մայրաքաղաքը։ Նա ինչքան քաջ զօրավար էր, նոյնքան էլ հմուտ քաղաքագէտ էր, և հասկացաւ ի դէպս հանել Իտալիայի բաժանման ծրագիրը, որ առաջարկել էին Ֆրանկները Գոթերին։ Այդ ժամանակ էր որ կայսերական դիւանի միջնամտութեամբ կարծես թէ առանց հետեւանքի էին մնալու նրա ձեռք բերած յաջողութիւնները։ Խոսրովը, որին անհանգիստ էին անում Հռովմի յաղթութիւնները, պատրաստուել էր յարձակուելու Ասորիքի վրայ։

*Ուստի Յուստինիանի օգուտն էր ինչպէս էլ
լինի վերջացնել արեւմուտքի պատերազմը։ Նա
Գոթերի թագաւորին առաջարկեց Պօ գետի
միւս ափի երկիրները, մինչդեռ մնացած թե-
րակղզին մնալու էր Հռովմայեցւոց ձեռքին։
Բելիզարի ըմբոստ փառամոլութիւնը ի վնաս
տէրութեան՝ ոչնչացրեց այդ շատ խելացի ծրա-
գրի իրագործումը։ Նա ձեւի համար ընդունեց
Գոթերի թագաւորի առաջարկութիւնը, որի
համաձայն ինքն էր ընդունելու Իտալիայի թա-
գաւորի աստիճանը։ Ռավեննան անձնատուր ե-
ղաւ, և թագաւորը գերի ընկաւ։ Վերին Ի-
տալիայի գոթական հրամանատարները, համա-
րեա առանց բացառութեան, յայտնեցին իրենց
հնազանդութիւնը և հպատակութիւնը։ Թը-
ւում էր որ ամբողջ Իտալիան նորից վաստա-
կուած էր Հռովմայեցւոց պետութեան համար։
Այն ժամանակ Բելիզարին կանչեցին որ ստանձ-
նի Պարսից դէմ պատերազմի հրամանատա-
րութիւնը։ Նա առանց վարանելու կատարեց
այդ հրամանը, և Կոստանդնուպոլիս տարաւ
Գոթերի թագաւորին ու թագաւորական պա-
լատի գանձերը։*

*Հռովմի յաղթանակը վաղաժամ էր։ Ան-
հեռատեսութեամբ հրամանատարութեան զա-
նազան զօրապետների մէջ բաժանելը և նոր
կառավարութեան տնտեսական ճնշումը այն-*

պիսի սխալներ էին, որոնցից օգտուեց ազգառէյնների կուսակցութիւնը: Սոքա ապստամբեցին: Երկու կարճ միջանկեալ կառավարութիւններից յետոյ, Բադուիլային կամ Տոտիլային 541 բարձրացրին թագաւորական վահանի վրայ: Մի տարուայ մէջ տեղի ունեցաւ կատարեալ փոփոխութիւն: Հռովմայեցիները մի քանի պատերազմներում յաղթուեցին: Առանց ժամանակ կորցնելու գլխաւոր տեղերի պաշարմամբ, Գոթերի թագաւորը յաղթական ընթացքով անցաւ Միջին—Իտալիա: 542 թ. Հարաւն էլ էր նրան հպատակում: 543 թ. ընկաւ Նէապոլը: Ի զուր Բելիզարին նորից Իտալիա հրաւիրեցին: Սա պաշտօնով ուրիշից կախուած, շատ քիչ զօրքով և առանց փողի, չկարողացաւ արգելք լինել, որ Տոտիլան 546 թ. Հռովմին էլ տիրէր: Քաղաքը զրկուեց իւր բնակիչներից, հրդեհի մատնուեց, պարիսպների մի մասը կործանեցին. և միայն Բելիզարի միջամտութիւնը քաղաքագիտական եղանակաւ՝ արգելք եղաւ նրա վերջնական աւերման: Բայց երբ թագաւորը դէպի Լուկանիա քաշուեց, Բելիզարը մտաւ Հռոմ. բնակիչները նորից վերադարձան և արագութեամբ պարիսպները նորոգեցին: Տոտիլայի փորձը՝ յետ գրաւել քաղաքը, անյաջող անցաւ: Սակայն այդպէս էլ Բելիզարի կացութիւնը շատ

դժուար էր։ Կայսերական դիւանը նրան օգնութիւն չէր հասցնում։ Կարիք էլ չկայ կարծելու՝ թէ Յուստինիանը այդպէս վարւում էր չար դիտաւորութեամբ։ Հիւսիսային ժողովուրդների յարձակումը Բալկան թերակղզու վրայ և տէրութեան գանձարանի կատարեալ դատարկութիւնը, բաւականաչափ պարզում են կառավարութեան այդ վարմունքը։ Բելիզարը վերադարձաւ Կոստանդնուպոլիս։ Հռոմը նորից ընկաւ Գոթերի ձեռքը։ Տոտիլան համարեա բացարձակ տէր էր Իտալիայի։ Նրա նաւատորմիղը տիրեց և աւարի առաւ Սիկիլիան, յարձակման էր ենթարկում Սարդինեան և Էպիրոտեան ափերը։

550 թուականը նշանաւոր է Յուստինիանի Իտալական քաղաքականութեան յեղաշրջմամբ։ Գերմանոսը՝ Կայսեր եղբօրորդին, Օստգոթների Մատասվինտա իշխանուհու ամուսինը, իբրև ընդհանուր զօրապետ (generalissimus) պէտք է յանձն առնէր Իտալիայի զօրաց հրամանատարութիւնը։ Մտադրուած էր գերմանական և հռովմէական ազգակցական կապերով, հաշտեցնել գերմանական և հռովմէական ազգային տարրերի միմեանց հակասող շահերը։ Սակայն Գերմանոսը անակընկալ մեռաւ Սերդիկայում՝ պատերազմի պատրաստութիւնների ժամանակ, որը ձգձը-

ուել էր, որովհետև Սլաւոնները և Հոները հեղեղել էին Իլլիւրիկումը։

Վերջապէս Յուստինիանը արտայայտեց իւր եռանդը պատերազմական գործում։

Նարսէսի անձի մէջ գտաւ իւր ցանկացած առաջնորդին, որի զինուորական բարձր հանճարի առաջ բոլորը խոնարհուում էին կամովին. սա իւր ձեռքին ունենալով հարուստ դրամական միջոցներ, կարողացաւ հէնց առաջին անգամ հանդէս գալուց տպաւորութիւն թողնել իւր զօրքովը, որի մեծագոյն մասը բարբարոսներից տուած օժանդակ գնդերն էին։ Նրանց մէջ առաջին տեղը բռնում էին Լանգոբարդների թագաւորի վարձկանները, որ նա ուղարկել էր համաձայն իւր կռած դաշինքի։ Չնայած որ Փրանկներն ու Գոթերը փորձեցին Նարսէսի ճանապարհը կտրել, նա ցամաքով հասաւ Ռավեննա։ Միջին Իտալիայի Ապեննիններում՝ Տագինայի մօտ (552 թ. ամառուայ մէջ) տեղի ունեցաւ վճռողական ճակատը, որը կարելի է այդ ազնիւ ցեղի ազգային հարուածը համարել և որը իսկապէս վերջ տուաւ Գոթերի իշխանութեանը Իտալիայում։ Յուսահատական պատերազմը Տեյայի առաջնորդութեամբ 553 թ. վերջացաւ Կամպանիայի Սարնոսի մօտի պարտութիւնով։ Աւելի վտանգաւոր դարձաւ Հռովմայեցիների հա-

մար Փրանկների արդէն շատ ուշացած միջամտութիւնը։ Նոցա երկար չեզոքութիւնը փայլուն ապացոյց է, թէ Մերովինգեան հարստութիւնը քաղաքականապէս դեռ ինչքան տհաս էր։ Այժմ էլ Փրանկները իրենց գործը շատ վատ տարան։ Ալեմանա—ֆրանկական ժողովրդական յարձակումը Լեւթարիս և Բուտիլինոս հերցոգների առաջնորդութեամբ՝ մասամբ ժանտախտի զոհ գնաց, մասամբ Նարսէսի թրին Կապուայի մօտ։ Երբ, գլխաւորապէս Գոթերի մնացորդների օգնութեամբ, ոչընչացրին նաև այդ ստոր խառնիճաղանջ ամբոխին, ամբողջ Իտալիան վերջնականապէս վերստին ընկաւ Հռովմայեցւոց իշխանութեան տակ, և տէրութեան հետ նոր միացած թերակղզին կարգաւորելու կարևոր պաշտօնը յանձնուեց Նարսէս պատրիկիոսին։

Ժամանակով՝ Օստգոթների իշխանութեան կործանելուց յետոյ, անմիջապէս հետևում է Պիրինեան թերակղզու գործերի մէջ միջամտութիւնը։ Որպէս զի Ագիլա գահաժառանգին Վեստգոթների Աթանագիլդ թագաւորի դէմ պաշտպանած լինեն, 554 թ. Սպանիա ուղարկեցին Լիբերիոս պատրիկիոսին։ Կորդուբան ընտրեցին յունական սպանիական նահանգի միջնավայր. բայց նոցա անհաստատ տիրապետութեան էական մասերը կազմում

էին, թէև Դանը և ուրիշ պատմագիրներ աւելի մեծ են ընդունում, մի քանի կարևոր ծովային ամրոցներ, ինչպիսիք են Կարթագօ, Սպարտարիա, Մալակա և Ասիդոնիա։ Այդ յարձակողական պատերազմները, որ միանգամայն բարձր էին Արևելահռոմի ոյժերից, արգելք դարձան պաշտպանելու պետութեան հիւսիսային սահմանները, որ անհամեմատ կարևոր էր։ Մենք լսում ենք, որ Հոները, Սլաւոնները և Անտերը անդադար յարձակւում էին Դանուբի հարաւային նահանգների վրայ։ Իլլիւրիկումը և Թրակիան նոցա աւերումների մշտական տեղերն էին։ Աւելի սարսափելի էր 540 թ. արշաւանքը, որը տարածուեց մինչև Յունաստան և ընդդիմութիւն գտաւ միայն Իսթմոսի ամրութիւնների առաջ։ 559 թ. Հոները (Բուլգարները) և Սլաւոնները սպառնում էին նոյն իսկ մայրաքաղաքին. զառամեալ Բելիզարը նրանց յետ մղեց։ Կառավարութեան ամրութիւնները՝ պաշտպանուած չլինելով բաւականաչափ զօրքերով, մնացին միանգամայն անօգուտ. դրամ վճարելը և ընծաները՝ փոխանակ յետ կանգնեցնելու անյագ բարբարոսներին, շարունակ գրգռում էին նոցա անցնել Դանուբը։

Արևմտեան պատերազմների պատճառաւ

տրամադրելի զորքերի պակասությունը զգալի եղավ նաև դեպի Պարսկաստանը ունեցած թույլ քաղաքականության մեջ։ Յուստինի մահվանից անմիջապես առաջ, ծեր Կավատը պատերազմ էր սկսել չնչին պատճառներով, որի ժամանակ Բելիզարը առաջին անգամ իբրև զորավար դեր կատարեց։ Դրա մեջ ուշադրության արժանի է Արաբների կարևոր դերը և հանդես գալը, որոնք մինչև այդ կառավարվում էին երկու մեծ տերությունների սահմաններում իբրև փոքրիկ աւատական իշխանություններ և այն չափով ու այնքան ժամանակ էին հնազանդվում, ինչ չափով իրանց էր հաճելի։ Մունդիրը, Խիրայի աւատական իշխանը, կռվում էր Պարսից բանակում։ Յուստինիանը 531 ին Սարակինոսների բոլոր գավառակները, որ հպատակում էին Հռովմին, ստորադրեց Խարիթին, Գաբալայի որդուն, և նրան թագավորական տիտղոս տվավ։ Նրա պարտքն էր ամենից առաջ դեմ դնել Պարսից մասի իր հայրենակիցներին։ Նույն տարին պատերազմի դաշտ դուրս եկավ ինքը՝ Պարսից թագավորը և Բելիզարին լավ ջարդ տվավ Կալինիկոսի մոտ, թեև յաղթությունը առանձին նշանակություն չունեցավ։ Թագավորի մահից և Խոսրովի գահ բարձրանալուց յետոյ, 532 թ. հաշ-

*տատանեց յաւիտենական խաղաղութիւնը, որի մէջ Հռովմը յանձն առաւ ստորացուցիչ պայմաններ. ամենից առաջ տարեկան տուրքեր պիտի վճարէր Կովկասեան ամրութիւնների պաշտպանութեան համար. Հռովմը ամեն կերպ կամենում է ազատ լինել արևմուտքում գործելու։ Արդէն ութ տարի յետոյ երկրորդ պատերազմը սկսուեց։ Դրա համար այնքան էլ հարկաւոր չէին Վիտիգէս Թագաւորի և հռովմէական Հայաստանի ճնշուած մեծամեծների դեսպանութիւնները։ Խոսրովն ինքը կամենում էր պատերազմ, որովհետև իւր Հռովմէացի հակառակորդի աշխարհակալութիւնը և իշխանութեան ծաւալումը իրան երկիւղ էր ազդում։ Նա պատերազմը վարեց անսովոր եռանդով։ Արդէն 540 Թ. յարձակուեց Ասորիքի վրայ։ Ամուր քաղաքները ստիպուած էին մեծ գումար վճարել որպէս զի նա հեռանայ։ Որոնք պաշտպանւում էին, ընկնում էին մէկը միւսի հետևից, ամենից առաջ ընկաւ Անտիոք գլխաւոր քաղաքը։ Նրա բնակիչներին արևելցիների հին սովորութեամբ տեղափոխեց իւր մայրաքաղաքի մօտը, ուրտեղ նա հիմնեց մի նոր Խոսրով—Անտիոքիա յունական-քրիստոնէական հաստատութիւններով։ Հետևեալ տարիներում Միջագետքի կռուի դաշտում պատերազմը մղում էին փո-*

*փոխակի յաջողութեամբ։ Ամենայայտնի դէպքը Եդեսիայի անյաջող պաշարումն է Պարսիկների կողմից 544 թ.։ Ասորական քրիստոնեաները ամուր կերպով հաւատում էին իրենց սուրբի՝ մեր Տիրոջ «անձեռագործ դաստառակի» հրաշագործ պաշտպանութեանը։ 545 թ. տեղի ունեցաւ զինադադար։ Սակայն Խարիթի և Մունդիրի մէջ կռիւը շարունակւում էր, ինչպէս նաև Լազիստանում։ Այդ նահանգը, որ համապատասխան էր հին Կոլխիսին, կապուած էր Հռովմի հետ, որտեղից նշանակւում էին նրա թագաւորները՝ աւատական հպատակութեամբ։ Երբ հիմնարկեցին Պետրա նաւահանգիստը և հռովմէական պաշտօնեաները մենավաճառութեամբ կեղեքում էին Լազերին, ժողովրդի կատաղութիւնը շատ սաստկացաւ։ Գոբազէս թագաւորը անցաւ Պարսից կողմը։ Խոսրովը, որ Վրաստանի տէրն էր, անյաջողութեամբ օգտուեց հանգամանքից, որպէս զի կարողանայ հաղորդութիւն հաստատել Սև Ծովի հետ։ Կարևոր Պետրան ընկաւ Պարսից ձեռքը։ Բայց երբ 549 թ. Հռովմայեցիները նորից վերսկսեցին պատերազմը աւելի մեծ եռանդով, Լազերը կրկին անցան նոցա կողմը. ինչպէս որ սովոր են փարուել այդպիսի աւազակաբարոյ թագաւորութիւնները, բռնել ուժեղի կողմը։ 551 թ. Հռովմայեցիք վերստին*

գրաւեցին Պետրան․ և հետևեալ տարիների ճակատներում օրէցօր աւելի էին յաղթող հանդիսանում։ Ուստի զինադադարը տարածուեց նաև Լազիստանի վրայ և վերջապէս 562 թ․ հինգամեայ խաղաղութեան դաշն կապուեց։ Դրանով Հռովմայեցիք պարտաւորւում էին տարէցտարի բաւական խոշոր գումար վճարել․ իսկ դրա փոխարէն Լազիստանը ընդմիշտ նոցա ենթակայ ճանաչուեց․ և դա է միակ յաջողութիւնը, որ ձեռք բերին արեւելքում։

Ինչպէս որ Յուստինիանի կառավարութիւնը արտաքուստ յայտնի նշանաւոր սահմանաքար է ներկայացնում բիւզանդական պետութեան զարգացման մէջ, այնպէս էլ ներքին կառավարութեան մէջ բնորոշւում է մի շարք մեծագործ կարգադրութիւններով։ Այդտեղ առաջին տեղը բռնում են շինութիւնները։ Գուցէ բիւզանդական պետութեան ոչ մի շրջան չունի այնպիսի մեծ շինարարական գործունէութիւն, ինչպէս Յուստինիանի կառավարութիւնը։ Նոր քաղաքներ հիմնեցին, հները զարդարեցին բաղնիքներով, ջրմուղներով և պալատներով․ շինեցին կամուրջներ։ Կանոնաւոր կերպով երկրի բոլոր սահմանները ամրացնում էին բերդերով, որոնք, իրաւ է, հիւսիսային սահմաններում, որ ամենից շատ

էին վտանգի ենթակայ, չէին կատարում իրենց դերը. իսկ ամենից շատ զարմանալի է, համապատասխան դարու բնաւորութեան, կրօնական հիմնարկութիւնների շատութիւնը: Յուստինիանը առանձին եռանդով աշխատում էր եկեղեցիների և վանքերի շինութեան համար: Էլ-Աքսան Երուսաղէմում և մանաւանդ Ս. Սոփիայի տաճարը Կոստանդնուպոլսում, դեռ այսօր էլ վկայ են իշխանապետի բարձր զգացմունքներին: Նա իրաւունք ունէր հպարտանալու թէ Սողոմոնին էլ է գերեզանցել: Թէ ինչեր կարող էին անել, նաև հարուստ հպատակները, որոնք նոյնպիսի ըզգացմունքներ ունէին, դեռ այն ժամանակներում, ցոյց է տալիս բարեպաշտ Յուլիան սեղանաւորի գործը՝ Ռավեննայի Սան-Վիտալէի հրաշագեղ շինութիւնը, որը շինուել է մենակ այդ մասնաւոր մարդու միջոցներով, և զարդարուել գոյներով հարուստ մոզաիկներով:

Յուստինիանի կառավարութիւնը իւր արտաքին բոլոր շքով չէ կարող երջանիկ համարուել. տեղի ունեցան բաւական արտասովոր դժբախտ պատահարներ: 542 թ. զարհուրելի ժանտախտը, որը չորս տարի շարունակ տևեց, ժամանակակիցների համար համարւում էր աստուածային բարկութեան ապացոյց: Բազմաթիւ երկրաշարժներ աւերե-

*ցին ամենափառաւոր քաղաքներ։ Ամենասարսափելի հարուածը դիպաւ Անտիոքին, որ Յուստինի ժամանակ,* 526 *Թ.-ի զարհուրելի աւերումից երկու տարի յետոյ, նորից նոյնպիսի դժբախտութեան հանդիպեց։ Վերաշինութեան ծախքերի համար կայսերական գանձարանը կանոնաւոր կերպով տալիս էր շատ մեծ նպաստ։ Դժուար է հասկանալ, թէ ինչպէս նա կարողանում էր թէկուզ փոքր ի շատէ, բաւարարութիւն տալ այդ չափազանց մեծ պահանջներին մեծածախս պատերազմների հետ միասին. հպատակները գանգատւում էին հարկերի ծանրութեան տակ, բայց իսկապէս մեծ գործեր էլ էին կատարւում։*

*Ամենից առաջ Յուստինիանի անունը յետագայից համար միացած է հռովմէական օրէնքների հետ, որին նա ամբողջացրած ձև տուեց։ Ամենապլխաւորն էր մի գրքի մէջ միացնել արդարադատութեան բոլոր աղբիւրները՝* իրաւունքը *և* օրէնքները-jus et leges-*դրանով հնացած իրաւունքները կրճատւում էին, դրականութեան միջից հակասութիւնները վերանում. Նոր կարգերի պիտի ենթարկէին բաւական թւով իրաւագիտական հաստատութիւններ։ Այդ կարևոր մեծ գործը յանձնուեց իրաւագէտների մի յանձնաժողովի Տրիբոնիանի ղեկավարութեամբ։* 529 *Թ. դուրս*

եկաւ *Յուստինեան ծեռագիրը*--codex Iustinianeus-, որ մի ժողովածու էր բոլոր այն *սահմանումների* (Constitutio) որ ընդհանուր ընդունելի էին։ 533 թ. գլուխ բերեցին աւելի դժուար գործը՝ իրաւաբանական գրութիւններից ստեղծել օրէնքների մի գիրք-Digestae։ Միևնոյն ժամանակ հաստատութիւնների համար կազմեցին իրաւագիտութիւն սովորելու մի դասագիրք, որը պիտի օրինական ոյժ ստանար և գործածութեան մէջ մտնէր *դիգեստների* հետ միաժամանակ, 533 թ. Դեկտեմբերի 30-ին։ Յանձնաժողովի վեցամեայ աշխատութիւնը երևան էր հանել նրա առաջ հրատարակութեան՝ *կոդեքսի* զանազան թերութիւնները։ Ուստի 534 թ. լոյս տեսաւ *նախնական ընթերցուածների կրկնուած կոդեքս*-Codex repetietae praelectionis-։ Յուստինիանը հանդիսաւոր կերպով յայտարարեց, թէ դրանով վերջապէս լրանում է օրինագրութիւնը։ Ապագայ սահմանումների համար նախատեսնուեց առանձին յաւելուած՝ *նոր սահմանումներ*-Novellae Constitutiones-։ Երբ օրէնքի այս նոր գիրքը ոյժի մէջ մտաւ, դատաստաններում միայն այդ էին թոյլ տալիս. միայն դրա վրայ էին պարտաւոր ուսուցանելու պետութեան յայտնի դպրոցներում՝ Կոստանդնուպոլսի, Հռոմի և Բեյրութ։

Վերջապէս պէտք է յիշել Յուստինիանի գործունէութիւնը նաև եկեղեցական խնդիրների վերաբերեալ։ Ոչ մի կայսր եկեղեցական գործերի վերահսկողութիւնը այնպիսի եռանդով չէ տարել, բայց ոչ մի կայսր էլ չէ տեսել որ իւր գերիշխանութիւնը այնպէս անսահման կերպով ընդունուէր եկեղեցուց, ինչպէս Յուստինիանը։ Նա իրապէս թագաւոր էր և քահանայ։ «Հակառակ կայսեր կամքի և հրամանի առ հասարակ ոչինչ չպէտք է պատահի եկեղեցու մէջ», յայտարարում է 536 թ. ժողովը։ Եւ իսկապէս Յուստինիանը չափաւոր կերպով ազդել է կրօնի դաւանաբանական զարգացման վրայ՝ մեծածաւալ յօդուածներով. դրա ապացոյցն է նրա նամակը Մենասին Որիգինեան թիւր հաւատի մասին և 543 թ. նրա հրովարտակը երեք գլխի մասին։ Անուրանալի է, որ նա իւր եկեղեցական քաղաքականութեան մէջ ամեն կերպ ձգտում էր 519 թ. ծանր սխալը նորից ուղղել և մոնոֆիզիտներին յետ գրաւել։ Եգիպտոսում իշխում էին «հետեւալները». Ասորիքում և Միջագետքում ժողովուրդը նոցա կողմն էր, և այդ հանգամանքը պարտական էր իւրաքանչիւր կառավարութիւն ի նկատի առնել։ Բացարձակ կերպով նոցա պաշտպանում էին թէ Թէոդորա կայսրուհին, որ այս խնդրում էլ ար-

տպայատեց իւր քաղաքագիտական սրատեսութիւնը և թէ կայսերական տան և արքունիքի բազմաթիւ անդամները։[1] Գայթակղութեան քարը մնում էր քաղկեդոնականութիւնը։ Ի զուր անցան Լեոնտիոսի և սկիւթեան վարդապետների փորձերը՝ փոխել Լեոնի յօդուածները, համաձայնեցնելով Կիւրեղի աստուածաբանութեանը. այնպէս որ եթէ Սեվերոսը՝ մոնոփիւզիտների ամենայայտնի ուսուցիչը, փոքր ինչ բարի կամք ունենար, միութիւն ստեղծելու հնարաւորութիւն կար. ի զուր էր որ կայսրը իւր հրամանների մէջ լռութեան էր տալիս քաղկեդոնական յօդուածները։ 533 թ. կրօնական զրոյցի ժամանակ արտայայտեցին ամենամեծ զիջողութիւն, բայց այդ էլ մոնոփիւզիտների վրայ ազդեցութիւն չարաւ: «Աստուածապաշտ Աւգուստան» (կայսրուհին) անդադար աշխատելով իւր բարեկամների համար, յոյս ունէր օրինական ճանապարհով ոչնչացնել քաղկեդոնականութիւնը։ Մայրաքաղաքի գահի վրայ արդէն բարձրացել էր նրան համակարծիք Անթիմոսը։ Բայց Հռովմի

---

1. Յուստին Բ-ը եւ Սոփիան մինչեւ գահ բարձրանալը մոնոփիւզիտների կողմն էին պահում: Ժողովրդի հասկացողութեան մէջ «նեստականները» համարւում էին բարեպաշտներ, եւ այդ արդարացի է:

Ագապետ պապը, Եփրեմ Անտիոքացուց զգուշացրած, ճիշտ ժամանակին միջամտեց։ Արևմուտքը, որ քաղաքականապէս նորից գըրաւուել էր, չէր կարելի·թոյլ տալ որ եկեղեցական խնդիրներով նորից բաժանուի։ 536 թ. ժողովը նզովեց Անթիմոսին և Սեվերոսին։ Երբ 537 թ. Աղեքսանդրիայի Տիմոթէոս արքեպիսկոպոսը մեռաւ և նրա յաջորդի ընտրութեան մասին ժողովրդի ու ազնուականութեան մէջ անհամաձայնութիւն ծագեց, կայսերական կառավարութեան համար ցանկալի առիթ էր, անլուր բռնութիւններով մոնոփիզիտների այդ վերջին ապաստանարանում ևս ընդունել տալ տէրութեան եկեղեցին, թէև իրաւ է միայն արտաքին ձևով։ Կայսերական եկեղեցու կողմը միայն պահում էին խեղճութեան մատնուած, երբեմն հարուստ միջոցների տէր՝ մոնոփիզիտների եկեղեցական կալուածներով գրաւուած արքեպիսկոպոսութիւնը, բարձր պաշտօնեաները և քաղաքի Յունաց ազնուականների մի մասը։ Սակայն բոլոր այդ անյաջողութիւնները չկարողացան նրան յետ պահել, որ մի կողմ թողնէր իւր միարարական ծրագրերը և դաւանաբանութեան մէջ աշխատելու ձգտումը, որ հիւանդութեան էր հասցրած։ Սակայն եկեղեցական քաղաքագիտութեան տեսակէտից,

չափազանց նուրբ մտածուած մի կարգադրութիւն էր երեք գլուխների դատապարտութիւնը։ Անտիոքեան դպրոցի մեծ ուսուցիչը՝ Թէոդորոս Մոփսուեստացին, որի մասին քաղկեդոնականութիւնը լռութիւն էր պահպանել, Թէոդորիտ Կիւրոսացու և Իբաս Եդեսացու զանազան գրութիւնները, մարդիկ որոնց ուղղահաւատութիւնը չորրորդ ժողովը յատկապէս ճանաչել էր, այժմ—հարիւր տարի անցնելուց յետոյ—, նզովքի ենթարկուեցին։ Բայց դա ոչ միայն միանգամայն քաղկեդոնականութեան դէմ էր և լռելեայն դատապարտութիւն Լևոն մեծի աստուածաբանութեանը, այլ և իրապէս սրբագրում էին այն ժողովը և գործնական կեանքից հանում։ Պարզ կերպով վերականգնեցին հին հենոտիկոնների ծրագիրը։ Հռոմից դատապարտուած Ակակիոսը և սուրբ Փլաբիանը դրանով փառաւոր կերպով արդարացան։ Միութիւն ըստեղծելու համար հազիւ թէ կարելի լինէր աւելի մեծ զիջումներ անել։ Բայց այդ բոլորը շատ ուշ եղաւ։ Թէև արևելքի պատրիարքները և եպիսկոպոսները, որ սովոր էին հաւատալու ինչ որ կայսերական դիւանը նոցա առաջարկում էր, ծանր սրտով՝ բայց ընդունեցին։ Թոյլ և փոփոխամիտ Վիգիլիոսը, որ բազմել էր Պետրոսի գահի վրայ, ամենաողորմելի

կերպով կայսեր մատնեց, որը իրապէս կառավարում էր եկեղեցին, Հռովմի եկեղեցու դիրքն ու աստիճանը։ Տիեզերական հինգերորդ ժողովը փակուեց միանգամայն հլու հպատակուելով կայսեր հրամաններին։ Չնայած դըրան, այդ արդիւնքն էլ, որ ամբողջ պետութիւնը ամենազօրեղ գոգոման մէջ էր դրել, երևաց իբրև կատարեալ անյաջողութիւն։ Մոնոփիւզիտները մնացին իրենց բաժան դըրութեան մէջ։ Ընդհակառակը Իտալիան և Աֆրիկան գտնում էին՝ թէ այդ որոշումներով վնասւում է քաղկեդոնականութիւնը, որ բարձր էր գնահատւում ամբողջ արևմուտքում։ Վերին Իտալիայի և Իստրեան եպիսկոպոսները պառակտումը հասցրին հերձուածի, որ մի քանի սերունդ տևեց։ Եւ Աֆրիկայի Փեկունդոս Հերմիանեցի եպիսկոպոսը համարձակ խօսքերով կայսեր երեսին էր զարկում, սուրբ գրքից օրինակներ բերելով (Ոսիաս, Դաթան, Աբիրոն ևլն․), որ նա իւր իշխանութեան իրաւունքների սահմանից անցնում է։ Միայն Քրիստոսն է որ միաժամանակ թագաւոր է և քահանայ․ նա չի տուել թագաւորներին այն, ինչ որ քահանային է յատուկ։ Սոքա այնպիսի ձայներ են, որ արդէն հնչել էր Դոնատոս Մեծը․ և այդ հին ժամանակներից ի վեր կազմում է արևմը-

տեան եկեղեցու ալլարացի առանձնայատկութիւնը։ Օրինականութեան մէջ քարացած արևելքը այդ բաները կը լսէր մեծ զարմացմամբ, գուցէ նաև արդար բարկութեամբ, սակայն յետագայ դարերում նոյն բաները արձագանք գտան նաև Բիւզանդիոնում։

Այդ բոլոր անյաջողութիւնները Յուստինիանին չշփոթեցին և նա շարունակեց մերձեցում գլուխ բերել։ Դեռ իւր թագաւորութեան վերջի տարին, առանց յոգնելու, դաւանաբանութիւններ արտադրող քահանայ-կայսրը, մի հրովարտակ արձակեց, որ բարեպաշտ ականջների համար շատ վիրաւորական էր, որով տէրութեան դաւանանք էր հրատարակուելու «Աֆթարտոդոկետիսմոսը»—Տիրոջ մարմնի անապականութեան ուսումը, որ նոյն իսկ մոնոփիզիտներից շատերից մերժուած էր։ Միայն կայսեր վաղահաս մահը 565 թ. ազատեց օրթոդոքս եկեղեցականներին հաւատոյ ամենամեծ հալածանքներից պաշտօնազրկութիւնից և աքսորից։

Մինչդեռ մոնոփիզիտների վրայ նայում էին ընդհանուր եկեղեցուց թէկուզ «բաժանուած» անդամների վրայ, և նոցա հետ վարւում էին ակներև մեղմութեամբ, ինչպէս սովոր է միշտ վարուելու բիւրոկրատիան, երբ նա գործ ունի լաւ կազմակերպուած և հա-

ւատարիմ հետեւողներ ունեցող եկեղեցական համայնքների հետ, առանց այլեայլութեան էին վարւում միւս հետեւող համայնքների հետ, որոնք թւով փոքր էին։

Յուստինիանի, իւր կառավարութեան ըսկըզբներում արձակած մի շարք հրովարտակները ապացուցանում են, թէ ինչպիսի եռանդով ձգտում էր որ կայսերական հաւատը բոլոր հպատակներն ընդունեն։ Հին հերձուածողների մնացորդները, որոնց մէջ Արիանոսները իրենց հիմնարկութիւնների հարստութիւններով կառավարութեան ագահութիւնը շարժել էին, երեք ամիս ժամանակ ստացան ընդունելու պետութեան կրօնը. այլապէս սպառնում էր աքսոր։ Սամարինների վրայ էլ գործադրեցին կրօնափոխութեան այդ բանի ձեւը. բայց բոլոր ժողովուրդը ոտքի կանգնեց և մի նոր կայսր հրատարակեց։ Միայն արեան՝ հեղեղների մէջ ընկճուեց ապստամբութիւնը։ Երկիրը կործանուեց։ Դրա հետ միասին սկսուեց կանոնաւոր ինկվիզիցիական դատաստան հելլենական կրօնի բոլոր թէ ծածուկ և թէ յայտնի հետեւողների դէմ. բայց հէնց բարձր դասակարգի և պաշտօնեաների միջից էին դրա բազմաթիւ հետեւողները։ Որոշուեց ստացուածների գրաւում և իրաւազրկութիւն քաղաքական պաշտօն ստա-

նալու։ Բաւական թւով յարգուած պաշտօնեաներ ինքնապաշտպանութիւն գործեցին։ Հին կրօնի կենտրոնը Աթէնքն էր, և ներկայացուցիչները նոր պղատոնեան փիլիսոփայութեան ուսուցիչներն էին։ Յուստինիանը, որի համար ամենից առաջ կարևոր էին հնահաւատ հաստատութիւնների հարուստ կալուածները, 529 թ. յարքունիս գրաւեց պղատոնեան ակադեմիայի հիմնարկութեան կարողութիւնը, և այնտեղի համալսարանում արգելեց փիլիսոփայութեան և իրաւագիտութեան ուսումը։ Վերջին եօթ ուսուցիչները գաղթեցին Պարսկաստան։ Հեթանոսական հոգևորականութիւնը Փոքր-Ասիայում դեռ բազմաթիւ կողմնակիցներ ունէր, մանաւանդ գիւղական ժողովրդի մէջ։ Յովհաննէս Եփեսացին, Ասորի պատմաբանը, որը ինքն իրան անուանում է հեթանոսների առաջնորդ և կուռքերի կործանող, և միանգամայն գրաւած էր Յուստինիանի վստահութիւնը, յետագայ տասնամեակներում մեծ չափով աշխատել է նոցա հաւատափոխութեան համար։ Նա հպարտանում է թէ 70,000 մարդ է մկրտել։

Անհամեմատ ուրախալի պատկեր է ներկայացնում եկեղեցու զարգացումը արտաքին կողմից։ Յուստինիանը իւր կրօնական-քաղաքական կառավարչական ծրագրի գլխաւոր

նպատակն էր համարում, ինչպէս որ պետութեան մէջ հաստատեց հաւատի միութիւն, նմանապէս հեթանոսների մէջ տարածել քրիստոնէական կրօնը։ Նա նոյն իսկ իւր քաղաքական կապերը այդ նպատակին էր ծառայեցնում, և իւր հաւատոյ առաքեալների համար ձեռք բերում հարևան զօրեղ իշխանների հովանաւորութիւնը։ Ուստի Յուստինիանի, ինչպէս նաև նրա անմիջական նախորդների ժամանակը, ներկայանում է միսիոնարական գործունէութեան ամենածաղկեալ զարգացման միջոց։

Քրիստոնէական քարոզչութիւնը միաժամանակ յաջող ընթացք ունէր Հերուլների մէջ՝ Սինգիդունումի շրջակայքում, որ Սև ծովի հիւսիսում ապրող Հոնական ցեղ էր, և Կովկասեան ազգերի մէջ։ Նոցա թագաւորները մկրտուելու համար գալիս էին մայրաքաղաք. սոցա ընդունած կրօնին՝ հետևում էր ժողովուրդը։ Աֆրիկայում Սահարայի օվազիսներում տարածուեց քրիստոնէութիւնը։ Եմենում քրիստոնեաների արիւնալից հալածանքը եբրայական Դհու Նուվաս թագաւորից, գրգռեց արևելքի բոլոր քրիստոնեաներին։ Եմենի յաղթական տիրապետութիւնը 526թ. Աբեսինիայի Եթովպիական թագաւորի կողմից, մեծ ուրախութիւն պատճառեց

ամենքին և կայսերական հրամանով եգիպտական մի հոգևորական, եպիսկոպոսի կոչումով ուղարկուեց Հարաւային Արաբիա։ Միսիոնարութեան մէջ աւելի գործունեայ էին մոնոփիզիտները։ Մի Ասորի վարդապետ քարոզում էր Օրտէյիների մէջ՝ որոնք հաւանականօրէն Հարաւային Հայաստանի մի քրդական ցեղ էին։ Յուստինիանի ժամանակ սկսեց Յուլիանը՝ Աղեքսանդրիայի մի կրօնաւոր, Նուբիացիներին դարձնել, իսկ նրա սկսածը վերջացրեց նրա յաջորդ Լոնգինոս եպիսկոպոսը. Նոբատների թագաւորը և ժողովուրդը ընդունեցին քրիստոնէութիւնը։ Նմանապէս «Ալոդէիր մեծ ազգի» թագաւորը ընդունեց մկրտութիւնը։ Այդտեղից սկսած ամբողջ դարեր Նուբիական եկեղեցին սերտ կապուած մնաց Աղեքսանդրիայի մոնոփիզիտ պատրիարքութեան հետ։

Սակայն չնայած Յուստինիանի թագաւորութեան արտաքին փայլին, նրա ձգտումների մեծութեանը, որ չէ կարելի ժխտել, այնու ամենայնիւ նա իւր մահուան ժամանակ (14 Նոյեմբ. 565) թողեց տէրութիւնը միանգամայն խախտուած վիճակի մէջ։ Նրա ոյժերից շատ բարձր էր արևմուտքի տիրապետութիւնները պահպանել. դրա համար պակասում էին միջոցները։ Ու ինչ կարող էր օգ-

նել Հայերը Հայ գլուխ բերած եկեղեցական միութիւնը, երբ Յոյների և Լատինների մէջ արդէն գոյութիւն ունէր ազգային ատելութիւնից ծագած խորը պառակտում։ Ուստի կայսեր եկեղեցական քաղաքագիտական կարգադրութիւնները սխալների մի շղթայ են. դոցա շնորհիւ է իսկապէս սկիզբն առել և զարգացել Ասորիների ու Եգիպտացիների ազգային առանձնակի ձգտումները։ Այն դարը իւր ամենափայփայած մտքերը ծածկում էր եկեղեցականութեան քողի տակ։ Մոնոֆիզիտեան ուսումը ծառայում էր արևելցիներին իբրև նոցա ազգային զգացմունքների խօսուն արտայայտութիւն. իսկ դա աստիճանաբար հեռանում էր հռովմէական կայսրութեան միութիւնից։ Կայսրութեան արեւելեան նահանգների անջատումը, որ տեղի ունեցաւ Է-րդ դարում, իսկապէս ծնունդ և սնունդ է առել Յուստինիանի եկեղեցական քաղաքականութեամբ, ինչպէս որ արևմուտքում նորա սկսած տիրապետական քաղաքականութիւնը, որով պետութեան ոյժերը արևմուտքի վրայ ծախսուեցին, թուլացրեց կառավարութեան գործունէութիւնը արևելքում։

Յուստինոս Երկրորդը (565—578) Յուստինիանի եղբօրորդին, որ նրանից գահաժառանգ էր նշանակուել, կարողացաւ շուտով մեծ եռանդով գահին տիրանալ, մանաւանդ

իւր կինը, փառասէր Սոփիայի և պալատի պահապանների առաջնորդ Տիբերիոսի օգնութեամբ, մասամբ բռնութիւն գործ դնելով կայսերական տան դժգոհ իշխանների դէմ։ Կայսեր յաջորդաբար կրկնուող խելացնորութիւնը, որ վերջը տևողական դարձաւ, պատճառ եղաւ, որ 574 թ. Տիբերիոսին որդեգրեց և կեսար հրատարակեց. սա էր այնուհետև Սոփիա կայսրուհու հետ միասին իրապէս վարում իշխանութիւնը և վերջն էլ (578—582) նորա յաջորդը դարձաւ։

Այդ կառավարութիւնները ներկայացնում են կարևոր յեղաշրջան։ Արդէն Յուստինիանի ժամանակ սկսել էր անհետանալ լատիներէնը և դադարել էր պետութեան պաշտօնական լեզու լինելուց. այժմուանից սկսած նրան քիչ քիչ դուրս էր մղում յունարէնը։ Այդ փոփոխութիւնը նկատում են լանգոբարդեան և ասորական ժամանակագիրները, որ Մաւրիկիոսից սկսում են «յունական» կայսրների շարքը։

Ներքուստ Յուստինի խնայողութիւնը շատ օգնեց պետութեան տնտեսութեանը, թէև դրանով աճեց զօրագնդերի դժգոհութիւնը։ Դրա հակառակը Տիբերիոսի անմիտ շռայլութիւնը նրան ժողովրդական դարձրեց, բայց իսկական պատճառ եղաւ կառավարութիւնների առաջ ծագած դժուարու-

թիւններին։ Եկեղեցական խնդիրներում երկու պետերն էլ անբամբասիր օրթոդոքս էին։ Նոցա աղետաբեր զիջողութիւնը արքունիքի պատրիարքի առաջ, որին թոյլ էին տալիս նաև նպաստում էին մոնոֆիզիտներին օգնելու, պատճառ եղաւ որ արևելեան նահանգները վերջնականապէս օտարացան։

Արտաքուստ Յուստինիանի մահով առաջ եկած գահական փոփոխութիւնը արտայայտուեց կառավարութեան նախկին քաղաքականութեան կատարեալ փոփոխութեամբ։ Պետութեան գիրքը անհրաժեշտապէս պահանջում էր, որ կառավարութիւնը իւր գըլխաւոր ուշքը դարձնէր երկրի հիւսիսային և արևելեան սահմանները պաշտպանելու։ Ուստի առաջին տեղն են բռնում Դանուբի հիւսիսում ապրող ժողովուրդների և Պարսիկների հետ ունեցած յարաբերութիւնները․ դրա փոխարէն արևմուտքը յետին տեղն էր բռնում։ Արևելքի սահմաններում ծնունդ էր առել Թուրքերի զօրեղ տէրութիւնը․ հռովմայեցիները շուտով նոցա Խաքանի հետ քաղաքական յարաբերութիւններ են սկսում։ Աւելի ծանրակշիռ էր որ Յուստինիանի թագաւորութեան վերջին տարիներում, Դանուբի հիւսիսային նահանգներում հանդէս եկան Աւարները։ Մաճառական ստորին դաշտավայրերի

արևելքում սլաւոնական ցեղերը ընկան նորա ձեռքի տակ։ Նոյնպէս շուտ և յաջող կերպով նորա միջամտեցին գերմանական պետութիւնների՝ Լանգոբարդների և Պաննոնիայի Գեպիդների գործերին, որովհետև սոքա սաստիկ թշնամացել էին միմեանց։ Երբ դրութիւնը այդպէս փոխուեց, հարկաւոր էր Հռոմի ամբողջ ուշադրութիւնը։

Կառավարութիւնը այդ վտանգաւոր թըշնամիների հանդէպ ցոյց տուեց կատարեալ և հաստատակամ քաղաքականութիւն. տարեկան տուրքերը, որ Յուստինիանը սովորաբար վճարում էր Ավարներին, նորա յաջորդը դադարեցրեց. քանի որ նոքա առժամանակ զբաղուած էին Լանգոբարդների և Գեպիդների կատաղի կռիւներով, օգնեցին Լանգոբարդներին և 567 թ. նպաստեցին Գեպիդների կատարեալ կործանմանը, մինչդեռ Հռոմէյեցիները վերջիններիս ոչ մի օգնութիւն չէին ցոյց տուել։ Ավարները, որոնք Լանգոբարդների հեռանալուց յետոյ մաճառական ստորին դաշտավայրերի տիրապետողներն էին դարձել, ինչպէս նաև սլաւոնական բազմաթիւ ցեղերը, աւելի և աւելի էին սպառնում Դանուբի հարաւային նահանգներին։ Այդտեղ Հռոմը ցոյց տուեց մեծ խելք և ընդհանրապէս կռիւ մղեց պատուով. սակայն չնայած որ Տիբերիոսը

ինքն էր առաջնորդում, Հռովմայեցւոց զօրքը ծանր պարտութիւն կրեց։ Խաղաղութիւնը գնեցին միայն հարկ վճարելով։ Տիբերիոսի կառավարութեան ժամանակ 581 թ. կորցրին սահմանում նշանաւոր Սերմիում ամրոցը։ Դրանով կնքուեց հիւսիսային նահանգների վիճակը։

Այժմ պարզ կերպով երեւաց՝ թէ Յուստինիանի տիրապետական քաղաքականութիւնը ինչպէս բարձր է եղել պետութեան ոյժերից։ Երբ 568 թ. Լանգոբարդները ներս խուժեցին Իտալիա—նոցա հրաւիրուելը Նարսէսից վերջերում ստեղծուած առասպել է —, պետութիւնը միջոց չունէր անհրաժեշտ զօրքերով պաշտպանելու այդ նշանաւոր նահանգները։ Մի քանի տարիների ընթացքում յաղթող աշխարհակալները տիրապետել էին հիւսային Իտալիան եւ Տուսկիան. Սպոլենտիումի եւ Բենեվենտումի մէջ հրամայում էին լանգոբարդեան հերցոգներ։ Նմանապէս այն ամուր քաղաքները, որ առաջի յարձակման ժամանակ ընդդիմութիւն էին ցոյց տուել, Լանգոբարդների առաջ մէկը միւսի յետեւից բաց արին իրենց դռները՝ 572 թ. Տիկինումը, յետագայ սերունդների օրով Պատավիումը եւ Կրեմոնան։ Հռովմէական տիրապետութիւնը շուտով սահմանափակուեց, չհաշուած հա-

րաւային Իտալիան և Սիկիլիան, Ռեվեննայով և նրա հարեւան Էմիլիա և Պենտապօլիս քաղաքներով, յետոյ Հռովմի և Նէապոլի նահանգներով։ Դրա հետ միացին լիգուրեան և վենետեան ծովափնեայ քաղաքները։ Այն դաշնագիրը որ ոչնչացրեց Բելիզարը, Հռովմէացիներին աւելի բաժին կթողնէր, և փոխանակ Լանգոբարդների «անուանելու անարժան» և «գարշահոտ» ժողովրդին հարեւան ունենալու, կունային Օստգոթների ասպետական և ազնիւ ցեղին։ Ուստի յետագայ ժամանակներում շարունակ տուժում էին այն սխալների համար, որ կատարուել էին և թոյլ էին տուել, և որոնցից բաղկացած է Զ-րդ դարու այդ Լուդովիկոս ԺԴ-ի աշխարհակալական քաղաքականութիւնը, որ շատերի զարմանքն էր շարժել։

Հռովմի գործունէութեան առաջին առնում էին միաժամանակ սկսուած Պարսից պատերազմները։ Առիթը տուել էին Հայերը, որոնք, սաստիկ յուզուած Պարսիկների յանդուգն քայլից, որ թոյլ էին տուել ատրուշան շինել Դուինում՝ նոցա գլխաւոր հոգևոր քաղաքում, 571 թ. ապստամբուել էին Պարսից դէմ, Յոյներից օգնութիւն էին խնդրել և գտել։ Նոցա հետ միացան նոյնպէս Վրացիները։ Դրանով սկսուեց այն պատերազմը, որ

երբեմն ընդհատուելով խաղաղութեան դաշնագրութիւններով, ամբողջ 20 տարի տեւեց։ Մինչդեռ հռովմայեցիք անյաջող պաշարել էին Մծբինը, Պարսիկները 573 թ. գրաւեցին նշանաւոր Դարան և ամբողջ Ասորիքը աւար առան։ Երբ Տիբերիոսը խնամակալութիւնը ձեռք ձգեց, զինադադար արաւ, որ չէր տարածւում Հայաստանի վրայ։ 575 թ. այդտեղից Խոսրովը արշաւեց մինչև Կապպադովկիա և կրակեց Սեբաստիա և Մելիտենէ։ Բայց երբ երկու անգամ ջարդ կրեց Յունաց աւելի գերազանց զինուորական ոյժից, Պարսից թագաւորը հազիւ կարողացաւ Եփրատի վրայով իրան ազատել։ Հայաստանը ընկաւ հռովմայեցիների ձեռքը։ Մինչ այդ 576 թ. նորից արտաքսուեցին և կռիւը դարձեալ շարունակուեց։ Մաւրիկիոսը՝ կանանոցի հրամանատարը—comes excubitorum—կայսրից նշանակուեց արևելքի զօրաց հրամանատար, և մեծ յաջողութեամբ պատերազմի դաշտը փոխեց Պարսից հողի վրայ։ Խոսրովի մահը 579 թ. արգելք եղաւ խաղաղութեան յաջող դաշն կապելուն, որի համար մի քանի անգամ հաղորդակցութեան մէջ էին մտել։ Նրա որդի և յաջորդ պատերազմասէր Որմիզդի դէմ Տիբերիոսը ամենայն եռանդով շարունակեց պատերազմը։ 581 թ. Հռովմայեցիները Կոստան-

*տէնի մօտ մի փառաւոր յաղթութիւն տարաւ։*

*Մի տարի յետոյ (582—602), Մաւրիկիոսը (Մօրիկ) ինքը գահ բարձրացաւ։ Նա ամենից առաջ հասկացաւ ներքուստ խնայող տնտեսական քաղաքականութեամբ պետութեան բազմատեսակ պահանջներին բաւականութիւն տալ, թէև հէնց դրանով պատճառ եղաւ որ իրան չէին սիրում և դրան վերջ ի վերջոյ զոհ գնաց նորա գահը։ Եկեղեցական խնդիրներում նա միանգամայն հետևում էր իւր նախորդների քաղաքականութեանը։ Միայն մոնոֆիւզիտների հալածանքները սահմանափակեցին մայրաքաղաքի պատրիարք Յովհաննէս Պահեցողի դրդմամբ։ Սա, որ մի սուրբ ճգնաւոր էր ամենամաքուր կեանքով և համոզուած օրթոդոքս, ցոյց էր տալիս այնպիսի համբերողութիւն, որ անսովոր էր տեսնել թէ տեսականապէս այլ կերպ ուսուցանող ճգնաւորների կողմից և թէ այն ժամանակուայ բոլոր դաւանութեան պատրիարքների կողմից։ Դրան հակառակ աւելի անխիղճ կերպով էր կառավարութիւնը դատ վարում Ասորիքի կարծեցեալ հեթանոսների դէմ։ Մօլեռանդ մոնոֆիւզիտ ամբոխը դրանց թուլցն էր համարում նաև Անտիոքի տէրութեան եկեղեցու պատրիարքին։ Բայց սա լաւ էր ճանա-*

չում այդ մարդկանցը. և իւր հաւատի մաքրութիւնը ապացուցեց նրանով, որ մի մեծ կրկէս շինեց, «Սատանայի եկեղեցի» ինչպէս որ բարեպաշտները ողբալով կոչում էին։ Աւելի նշանաւոր էր կռիւը Հին-Հռոմի հետ։ Գրիգոր Ա պապը (590—604) հակառակ էր իւր նորհռոմէական պաշտօնակցի իբրև նորութիւն ընդունած տիտղոսին, որ տիեզերական պատրիարք էր կոչւում, թէև իրապէս անարդար կերպով. որովհետև այդ տիտղոսը մի դարուց ի վեր գործածութեան մէջ էր և Հռոմը երբէք չէր հակառակել։ Ուստի կառավարութիւնը և արևելքի պատրիարքները բոլորն էլ անցան մայրաքաղաքի եկեղեցու պետի կողմը, որ յաղթանակելով պահպանեց իւր տիտղոսները։ Պապի գրգռուած գանգատին կայսրը և Անտիոքի մեծայարգ Անաստաս պատրիարքը բաւական արհամարհալից պատասխան տուին. ակներև է որ այդ ՙբոլորը նոքա չնչին բանակռիւ էին համարում։ Նու Հռոմն էլ յետագայում այդ բանից յետ է կանգնել լռելեայն։

Պարսկական պատերազմը դեռ մի քանի տարի էլ շարունակեց փոփոխակի յաջողութեամբ։ Հռոմէական մի շարք յաղթութիւններից յետոյ, 589 թ. տեղի ունեցաւ նշանաւոր Մարտիրոպոլսի առումը։ Բայց այդ

ժամանակ կատարուեց մի բոլորովին անըսպասելի փոփոխութիւն, որ Հարեան տէրութեան վիճակը Հռովմայ՝ պետի ձեռքը ձգեց։ Բահրամ Չոբին զօրավարի ապստամբութիւնը կորստի մատնեց Պարսից թագաւորի կեանքն ու գահը. Նրա որդի Խոսրով Բ իբրև փախստական եկաւ Հռովմէացիների մօտ։ Մաւրիկիոսը միջամտեց նրա օգտին, և 591 թ. արշաւանքը միջոց տուաւ նրան իւր ժառանգական գահը բարձրանալու։ Մաւրիկիոսը ինչքան յաջող էր իբրև զօրավար, այնքան վատ քաղաքագէտ էր. նա բոլորովին չհասկացաւ հանգամանքների արտակարգ շնորհից օգտուել։ Նոր հաստատուած խաղաղութեամբ յետ ստացան միայն Դարան և Մարտիրոպօլիսը. յետոյ Պարսից թագաւորը Հռովմայեցիներին տուաւ Հայաստանի մեծագոյն մասը։ Դրա փոխարէն նշանաւոր Մծբինը մնաց Պարսից ձեռքին։

Նոր կառավարութիւնը արևմուտքում մը նմանապէս ցոյց տուեց ուժեղ քաղաքականութիւն։ Նշանակութիւնից զուրկ չէ, որ Մաւրիկիոսի օրով է առաջին անգամ էքսարխ տիտղոսը գործածական է դառնում Ռավեննայում և Կարթագոյում։ Իտալիայում և Աֆրիկայում, որոնք հաւասարապէս վտանգի ենթակայ էին Լանգոբարդներից և Մաւրնե-

րից՝ կարգւում են էքսարխները՝ զինուորական նահանգապետների ընդարձակ իրաւունքներով, որոնք քիչ քիչ իրենց են ենթարկում նաև քաղաքական վարչութիւնը։ Էքսարխութիւնների հաստատութիւնը կարելի է մի տեսակ առաջին գործողութիւն համարել թեմաների կազմակերպութեան և հաստատութեան, որ կեանքի մէջ մտաւ Է դարում։ Վերին Իտալիան նորից գրաւելու համար Մաւրիկիոսը դաշն կապեց Փրանկների հետ։ Ամարագրոս էքսարխը առանձին եռանդ էր արտայայտում։ Սակայն ձեռք չբերեցին որ և է մնայուն յաջողութիւն. միայն Լանգոբարդների յառաջխաղացութեան առաջը փակուեց։

Տէրութեան հիւսիսային սահմանը շարունակ վտանգուած էր։ Աւարներից խաղաղութիւնը գնել էին մեծ հարկեր վճարելով. դոցա փոխարէն առաջիններից գրգռուած, սկսեցին ներս խուժել սլաւոնական ցեղերը որ Աւարներին հպատակ էին։ Ժամանակակից Ասորի գրողների վկայութեամբ Աւարները[1] և Սլաւոնները աւելի խորը հասան մտան։ 581

1. Աւարները Սլաւների վերաբերմամբ ներկայացնում են ազնուականների տեսակաւորի մի դասակարգ։ Ընդհանրապէս զարմանալի է, որ այդ դարերում բառով ան-

թ. վերջիններս արշաւում են ոչ միայն Թրակիա, այլ ամբողջ խմբերով բնակութիւն են հաստատում Թեսալոնիկէի շրջակայքում, և գաղթում մինչև Պելոպոնես՝ մտնդրուած այնտեղ հեալու: Աւանդութիւն կայ, որը իրաւ է ուշ ստեղծուած է և անվստահելի, թէ այն ժամանակները Ծագիտաւրոս-Լիմերայի Լակեդէմոնացի բնակիչները փախուստ տալով սլաւոնական հոսանքի առաջ, հաստատուել են մօտիկ ընկած ժայռակղզու վրայ և հիմք դրել Էմպորիում Մոնեմբազիա քաղաքին, որ վերջում մեծ նշանակութիւն ստացաւ: Ծւխկապէս դարուկէս անց ծովագնացները Կիւնուրիան անուանում են՝ «սլաւոնական աշխարհ»: Թէ սլաւոնական տարրը հելլենական նահանգներում ինչքան զօրեղ էր, ապացուցանում է այն, որ 623 թ. սլաւոնական մի նաւատորմիղ յարձակւում է Կրետէի վրայ և աւարի առնում: Ընդհակառակը առասպելների շարքին պէտք է դասել Փոլմերայերի ծայրայեղ և արկածախնդրական ենթադրութիւնը

Համեմատ չենին Ուրալ-ալտայեան փոքր ցեղերը ասորագրում են Գերմանացիներին եւ Սլաւոններին. ուրեմն նոխաւյեսք է ունենային զինուորական, ֆաղաքական եւ մշակոյթ գերազանցութիւն. բաւական է յիշել Հոներին (զորական եւ գերմանական ուրիշ ցեղերի տիրողներ էին), Ավարներին եւ Բուլղարներին:

նուաճուել. Այսպէս յետագայ սերունդների ժամանակ կատարելապէս սլաւոնացան. Բալկանեան Թերակղզու հիւսիսային մասում այսօրուայ սերբօխրովաթական և բուլղարական լեզուների սահմանները։ 583 թ. Սինգիդոնում, Վիմինացիում և Դանուբի ուրիշ ամրոցներ ընկան Աւարների և նոցա հպատակ Սլաւոնների ձեռքը։ 587 թ. նոցա ենթարկեցին Մեսիայի քաղաքները. Ռատիարիա, Դորոստոլոն և ուրիշներ, մինչև Մարկիանուպոլիս. Հեմուսի հարաւային երկիրը մինչև Ադրիանուպոլիս փոփոխակի կողոպտում էին Աւարները և Սլաւոնները։ Իրերի դրութիւնը բարւօքուեց միայն 591 թ., երբ Մաւրիկիոսը Պարսիկների հետ խաղաղութեան դաշն կապելուց յետոյ, հնարաւորութիւն ստացաւ իր զինքի ուժը անհամեմատ մեծ չափով գործ դնել եւրոպական սահմանների պաշտպանութեան համար։ Այդ պատճառով ընկուեց կռիւը կրկնակի կատաղութեամբ։ Աւարները պաշարեցին Թեսաղոնիկէն և սպառնում էին նոյն իսկ մայրաքաղաքին։ Բայց 593 թ. հռովմէական Պրիսկոս ընտիր զօրավարը անցաւ Դանուբը և 601 թ. քանիցս անգամ նոցա հիմնովին յաղթեց. առաջ Վիմինացիումի մօտ, յետոյ Տիսսայի ափերով առաջ խաղալով, Թեյսի մօտ՝ Գեպիդների նախկին

բնակավայրում։ Հետեւեալ տարին էլ պատերազմ մղուեց շատ յաջող. բայց զօրագնդերը գրգռուած կայսեր անժամանակ և անտեղի խնայողութիւնից՝ յայտնի կերպով ապըստամբեցին, երբ 602 թ. պէտք է ձմերէին Դանուբի միւս կողմում։ Զինուորների յուզումը բնորոշ է, որ նոցա գլուխն էր անցել ստորին աստիճանի մի զինուոր՝ Փոկաս հարիւրապետը։ Մաւրիկիոսը փորձեց կրկեսի խմբերին՝ կապոյտներին և կանաչներին զինելով, պաշտպանել մայրաքաղաքը։ Բայց երբ գործը ընթացաւ դէպի մայրաքաղաքը, այդտեղ էլ ծագեց յեղափոխութիւն։ Կայսրը գլուխ կորցրած, ամեն ինչ կորած համարեց և իւր ընտանիքի հետ փախաւ ասիական ափը։

602 թ. նոյեմբերին Փոկասը կայսր օծուեց (602—610) և իւր հաստատուելուց անմիջապէս յետոյ հրամայեց գլխատել կայսեր և նորա որդիներին։ Բազմաթիւ մահուան վճիռներ արձակեց, որպէս զի դրանով հաստատուէր բռնակալի իշխանութիւնը։ Պատմագրութիւնը, որ կայսեր յետագայ հակառակորդների բացարձակ կողմնակից է, նորան ներկայացրել է ամենասեւ գոյներով։ Բայց նա դրանով ճշմարտութիւնն է պահպանել։ Արեւելահռովմում դրանից աւելի վայրենաբա-

րայ. և անընդունակ իշխանութիւն երբէք գոյութիւն չէ ունեցել։

Խոսրովը դաշնակալութեան փոփոխութիւնից իսկոյն օգտուեց, և սկսեց թշնամութիւնները իւր «հայր» Մաւրիկիոսի վրէժը առնելու պատրուակաւ։ Նարսէսը, արևելքի ամենաընդունակ զօրապետը, Պարսիկների սարսափը, Եդեսիայում ապստամբուեց և փորձեց միանալ Խոսրովի հետ։ Փոկասը, որպէսզի կարողանայ իւր բոլոր ոյժը գործ դնել արևելքում, տարեկան հարկը մեծացնելով, Աւարների հետ խաղաղութիւն հաստատեց։ Նարսէսը հաւատալով կայսեր եղբօրորդի Դոմենտիոլոս զօրապետի խօսքին, անձնատուր եղաւ և Փոկասի ձեռքով սպանուեց խարդախ կերպով։ Պարսիկները մի շարք յաղթութիւններ տարան։ 606 Թ. ընկաւ սահմանի ամենագլխաւոր ամրութիւնը՝ Դարան, Ասորիքը և Միջագետքը հեղեղուեցին նոցա այրուձիով։ 608 Թ. Փոքր Ասիայի վրայով հասան մինչև Քաղկեդոն։ Մայրաքաղաքի մէջ պաշտօնեաները և ազնուականները խիստ թշնամաբար էին տըրամադրուած դէպի պետը։ Միայն արիւնալից սարսափներով էր Փոկասը կարողանում պաշտպանել իւր իշխանութիւնը։ Բայց չափազանց ընդունակ Պրիսկոս զօրապետը՝ որին Փոկասը փեսայացրել էր և կանանոցի հրամա-

դարմար հինգ սերունդ տևեց։ Տէրութեան ղեկը գտնւում էր մի հանճարեղ զօրապետի և խոհական կարգադրիչի ու քաղաքագէտի ձեռքին։ Բայց դրութիւնը համարեա թէ յուսահատական էր։ Եւրոպան կողոպտում էին Ավարները և Սլաւները. Ասիայում ասպատակում էին Պարսիկները. բոլոր ամուր քաղաքները դողում էին նոցա առաջ։ Նոքա անցան Եփրատը։ Հռովմայեցիների դէմ 611 թ. տարած մեծ յաղթութիւնից յետոյ նոցա իշխանութեան ներքոյ ընկան Անտիոքը, Ապամեան, Էմեսան և Կապադովկիայի Կեսարիան։ Կայսեր փորձերը խաղաղութիւն հաստատելու անյաջող անցան. Խոսրովը յոյս ունէր վերջնականապէս նուաճել Հռովմայեցւոց պետութիւնը, և հետևեալ տարիների պատահարները կարծես արդարացնում էին նրան։ 613 թ. Պարսից Շահբարազ զօրապետը առաւ Դամասկոսը, 614 թ. անցաւ Յորդանանը և գրաւեց Երուսաղէմը։ Սուրբ քաղաքը մոխրակոյտ դարձրին, բնակիչներին կոտորեցին կամ տեղափոխեցին Պարսկաստան։ Նմանապէս Զաքարիա պատրիարքին և «կենաց փայտը»՝ Սուրբ Խաչը, տարան Տիզբոն քաղաքը։ Այս պատահարը առաջ բերաւ ահագին յուզմունք։ Հաւատոյ նշանի կորուստը բոլոր քրիստոնեաների կողմից, նաև հռովմէական

պետության սահմաններից դուրս: Նկատուեց իբրև անսահման դժբախտություն՝ մանավանդ Փրանկների բարեպաշտ ժողովրդի կողմից: Գոնե պատրիկիոս Նիկետասը կարողացել էր միայն ազատել ս. Սպունգը և ս. Գեղարդը և բերել մայրաքաղաք: Շահինը՝ Պարսից երկրորդ զորապետը, 615 թ. արշավեց մինչև Քաղկեդոն: Թեև հռովմեական Փիլիպպիկոս զորավարի յարձակմունքը Հայաստանի վրայ ստիպեց նրան առժամանակ յետ խաղալ, սակայն 619 թ. Պարսիկները տիրեցին Անկիւրիային և դրանով իշխում էին հաղորդակցության այն գծերի վրայ, որոնք միացնում էին մայրաքաղաքը Ասորիքի և Ասիայի հետ: Նոյն տարին Պարսից իշխանության ներքոյ ընկաւ Եգիպտոսը իւր Աղեքսանդրիա գլխաւոր քաղաքով, որ այնքան անհրաժեշտ էր մայրաքաղաքին ուտեստի պաշար հայթայթելու:

Հասկանալի է, որ կայսրը, յուսահատական գրգռման մէջ, որոշեց Աֆրիկա փախչելով ազատուել: Բայց պետական խորհրդի մեծամեծները, և ամենից առաջ թէ ազգասէր և թէ քաղաքագէտ Սերգիոս պատրիարքը նրան յետ պահեցին: Չափն անցած քաղաքական դժբախտությունը առաջ բերեց, ինչպես 1806 թ. Գերմանիայում, բարոյական և քաղաքական հիմնական յեղաշրջություն: Հե-

բանակը հետևեալ տարիները գործ դրեց զորքը լրացնելու և վարժեցնելու, որ Զենոնի ժամանակ հաւանօրէն թէ բոլորովին քայքայուել և ոչնչացել էր։

Երբ նա մայրաքաղաքում հաստատեց խնամակալութիւն, որի անդամներն էին իր անչափահաս և կայսերական որդի Կոստանդինը, պատրիարքը և Բոնոս պատրիկիոսի ղեկավարութեամբ, 622 թ. գարնանը դուրս գնաց Պարսից դէմ։ Կայսեր արշաւանքները ունէին բացարձակապէս խաչակրաց արշաւանքների բնաւորութիւն։ Նրանք ուղղուած էին ս. քաղաքը կործանողի և ս. Խաչը յափշտակողի դէմ։ Ինչպէս որ իր նաւատորմի նաւերը, որոնցով նա առաւ Կոստանդնուպոլիսը, զարդարուած էին Աստուածածնի պատկերով, այժմ և զորքերն ու իրենց առաջնորդները հաւատում էին, որ գնում են Ամենափրկչի աներևոյթ պաշտպանութեան տակ։ Հերակլը արդէն հասել էր Պարսից սահմաններին, երբ Ավարների արշաւանքը ստիպեց նրան յետ դառնալ։ Աւելի նշանաւոր էր երկրորդ՝ 624 թ. սկսած արշաւանքը։ Կայսրը յաղթանակով Հայաստանի միջով հասաւ մինչև Ատրպատական. այստեղ նա ջարդեց իրան Պարսից թագաւորին և կործանեց — դրանով արդէն որոշուում է պատերազմը իբրև կրօնական պատերազմ—Նոցա

Ձաց, երբ միացեալ ուժով պաշարեցին Թիֆլիսը։ Հետևեալ տարին վերջապես, տաժանելի յառաջխաղացումից յետոյ, ձմեռուայ կիսին (12 Դեկ. 627) Նինուէի մօտ տեղի ունեցաւ վճռողական մեծ ճակատը, որով Պարսից զօրքը խորտակուեց։ Դրանից անմիջապէս յետոյ կողոպտեցին և կործանեցին մի շարք թագաւորական դղեակներ, որոնց մէջ էր Խոսրովի կայանը՝ Դաստակերտը, և ազատեցին շատ քրիստոնեաների։ Անհնար էր Տիգրոնի վրայ յարձակուել, որովհետև Պարսիկները Նահարվանի բոլոր կամուրջները կործանել էին և միւս կողմում պատրաստ սպասում էին։ Հերակլը յետ խաղաց բաւական վտանգաւոր ճանապարհներով՝ մեղական լեռնոտ երկիրներով։ Յաջողութեամբ հասաւ տէրութեան սահմանը, անցաւ Փոքր Ասիայի միջով և, ժողովրդի անսահման ցնծութեամբ, յաղթանակող կայսրը մտաւ իր մայրաքաղաքը։ Դարձի ժամանակ ճանապարհին նրան արդէն լուր էր հասել Պարսից թագաւորի հետ պատահած աղէտի մասին (25 Փետրվ. 628 թ.)։ Նրա որդի Շէրօէն խաղաղութիւն խնդրեց, և նրան տուեց զինադադար։ Պարսկական գնդերը դուրս եկան հռովմէական նահանգներից, և Հերակլը մի կերպ վերահաստատեց կարգը. 629 թ. Շահրբարազը ամենից վերջը յետ քաշուեցաւ Եգիպտոսից։ Նոյն տարին ս. Խաչը

երկիրն Երուսաղէմ ուղարկուեց։ Կայսրը ինքը բոլոր հոգեւորականութեան հետ, ժողովրդի ցնծութեամբ, Խաչը նորից կանգնեցրեց (629 թ. 14-ն Սեպտ.), և այն ժամանակից սկսած եկեղեցին հանդիսաւոր կերպով ամեն տարի տօնում է Խաչվերացի յիշատակի օրը։ Հերակլ կայսեր այս գործը բոլոր քրիստոնեաների վրայ միևնոյն տպաւորութիւն թողեց, որը յետոյ ամբողջ դարեր անջնջելի է մնացել։ Երևում է որ հետևեալ տարին Պարսիկների հետ հաստատուել է կանոնաւոր խաղաղութիւն։

Հերակլը կանգնած էր իւր փառքի գագաթնակէտին։ Պարսից թագաւորութիւնը գահակալական անընդհատ յեղափոխութիւններով տակն ու վրայ եղաւ և թուլացաւ, և այսպիսով կարծես թէ արևելքի վտանգը ոչնչացաւ ընդմիշտ։

Մինչդեռ այդպիսով տէրութեան ամբողջ ոյժը կենդրոնացրած էր արևելքում երկրի վիճակը կանոնաւորելու, արևմուտքում անփոխարինելի կորուստներ եղան։ 619 թ. Վեստգոթների Սիսեբուտ թագաւորի ձեռքն էին ընկել Յունաց ձեռքում եղող Սպանիայի քաղաքները, և նրա յաջորդ Սվինթիլան (621—631) վերջնականապէս մաքրեց հռովմէական տէրութեան մնացորդները Պիրինէյեան թե-

ճնշում էին մայրաքաղաքը․ մինչդեռ միաժամանակ Տաճկաստանը Պարսից զօրքով կանգնած էր սահմանային ափին՝ Քաղկեդոնի մօտ։ Բայց քաջանասիրական բիւզանդական զօրքը յետ մղեց բոլոր յարձակումները։ Օգոստոսին Աւարները և Սլաւոնները ստիպուած էին յետ դառնալ։

Ուժերի այս վերջին զօրեղ լարումից յետոյ, Աւարները այլ ևս կայսրութեան համար վտանգ չէին ներկայացնում։ Սլաւոնական ցեղերը յետագայ տասնամեակներում և շարունակում էին իրենց գաղթական հոսանքը դէպի Հելլենական թերակղզին, որ սկսել էին Մաւրիկիոսի ժամանակ․ նրանք խիտ խմբերով բնակութիւն են հաստատում Միւսիայում, Մակեդոնիայում, Հելլադում և Պելոպոնէսում։ Ուրալ—Ալտայեան Բուլղարները, որ շատ շուտ են յայտնւում Դունաւի ժողովուրդների մէջ, նշանաւոր դեր էին խաղում այդտեղ, երբ առաջին անգամ հանդէս են գալիս։ Հերակլը արևելքի վիճակի մէջ կայուն հաստատելուց յետոյ, 635թ․ նրանց իշխան Կուվրատի հետ դաշն կապեց, որպէսզի նրան զինի Սլաւոնների և Աւարների դէմ։ Կուվրատը բաւական չափով արդարացրեց իր վրայ դրուած յոյսերը, և շնորհակալ կայսրը նրան տուաւ պատրիկիոսի տիտղոսը։ Այժմ Աւարները սահմանափակուած մնացին Պանոնիայի իրենց բնակավայրերում։

Պարսկական պատերազմների յաղթական վախճանն այն եղաւ, որ քաղաքականապէս նորից դրաւեցին տաս տարուց աւելի պետութիւնից խլուած մոնոֆիզիտ նահանգները՝ Ասորիքը և Եգիպտոսը։ Շատ բնական է, որ կառավարութեան ամենադժուարի փափագներից էր լինելու՝ բարոյապէս նորից տիրել այդ երկիրներին, որոնք կրօնապէս ու ազգային Հռովմայեցւոց պետութիւնից օտարացել էին, և յուսով էին թէ կարող են հաւատի միաբանութեամբ նորից նոցա բարեկամացնել ընդհանուր պետութեան հետ։ Ինքը կայսրը խորհրդակցութեան մէջ մտաւ Յակոբեանների յայտնի վիճակաւորների հետ։ Անսպասելի կերպով միութիւնը գլուխ եկաւ։ Մայրաքաղաքի Սերգիոս պատրիարքի խորհրդով, որ օրինակելի կառավարիչ էր և շատ խելացի եկեղեցական քաղաքագէտ, առաջարկած բանաձևը. «Մարդ Աստուածը, երկու բնութիւն ունենալով, արել է ամեն ինչ աստուածային և մարդկային զօրութեամբ միանգամայն համապատասխան էր եկեղեցու հին ուսմանը և եգիպտացիների ինչպէս նաև Ասորոց կատարեալ հաւանութիւնը գտաւ։ Փազիսի Կիւրոս եպիսկոպոսը, որին կայսրը ճանաչել էր իւր կովկասեան արշաւանքի ժամանակ, Աղեքսանդրիայի գահին արժանանալուց յետոյ, իրան

ցոյց տուեց կայսերական քաղաքականութեան համար խիստ պէտքական և ընդունակ գործիչ։

Հայաստանում այդ նորից Հռովմայեցւոց ձեռքն էր ընկել։ Եզր կաթուղիկոսից գումարած ժողովը իւր կատարեալ համաձայնութիւնը տուաւ «Աստուծոյ սիրեցեալ» կայսեր հաւատոյ դաւանութեանը։ Եւ ինչ որ ամենից կարևորն էր, Հռովմի Հոնորիոս եպիսկոպոսը, որ նոյնքան մեղմ ինչքան և համակրող մի անձ էր, ընթանում էր Սերգիոսի հետ ձեռք ձեռքի տուած։ Կարծես ամեն ինչ ամենալաւ յոյսեր էր տալիս, երբ յանկարծ Երուսաղէմի նորընտիր պատրիարքը՝ Սոփրոնիոսը, որ ինքը գերազանց ուսումնական էր և բարեպաշտ ճգնաւոր, ողորմած Յովհաննէս Աղեքսանդրացու դպրոցից (610—619)· բայց մի և նոյն ժամանակը կրքոտ և սահմանը չիմացող մոլեռանդ մէկն էր, ամենախիստ կերպով հանդէս եկաւ. Հազիւ հազ գլուխ բերած միաբարական ուսման դէմ։ Գիտութեամբ և բարեպաշտութեամբ հաւասարապէս յարգուած եկեղեցւոյ պետի կարծիքը ահագին տպաւորութիւն թողեց։ Բարեպաշտները հառաչում էին և յայտարարում թէ դաւանութեան մաքրութիւնը վտանգուած է։ Ի զուր փորձեր արին Հին և Նոր Հռովմի շատ խելացի պատ-

ըխալքները խաղաղացնել «բարկացած սուրբերն»։ Ինչպէս սովորաբար, սա պարտական էր Աստուծուն աւելի լսել քան մարդկանց, և այդպէս էլ խուլ մնաց նոցա ամենահամոզեցուցիչ ատարկներին։ Հերակլը փորձեց աղգել խաղաղութեամբ և 638 թ. Հրատարակեց Սերգիոսի շարադրած հրովարտակը—Ekthesis—որը իրաւ է յատկապէս չեշտած լինելով մի կամքի ուսման յայտարարութիւնը, չէր կարող փոթորիկը հանդարտացնել։ Մանաւանդ արևմուտքի նահանգներում՝ Իտալիայում և Աֆրիկայում, լայնածաւալ գրգռմունք ծագեց և քահանաների գլխամբ տիրում էր ուղղակի յեղափոխական տրամադրութիւն։ Կայսեր նախկին քարտուղարը, ս. Մաքսիմոսը, որ առիստոտելեան դպրոցում հիմնովին կրթուած և մաղաչափ ճիշդ տրամաբան էր, ուղղակի անհաւատարիմ կերպով աւելի բարձրացրեց տաքարիւն Աֆրիկացիների յուզմունքը և իւր ոչ այնքան բարեպաշտ եռանդով և բոլոր ոյժով աւելացրեց արքայական դիւանի դժուարութիւնները։ Այդպիսով կառավարութիւնը, որ չափազանց վտանգուած էր նոր պատերազմների երկիւղից, տեսաւ թէ ինչպէս միաժամանակ նաև ներքուստ թուլացած է կրօնական պառակտումների շնորհիւ։

Պարսկական զօրութիւնը կոտրելուց յե-

տոյ, թւում էր թէ արեւելքի իրերի դրութիւնը կարգաւորուած է։ Ինչպէս կարող էին Բիւզանդիոնում նոյն իսկ երազել, որ Արաբիայի պէս պատմութիւնից զուրկ մի երկիր յանկարծ, մետէօրի նման, լուսին կտայ և կհանդիսանայ ապագայի համար այդքան զօրեղ ընդհանուր պատմական ներկայացուցիչ։ Ինչպէս կարող էին Հռովմայեցիները նախատեսել, որ Իսլամի ոգեւորութիւնը՝ պատերազմել կրօնի համար, իրենց պետութեան համար այնքան սարսափելի պիտի լինէր։ Մուսուլմանների առաջի յարձակումների վրայ, որ անցան առանց յիշուելու արժանի հետեւանք թողնելու, երեւում է ակներեւ, որ մայրաքաղաքում շատ թեթեւ են նայել։ Բայց երբ 634 թ. Բոստրան, Արաբիայի հռովմէական նահանգի գըլխաւոր քաղաքը, անհաւատների ձեռքն ընկաւ, կայսրը ինքն անձամբ գնաց ասորական Անտիոք մայրաքաղաքը։ Սակայն նրա զօրապետները պատերազմեցին անյաջող։ 635 թ. ընկաւ Դամասկոսը. ասորական նշանաւոր քաղաքները անձնատուր եղան, և 636 թ. Եարմուկի մեծ ճակատը վերջնականապէս որոշեց Ասորիքի վիճակը։ Սուրբ քաղաքը, որ նոր էր մոխրակոյտից բարձրացել, 637 թ. Սոփրոնիոս պատրիարքի ձեռքով երկամեայ պաշարումից յետոյ անձնատուր եղաւ Օմարին. դաշնագրու-

թեամբ։ Միջագետքի և Եդեսիայի գրաւումով ամբողջ արևելքը ընկել էր Արաբների ձեռքը։ Մոնոֆիզիտ քրիստոնեաների համակրանքը շատ անգամ արշաւողների կողմն էր և դրանով են մասամբ բացատրւում այդ անօրինակ յաջողութիւնները։

Ամրի առաջնորդութեամբ Արաբները հաստատուել էին նաև Եգիպտոսում։ Լիւկոպոլսից ոչ հեռու և յետոյ Հելիոպոլսի մօտ Յոյները ջարդ կրեցին. Բաբիւլոն, Նիկիուն և ուրիշ քաղաքներ պաշարմամբ առնուեցին։ Յետ Հերակլի 641 Փետրուարի 11 մահուան, նոյն ձեռքին էր ամբողջ երկիրը բացի Աղէքսանդրիա մայրաքաղաքից։ Նոր կառավարութիւնից արտօնութիւն ստացած, Կիւրոս պատրիարքը Ամրուի հետ յարաբերութեան մէջ մտաւ և դաշն հաստատեց։ Սակայն քահանայութեան փոփոխութեան պատճառաւ, մայրաքաղաքում չընդունեցին այդ համաձայնութիւնը, թէև ոչ մի հնար չունէին նաւատորմիղով զօրեղ պաշտպանութիւն ցոյց տալ Աղէքսանդրիային, որը խիստ նեղն էր ընկել։ 643 թ. Սեպտեմբերի 29-ն բազմամեայ Ամրուն մտաւ զօրքերով Նեղոսի քաղաքը։ Եգիպտոսում էլ նմանապէս Կոպտերի ատելութիւնը Յոյների դէմ յաղթողներին ցոյց էր տալիս զօրեղ օգնութիւն։ Հերակլի բոլոր գործը ոչնչացաւ և պետութիւնը

սահմանափակուեց Փոքր Ասիայով։ Հեմուս Թերակղզիով և լատինական արևմուտքի կը-տախախտ իշխանութիւններով։

Հերակլի երկրորդ ամուսինը, Նրա քեռ-աղջիկ Մարտինան, որի հետ ամուսնացել էր եկեղեցու դէմ մեծապէս մեղանչելով, կամենում էր իր ամուսնու մահից յետոյ էլ պահպանել իշխանութիւնը։ Սակայն զօրքը իշխանութիւնը տուեց Նրա երկու որդիներին. Կոստանդին Գ-ին, որ մեռած կայսրի երկարամեայ պաշտօնակիցն էր և Նրա փոքր եղբայր Հերակլին (Հերակլեոնաս), Մարտինայի որդուն։ Կոստանդինը՝ թոքախտով տառապողը, որ վաղուց հիւանդ էր, մեռաւ արդէն 641 թ. Մայիսի 26-ին։ Շուտով տարածուեց այն մե-ղադրանքը թէ խորթ մայրն է թունաւորել. և գահակալական փոփոխութեան ժամանակ պաշ-տօնապէս պատրաստուեց այդ, բայց դժուար է հաւատալ։ Հերակլեոնասը մայրաքաղաքում կայսր ճանաչուեց։ Իրապէս կառավարում էին Մարտինան և Պիւռոս պատրիարքը։ Սակայն զօրքը և իրենց առաջնորդները մեռած կայսրի որդիների կողմն էին։ Արդէն 641 թ. աշնա-նը կայսրը և Նրա մայրը գլորուեցին և Կոս-տանդինի անչափահաս որդին՝ Կոնստանս (պաշտօնապէս՝ Կոնստանտինոս) կայսր հրա-տարակուեց (641—668)։

Տէրութեան երկիրների մեծ մասի կորուստը Հերակլի ժամանակ, անմիջապէս նրա (տէրութեան) համար օգտակար դարձաւ։ Կորուեցին ըմբոստ, ազգովին թշնամի զանազան ժողովուրդների տարրերը։ Փոքր Ասիայի և Հեմուս թերակղզու բնակիչները, որոնք մնացել էին կայսեր հպատակ, լեզուով և կրօնով միացած խումբ էին կազմում և կատարելապէս հաւատարիմ։ Դրանից բացի ուրիշ օգուտ էր թեմերի վարչական կազմակերպութիւնը։ Արդէն Յուստինիանը և նրա յաջորդները առաջի քայլերն արել էին փոխելու Դիոկղետիանոսի հին զինուորական և քաղաքային վարչական ձևը, ընդհանուր կառավարութիւնը ամփոփելով զինուորական գլխաւորների ձեռքում։ Հերակլի և նրա յաջորդների զինուորական նեղութիւնների ժամանակ կառավարութիւնը ստիպուեց Փոքր Ասիան և աստիճանաբար ամբողջ պետութիւնը բաժանել մի շարք զինուորական հրամանատարութիւնների—թեմերի։ Այդ նահանգներում հրամայող զօրապետները՝ ստրատեգները, զօրագնդերի ընդհանուր հրամանատարութիւնից զատ իրենց ձեռքին միացրել էին քաղաքային վարչութեան ղեկը։ Այդ եղանակը վերակարգուեց և կատարելագործուեց սիրիական հարստութեան հանճարեղ կայսր-

*ների օրով։ Եւ դա ազատել է տէրութիւնը։*[1]

*Կոնստանսը երբ իրապէս կառավարութեան գլուխն անցաւ, ցոյց տուեց անընկճելի և ինքնուրոյն բնաւորութիւն, և իբրև իշխան միանգամայն արժանի իւր ծանր պաշտօնին։ Անասելի դժուարութիւններով նա կարողացաւ արաբական յարձակումը կանգնեցնել։ Մոա-*

---

1. Համեմատիր թեմերի կարգաւորութեան համար մանաւանդ Յ. Բ. Բուրի (I. B. Bury: a history of the later Roman Empire II էջ 399 եւլն — Պատմութիւն Հռովմայեցւոց վերջին կայսրութեան), գերազանց (թէեւ առանձին մասերով ազատ չէ պակասութիւններից եւ սխալներից) ուսումնասիրութիւնը. «Թեմերի կարգաւորութեան սկիզբը —origin of the system of Themes»։—Ըստ այնմ Է-րդ դարում ապացուցանելի են նահանգների կառավարութեան հետեւեալ զինուորական նահանգապետները։

Ա. Ասիայում. 1. Օպսիկիոն (Բիւթինիա), 2. Անատոլիկոն (Ա. Հայք եւ Պոնտոս), 3. Արմենիակոն (Ա. եւ Բ. Կապպադովկիա եւ Գ Հայք), 4. Թրակեզիոն (Ասիան հին նահանգը), 5. Կիբիւռայոտիսի Տրունգարիատը (ծովապետութիւնը) (Պամփիւլիա եւ Պիսիդիա)։

Բ. Եւրոպայում. 1. Թրակէ. 2. Հէլլաս, (Պելոպոնէսի հետ), 3. Իտալիայի կամ Ռաւեննայի էքսարխութիւնը այս գաւառներով. Ա. Ուրբիկարիա, Բ. Կամպանիա, Գ. Աննոնարիա, Դ. Էմիլիա, Ե. Ապուլիա, Զ. Բրետիում, Է. Սիկիլիա, Ը. Վենետիա, 4. Կարթագոյի կամ Աֆրիկայի էքսարխութիւնը (մեծ մասամբ կորած) այս գաւառներով Ա. Պրոկոնսուլարիս, Բ. Բիւզակիս, Գ. Նումիդիա, Դ. Մաւրիտանիա Ա, Ե. Մաւրիտանիա Բ.=Սեպտում, Զ. Սարդինիա։

վիայի ձեռքով, որ Ասորիքի գործունեայ հրամանատարն էր, կազմակերպուած էր մի նաւատորմիղ: 648 թ. նա յարձակուեց Կիպրոսի վրայ և առաւ Կոնստանդիան գլխաւոր քաղաքը: Մի տարի անց կործանեցին Արադոսը: 654 թ. Արաբները կողոպտեցին Ռոդոսը. Հռոմայեցիք նոյնպէս կորցրին Հայաստանը՝ երկրի բնիկ իշխանի դաւաճանութեամբ: Նոյն իսկ տէրութեան մայրաքաղաքի դէմ ուղարկուած զօրեղ նաւատորմիղից 655 թ. յաղթուեց կայսերականը լիկիական ափերի մօտ: Բայց Օթման խալիֆի մահը (656 թ.) և դրա պատճառով ծագած երկրի ներքին խռովութիւնները Մուավիային ստիպեցին ոչ միայն խաղաղութիւն հաստատել, այլ մինչև անգամ տէրութեանը հարկ վճարել: 663 թ. թշնամութիւնները վերսկսեցին: Տարեցտարի Արաբները ներս էին խուժում Փոքր Ասիան և կողոպտում: 668 թ. նոքա հասան մինչև Քաղկեդոնը. Ամորիոնին տիրեցին և իսկոյն նորից կորցրին: Հաստատուն բանի չէին հասնում: Պետութեան զինուորական ոյժի շնորհիւ անդի չունեցան յիշելու արժանի մեծ մեծ կորուստներ:

Խաղաղութեան ժամանակամիջոցը կայսրը գործ դրեց «Սկլաւինիայի» դէմ արշաւելու, որ անկախացած մակեդոնական ցեղեր էին, որ պա-

չափել էին Թեոդոսուպոլիսին։ Նոյնպիսի չափերը սխ-ատութեան հարկատու դարձան։ Ներքուստ Արեւելահռոմը շարունակում էր միակամութեան խնդիրներով լարուած դրութեան մէջ մնալ։ Արեւմուտքը զօրեղ կերպով բողոքել էր կայսերական դաւանութեան դէմ։ Աֆրիկայի փառաւոր էքսարքը Գրիգորիոսը, որ վարդապետների բարեկամ էր, իսկ նահանգը օրթոդոքսութեան գլխաւոր կենտրոն դարձրեց, որտեղ արեւելքի ապաստանած նահանգներից շատ փախստականներ ապաստարան էին գտնում, նա ինքն իրան հակաթոռ կայսր հռչակեց։ Բայց նորա միօրեայ իշխանութիւնը որ հիմնուած էր «ճշմարիտ հաւատոյ» վրայ, արդէն 647 թ. խորտակուեց յաղթանակով ներս խուժող Արաբների առաջ։ Համարեա Աֆրիկան ամբողջովին ընկաւ նոցա ձեռքը։ Կայսրը՝ որպէսզի եկեղեցական խաղաղութիւնը վերահաստատի, 648 թ. մի հրովարտակ – typos – արձակեց, որով արգելում էր Աստուծոյ կամքերի և զօրութիւնների թուի մասին վէճերը։ Սակայն վարդապետների գիտուն առաջնորդներից ամենանշանաւորը, ս. Մաքսիմոսը, յայտնեց թէ կայսրը իրաւունք չունի խառնուելու կրօնական հարցերում և Մարտին Ա. պապը 649 թ. Լատերանի ժողովում հրամայեց հանդիսաւոր կերպով նզովել միակամութեան դա-

*ւանութիւնը ինչպէս նաև Էկթէզիսը եւ Տիպո-սը: Բայց կայսրը եկեղեցու ազատութեան մասին նոր ուսման հանդէպ հաստատ պահեց արևել-քի հին աւանդութիւնը, և արտայայտեց ար-տասովոր կամք: 653 թ. Մարտին պապը կալա-նաւորուեց Ռավեննայի էքզարխի ձեռքով և բե-րուեց մայրաքաղաք, որտեղ նրա դէմ դատ բացին: Նա մեռաւ աքսորի մէջ Խերսոնում· տպաւորութիւնը ցանկացածն էր. որովհետև նրա յաջորդները՝ Եւգենիոսը և Վիտալիանը շատ հլու մնացին կառավարութեանը: Նը-մանապէս ս. Մաքսիմոսին էլ, որ խորը կեր-պով խառն էր ափրիկեան խռովութեան մէջ և մեղադրւում էր հայրենիքի դաւաճանու-թեան մէջ, նոյն վիճակը հասաւ: Հին-Հռով-մի հետ եկեղեցական միութեան վերահաս-տատութիւնը կայսերական յաղթութեան ա-կընյայտնի նշանն էր:*

*Ոչ միայն եկեղեցական շփոթութիւննե-րը, քաղաքական հանգամանքներն էլ կայսեր ուշադրութիւնը դարձրին արևմուտքի վրայ: Արևելքի կորցրած նահանգներից սկսեցին բազմաթիւ փախստականներ տեղաւորուել Սի-կիլիայում, որով սա բուն յունական նահանգ դարձաւ, որ բիւզանդական տիրապետութեան համար արևմուտքում խիստ կարևոր էր: Հետևեալ ժամանակի համարեա բոլոր պապե-*

*րը ծագում՝ են ասորական և յունական գաղթականների այդ ընտանիքներից։ Այդ հանգամանքից բոլորովին անմիտ կերպով եզրակացրել են, թէ դրանում յունական քաղաքականութեան ձգտման արտայայտութիւն կար, մինչդեռ այդ պիտի բացատրել նրանով որ հին հռովմէական պատրիարքական հոգևորականութեան մէջ այդ տարրը գերակշռում էր։ Արդէն 652թ. Արաբները յարձակում էին գործել կղզու վրայ, որ սակայն մեծ ծրագրով ձեռնարկած կողոպուտի արշաւանք էր. այնուամենայնիւ նպատակայարմար էր այդտեղ լրջօրէն նրանց դէմ դնել։ Ակներև էր որ կայսրը հեռուն գնացող ծրագրեր ունէր, երբ 672թ. զօրեղ նաւատորմղով անցաւ Աթէնքի վրայով Տարենտ։ Որոշուած էր վաղուց ի վեր պետութեան արհամարհուած արտաքին կենտրոնները՝ արևմըտեան նահանգները, ինչպէս նախկին ժամանակներում, դարձնել տէրութեան յենարանը։ Հին-Հռովմը պէտք էր նորից մայրաքաղաք դառնալ։ Սակայն կայսրը, որ աննկուն իւր կեանքի վերջին օրերը նուիրեց իւր այդ ռոմանտիքական վերահաստատութեան ծրագրին, չկարողացաւ լրացնել նրա նոյն իսկ ամենաառաջին պայմանը՝ Իտալիայի առումը Լոնգոբարդների ձեռքից։ Նրա փորձերը Բենեվենտի հերցոգութիւնը նորից Հռովմայեցւոց իշխա-*

արեցին իր Հերակլ և Տիբերիոս եղբայրներին կայսրակից անուանել։ Զինուորները կամենում էին, — որ շատ բնորոշ է դարու միանգամայն աստուածաբանական մտածողութեան եղանակին — երկնային երրորդութեան պատկերը երկրի վրայ ունենալ։ Միայն 680 թ. կարողացաւ Կոստանդինը տիրանալ միապետութեան, որին նա մեռնելուց առաջ իր մանկահասակ Յուստինիանոս Բ որդուն։ Կոստանդինը երիտասարդ էր գահը բարձրացել. նա իր ստանձնած գործին միանգամայն արժանի գտնուեց։ Իսլամի հետևորդները ահագին ջանքեր էին անում։ Համարեա ամեն տարի ողողում էին Փոքր-Ասիան։ Եգիպտական Սարակինոսները 699 թ. առին իջան Սիկիլիայում։ Բայց գլխաւոր հարուածը պատրաստուած էր մայրաքաղաքի դէմ։ Անդադրում և քաջամարտիկ Մուավիան 672 թ. պատրաստեց մի ահեղ ծովային արշաւանք։ 673 թ. Ապրիլից մինչև Սեպտեմբերը նաւատորմիղը կանգնած էր Կոստանդնուպոլսի առաջ. բայց նոցա բոլոր հարուածները անզօր էին կայսեր խոհեմ պաշտպանողական միջոցների առաջ։ Ժամանակագիրների նկարագրութիւնները պաշտպանողութեան առաջին տեղը տալիս էին Կալլինիկոս ինջինների յունական կրակին. հռովմէական նաւատորմիղի հրակիրները ոչնչանում էին արաբական նաւերը։

Մինչդեռ Արաբները տիրապետում էին Եգէեան ծովին և 674 թ. անցողակի իրենց ենթարկեցին Կրետէն, իրենց հաստատուն բանակից՝ Կիւզիկոնից անօրինակ յամառութեամբ տարէցտարի իւրաքանչիւր ամառ նորոգում էին իրենց յարձակումները մայրաքաղաքի դէմ միշտ նոյն անյաջողութեամբ։ 677 վերջերին պաշարումը. Պամփիւլիայի ափերի մօտ պատահած փոթորիկները և կիբարէօտեան նաւատորմղի յարձակումը համարեա բոլորովին ոչնչացրել էին հպարտ արմադան։ Միաժամանակ Մարդաիտները, որ Տաւրոսեան լեռների քրիստոնեայ աւազակային գնդեր էին, ամրացրել էին Լիբանանում և իրենց աւարառութիւններով, որ մինչև Երուսաղէմ էր հասնում, անհանգստացնում էին նոցա ամէն տեղ. Մուավիան ստիպուած էր երեսնամեայ խաղաղութիւնը գնել տարեկան հարկ վճարելով։ Բիւզանդիոնը արևելքի յարձակումների դէմ հանդիսացել էր իբրև զօրեղ պատուար քրիստոնէական քաղաքակրթութեան համար. ժամանակակիցները գնահատեցին Արևլահռովմի մեծ գործի բարձր արժանիքը, և բազմաթիւ դեսպանութիւններ Ավարների խաքանից և արևմուտքի թագաւորներից ու ազգերից շնորհաւորում էին կայսեր՝ նորա տարած յաղթութեան համար։

Մինչդեռ պետութեան կենդրոնում այդ

դէպքերն էին պատահում։ Հեմուս Թերակղզու երկրորդ գլխաւոր քաղաքը՝ Թեսալոնիկէն շարունակ վտանգի մէջ էր։ 675—681 թ. համարեա ամէն տարի կրկնուող յարձակումների պատճառով, որ կատարում էին Մակեդոնիայում և Թեսալիայում բնակուած սլաւոնական ցեղերը։ Մանաւանդ սարսափելի էր 675 թ. յարձակումը, երբ քաղաքը պաշարուեց թէ ցամաքի և թէ ծովի կողմից։ 677 թ. Ավարները երևացին նրա պարիսպների տակ։ Բայց Սլաւոնների անհամաձայնութիւնը և պառակտումները և քաղաքացիների հերոսական ընդդիմութիւնը, որոնց առաջնորդում էր իրենց Յովհաննէս արքեպիսկոպոսը, ազատեց քաղաքը։ Ինչպէս որ մայրաքաղաքի յաղթութեան բախտը վերագրում էին շնորհառատ Աստուածամօր օգնութեանը, Թէսալոնիկէում էլ վերագրում էին ս. Դեմետրիոսին։

Աւելի մեծ նշանակութիւն ունեցաւ Բուլղարների երևան գալը հռովմէական հողի վրայ։ Այս Ֆիննա—Ուգրեան ժողովրդի ամենահին բնակատեղին գտնւում էր սարմատական դաշտավայրում։ Բայց վաղուց անջատուել էին բազմաթիւ խմբեր և չուել դէպի արևմուտք։ Նրանցից մէկը հաստատուել էր Դնեստրի, Դանուբի և Սեւ ծովի անկիւնում Իրենց Իսպերիխ (Ասպարուխ ըստ Յունաց)

քաջ և գործունեայ իշխանի ժամանակ նորա հօտանքը տարածուեց մինչև Միւսիա։ Կոստանդինը, նախատեսնելով վտանգը, մեծ ուժով նրանց դէմ գրեց, 679 թ. ծովային և ցամաքային զօրքով երևաց Դանուբի ստորին մասում։ Սակայն արշաւանքը միանգամայն անյաջող ելք ունեցաւ. ասում են որ պատճառը կայսեր յանկարծակի հիւանդանալն էր. Յոյները ստիպուած էին Դանուբի և Հեմուսի միջի երկիրը դատարկել։ Ասպարուխը այստեղ հիմնարկեց իւր նոր տէրութիւնը, որի կենդրոնն էր Վառնա, յետոյ Պրեսլաւ և Դրըստեր (Սիլիստրիա)։ Բուլգարները ապացուցեցին որ իրենք տիրող ժողովուրդ են՝ արդակարգ քաղաքագիտական հմտութեամբ և վարչական մեծ հանճարով։ Դանուբի երկիրների Սլաւները ստիպուած էին ենթարկուելու նոցա իշխանութեանը։ Երևում է որ փիննական տիրապետող դասակարգը շուտով միացել է հպատակների հետ և մի ժողովուրդ կազմել, և որովհետև նոքա, ինչպէս գերմանական տիրապետողները Սպանիայում և Իտալիայում, յաղթուածի լեզուն փոխ առան, ուստի առաջին անգամ կազմակերպուեց մի մեծ սլաւոնական պետութիւն, Սլաւոնական բազմաթիւ գաղութները, որոնք վաղուց բնակութիւն էին հաստատել պետութեան հիւսի-

սային նահանգներում՝ տէրութեան համար լուրջ վտանգ չէին ներկայացնում իրենց առանձնութեան, բաժան բաժան կացութեան և քաղաքական հասկացողութիւն չունենալուն պատճառաւ. իսկ Նորահաստատ բուլղարական պետութիւնը ընդհակառակը կոչուած էր ամենասոսկալի կերպով դեր խաղալու Արևելահռովմի վիճակում։

Ցեռագանները Կոստանդինի վերաբերմամբ, որ խիստ և անընկճելի զինուորական անձն էր, պահպանել են արտասովոր շնորհակալ յիշողութիւն, ոչ այնքան նրա քաղաքագիտական—զինուորական մեծագործութիւնների համար, այլ որովհետև տէրութեանը վերադարձրեց եկեղեցական խաղաղութիւնը։ Նա վեցերորդ տիեզերական ժողովով՝ 680-681 կործանեց միակամութիւնը—Monotheletismus—և վերականգնեց օրթոդոքսութեան իշխանութիւնը։[1] Այդ սառը դատող բնաւորութեան համար գերակշռել են քաղաքագիտական հիմունքները։ Մոնոֆիզիտ նահանգները վերջնականապէս կորել էին. ուրեմն ինչու՞, քանի որ պատճառ չկար, հաստատուն պահել այնքան ատելի միարարական հրովարտակը։[1]

1. Գոնէ այդպէս է պատմում ռուսական եկեղեցական պատմութիւնը: Իսկ իրապէս նրան դաւանութիւնը, որ

*Դրա վրայ աւելացաւ մի երկրորդ հանգամանք. Աղեքսանդրեան պապը հաւատարիմ կերպով օգնել էր կայսերական կառավարութեանը խռովական բանակայնների դէմ մղած պատերազմներում. Հռովմի պապի դիւանի ազդեցութիւնը արևմուտքում անպայման վճռողական էր։ Որպէսզի Յուստինիան և Հռովմը պաշպանուի պետութեան համար, պէտք էր որ բիւզանդական արքունի աստուածաբանութիւնը ստորադրուէր հռովմէականութեան։ Մեծ Սերգիոսի յիշատակը, ինչպէս երբեմն*

---

աւանդուած էր և հայրերից եւ դեռ Յուստինիանի ժամանակից Մենասի ձեռքով հանդիսաւոր կերպով յայտարարուած — Մենասի թղթի մասին և հայրերի գրութիւնների համաձայնական ուսումնասիրութիւնները, մասամբ կասկածաւոր բնաւորութիւն ունին — փոխարինեցին Մաքսիմոսի բոլորովին նոր դաւանաբանական ձեւակերպութիւններով, որը ընդունեց Մարտին պապը։ Ագաթոն պապը ներողութիւն է խնդրում իր հոգևոր խորհրդատուների տգիտութեան համար։ Սակայն չնայած դրան, Յոյն աստուածաբանները խոնարհուեցին նոցա առաջ։ Երևում է որ այստեղ էլ, ինչպէս Քաղկեդոնում, նշանակութիւն է ունեցել կայսերական ստիպմունքը։ Բայց եւ այնպէս Անտիոքի համարձակ Մակարիոսը պատրաստ էր ինքն եկեղեցական հաւատի ճշմարտութեան համար կտոր կտոր լինել։ Եւ ինչպէս ժողովին պատիւ չէ բերել, որ նզովել է երկու այնպիսի ականաւոր եւ ճշմարիտ սուրբ մարդկանց, ինչպէս են Հին-Հռովմի Հոնորիոսը եւ Նոր-Հռովմի Սերգիոսը։

մինիստրներին և իրան շրջապատեց բնաւորութիւնից զուրկ խարդախ անձինքներով, որոնց խարամանկութեան խաղալիք էր դարձել, չնայած իւր բոլոր իշխանական խաղերին։ Արդէն նրա պապ Կոնստանսը—որ ապացուցանում է Սիկիլիայի անջատումը — անպայման բնական վիճակի մէջ չէր. ուստի կարելի է բաւական չափով թեթևացնել Յուստինիանի մեղքերը, ի նկատի առնելով նրա ապացուցուած կեսարական խելացնորութիւնը։ Արաբների հետ արտաքուստ շատ յաջող խաղաղութիւն հաստատուեց, նոքա պարտաւորուեցին հարկ վճարել աւելի մեծ չափով։ Երկու մեծ պետութիւնները որոշեցին Կիպրոսը, Հայաստանը և Վրաստանը իբրև մի տեսակ «ընդհանուր տիրապետութիւն» միասին կառավարել։ Բայց Հռովմայեցիների փոխադարձ պարտաւորութիւնը—Մարդայիտներին հեռացնել և բնակեցնել Փոքր Ասիայում և Թրակիայում, նկատուեց իբրև ծանր սխալ։ Իրաւ է քրիստոնէական կրօնի համար այդ յառաջամարտիկները կարող էին վայրենի աւազակային գնդեր լինել, նէապոլիտական աւազակների նման, որոնց զէնքը օրհնեց Ռուֆֆո կարդինալը, բայց նոցա աւերումները և բարբարոսութիւնները աւելի չէին, քան ինչ որ կատարւում էր արդար պատերազմի ժա-

մանակ, և նոքա հարուածում էին միայն «Աստուածոյ անիծեալ անհաւատ Հագարացոց»։ Բայց քրիստոնէական ժողովուրդները խիստ յարգում էին նոցա և դաստիարակում էին կայսեր, որ ինքն անձամբ կործանեց հռովմէական պետութեան «երկաթէ պարիսպները»։ Դրա հակառակ կէպլրծես կայսեր արշաւանքները Բուլղարների և Սլաւոնների դէմ սկզբում յաջողութեամբ պսակուեցին։ Նա Բուլղարներին յետ մղեց, Հեբրոսի և Ստրիմոնի գաւառների Սլաւոններին ընկճեց և յաղթանակով առաջ անցաւ մինչև Թեսալոնիկէ։ Սլաւոններին մեծ խմբերով տեղափոխեցին Ասիա, Հելլեսպոնտոսի նահանգները և Օպսիկիոն թեմը, և նոցանից կազմեցին զօրքի մի առանձին բաժին 30,000 հոգուց բաղկացած։ Սակայն նոր ծանր հարուածներ կրեց Բուլղարներից թէ իւր վերադարձի ժամանակ և թէ երևաց՝ որ իւր նոր սլաւոնական զինուորները միանգամայն անվստահելի են։ Երբ 691 Թ. Յուստինիանը առանց հիմնական պատճառի լուծեց Արաբների դէմ խաղաղութիւնը, 692 Թ. Կիլիկիայում Սեբաստոպոլսի մօտ ծանր պարտութիւն կրեց, գլխաւորապէս իւր սլաւոնական օգնական գնդերի դաւաճանութեան պատճառով։ Հետևանքը այն եղաւ, որ Հայաստանը նորից ամբողջովին Արաբների ձեռքն ընկաւ։

անգամ յաջող յաղթեց Արաբներին, թէև իրաւ է չկարողացաւ արգելք լինել որ նոքա չհաստատուէին Կիլիկիայում։ Հայերի ապստամբութիւնը յօգուտ Հռովմի՝ շատ շուտով արիւնալից վախճան ունեցաւ արաբ զօրավարի ձեռքով։

Լուրջ վտանգ էր ներկայացնում կառավարութեան համար անդադրում Յուստինիանը։ Նա փախել էր Խազարների մօտ և պսակուել Խաքանի աղջկայ վրայ որի քրիստոնէական անունը Թէոդորա էր։ Նա, միայն իւր զարմանալու արժանի եռանդի շնորհիւ, կարողացաւ ազատուել բարբարոսների իշխանի դաւադրութիւնից, որին գնել էր Յունաց ոսկին։ Փոքրաթիւ համախոհների հետ փախաւ, վտանգաւոր ծովագնացութիւնից յետոյ հասաւ յունական մի մակոյկի վրայ Դանուբի բերանը և յարաբերութեան մէջ մտաւ Իսպերիխի յաջորդ Տերվելի հետ (Տերբելիս), որին նա միանգամայն իւր կողմը քաշեց։ Սլաւոնական և բուլգարական զօրքը 706 թ. նրան տարան Բիւզանդիոն։ Խորամանկութեամբ յաջողուեց քաղաքին տիրանալ։ Տերվելին կեսար կարգեց և առատ վարձատրելով արձակեց։ Մայրաքաղաքը այնպիսի սոսկալի պատժի ենթարկուեց կիսախելացնոր կայսրից, որի նմանը չէր տեսնուել։ Իւր երկու հակաթոռ կայսրներին քա-

դաշտի փողոցներում անպատիւ կերպով ցոյց տալով՝ գլխատեց կրկէսում։ Կալլինիկոս պատրիարքը՝ որ Յուստինիանի գահընկեցութեան օրը հրապարակել էր Տիրոջ օր և օծել էր երկու կայսրներին՝ կուրացած աքսորուեց Հռոմ։ Հանկարծակի կատաղութեան բոլոր յայտնի զինուորականները սոսկալի մահ կրեցին։ Նոյն վիճակը հասաւ բազմաթիւ քաղաքացիների և զինուորների, այնպէս որ առաջկան պատերազմների ժամանակ ստիպուած էին զօրքի շարքը լրացնել պատերազմում վարժուած գիւղացիներով։ Բոլորը սարսափում էին այդ խելագար զարհուրելի բռնակալի վերահաստատութեան ժամանակ։ . . .

Արտաքուստ Յուստինիանի երկրորդ իշխանութիւնը բաւական անյաջող էր։ Բուլղարների դէմ ձեռնարկած մի մեծ արշաւանք՝ որի ժամանակ կայսրը տիրեց Անքիալոս քաղաքին՝ վերջացաւ կատարեալ անյաջողութեամբ։ Հազիւ ազատուեց Յուստինիանը և իւր զօրքի մի մասը ծովային ճանապարհով։ Ի զուր փորձեց օգնութեան հասնել Տիւեանա քաղաքին՝ որ պաշարել էին Արաբները։ 709 թ. քաղաքը դաշնագրութեամբ ընկաւ անհաւատների ձեռքը։ Կայսրը առանձին ատելութեամբ լցուած էր Ռաւեննա և Քերսոն քաղաքների դէմ՝ որ բացարձակ պահել էին

թերահաւատութիւնից, կամ գուցէ որպէսզի գրաւի իւր հայրենակից Հայերին — նա Հայերին նոր բնակութեան տեղեր տուաւ աւերակ դարձած Մելիտենէ քաղաքում և չորրորդ Հայքում — կայսրը իւր արևելեան հոգևորականների համաձայնութեամբ, բայց Հին-Հռովմի բացարձակ ընդդիմութեամբ. մի անգամ էլ մի անցողական յաղթութիւն պատրաստեց միակամութեան դաւանութեան համար։ Մինչ այդ՝ Թրակիայի Օպսիկիոն թեմի զինուորականների ապստամբութիւնը պատրաստեց նրա իշխանութեանը վաղաժամ վախճան։ Հոգեգալստեան Կիւրակէին 713 թ. մի յայտնի քաղաքային պաշտօնեայ, գաղտնի քարտուղար Արտեմեմիոսը Անաստաս Բ անունով 713-715 կայսր օծուեց։ Սա իսկոյն մտքերը խաղաղացրեց վերահաստատելով օրթոդոքսութիւնը։ Բայց նա ամենից առաջ իւր ուշքը դարձրեց կանոնաւոր ծրագրով կարգաւորելու զօրքը, որ երկար ժամանակուայ անիշխանական դրութեան պատճառաւ կատարելապէս քայքայուած և անհնազանդ էր դարձել։ Միւս պատժի ենթարկեցին վերջի գահակալութեան փոփոխութեան մասնակցողներին։ Նա ընդհանրապէս շատ յաջող ձեռք ունէր զօրապետական իշխանութիւնը բաժանելու ամենակարևոր խնդրում։ Լսելով որ Մուսլիմները մեծ պատրա-

*տուԹիւն էին, տեսնում մայրաքաղաքին տիրելու, սրան ամրացրեց պաշտպանութեան Համար, և նաւատորմիղն էլ Հրաման ստացաւ Ռոդոսի մօտ ժողովուելու, որպէսզի Արաբների դէմ յարձակողական պատերազմ սկսելով նոցա առաջն առնէն: Բայց Օպսիկիոն Թեմի զինուորները սովորած կայսր փոխելու, նորից խռովեցին, սպանեցին իրենց ծովապետին և նաւեցին մայրաքաղաքի դէմ: Գաւառական մի բոլորովին աննշան պաշտօնեայ, Թէոդոսիոս (715-717) Հակառակ իւր կամքին, կայսր Հը-րատարակուեց: Մայրաքաղաքը դաւաճանուԹեամբ ընկաւ ապստամբների ձեռքը: Սակայն ամենանշանաւոր զօրապետները, Անատոլեան Թեմի Լևոն և Հայկական Թեմի Արտաւազդ Հրամանատարները չընդունեցին նոր կայսեր: Մինչ այդ Սուլէյման խալիֆը աւարտել էր իւր պատրաստութիւնը. Նորա զօրապետները որ մտել էին Ասիա, Լևոնին Թագ առաջարկեցին: Սա ձևի Համար նոցա Հետ յարաբերութեան մէջ մտնելով, օգնութեան Հասաւ նշանաւոր Ամորիոն քաղաքին որ պաշարուած էր: Արաբացոց մեծ զօրքը, առանց յիշատակութեան արժանի մի գործ կատարելու, ստիպուած էր աւերուած երկրից յետ քաշուել: Այժմ Լևոնը առանց արգելքի արշաւեց մայրաքաղաքի վրայ: Թէոդոսիոսը պատ-*

բնակչին և անհապաղ համաձայնութեամբ հրա-ժարուելու գահից։ 717 թ. Մարտի 25-ն Լևոն Գ-ը (717—741) կայսր հրապարակուեց։ Սարացիների պաշարումը, որին մայրաքաղաքը ենթակայ էր մուսուլմանների կողմից, ազդել էր այդ վճռի վրայ։

Հերակլի տունը՝ յաղթութեամբ պատերազմել էր Իսլամի դէմ։ Աւանդական պատմութիւնները զարմանքով գովում են Կարլ Մարտելին, որ Աբդուռահմանին Պուատիէի մօտ ջարդել էր, և ոչ առանց հիմքի։ Բայց այդտեղ կատարուածների մասին մոռանում ենք արժանաւորապէս գնահատել Արևելահռոմի ուժեղ մեծագործութիւնը։ Սա իր հարիւրամեայ մրցման մէջ յետ է մղել ոչ թէ աշխարհակալի վերջի շառաւիղին, այլ դէմ էր դրել նրա գլխաւոր ուժի հարուածներին։ Արևմտեան քաղաքակրթութեան կիզակէտը և ապաստանարանը այն ժամանակուայ համար Փոքր Ասիան էր։ Նոր դաւանանքները, որ իբրև ճշմարիտ ուսմունք յայտարարւում էին. քրիստոնէական աշխարհի պետութեան մէջ գումարուած բազմաթիւ ժողովներում, մեծաւ մասամբ փոքր ասիական եպիսկոպոսների մտածածներն են։ Փոքր ասիացիներն էին այն թեմերը կամ զօրաց մարմինները, որ յետ էին մղում արևելքի ժառանգական թշնամուն. Սլաւոններից ու-

*ղողուած՝ պետութեան եւրոպական մասը այս թէ հեռաւոր շրջանում քիչ դեր է խաղում։ Փոփոխութիւն տեղի ունեցաւ միայն բուլգարասպան Բազիլիոսի յաջորդութիւններով և երբ արեւելքը անապատ դարձաւ զզուելի Սելջուկների յարձակումներից։ Իրաւ է շատ արագ էր տիրապետել զարհուրելի ուժասպառութիւնը։ Ամբողջ սերունդներ տեւող պատերազմական դրութիւնը զօրքը կատարելապէս վայրենացրել էր․ նա կատարելապէս վըստահ իւր արտակարգ նշանակութեան վրայ, իշխում էր անսահմանափակ։ Ամենալաւ ժամանակն էր, որ մի երկաթէ բռունցք կարգ և օրէնք հաստատէր։ Եւ երեւաց այն մարդը, որ արեան և երկաթի միջոցաւ պէտք է գըլուխ բերէր տէրութեան վերածնութիւնը։*



## Գ.

# ՎԵՐԱԾՆՈՒԹԻՒՆ

## ՍԻՐԻԱԿԱՆ (ԻՍԱՒՐԵԱՆ) ԿԱՅՍՐՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿ
## ԵՒ
## ՊԱՏԿԵՐԱՄԱՐՏՈՒԹԻՒՆ

*(717—867)*



*Լեւոն Իսաւրացու*[1] *գահ բարձրանալը տէրութեան պատմութեան մէջ նշանաւոր յեղաշրջաններից մէկն է, և իսկական ընդհանուր պատմական նշանակութիւն ունեցող րոպէ է։ Արաբների վերջին, բայց ամենասարսափելի վտանգը այդ հանճարը իբրև զօրապետ ընդմիշտ ոչնչացրեց։ Նա ներկայանում է պետութեան իսկական վերանորոգիչ՝ զօրքը վերանորոգելով, տնտեսութիւնը կանոնաւորելով և վարչական կազմը կարգաւորելով։ Սիրիական հարստու-*

---

[1] Ես գործ եմ ածում այդ մականունը որ ամբողջ դարերի սխալով սրբագործուած է, թէեւ Լեւոնը ծագում է Գերմանիկէից, հետեւապէս Սիրիացի էր։

թեան ժամանակ Հռովմայեցոց կայսրների բազմաչարչար հպատակների համար ծագում է աւելի լաւ ապագայի արշալոյս: Սակայն այս մեծ կառավարիչն էլ ունէր իւր Աքիլլեսեան գարշապարը: Նա եւս այն ոյժի-մարդկանց նման էր, որոնք արտաքին քաղաքականութեան եւ պատերազմի դաշտում յաջողակ լինելով, սխալ համոզման մէջ են ընկնում՝ թէ կրօնական մի զօրութիւն ինչպիսին եկեղեցին է, կարող է արտաքին ոյժով եւ օրէնքների յօդուածներով ընկճուել պետութեան լծի տակ: Վարդապետ պատմագիրները միակողմանի շեշտել են նրա այս ծանր սխալը, եւ դրանով նսեմացրել մեծ զինուորականի եւ քաղաքագէտի պատկերը:

Լեւոնի կառավարութեան առաջի տարին է ընկնում Կոնստանդնուպօլսի յիշատակութեան արժանի պաշարում մը: Մասլամանը, որ աւրել էր Պերգամոնին եւ ձմերել Ասիայում 717 թ. ամառը Աբիւդոսի մօտից անցաւ Հելլեսպոնտը: Օգոստոսի միջին նա բանակ դրեց մայրաքաղաքի առաջ. սեպտեմբերի սկզբին Սուլէյմանի առաջնորդութեամբ հասաւ նաւատորմիղը: Սակայն պաշտպանութիւնը Լեւոնը առաջ տարաւ նոյնքան մեծ խելքով, ինչքան եւ եռանդով: Յունական կրակը ոչնչացնում էր նաւերը: Թէ եւ մուսլիմները ամենամեծ տոկունութեամբ դիմացան արտասովոր ձմրան խիստ ցրտերին, եւ մի ամբողջ

*տարի համբերեցին մայրաքաղաքի առաջ, վերջապէս ստիպուած էին 718 թ. օգոստոսին ահագին կորուստներ կրելուց յետոյ, յետ քաշուել Ասորիք։ Այս դէպքի ընդհանուր պատմական նշանակութիւնը շատ դժուար է ըստ արժանւոյն գնահատել։ Արաբների յառաջ խաղալը իւր գագ. նակէտին հասաւ. Բիւզանդիոնը և իւր կայ.րը նոցա յետ վանելով՝ ազատեցին քրիստոնէութիւնը և արևմուտքի քաղաքակրթութիւնը։ Դեռ այսօր էլ Ակաթիստոս շարականի մէջ օրթոդոքս եկեղեցին գոհունակութիւն է յայտնում երեք մեծ հերոսներին՝ Հերակլ, Կոնստանդին Դ և Լևոն Գ-ին, որոնք ազատեցին երկիրը Աւարների, Պարսիկների և Արաբների վտանգից։ Լևոնի իշխանութեան օրով դարձեալ յաճախ կրկնուեցին մուսլիմների յարձակումները Փոքր Ասիայի վրայ, բայց դոքա այլևս տէրութեան համար հոգսերի առարկայ չէին, և 740 թ. Արաբների դէմ մի մեծ և վճռողական յաղթութիւն տարան Ակրոյինոսի մօտ։ Հիւսիսի զօրեղ պետութեան հետ լաւ յարաբերութիւն հաստատեցին նրանով, որ գահաժառանգ Կոստանդինը ամուսնացաւ Խազարների Իրենէ իշխանուհու հետ։ Երկրի ներսի ապստամբութիւնները կայսրը խորտակում էր արագ գործողութեամբ։ Սիկիլիան, որ ապստամբուել էր մայրաքաղաքի պաշարման*

ժամանակ և մէկին հակաթոռ կայսր էր հրատարակել, առանց նեղութեան նորից ընկճուեց։

Երբ այդպիսով ներքուստ և արտաքուստ ապահովեցրել էր երկիրը, մեծ կայսրը կարողացաւ մտածել պետութեան վերածնութեան մասին։ Թէ նա ինչքան եռանդով աշխատում էր օրէնսդիրութեան համար, ապացոյց կարող է ծառայել իւր և իւր կայսրակից Կոստանդինի որդու հետ միասին հրատարակած «Ընտրութիւն օրինաց» ու գոյութիւն ունեցող օրէնքների համար մի համառօտ ձեռնարկ էր, և որի մէջ երևում է օրէնքների մէջ կատարուած դարերի զարգացումը՝ քրիստոնէութեան ազդեցութեան տակ։ Երկրագործութեան վերաբերեալ կարգադրութիւնները, (nomos georgikos) որով կանոնաւորւում էին հողատէրերի և ազատ հողատէր գիւղական համայնքների յարաբերութիւնները վարձկալների հետ, սկիզբն են առել այն հանգամանքից, ինչպէս հաւանականօրէն ենթադրում են, որ երկրի մէջ գաղթել են այլ և այլ օտար ազգեր (Մարդաիտներ և Հայեր՝ Փոքր Ասիայում, Սլաւոններ՝ Հեմուս Թերակղզում)։ Բնորոշ է որ այդ նոր վարձկալներն ու գիւղացիները՝ հակառակ հներին, հողի հետ միացած գաղութներ էին՝ անձնապէս ազատ։

Իսկ ամենից առաջ նա իւր խնամքը գործ դրեց զօրքի վրայ։ Թուլացած կարգապահու-

*թիւնը վերահաստատուեց, և թէ ինչքան մնայուն էին զօրքի վերաբերեալ նրա կարգադրութիւնները՝ ապացուցանում են իր սեպհական և իր որդու զինուորական յաջողութիւնները։ Դրա հետ միասին կապուած է նրա կարգաւորութիւնը նահանգների մասին։ Թեմերի հաստատութիւնը, ինչպէս Հերակլեանների հարստութեան ժամանակ ստեղծուել էր աստիճանաբար՝ շնորհիւ ժամանակի նեղութիւնների և պետական թշնամիների պատերազմների, Լևոնի ձեռքով ստացաւ իւր վերջին ձևակերպութիւնը։ [1] Գանձարանը Փիլիպիկոսի վատ-*

---

[1] Այն ժամանակուայ թեմերն էին՝ Ասիայում. 1. Օպսիկիոն, 2. Անատոլիկոն, 3. Թրակեսիոն, 4. Արմենիակոն, 5. Կիբիւռայոտիկոն, 6. Բուկելարիոն, 7. Կոլոնեյա: (?)

Եւրոպայում. 1. Թրակէ, 2. Հելլաս Պելոպոնեսի հետ, 3, Մակեդոնիա (?), 4. Սիկիլիա Կալաբրիայի հետ:

Վերջապէս Կոստանդին Պորփիւռոգենետոսը Ժ-րդ դարու սկզբում բերում է. Ա. Ասիայում՝ 1. Անատոլիկոն, 2. Արմենիակոն, 3. Թրակեսիոն, 4. Օպսիկիոն, 5. Օպտիմատոն, 6. Բուկելարիոն, 7. Պափլագոնիա, 8. Խալդիա, 9. Մեսոպոտամիա (Միջագետք,) 10. Կոլոնեյա, 11. Սեբաստեյա, 12. Լիկանդոս, 13. Սելեւկիա, 14. Կիբիւռայոտիկոն, 15. Կիւրոս, 16. Սամոս. 17. Էգեյեան ծովը. 18. Կապադովկիա:

Բ Եւրոպայում՝ 1. Թրակէ, 2. Մակեդոնիա, 3 Ստրիմոն, 4. Թեսաղոնիկէ, 5. Հելլաս, 6. Պելոպոնես, 7. Կեֆալենիա, 8. Նիկոպոլիս, 9. Դիւռախիոն, 10 Սիկելիա, 11. Լոնգոբարդիա, 12. Խերսոն:

նելով, և արաբական պատերազմների մեծ ծախսերով սաստիկ դատարկուել էր. միայն խիստ տնտեսական օրէնքներով հարկ էր կարգը վերականգնել, Հարկերի ծանրութիւնը վարչական միակ միջոցն էր, որ արևելցիներն էլ էին խիստ զգում, որոնք այլապէս համբերող են և սովոր։ Ժողովուրդը աւելի երանի էր տալիս արաբական իշխանութեան տակ եղող քրիստոնեաներին. և կայսեր կոչում էր նոր Փարաւոն։ Սակայն պետութեան տնտեսութեան մէջ վերահաստատուեց հաւասարակշռութիւնը։

Բայց և այնպէս պետութեան վերածընութեան համար կատարուած այս մեծագործութիւնները չէին, որ պահպանել են կայսեր յիշատակը յետագայ սերունդների մէջ, որոնք իրաւ է արտակարգ թշնամաբար էին վերաբերւում դէպի նրան, այլ եկեղեցական վէճերը։ Պատկերամարտութիւնը ծագում է փոքր ասիական արմատից։ Պետութեան եկեղեցու միութիւնից հեստեալ համայնքները ներքում և թերակղզու արևելքում (Մոնտանիստները, Պօղիկեանք) դէմ էին գոյութիւն ունեցող պատկերապաշտութեան՝ իբրև անաստուածութեան։ Փռիւգիայի մի եպիսկոպոս՝ Կոստանդիանոս Նակոլէյա քաղաքից ընդունեց այդ ուսմունքը և հետևողներ գտաւ նոյն իսկ բարձր հոգևորականութեան մէջ։ Իսլամի մեղադրանքը՝

ուղղուած պատկերների, նշխարների և սրբերի պաշտաման դէմ, թէ Քրիստոսի հաւատը բազմաստուածութիւն է, տպաւորութիւն էր թողնում զարգացեալների վրայ և մտածել տալիս։ Լեւոն կայսրը, երբ նա իր 726 թ. հրովարտակով հանդէս դուրս եկաւ պատկերապաշտութեան դէմ, ենթակայ էր այն կրօնական հոսանքին որ ասիական նահանգներում խորը տարածուել էր։ Աւելի ուժեղ էր ամբողջ պետութեան միւս մնացած մասի ընդդիմութիւնը։ Ամենից առաջ ամեն տեղ վարդապետները սկսեցին պաշտպանել պատկերապաշտութիւնը և դրանով՝ յունական եկեղեցու առանձնայատկութիւնը։ Վարդապետների համար պատկերներ նկարելը ապրուստ վաստակելու գլխաւոր աղբիւրներից էր, հետևապէս պատկերամարտութիւնը դ
կռիւ։ Մայրաքաղաքի բնակիչների յուզմունքը կարելի եղաւ հանդարտացնել միայն զէնքի ոյժով։ Սրբերի պատկերական պաշտամանը մանաւանդ ամուր կպած էին Յունաստանի և կղզիների բնակիչները, որոնց աչքում նոքա բռնել էին իրենց հին ցեղական աստուածների և հերոսների տեղերը։ Նոցանից զինուած մի նաւատորմիղ, մի հակաթոռ կայսեր առաջնորդութեամբ 727 թ. նաւեց մայրաքաղաքի դէմ. բայց սոքա զոհ գնացին յունական

կրակին, ինչպէս երբեմն Սալամինեան մարտիկները, որ կռւում էին հելլենական հայրենի աստուածների համար։

Երբ նոյն տարին կայսերական հրովարտակը պատկերների մասին հասաւ Իտալիա, Գրիգոր Բ պապը իրան յայտարարեց նրան դէմ և բանադրեց կայսերական էքսարխին։ Ամբողջ նահանգը դիմեց բացարձակ ապստամբութեան և միացաւ Լանգոբարդների հետ։ Սակայն Վենետիկեցոց հաւատարմութիւնը, ինչպէս նաև Պապի բռնած խելացի քաղաքագիտական դիրքը, արգելք դարձան Արևելահռովմի կառավարութեան հետ կատարեալ պառակտմանը. և միանգամ էլ ազատուեց բիւզանդական տիրապետութիւնը Իտալիայում։

Կռիւը անցաւ սահմաններից դուրս։ Խալիֆի ու ղղահաւատ հպատակները եռանդով պաշտպանում էին պատկերապաշտներին. Նոյն դարը գրականութեան մէջ ամենից առաջ փայլուն կերպով պաշտպանում էր Յովհաննէս Դամասկացին։ Աւելի վճռողական գտնուեց Լևոնը։ Տիեզերական Գերմանոս պատրիարքը՝ որ պատկերապաշտութեան ջերմ պաշտպան էր, ստիպուած էր 729 թ. տեղի տալ Անաստասին՝ որ կայսեր համախոհներից էր։ Իրաւ է անյաջող անցաւ Հռովմին և Իտալիային նորից տիրապետել. 731 թ. արևելա-

Հռովմէական նաւատորմիղը ոչնչացաւ Ադրիական ծովում. բայց Ստորին Իտալիայում և Սիկիլիայում, որտեղ մնացել էր Յունաց իշխանութիւնը, յարքունիս գրաւեցին Ս. Պետրոսի կալուածները: Այդ երկիրները և ամբողջ Իլլիւրիկում, որ մինչ այդ ենթակայ էին Հին-Հռովմի պապերին, ենթարկուեցին Կոստանդնուպոլսին: Պատկերամարտութիւնը աստիճանաբար պարզ կերպով շահերի կռիւ էր դարձել: Մի կողմը կանգնել էին բարձր պաշտօնեաները և նմանապէս եպիսկոպոսները, որ կայսեր էին յատկացնում եկեղեցին պահպանելու և կառավարելու իրաւունքը, միւս կողմից ժողովրդի համակրութեան վրայ յենուած վարդապետներն էին, որոնք բացասում էին աշխարհական իշխանութեան որ և է միջամտութիւն հոգևորական գործերում:

Երբ Լևոնը 741 թ. Յունիս 18-ն[1] մեռաւ և իշխանութիւնը թողեց իւր հասակն առած

---

1. Է եւ Ը դարերի ժամանակները գլխաւորապէս կրկնուած են Թէոփանէսի՝ շատ անգամ միայն մօտաւորական ճիշդ թուերը: Այդ ամբողջ շրջանը ժամանակագրական տեսակէտից պէտք է նորից հիմնովին ուսումնասիրուի կանոնաւոր կերպով՝ ի նկատի առնելով ասորական, արաբական եւ հայկական ուսումնասիրութիւնները, որովհետեւ մինչեւ օրս որոշ վճռողական արդիւնքների չեն հասել Պագիսի, Գուտշմիդի եւ Բուրիւսի դատողութիւնները.

ու եռանդոտ Կոստանդին Ե. որդուն (Կոպռոնիմոս 741—775) կռիւը իր կատարեալ բորբոքման մէջ էր։ Կայսեր աները, Հայազգի Արտաւազդը օգտուելով պատկերապաշտների գռգռմունքից և զօրքի մէջ բազմաթիւ Հայերի յատուկ համակրանքից, ապստամբեց։ Մայրաքաղաքը և պատրիարքը անցան նրա կողմը։ Միայն երկամեայ պատերազմից յետոյ Կոստանդինը կարողացաւ նորից վերցնել մայրաքաղաքը և կուրել հակաթոռ կայսեր աչքը։

Այդպիսով կայսրը կատարելապէս հաստատելով իր իշխանութիւնը, մեծ յաջողութեամբ առաջ տարաւ պետութեան արտաքին քաղաքականութիւնը։ Արաբների դէմ կռւում էր բացարձակ յաջողութեամբ։ Մի մեծ նաւատորմիղ, որ նորից պէտք է խլէր Կիպրոսը Յոյներից, 746 հիմնովին խորտակուեց։ Գերմանիկէյա, Մելիտենէ (Մալաթիա) և մինչև անգամ Թէոդոսուպոլիսը Հայաստանում (752 թ.) վերստին գրաւեցին։ Յօգուտ Հռովմայեցիների ծառայեց խալիֆի տէրութեան խռովութիւնները, որ սկսեցին Օմաիդների կործանումով և Աբբասիդների հաստատութիւնով. իրաւ է 756 թ. իրերի դրութիւնը նորից փոխուեց։

Ամենամեծ զօրութեամբ կայսրը պատերազմում էր Բուլգարների դէմ։ Ոչ պական

*քան ութ անգամ՝ դուրս եկաւ դաշտ նոցա դէմ։ Ծանր պարտութիւնները նրան չէին յուսահատեցնում, և 763 թ. փայլուն յաղթութիւնը առաջ բերեց թշնամու երկրում գահակալական փոփոխութիւններ և Բուլղարների կատարեալ թուլութիւն. միայն Կոստանդինի կառավարութեան վերջին ժամանակները Գերիկը (Տելերիգոս) վտանգաւոր դարձաւ։*

*Ամբողջ Հելլասի և Պելոպոնէսի սլաւոնանալը յիշում է միայն մի աղբիւր, որ այդ դէպքը կապում է Կոստանդինի կառավարութեան ժամանակ՝ 746 թ. պատահած սարսափելի ժանտախտի հետ, որ պետութեան համար այնպիսի մի հարուած էր, ինչպէս Յուստինիանի ժամանակուայ ժանտախտը։ Սակայն կայ անժխտելի վկայութիւն, որ Սլավոնները Պելոպոնէսում Լեւոնի ժամանակ արդէն հին բնակիչներ էին։ Մենք արդէն տեսանք, որ հելլենական նահանգների սլավոնանալը, որը Պելոպոնէսի վերաբերմամբ սահմանափակուած մնաց միշտ երկրի միայն մի քանի մասերում, անհամեմատ աւելի շուտ էր սկսուել։*

*Եկեղեցու հետ կռուի մէջ կայսրը անհամեմատ աւելի ծայրահեղ էր և խիստ քան իւր հայրը։ Նա փորձեց պատկերապաշտ վարդապետների ընդդիմութիւնը կոտրել՝ կանոնաւոր*

հալածանքներ յարուցանելով, որ կառավարութեան վերջին տարիները աւելի սաստկացաւ, արիւնալից մարտիրոսութիւններով, վանքերի կալուածների խլելով և ուխտաւորներին՝ աշխարհական դարձնելով։ Նրա թեթևամիտ ծաղրը եկեղեցու հաւատի մասին՝ սարսափ ազդեց նոյն իսկ արքունի պատրիարքներին, որոնք նրան խիստ ենթակայ էին։ Սակայն եպիսկոպոսութիւնը միացաւ կայսերական եկեղեցական քաղաքականութեան հետ և այդ՝ հանդիսաւոր կերպով սրբացած յայտարարեց 754 թ. կրօնական ժողովի մէջ, թէև այդ որոշումները չընդունեցին ոչ արևելքի պատրիարքները և ոչ էլ Հռոմի պապը։ Իւր կայսրութեան ամբողջ ընթացքում կայսրը անձնային վճռողականութեամբ և խստութեամբ ամուր պահպանեց վարդապետների և պատկերների դէմ վարուելու իւր ընտրած եղանակը։

Նրա որդի Լևոն Դ-ը (775 780) իւր կարճատև կառավարութեան ժամանակ մասամբ չափաւորացրած, բայց անփոփոխ պահեց իրենից նախնթաց ժամանակուայ եկեղեցական քաղաքականութեան հիմունքները։ Արաբների հետ անընդհատ շարունակուող սահմանային կռիւները Գերմանիկէյի մօտ 778 թ. յաղթութիւնով, Յոյների համար յաջող վախճան ունեցան։

Սրա մահուանից յետոյ (8 Սեպտեմբերի 780) Նրա փոքրահասակ Կոստանդին Զ որդու փոխարէն կառավարութեան ղեկը ձեռն առաւ խելօք և չափազանց փառասէր Իրենէ կայսրուհին՝ մի խումբ պալատականների հետ ի միասին, որոնց մէջ ամենանշանաւոր և ազդեցիկն էր Պատրիկիոս Ստաւրակիոսը։ Արբասիդների հետ սահմանային պատերազմը շարունակւում էր, որի դաշտը բացառապէս յունական Փոքր-Ասիան էր։ Պատերազմները Յունաց համար դժբախտ վախճան ունեցան և կայսրուհին ստիպուած եղաւ 783 թ. եռամեայ զինադադարը գնել հարկ վճարելով տարեկան 70,000 ոսկի։ Հարուն-ալ-Ռաշիդը 786 թ. մի շարք ամրութիւններ շինեց, որ յետոյ փայլուն ծառայութիւններ մատուցին և որ հասցնելով Մալաթիայից մինչև Տարսոն, դրանով Հռովմայեցիներին խիստ զգալի դարձրեց իւր զինուորական գերազանցութիւնը։ Ստաւրակիոսը աւելի յաջող պատերազմ էր մղում Բալկանեան թերակղզու վրայ։ Նա ստիպեց Մակեդոնիայի և Հելլասի սլաւոնական իշխաններին հարկ վճարել և յաղթանակով անցաւ ամբողջ Պելոպոնէսի վրայով։

Աւելի նշանաւոր էր այն, որ կայսրուհին յաջողեցրեց վերականգնել եկեղեցու խաղաղութիւնը՝ չնայած զինուորական կուսակ-

*ցութեան և բարձր հոգևորականութեան ընդդիմութեանը։ Տիեզերական ժողովը, որ սկըզբում՝ որոշուած էր մայրաքաղաքում գումարել, բայց յետոյ կայսերական պահապան գնդի բռնած սպառնական դիրքի պատճառաւ 787 թ. բացին Նիկիայում, որը ոչնչացած հրատարակեց 754 թ. կեղծ ժողովի որոշումները, վերահաստատեց օրթոդոքսութիւնը և պատկերների պաշտամունքը պարտադիր արաւ հաւատացեալների համար։ Ըստ այնմ էլ նորից խաղաղութիւն հաստատուեց Հռոմի և արևմուտքի մէջ։ Դաւանաբանական տեսակէտից վարդապետական կուսակցութեան յաղթութիւնը կատարեալ էր. բայց կայսրութիւնն իրան վերապահեց կառավարչական իրաւունքը եկեղեցական բարձրագոյն վերահսկողութեան խնդրում։ Ուստի եկեղեցու բացարձակ ազատութեան ներկայացուցիչները՝ Պղատոն վարդապետը և նրա եղբօրորդի մեծն Թէոդորոս Ստուդիոնցին անընդհատ լարուած յարաբերութեան մէջ մնացին կառավարութեան և կայսեր ենթակայ Տարասիոս և Նիկեփորոս պատրիարքների հետ։*

*Ամենամեծ վճռողականութեամբ Իրենէն իւր ձեռքին պահեց կառավարութեան ղեկը նաև երբ իւր որդին մեծացաւ։ Նա ինքնակամ 788 թ. լուծեց որդու հարսնախօսու-*

*թիւնը Ֆրանկների իշխանուհու հետ, որ քաղաքականութեան համար մեծ նշանակութիւն ունէր և ստիպեց ուրիշի վրայ ամուսնանալ։ Բայց զօրագնդերի ապստամբութիւնը* 790 *թ. միապետութիւնը տուեց Կոստանդնին։ Սա հաւատարիմ իւր տան աւանդութեան՝ քաջութեամբ կռուեց Բուլգարների և Արաբների դէմ, թէև ընդհանրապէս անյաջող։ Սակայն* 792 *թ. մեծ սխալ գործեց երբ իւր փառասէր ու անխղճմտանք մօրը նորից պաշտօնակից կարգեց։ Նրա գաղտնի գործն էր, որ կայսրը բաժանուեց իւր նախկին կնոջից և նորից* 795 *թ. ամուսնացաւ. Թէոդոտէ պալատական օրիորդի հետ։ Որովհետև արքունի-հոգևորականութիւնը, ամենից առաջ պատրիարքը, այդ բանը լռութեան տուեց, խիստ ուղղութեան հետևող անձինք, որոնց պաշտպանում էր Ըյրենէն՝ Պղատոնը և Թէոդորոսը և սոցա հետևող վարդապետական կուսակցութիւնը հրաժարուեցին եկեղեցական հաղորդակցութիւն ունենալու Կոստանդնի և նրա պատրիարքի հետ։ Կայսեր նշանակուած պատիժները՝ բանտ և աքսոր, վարդապետներին դարձրին եկեղեցական ազատութեան մարտիրոսներ և ինպաստ խարդախ Ըյրէնէի ծածուկ ցանկութեան, աւելի մեծացրին նրա որդու անժողովրդականութիւնը։ Երբ սա անմիտ կար-*

*գաղրութիւններով իրանից խզեց նաև զօրագնդերի սրտերը, Իրենէն հասկացաւ գրաւել սոցա. Կոստանդինը մատնուեց, կալանաւորուեց և իւր հրէշաւոր մօր հրամանաւ կուրացաւ* 15 *Օգոստոսի* 797 *Թ։*

*Նորից միապետ դարձած կայսրուհու փոխարէն իշխանութիւնը վարում էին նորա ներքինիները, սկզբում Ստաւրակիոսը (մեռաւ* 800 *Թ.), յետոյ Այետիոսը, որոնք իրանց բռնութիւններով կատարեալ դաւաճանութեան էին հասնում։ Իրենէն Արաբներից խաղաղութիւնը գնեց դարձեալ փող վճարելով։*

*Կարլոս մեծի կայսր օծուելը* 800 *Թ. Դեկտեմբերի* 25*-ին արևմուտքի համար մեծ նշանակութիւն ունեցող մի դէպք էր։ Հռովմէական եկեղեցական իշխանութիւնը դրանով յայտարարեց իւր միաւորութիւնը Փրանկների պետութեան հետ, և երկրորդ մայրաքաղաքը՝ Հին—Հռովմը ընդ միշտ անջատուեց տէրութիւնից։ Այժմէնից սկսած ամենայն իրաւամբ կարելի է խօսել արևմտահռովմէական պետութեան մասին։ Սակայն Բիւզանդիոնը չհասկացաւ յարաբերութիւն հաստատել այդ նոր մեծ պետութեանը հետ։ Փրանկների կռիւները Արևելահռովմի իտալական սեպհականութիւնների մասին Իրենէի կառավարութեան ժամանակ չվերջացան։*

*Ամենազօրաւոր պաշտօնեաների և մեծամեծների դաւադրութեամբ 802 թ. Հոկտեմբերին Իրինէն գահազուրկ եղաւ և նրա տեղը բռնեց այն ժամանակուայ ելևմտից ընդհանուր նախարար Ն ի կ ե փ ո ր ո ս ը (802-811)։ Արդէն մի տարի յետոյ Լեսբոս կղզու վրայ նախկին կայսրուհին խեղճութեան մէջ մեռաւ, ինչպէս որ արժանի էր։ 85-ամեայ կառավարութիւնից յետոյ կործանուեց սիրիական հարստութիւնը. այդ առաջին անգամն էր, որ այդպիսի փոփոխութիւն կատարւում էր քաղաքային պաշտօնեաների ղեկավարների և ոչ թէ զօրքի ու նրա առաջնորդների ձեռքով։*

*Նիկեփորոսը իրան ցոյց տուեց միանգամայն իբրև լաւ կայսր։ Նրա տնտեսական խիստ կարգադրութիւնների պատճառաւ նրան չէին սիրում, բայց այդ անհրաժեշտ էր Իրինէի վատնիչ կառավարութիւնից յետոյ։ Հարկից ազատ չմնացին նաև եկեղեցական կալուածները, և նա լաւ էր հասկանում զգալի կացուցանելու իր վերահսկողութիւն եկեղեցու վրայ։ Նիկեփորոս նոր պատրիարքը (806) ընթանում էր նրա հետ միանգամայն ձեռք ձեռքի տուած. և վարդապետական կուսակցութեան անհաշտ ներկայացուցիչներին աքսոր էին քշում։ 803 թ. Կարլոս Մեծի հետ խա-*

դաշնութիւն կապեցին և զինանով ապահովեցին Արևելահռովմեյեցիների տիրապետական իրաւունքները Ստորին—Իտալիայի, Վենետիկի, Իստրիայի և դալմատական ափերի վրայ։ Բայց 805 թ. Վենետիկը բաժանուեց, և միայն Միքայէլ կայսեր ժամանակ 812 թ. վերջնական խաղաղութիւն հաստատուեց։ Աւելի դժբախտ էին նրա պատերազմները Արաբների դէմ։ Երբ նա հրաժարուեց հարկ վճարելուց, կայսերական զօրքը սկսեց ծանր պարտութիւններ կրել և սահմանի մի շարք բերդեր ընկան թշնամու ձեռքը։ Կիպրոսը և Ռոդոսը կանոնաւոր կերպով ասպատակւում էին. կայսրը ստիպուած էր 806 թ. աւելի ստորացուցիչ պայմաններով ընդունել խաղաղութիւնը։

Պետութեան պատմութեան մէջ դարէշրջան է կազմում սլաւոնական տարրերի յետ մղումը որ սկսեց այդ ժամանակը։ 807 թ. Պատրէի քաջ քաղաքացիները մի փառաւոր յաղթութիւն տարան Պելոպոնէսից ներս խուժող Սլաւոնների դէմ, թէև ծովի կողմից սոցա օգնում էին Աֆրիկայի մուսլիմները։ 810 թ. սկսած տէրութիւնը եռանդով իրան նուիրեց մի մեծ նպատակի. հելլենական կանոնաւոր գաղթականութիւններով նորից յետ խլել Յունաստանի այն գաւառները ուր սլաւոնական բնակութիւն էր հաստատուել։ Միան-

գամայն խելացի էր որ կայսրը իւր բոլոր ոյժերը ուղղեց Բուլգարների տէրութեան դէմ, որը Կրում պատերազմասէր իշխանի օրով նոր վտանգաւոր ոյժ էր դարձել: 809 թ. Սերդիկէն ընկել էր: Երկու տարի մեծամեծ պատրաստութիւնից յետոյ Նիկեփորը որոշեց հիւսիսային պետութեանը զօրեղ հարուած տալ: Սակայն սկզբում թէև յաջող, մի մեծ ճակատի մէջ` 26 Յուլիսի 811 թ. կայսրը կորցրեց գահը և կեանքը: Մակեդոնիան և Թրակիան զոհ գնացին յաղթողներին:

Ստաւրակիոսը՝ նրա որդին, որ ծանր վիրաւորուած ազատուել էր պատերազմի դաշտից, ստիպուած էր արդէն 811 թ. Հոկտեմբերի 2-ին իշխանութիւնը յանձնել իւր Ռանգաբէ Միքայէլ Ա բարեպաշտ փեսային, որը գտնուելով միանգամայն խիստ կրօնասէր կուսակցութեան ձեռքում, պատերազմի ծրագիրը կազմել էր ամլիս Ստուդիտների վանահօրից, իսկ Բուլգարների առաջ ցոյց տուեց իւր չափազանց անընդունակութիւնը: Զօրքը և ժողովուրդը բուռն կերպով պահանջում էին ամենաընդունակ զօրավար՝ Հայազգի Լևոն Ե-ին (813—820) «պաշտպանել հայրենիքի շահերը, և ազատել քրիստոնեայ տէրութիւնը»: Զգալով իւր ստանձնելիք գործի ծանր պատասխանատուութիւ-

*նը, Լեւոնը տատանւում էր. նա յետոյ զիջաւ, միայն պատուաճանաչութիւնից զրկուած: Բուլգարները բանակել էին մայրաքաղաքի առաջ: Կայսեր մի դաւաճանական յարձակման շնորհիւ Կրումի վրայ, մինչդեռ խաղաղութեան համար հաղորդակցութեան մէջ էին, շրջակայ նահանգները ենթարկուեցին սարսափելի աւարառութեան: Անդրիանուպօլիսը ընկաւ Բուլգարների ձեռքը: Ռուսի բուլգարական իշխանի յանկարծական մահը Արեւելահռոմի համար մեծ բախտաւորութիւն էր: Եւ երբ Լեւոնը 817 թ. Մեզեմբրիայի մօտ մի արիւնալից յաղթութիւն տարաւ եւ ապա մտաւ Բուլգարների երկիրը, այս Օմորտագ իշխանը ստիպուեց երեսնամեայ խաղաղութեան դաշն կապել Հռովմայեցիների հետ: Արեւելքում Լեւոնը յաջողութեամբ պաշտպանում էր սահմանը Արաբացիների դէմ. եւ նմանապէս Սիկիլիան հանգստութիւն գտաւ սարակինական ծովահէններից, երբ նա դաշն կապեց ափրիկեան Ագլաբիդների հետ:*

*Աւելի կործանիչ էր նրա արած քայլը եկեղեցական խնդիրներում: Անձնապէս նա ճշմարիտ բարեպաշտ էր եւ իսկապէս համբերող. բայց զօրքի եւ հոգեւորականութեան մի մասից դրդուած՝ թողեց Նիկեփոր կայսեր խելացի եկեղեցական քաղաքականութիւնը եւ*

հանդէս եկաւ պատկերապաշտութեան դէմ։ Դրա հետեւանքն այն եղաւ, որ պատրիարքի պետական եկեղեցական կուսակցութիւնը և Թէոդորոս Ստուդիոնի եկեղեցական ազատութեան նախանձախնդիր կուսակցութիւնը— «Politichi և Zelenti»—միացան կառավարութեան դէմ գործելու։ Արդէն քաղաքական հալածանաց քայլեր էին, որ գահից զրկեցին զառամեալ և ընդհանուրից սիրուած Նիկեփորոս պատրիարքին և նրա տեղը բաւական անյաջող կերպով նշանակեցին Թէոդորոս Մելիսենոս պալատականին (815), և ապա ժողով գումարեցին որ վերահաստատեց 754 թ․ հակապատկերապաշտ որոշումները և նզովեց պատկերապաշտներին։ Սակայն կայսրը առանձին մեծահոգութեամբ և չափաւորութեամբ վարուեց իւր եկեղեցական հակառակորդների հետ։ Երբ նա 820 թ․ Ջրօրհնեաց տօնին զոհ գնաց իւր ընկեր Միքայէլ զօրապետի սարքած դաւադրութեանը, նոյն իսկ պաշտօնազուրկ պատրիարքը յայտարարեց, որ սպանուած կայսրը մեծ ծառայութիւն է մատուցել և նպաստել տէրութեան երջանկութեանը։

Միքայէլ Բ-ը (820-829) Ամորիոնից, փռիւգական նոր հարստութեան հիմնադիրը, կրօնապէս բացարձակ անտարբեր էր․ նա էապէս ամուր պահպանելով իւր նախորդի եկեղեցա-

կան քաղաքականութիւնը, սակայն անսահման համբերութեամբ նպաստեց օրթոդոքսներին։ Բայց և այնպէս նրա իշխանութիւնը այնքան էլ հաստատուն չէր։ Երկու անգամ գահին բռնի կերպով տիրապետելը ազդել էր վարակիչ եղանակաւ։ Թոմաս ծեր զօրապետը, որ զինուորներից շատ էր սիրուած, և Լևոնի ու Միքայէլի նախկին զինակիցն էր, 822 թ. ապստամբուեց Փոքր-Ասիայում, և համարեա բոլոր երկիրն ընկաւ նրա ձեռքը։ Ապստամբութիւնը տնտեսական-յեղափոխական խիստ վտանգաւոր գոյն ունէր, որովհետև ժողովրդի ամենաստորին խաւերից էին մեծ բազմութեամբ միանում ապստամբի հետ։ Սա յարաբերութեան մէջ մտաւ Արաբների հետ. և նոցա թոյլտուութեամբ Անտիոքի պատրիարքը նրան օծեց կայսր։ Բայց նրա կրկնակի փորձը (822 և 823 գարնանը) վերցնել մայրաքաղաքը, անյաջող անցաւ կայսեր և իւր Թէոփիլոս որդու հմուտ պաշտպանութեան շնորհիւ։ Թոմասը Թրակիայում Բուլղարներից ջարդ կրելով, մտաւ Արկադիուպօլիս։ Երբ քաղցած քաղաքը անձնատուր եղաւ 824 թ. Հոկտեմբերին, ապստամբը սոսկական տանջանքներով մահուան դատապարտուեց։

Բայց տէրութեան համար ամենամեծ վտանգը սպառնում էր աֆրիկեան և սպա-

նիական Արաբների ծովային աճող ոյժից։ Կորդովայից արտաքսուած ապստամբները հաստատուել էին սկզբը Եգիպտոսում (815 թ.) և այնտեղից 823 թ. ի վեր ապաստանում էին Կրետէին։ Այդ խառնակ ամբոխը, որին Եգիպտոսից էլ արտաքսեցին, Աբու Հաֆս Օմարի առաջնորդութեամբ մտաւ կղզին և 826 թ. բոլորովին նուաճեց։ Մինչև 961 թ. Օմարի յաջորդները կառավարում էին իբրև անկախ իշխաններ։ Աւազակների այդ ողորմելի պետութիւնը Էգէյեան ծովի պատուհասը դարձաւ, և միայն սպառնալիք՝ կղզիներին ու ծովափնեայ քաղաքներին։ Արևմուտքում էլ Միքայէլը անյաջողութիւն ունեցաւ։ Փատիմիդեան Արաբները դաւաճան մեծամեծների յորդորներից դրդուած՝ սկսեցին հաստատուել Սիկիլիայի վրայ, և այն խաղը, որ խաղացել էին Սիկիլեցւոց հետ 1200 տարի առաջ Կարթագենացիք, սկսուեց այս անգամ և աւելի դժբախտ վախճանով։

Երբ Միքայէլը 829 թ. մեռաւ, իշխանութիւնը թողեց իւր Թէոփիլոս որդուն (829-842), որ Արևելահռոմի կայսերական գահի ուրախացուցիչ երևոյթներից մէկը չէր։ Այդ խիստ փառաբանուած՝ բայց իսկապէս աննշան իշխանի յատկութիւններն էին. մեծութեան ցնորք արևելեան սուլթանների օրի-

նակի նմանութեամբ, ամենագէտ լինելու չափ, որը անկախ էր վճռում զինուորական, ինչպէս նաև եկեղեցական կառավարչական հարցերը, և կատարեալ անհասկացողութիւն ժամանակի պահանջները ըմբռնելու։

Սիկիլիայում շարունակում էր Միքայէլի օրով սկսուած պատերազմը։ Պատրիկիոս Թեոդորոսը ընկաւ 831 թ. Մենայոնի (Մինաո) պաշարման ժամանակ. 832 թ. Սարակինոսները առին Պանորմոսին։ Արևմուտքի միւս իշխանների, Կորդովայի խալիֆների և Ֆրանկական կայսրութեան հետ Բիւզանդիոնը բարեկամական յարաբերութիւններ էր պահպանում դեսպանութիւնների միջոցաւ։ Բիւզանդացիներին առանձնապէս բարեկամ էին պոնտական վաճառականութեան համար այնքան նշանակութիւն ունեցող Խազարները. սարսափ ազդող Պաչինակների դէմ (Պեչենեգներ) խազարի խնդիրքով, Թեոդորա կայսրուհու եղբայր Սպաթարոկանդիդատոս Պետրոնաս Կամատերոսը Դոնի վրայ շինեց Սարկել ամրոցը («Սպիտակ տուն»)։ Նրա աա-ջակցութեամբ սահմանափակեցին Խերսոնի հասարակապետութեան ազատութիւնը այնչափ, որ մի ստրատեգ նշանակուեց իբրև կայսերական կառավարիչ՝ վերահսկելու այդ նշանաւոր գաղթական երկիրը, մինչդեռ մինչ

այդ համարեա անկախ կառավարում էր պրոտեյոնը՝ արքոնանների այսպէս ասուած «քաղաքի հայրերի» հետ։

Աւելի կատաղի էին Մամուն (813—833) և Մութասիմ (833—842) խալիֆների դէմ մղած պատերազմները։ Խալիֆի տէրութեան մէջ ծագած սարսափելի անտեսական յեղափոխութիւնը՝ Բաբեկի ձեռքի տակ միացած կոմմունիստների (խուրամաիտներ) ձեռքով, պետութեան բաւականը մեծ ծառայութիւն էր ցոյց տուել։ Խորասանից մի Պարսիկ իշխան, որի քրիստոնեայ անունը Թէոփոբոս էր, իւր գընդերով անցաւ Յոյների կողմը․ այդ Պարսիկ վարձկանների թիւը հասնում էր 30,000-ի։ Թէոփիլոս լաւ հասկանալով տէրութեան շահը, աւելի լաւ համարեց կռիւ սկսել, քան թէ այդ փախստականներին յանձնել իւր իրաւատէր տիրոջը։ Թէոփոբոսին խիստ պատուում էին և ամուսնացրին կայսեր Հելենա քրոջ վրայ։ Մութասիմը գործ դրեց խիստ մեծ ջանքեր․ կանոնաւոր կերպով ամբողջ զօրքը նորից կարգաւորեց Տաճիկ և Բերբեր վարձկաններով։ Սակայն հռովմէական զօրապետները՝ Մանուէլը և Թէոփոբոսը յաջողութեամբ մտան Արաբների երկիրը, 837 թ. առան Սամոսատան, և կործանեցին Զապետրան (Սոզոպետրա)՝ անհաւատների իշխանի

*ծննդավայրը։ Նրա կատաղութիւնը սահման չունէր։ Բոլոր զօրքերը ժողոված 838 թ. արշաւեց Փոքր-Ասիա, որպէս զի պետութեան գլխաւոր ամրութեանը՝ Ամորիոնին, փռիւգական հարստութեան օրրանին, նոյնպիսի վիճակ պատրաստի։ Տաճիկները մի սարսափելի արիւնալից յաղթութիւն տարան։ 55 օր արիասիրտ Այետիոսը պաշտպանեց քաղաքը։ Արքեպիսկոպոսը և մեծամեծները պայմաններ առաջարկեցին անձնատուր լինելու, չընդունեցին։ Խալիֆը կամենում էր վրէժ և ոչ յաղթութիւն։ Փառաւոր քաղաքի վիճակը զարհուրելի էր։ Ի զուր կայսրն ինքը դուրս եկաւ պատերազմ։ Նա չունէր իւր զօրապետների զինուորական տաղանդը. և կռիւներր անյաջող էին վերջանում Բիւզանդացիների համար։ Նոքա ստիպուած եղան խաղաղութիւնը գնել պատերազմի ծախքերը վճարելով։ Չնայած այդ կործանիչ պատերազմներին, երկրի մէջ զօրեղ կերպով ծաղկում էին վաճառականութիւնը և արդիւնաբերութիւնը։ Տնտեսական կառավարութիւնը շատ ընտիր էր. և երբէք դրամական միջոցները չէին պակասում կառավարութեան մեծամեծ կարիքներին։ Սակայն այդ կայսեր արժանիքը չէր, որ միայն դժուարացնում էր տնտեսական հաւասարակշռութեան կարգաւորելը իր անսահման խելացնոր շինա-*

բարութեամբ՝ այլ պաշտօնեաներին էր, որոնք ամենագեղեցիկ կերպով կատարում էին իրենց պաշտօնը։

Եկեղեցական խնդիրներում կայսրը ցոյց տուեց իր կատարեալ խեղճութիւնը իբրև սահմանափակ լուսաւորուած մոլեռանդ մէկը՝ որը չէր հասկացել նոր ժամանակի ոգին։ Իւր հօր խելացի համբերողութեան փոխարէն, նա սկսեց մանրակրկիտ քահանայական դաժան հալածանք։ 832 թ. նոր հրովարտակով արգելեց պատկերները և մանկամտութեամբ փորձում էր օրթոդոքս եկեղեցու սրբերի պատուոյ մականունները խլել։ Կայսրը ինքը մտնում էր կրօնական վէճերի մէջ. Ղազարոսը և երկու Թէոդորները արիւնալից մարտիրոսութեամբ տուժեցին՝ իրենց մտաւոր բարձրութեան և տրամաբանական գերազանցութեան պատճառաւ։ Ի զուր էր փորձում Յովհաննէս խոհուն քերական պատրիարքը սանձել կայսերական քմահաճոյքը. Թէոփիլոսը այնպէս էր նպաստում գիտութիւններին ինչպէս բռնակալներն են անում։ Նա իր իսկապէս իշխանական անշնորհակալութիւնը ցոյց տուեց մահուան մահճում անգամ, երբ խարդախութեամբ սպանել տուեց ազնիւ Թէոփոբոսին և զուարճութեամբ դիտում էր նրա արիւնշաղախ գլուխը։

*Նրա Միքայէլ Գ որդու համար (Հարբեցող 842-867) խնամակալութիւնը ձեռք առաւ խելացի և գործունեայ, բայց սահմանափակ բարեպաշտ Թէոդորա մայրը, որի խորհրդականներն էին Լոգոթետ (օրէնսգիր) Թէոկրիստոսը, Թէոդորայի հօրեղբայր Մանուէլը և իր եղբայր Բարդասը։ Սա էր իսկապէս կառավարութեան ոգին, որին յաջողուեց աստիճանաբար իւր մրցակիցներին հեռացնել։ Բարդասը մի «գերմարդ» էր, կրօնի և բարոյագիտութեան ամէն կասկածանքներից բարձր, որոնցով ազդւում էին միւս մահկանացուները։ Նա սառնասիրտ, առանց ամենաթեթև խղճի խայթ զգալու, ի կատար էր ածում մի օգտակար յանցանք։ Եկեղեցական խնդիրները քննում էր միայն նպատակայարմարութեան տեսակէտից։*

*Այդ սկզբունքներին համեմատ մինիստրները կայսրուհու համաձայնութեամբ դադարեցրին կրօնական համոզմունքների դէմ փոքրոգի անձանց յատուկ անհաճոյ վէճերը. Հարիւրամեայ կռիւը առաջ էր բերել հասարակական կարծիքի մէջ անչափ յոգնածութիւն և մի տեսակ անտարբերութիւն։ Վաղուց ի վեր հալածուած վարդապետները ցնծում էին։ Ուսումնական պատրիարքը ստիպուած հրաժարուեց, և յաղթողների կող-*

միջ ենթարկուեց նախատինքի՝ կոպտաբար և անսիրտ եղանակաւ։ Մեթոդիոս Խոստովանողը, ծագումով Սիկիլիայից, որ իբրև աքսորական սուրբ Պետրոսի մօտ Հռովմում լատիներէնից յունարէն էր թարգմանել սրբոց վարքերը և դրանով ահագին նշանակութիւն ունեցաւ արևելքի և արևմուտքի քաղաքակըրթական յարաբերութիւնների վերաբերմամբ, Անդէաս առաքեալի գահը բարձրացաւ։ Նա միայն այն ժամանակ թողութիւն տուեց մեռած կայսեր, երբ ստիպեց կայսերական այրուն մի պաշտօնական սուտ ասելու։ Հասկանալի է որ միւս եպիսկոպոսութիւններն էլ բաժանեցին բացառապէս վարդապետների և պատկերապաշտների մէջ։ 843 թ. մի ժողովում, որ խիստ աղմկալից էր, հանդիսաւոր կերպով վերահաստատուեց ճշմարիտ հաւատը, և դեռ այսօր էլ օրթոդոքս եկեղեցին ամեն տարի մեծ շքով տօնում է (Kyriake des orthodoxias) օրթոդոքսութեան կիւրակէն։ Դաւանաբանօրէն յաղթութիւնը կատարեալ էր. իսկ եկեղեցական քաղաքագիտութեան տեսակէտից կատարեալ նուաճեկութիւն կրեցին թէ Թէոդորոս Ստուդիոնցին և թէ «եկեղեցու ազատութեան» միւս կողմնակիցները։ Եկեղեցու ազատութեան միտքը, ինչպէս որ այդ յաղթանակ ունեցաւ արևմուտքում ԺԲ դարում, Արևելա-

*Հռովմի կայսրները ոչնչացրել են նոյն իսկ արմատի մէջ, և եկեղեցու վերաբերմամբ պահպանեցին այն հեղինակութիւնը, որ բնորոշ մնաց ինչպէս Արևելահռովմի, այնպէս էլ միւս ուղղափառ եկեղեցիների համար (Բուլղարիա, Սերբիա, Ռուսաստան)։ Եկեղեցու շահի տեսակէտից այդ անսահման փրկարար էր. Նոր-Հռովմի Թ և Ժ դարերի պատրիարքների համեմատութիւնը ժամանակակից պապերի հետ, անպայման յօգուտ առաջիններին է։*

*Սիկիլիայում արևելահռովմէական կառավարութիւնը հակառակ իւր աննկուն ընդդիմութեանը միայն կորուստներ ունէր։ Մեծ Ագլաբիդ Աբու ալ Աբբաս Մոհամետ Ա-ի* (841—856) *ժամանակ Աֆրիկեցիք* 842 *թ. վերցրին Մեսինան,* 845 *թ. մի շարք դղեակներ.* 846 *թ. մի դժբախտ ճակատում ընկան* 9000 *քրիստոնեայ.* 847 *թ. պաշարումով առան Լեոնտինոյի.* 854 *թ. •Բոթերը* (Butera) *և չնայած քրիստոնեաների* (858) *մեծ ծովային յաղթութեանը, Արաբները անարգել առաջ էին խաղում։* 859 *թ. նոքա տիրեցին Էննային,* 864 *թ. Նետոսին, և վերստին յետ խլելուց յետոյ,* 866 *թ. առան երկրորդ անգամ։ Ինչպէս որ Է դարում Սիկիլիան Աֆրիկայից և Ասորիքից փախչող քրիստոնեաների ապաստանարան էր, այդպէս էլ այս և յետագայ դա-*

րում դժբախտ կղզու բազմաթիւ քրիստոնեաները փախան Կալաբրիա և Պելոպոնէս: Չափազանց ընդունակ խնամակալութիւնը իր բոլոր գործունէութիւնը ցոյց տուեց այդ սլաւոնացած երկրի վրայ: Թէոկտիստոս Բրիյեննիոսը Պելոպոնէսի ստրատեգ կարգուելով 849 թ. զօրեղ զօրքով կատարեալպէս խաղաղացրեց անհնազանդ սլաւոնական ցեղերին: Ամենավայրենի և պատերազմասէր ցեղերը՝ Միլենգեցիք (Միլինգիք) և Եզերիտցիք (Եզերցիք), որոնք բնակւում էին Պենտադակտիլոս լեռներում, ստիպուեցին կանոնաւոր հարկ վճարել: Խալիֆի պետութեան դէմ, որի համար նրա Տաճիկ պահապան գնդերը նոյնպիսի պատուհաներ էին դարձել, ինչպէս երբեմն Արեւմտահռոմի համար իր գերմանական գնդերը, կառավարութիւնը կռւում էր մեծ յաջողութեամբ: Դժբախտաբար այստեղ էլ գելոտեան կայսրուհու կոյր մոլեռանդութիւնը ամեն ինչ ոչնչացրեց: Յունական պետութեան սահմաններում, Տաւրոսից և Եփրատից արեւմուտք, ապրում էին Պօղիկեանք, որոնք աշխարհականացած պետական օրթոդոքսութեան հանդէպ՝ պաշտում էին Ս. Գրքի ճշմարիտ քրիստոնէութիւնը: Ը դարու կայսրների ժամանակ հալածուելով, պատկերամարտ կայսրների խելացի քաղաքականութեամբ բուական

լայն ազատութիւն ունէին։ Այդ քրիստոնեայ Մակարայեցոց քաջ գնդերը կազմում էին օգտակար սահմանային կենդանի ամրութիւն Իսլամի դէմ։ Նոյն ամրանալուն շատ էր նպաստել նոյն եկեղեցու ընտիր գլուխը՝ Սերգիոսը (800 թ.։ Միքայէլ Ա և Լևոն կայսրերի հալածանքները նոյն մի մասին ստիպել էին անցնել արաբական սահմանը։ Բայց այդ ընտիր ժողովրդի մէջ տիրեց կատարեալ յուսահատութիւն, երբ Թէոդորան սկսեց իր սաստիկ արիւնալից հալածանքը։ Նոքա էլ սպանեցին հաւատոյ հալածիչներին, որոնք իրենց արիւնըռուշտութեամբ յետ չէին մնում սպանիական ինքվիզիտորների առաջնորդներից, և սկսեցին ռազմական արշաւանքներ պետութեան մէջ։ Աղանդի զինուորական-քաղաքական գլուխ ճանաչուեց Կարբէասը, հռովմէական նախկին մի զինուորական և սկսեց Տեփրիկէ սահմանի բերդից պետութեան գնդերի դէմ խիստ յաջող յարձակողական կռիւ մղել ինչպէս միջին դարում Վալդենցիք և Պիեմոնտացիք։

Կառավարութեան ոգին Բարդասն էր, զուրկ բարոյական հիմունքներից, բայց քաղաքականութեան մէջ խիստ հմուտ։ Նա իր անսահման փառասիրութեան պատճառաւ չէր խղճահարւում իր քրոջորդի Միքայէլի

անարգ վարքը և կոպիտ զգայական զուարճութիւնները ամեն կերպ խրախուսելու։ 856 թ. Թէոդորային ստիպեցին յետ քաշուել, և Միքայէլը (856–867) արդէն միայն անուամբ էր կառավարում. իրապէս Արևելահռովմը կառավարւում էր ամենակարող մինիստրի ձեռքով։ Մայրաքաղաքը իւր երիտասարդ կայսրից գիտէր միայն այն՝ ինչ որ լսում էր նրա մանկամիտ զեխութիւնների մասին։ Նա իւր զուարճութիւնների ուսուցիչ (maitre de plaisir) Գռիւլլոսին, Պետրոս Մեծի նման, կարգեց հարբեցողութեան պատրիարք (Sauf-patriarch) և նրա ընկերակիցների հետ, որոնց ճնշում էր զզուելի եղանակով յանդգնաբար անարգել եկեղեցին, և որոնց կարգեց իւր զեխութիւնների համար մետրապոլիտներ, հրապարակօրէն խեղաթիւրում էր Ս. արարողութիւնները և հասարակօրէն փողոցում ծաղրեց տիեզերական պատրիարք ս. Իգնատիոսին (846-858 և 867-878), որ Միքայէլ Ա Ռանգաբէ կայսեր որդին էր, որին Լևոն Ե ներքինացրել էր և վարդապետ դարձրել Նիկետաս անունով։

Արդէն Թ-րդ դարու առաջին կէսում Սկանդինաւեան Ռոսները (Rós), հիւսիսային յանդուգն դիւցազունները, որոնք ընկճել էին իրանց իշխանութեան տակ Դրեգովիչ, Կրիվիչ

և Ռազմիկ բարբարոս և կատաղաբարոյ սլաւոնական ցեղերին, Դնեպրի վրայ նաւելով իրանց ծովահէնային մակոյկներով՝ յարձակում էին գործել յունական Փոքր Ասիայի Հիւսիսային (Ամաստրիս) ափերի վրայ։ 860 թ. Յունիսի 18-ին, Միքայէլի 5-րդ տարին, այդ սարսափ ազդող Ռուսների 200 մակոյկները երևացին պետութեան մայրաքաղաքի առաջ։ Փոտիոս պատրիարքի երկու ճառերը լաւ և կենդանի արտայայտիչ են այն զարհուրելի կոչկանչի սարսափի տպաւորութեանը, որ գործեց բնակիչների վրայ այդ հիւսիսային սոսկալի կայծակի ցոլացումը։ Մեծ պատրիարքը դրա մէջ անօանում է աստուածային ծանր պատիժ հաւատացեալ քրիստոնեից մեղքերի համար։ Քրիստոնեաները Աստուածածնի օգնութեան էին վերագրում Ռուսների փախուստից ազատուելը և յաղթութիւնը, այն օգնութեան որով արդէն խորտակել էին Խոսրովի պարսկական նաւատորմիղը և Մասլամայի արշաւանքը։

Այդ շրջանի ամենանշանաւոր դէպքը՝ բուլղարական հարցի ծագումն է և դրա հետ միասին Հին-Հռոմից բաժանումը։ Երկու մեծ սլաւոնական առաքեալները՝ Մեթոդիոս և Կոստանդինը (յետոյ իբրև վանական Կիւրիլլոս) այսպէս անուանեալ գլագոլիտեան այբուբենի գիւտով և Սլաւոնների լեզուներով

Ս. Գրքի թարգմանութիւնով, այնպիսի անմահ ծառայութիւն են մատուցել այդ ազգերին, ինչպես Ս. Մեսրոպը և Ս. Սահակը նոյնպիսի մեծագործութիւնով Հայաստանին: Այս սուրբ մարդիկը թէ այստեղ և թէ այնտեղ քաղաքակրթական դարի սկիզբն են դըրել այն ժողովուրդների մէջ, որ իսկապես առած առանց քաղաքակրթութեան էին, որովհետև այբուբենից զուրկ էին: Մերական մեծ տէրութեան մէջ, ուր արդէն ընդունել էին քրիստոնէութիւնը գերմանական քարոզիչներից, ապա այն ժամանակ արդէն սլաւոնացած Պաննոնիայում, երկու եղբայրները սկսեցին իրենց չափազանց արդիւնաւէտ գործը. նոքա գրաւեցին ժողովրդի սիրտը, որովհետև եկեղեցական պաշտաման մէջ չէին գործ դնում լատինական լեզուն, ինչպես գերմանական քարոզիչ եպիսկոպոսները, այլ սլաւոնականը: Գերմանացիների զօրեղ ընդդիմութեան հանդէպ, Հռոմը զարմանալի մեծահոգի լայնսրտութեամբ իւր որոշումը տուաւ յօգուտ ազգային տեղական լեզուի: Սակայն լատինական եպիսկոպոսների թշնամութիւնների դէմ, որոնց օգնում էր աշխարհական իշխանութիւնը և որոնք գործում էին բռնութեամբ, Կիւրիլլոսը չկարողացաւ դիմանալ Մեթոդիոսի մահից յետոյ. Հռոմը թողեց որ նա ընկնի: Յովհաննէս

*Ը-ը իւր մեծ նախորդների՝ Նիկողայոս Ա և Հադրիան Բ-ի հաւասարակից յաջորդ չէր։ Մերական տէրութիւնը մաս մաս եղաւ և պանոնական Սլաւները ընկճուեցին ներս խուժող Մաճառների ձեռքի տակ։ Կարծես թէ ֆիննա-ուգրական սերնդի ամենակոպիտ հեթանոսութիւնը ոտի տակ էր տալու այդ յուսալից սերմերը։ Բայց Մեթոդիոսի փախըստական աշակերտներից մէկին՝ Ս. Կղեմէսին, Բուլգարների Բորիս ցարը եպիսկոպոս կարգեց իւր՝ այն ժամանակը բաւական լայնածաւալ պետութեան երկրորդ մասի վրայ։ Բորիսը* (852—888) *լաւ հասկացաւ, որ իւր ժողովուրդը սեղմուած լինելով Փրանկների և Հռոմայեցիների մեծ պետութիւնների և մերական թագաւորութեան մէջ՝ քրիստոնէական ազդեցութեանը երկար չէ կարող դիմանալ։ Սովորական սահմանային պատերազմներից մէկի* (864 *կամ* 865) *խաղաղութիւնը հաստատելիս նա ինքը մկրտուեց հանդիսաւոր կերպով. կայսրը ինքն էր նրա կնքահայրը, և սրանից վերցրեց սրա քրիստոնէական Միքայէլ անունը։ Յոյները նրան զիջան սահմանի մի մասը, Զագորա կոչուած, դաշինքը ամրացնելու համար։ Այս ծանրակշիռ դէպքերի ժամանակ Իգնատիոս պատրիարքը այլ ևս չէր իշխում։ Նա քաջութիւն էր ունեցել պետու-*

թեան ղեկավար ամենակարող. Բարդասին հան-
դիսաւ որ կերպով զրկելու եկեղեցու հա-
ղորդութիւնից, որովհետև նա ազգապղծու-
թեամբ կենակցում էր իւր հարազատ հարսի
հետ: Պատրիարքին պաշտօնազուրկ արին և նրա
տեղը կարգեցին Փոտիոս գիտնական պետական
մարդուն, որ մի քանի օրուայ մէջ (20—24
Դեկտ. 858 թ.) ստացաւ եկեղեցական բոլոր
աստիճանները. և ազնիւ ու իշխանական կըր-
թութեամբ գահազուրկ պատրիարքի բա-
րեկամներին և կողմնակիցներին հալածելուց
յետոյ վարեց իւր պատրիարքութիւնը խա-
ղաղէս արժանավայել և շատ մեծ փառքով:
Փոտիոսը յունական ազգի արժանավայել ծը-
նունդն էր: Հռոմի պահանջներին դէմ որը
Հռոմի հանդէպ պաշտպանում էր այդ իրա-
ւունքները ոչ այնքան փառասիրութեամբ, որ-
քան յամառութեամբ: Հռոմը հասկանալի
պատճառով դանդաղում էր ճանաչելու այն-
չափ ապօրինի կերպով գահ բարձրացած պատ-
րիարքին: Մինչև անգամ հռոմէական մի ժողով
(863 թ.) նրան գահազուրկ յայտարարեց: Եթէ
դրանով արդէն Հռոմի պիւանի և սկսութեան
յարաբերութիւնը սաստիկ լարուեց, անջա-
տումն անխուսափելի եղաւ, երբ Հռոմը խառ-
նուեց բուլղարական գործերում: Բուլղար-
ների նոր քրիստոնեայ ցարը սլաւոնական

*ճշմարիտ խորամանկութեամբ յարաբերու-թեան մէջ էր մտել Հին-Հռովմի հետ, որ-պէսզի արեւելեան պատրիարքի ճնշիչ գեր-իշխանութեան դէմ հակառակորդ ունենայ։ Նիկողայոս Ա-ը (858-867) յաջողութեամբ հեռացրեց նորան։ Հռովմէական եպիսկոպոսները բուլղարացւոց եկեղեցական նահանգներում մտցրին լատինական ծէսը։ Հռովմը Է-րդ տի-եզերական ժողովից յետոյ անընկճելի յարա-տեւութեամբ շարունակել էր յառաջարել իւր օրինաւորման իրաւունքը Իլլիւրական եկեղե-ցու թեան վրայ։ Եւ ըստ երեւոյթին արդէն ձեռք էին բերել առաջին յաջողութիւնը։ Բայց ուղիղ այդ ժամանակ յունական ազգը մի մարդու պէս կանգնեց եւ դէմ դրեց այդ հնացած պահանջ-ներին։ Պատկերամարտութեան ժամանակ գրա-ւած եկեղեցական թեմերի պահպանութեան խնդրում Իգնատեանք, որ Փոտիանների երդ-ուեալ թշնամիներն էին, ձեռք ձեռքի տուած էին ընթանում։ Երբ յետոյ Իգնատիոսի վերա-հաստատութեան ժամանակ, հաշտութեան ժողովի մէջ (869) Հռովմի ներկայացուցիչները հանդէս եկան իրենց իլլիւրական պահանջ-ներով, Յոյները սաստ խօսքերով յայտնեցին․ «տարօրինակ անպատշաճ է, որ դուք, քանի որ թոթափել էք Յունաց իշխանութիւնը եւ ըն-կել էք Փրանկների ձեռքը, կամենում էք մեր*

տիրող իշխանութեան սահմաններում վիճակներ ունենալ»։ Բիւզանդացիք դիւրըմբռնելի գիտակցութեամբ ինչպէս Յովսէփ Բ-ը, չեն կամեցել իրենց պետութեան սահմաններում արտաքին հոգեւոր պետի վիճակային իրաւունքները ճանաչել և թոյլ տալ։

Եթէ այն ժամանակուայ Հռոմը իսկապէս քաղաքագիտական խելք ունենար, ինչպէս շատ անգամ առանց քննութեան վերագրում են նրան, պէտք էր այն րոպէին յետ կանգնէր։ Յունական ազգային զգացմունքը Իրենէի պարտութիւնից յետոյ սաստիկ զգայուն էր դարձել։ Խիստ ուղղութեան հետեւող մարդիկը, օրինակ Ս. Թէոդորոս Ստուդիտը, անպայման անձնուէր մնալով Հին-Հռոմին, այնպէս էին կորցրել իրենց ժողովրդականութիւնը, ինչպէս Դ-րդ դարում Հայաստանի մէջ Ս. Ներսէսը և հայրապետական կուսակցութիւնը՝ որ յենուել էին մի կողմից Մեծ Կապադովկացու վրայ և խիստ յունասէր էին։ Ուստի Փոտիոսը մեծ վճռողականութեամբ հանդէս եկաւ Հռոմի դէմ իբրև յունական ազգի յառաջամարտիկ և նրա կրօնական ինքնուրոյնութեան նախանձախնդիր։ Այդ է 867 թ. (Enkyklios Epistole) Տիեզերական թղթի ընդհանուր-պատմական նշանակութիւնը։ Փոտիոսի աստուածաբանական պարզաբանութիւնները թոյլ

են. նոքա վերաբերում են ծէսի և կարգապահութեան մէջ եղած փոքրանշան զանազանութիւններին, որ բոլոր ժամանակներում լռելեայն համբերել են իւրաքանչիւր առանձին եկեղեցու մէջ։ Վէճի նիւթ եղող միակ դաւանաբանական կէտը՝ Հոգոյն Սրբոյ բխման մասին, և սրանից ծագած բազմահատոր բայց աննշան վիճաբանական գրականութիւնը, առանձին փայլուն գոյնով չէ ներկայացնում յունական և կամ լատինական աստուածաբանների հոգեկան զարգացման բարձրութիւնը, թէ այդ և թէ հետեւեալ դարերում։ Եթէ սրտանց ցանկանային երկու եկեղեցիների միութիւնը, այն ժամանակ Յոհան Ոսկեբերան Դամասկացու բանաձևը կարող էր միմեանց հասկանալու հիմնաքար կազմել։ [1]

---

1. Եթէ խնդիրը մի րոպէ քննենք հակաճառող աստուածաբանների տեսակէտից, անկասկած պէտք է համաձայնել որ Յոյները իրաւունք ունէին: Սպանիական եւ Ֆրանկեան եկեղեցիները հանգանակի յաւելուածով (filioque) եւ յուղուող իսկապէս նորաձեւութիւն էին մտցրել հնուց ընդունուած աւանդութեան մէջ, եւ հռովմէական կրօնական ատեանը սկզբում Լեւոն Գ-ի ժամանակ (795—816) ուժով դէմ էր դրել, յետոյ արտայայտել է (tolerari posse) «կարելի է համբերել», եւ վերջը ընդունել է այդ փոփոխուած բանաձեւը: Սակայն առաջի չորս տիեզերական ժողովի գործերը պարզ ցոյց են տալիս, որ այն ժամանակուայ եկեղեցին դեռ կարդում էր

*Սակայն դաւանաբանութիւնը և կարգապահութիւնը լոկ պատրուակներ էին. իրապէս և ճշմարտութեամբ ազգային էր խնդիրը: Մեծ Փոտիոսի անմոռանալի ծառայութիւնն է որ կրօնապէս էլ է ազատել Յունաց ազգը Հռոմից, որը քաղաքականապէս վաղուց էր ազատուել:*

*Մինչ այդ արքունիքում մեծ փոփոխութիւններ էին տեղի ունեցել: Բարդասը, այդ անբարոյական հանճարը, որի համար բոլոր իր նման մարդիկը լոկ քարեր էին իւր խաղի տախտակի վրայ, գտնէ մի ազնիւ ոգևորութիւն ունէր գիտութիւնների համար: Նա հիմնեց մի տեսակ բարձրագոյն դպրոց փիլիսոփայութեան, լեզուագիտութեան և բնական գիտութիւնների համար, որտեղ նախկին պատրիարքի՝ գիտնական Յովհաննէս քերականի աշակերտները սովորցնում էին փիլիսոփայութիւն, քերականութիւն, ճարտասանութիւն, երկրաչափութիւն և աստղաբաշխութիւն: Նա փորձեց բարձրացնել նաև իրաւագիտութիւնը: Բայց նա կրեց, ինչի որ*

---

չկեղծած հանգամանքը: Ուստի լեզուագիտական եւ հնագրագիտական տեսակէտից Յոյները կատարեալ իրաւունք ունէին: Աւելի հարց է, արդեօք արժէր-եթէ մենք ամենի-որ որեւէ աստուածաբանական նորութեան պատճառաւ ընդհատուէր եկեղեցւոյ միութիւնը, որ ութ դար էր տեւել:

արժանի էր իր գործերով։ Մինչդեռ նա կայսեր համար ամենակոպիտ զուարճութիւնների դռներ էր բաց անում, յոյս ունէր որ կարող է անսահման իշխել. սակայն կայսերական գնի ընկերակիցների մէջ կար մի գեղեցկահասակ ախոռապան՝ Բազիլեյոս, հայկական ծագումով մի մարդ Մակեդոնիայից, որտեղ է տարիներից ի վեր Փոքր-Ասիայի բազմաթիւ բնակիչներ էին գաղթել։ Բազիլեյոսը շուտով կայսեր և կանանց առաջի սիրելին դարձաւ, հանճարեղ մէկն էր կրակոտ փառասիրութեամբ։ Նա միացաւ իր երկրացի Սմբատի հետ, որ մի բարձրաստիճան պաշտօնեայ էր և կայսեր համաձայնութեամբ 866 թ. սպանեց ամենակարող կեսարին։ Նոյն տարուայ Մայիսի 26 նա դարձաւ կեսար և կայսրակից և իշխանութիւնը վարում էր ամենափայլուն կերպով։ Երբ Միքայելը, իր նշանաւոր մօր ազդեցութեամբ ազատուելու ցանկութիւն արտայայտեց, նա սրան էլ սպանել տուեց 867 թ. Սեպտեմբերի 23 ին — հաւատարիմ վարձկանների ձեռքով։ Այն յանցանքը, որ Միքայէլ Բալբոսը գործել էր իր տիրոջ և բարեկամի դէմ, սարսափելի կերպով, աստուածային դատաստանով վրէժ էր հանուել նրա թոռից։



# Ե.

## ԱՐԵՒԵԼԱՀՌՈՎՄԷԱԿԱՆ ԻՇԽԱՆԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ՇՐՋԱՆԸ ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՍՏՈՒԹԵԱՆ ԺԱՄԱՆԱԿ

(*867—1025*)

---

Բազիլեյոս Ա-ը (867-886) մակեդոնեան փառաւոր հարստութեան հիմնադիրն է, որ համարեա երկու ամբողջ դարերի ընթացքում ներկայանում են իբրև տիեզերքի ճըշմարիտ վերահաստատողներ (restitores orbis) հռովմէականութեան տիեզերական իշխանութեան վերջի՝ ամենակատարեալ շրջանի վերաբերեալ։ Այն եղանակը, որով նա գահի տէր դարձաւ, Բազիլեյոսին ամենաթեթև խղճահարութիւն չէր պատճառում։ Նա պատկանում էր այն հանճարեղ, բայց սոսկալի ուժեղ բնաւորութիւններին, ինչպէս էին Սուլլան, Թէոդերիխը, Խլոդեվիխը, Նապոլէոն Ա-ը, որոնք անօգուտ ցանք չեն գործում, բայց օգտակար եղեռնագործութիւնը կատարում են կամ կատարել են տալիս հոգեկան ամենամեծ հանդարտութեամբ իբրև ճակատագրական անհրաժեշ-

տութիւն։ Նոր հարստութեան հայկական ծագման մասին չէ կարելի կասկածել։ Աքսորուած Փոտիոսը արդէն պատրաստել էր մի ճիւղագրական ծառ, որպէս զի արքունիքում նորից պատուի արժանանայ, որի մէջ Նոր-կայսեր ծագումը հասցնում էր Արշակին և Տրդատին։ Հայ ասպետները և վարձկանները՝ որոնք այդ դարում իրենց քաջութեամբ գերպահպանում էին հռոմէական պետութիւնը, բոլորն էլ իրենց սերած էին համարում հին Արշակունիներից և Պահլաւունիներից, և այդ այնպիսի իրաւունքով, ինչպէս մեր «հին ազնուականութեան» բազմաթիւ ընտանիքները իրենց նախորդներին համարում են խաչակիրներին և միջնադարեան ասպետներին։

Նոր կառավարութիւնը շտապեց Հռոմի հետ որոշ յարաբերութիւն ստեղծել։ Փոտիոսին աքսորեցին և Իգնատիոսին նորից պատրիարք կարգեցին (867-877)։ 869 թ. ժողովը, որ Հռոմայեցիները ութերորդ են կոչում, Նիկոլայոս Ա-ի յաջորդ Հադրիան Բ-ի ամենամեծ յաղթանակն էր։ Փոտիոսի հետևողները ստիպուեցան ամենախիստ կերպով յետ առնել իրենց կարծիքը, եթէ կամենում էին եկեղեցու հաղորդութիւնից չը զրկուել։ Այս դէպքում էլ, հռոմէական եկեղեցական դիւանը ինքն իրեն ամենամեծ վնասը հասցրեց.

իւր անզգոյշ քաղաքականութեամբ։ Նորա մեծամիտ ընթացքով ամենազգալի կերպով վիրաւորում էին Յունաց ազգային ինքնագիտակցութիւնը և նոյն իսկ ծեր Իգնատիոսին, որ լաւ էր տրամադրուած դէպի Հռովմայեցիները։ Շուտով առիթ եղաւ նոր անհամաձայնութեան։ Անհասկանալի անհեռատեսութեամբ Հադրիան Բ-ը Փորմոզոսին, որ յետոյ պապ եղաւ, և այն ժամանակ Բուլղարիայում Հռովմէական լեգատ էր, չհաստատեց Բուլղարիայի արքեպիսկոպոս, թէև ցարը սաստիկ ուզում էր։ Բարկացած Միքայէլը արդէն վերջնականապէս անցաւ Յոյների կողմը, և ահա այդ տեղից սկսած բուլղարական եկեղեցին միշտ հաւատարիմ մնաց օրթոդոքս եկեղեցուն, դէպի որը ուղղուած էին բնական և պատմական զարգացմամբ։ Վերահաստատուած Փոտիոսը (877-896) նորից յաղթանակող էր. նա խարդախեց մինչև անգամ չափազանց խորամանկ Յովհաննէս Ը-րդ պապին. մութ և խորամանկ դաւադրի խաղերի մէջ, որի ժամանակ իրական ճշմարտութիւնը երբեմն բարձրից զանցառութեան է տրւում, միշտ Յոյները Լատիններին գերազանցել են։ Հետևանքը եղաւ Հռովմից բաժանումը և յունական ազգի ազատութիւնը կամ առաջնութիւնը։ Ս. Փոտիոսը ամենափառաւոր կեր-

*պով իրագործեց իր եկեղեցական քաղաքագիտական ծրագիրը։*

*Բազիլիկոսը արտաքուստ էլ ամենադժուար պայմանների մէջ արտայայտեց միանգամայն նպատակայարմար և ուժեղ քաղաքականութիւն։ Ամենից առաջ Բիւզանդիոնը նորից ծովերին տիրող դարձրեց։ Իրաւ է Արևելահռոմեայեցիները համարեա կորցրած և թշնամու առաջ բաց արևմտեան Սիկիլիա նահանգում կռւում էին ոչ այնքան յաջող, բայց գործնական յամառութեամբ զիջանում էին միայն քայլ առ քայլ։ 868 թ. Մալտան կորել էր։ Հռոմեացիները միացած Փրանկների քաջարի Լուդովիկոս Բ կայսեր հետ, 872 թ. Սալերնոյի մօտ փառաւոր կերպով յաղթեցին Սարակինոսներին։ Բայց 878 թ. Մայիսի 21 վերջապէս Սիրակուս մայրաքաղաքն ընկաւ՝ քաջարար երկար պաշտպանութեան յետոյ։ Աւելի մեծ եռանդով Բազիլիկոսը հակադակարգ հաստատեց Ապուլիայում։ Վենետիկի հետ հին դաշնադրութիւնը վերանորոգուեց։ Սարակինոսների հետ միացած՝ սերբական ծովահէններին խիստ հարուածեցին դալմատեան ափերի մօտ և առանց ուշադրութեան դարձնելու թուլամիտ Կարոլինգների բողոքներ, նա սկսեց դալմատեան Կրօատների Մեծ Ժուպանին (Grossjupane) ընդունել Ռակեդ-*

Ջիւրի մայրաքաղաքի գերիշխանութիւնը։ Իսլամական ասպատակաբարոյ խուժանը, որը Աֆրիկայից, Կրետէից և Կիլիկիայից անդադար կողոպտում էր Յունաստանի և Ադրիայի ափերը, 880 և 881 տարիների փառաւոր ծովային յաղթութիւններից յետոյ, ըստ արժանոյն օրինակելի կերպով սարսափելի արիւնալից պատժի ենթարկուեց։ Քաղաքակրթութիւնը և քրիստոնէութիւնը երկաթէ բռունցքով խորտակեցին կորանի հետևողների բարբարոսական ծովագնացութիւնը։ Փրանկեան իշխանութեան թուլանալը Ստորին-Իտալիայում օգուտ Արևելահռոմայեցիների ծառայեց։ 875 թ. նոցա անձնատուր եղաւ նշանաւոր Բարին, որ այդ ժամանակից սկսած Յոյների գլխաւոր զինամթերքը դարձաւ արևմուտքում։ Կայսեր քաջ զօրականները Արաբներին քշեցին Կալաբրիայից և կազմակերպեցին Լոնգիբարդիա նոր թեմը, որ կարևոր փոխարինութիւն էր կորած Սիկիլիայի տեղ։

Նախորդ կառավարութիւնը մի ծանր խնդիր էլ թողել նրան՝ կրօնական պատերազմը Պօղիկեանների դէմ, որոնք Միքայէլի կառավարութեան ժամանակ Կարբէասի առաջնորդութեամբ մեծ յաջողութիւն էին ունեցել։ Սորա նշանաւոր յաջորդ Խրիւզոխեյրը 871 թ. առաջի արշաւանքում յաղթուեց,

և կայսրը ձեռք բերեց անսահման ուժ· միայն նա չկարողացաւ անառիկ Թեֆրիկէն առնել: Հետևեալ տարին նա իւր ասպատական արշաւանքները տարածեց մինչև Սամոսատան և նախկին չորրորդ Հայքը, թէև նրան չյաջողուեց գրաւել ամուր Մելիտենէն: 874 թ. նշանաւոր դէպքն այն էր, որ Խրիւզոխեյրը բաւական խարդախ և ստոր եղանակաւ սպանուեց մի Յոյնի ձեռքով, որին նա առաջ շատ էր օգնել: Բարեպաշտ աւազակային Հասարապետութիւնը կորցրեց իւր քաղաքական և կրօնական գլխին. Պօղիկեանների խնդիրը արդէն դրանով վերջացաւ:

Բազիլեյոսին յաջորդեցին իւր որդիները և կառավարչակիցները՝ Լ և ո ն ը (886-912) և Ա ղ է ք ս ա ն դ ր ը. որովհետև վերջինը բոլորովին անձնատուր էր եղել զուարճութիւնների, իրապէս իշխում էր փիլիսոփան, որը 904 թ. իւր եղբօր նաև անուանական իշխանութեանը վերջ տուաւ: Ընդհանուր կարծիքով նրան համարում էին Միքայէլի որդի: Հայրը և որդին միմեանց չէին սիրում. և առաջներում որդին հօրը դէմ դաւադրութիւն էր կազմել: Լեոնը իւր հանճարեղ հօր ուղղակի հակապատկերն էր. ուսումնական իմաստակ և մարմնով թուլամորթ, ուստի այդ պատճառով էլ ինչպէս Անգլիայի Յակովբ Ա թագաւորը,

հաւատացած իր կայսրութեան աստուածա-նմանութեանը։ Սակայն պարզամիտ է, այն պատմական հայեացքը, որ նրանից են սկսում՝ հռովմէական միահեծանութեան բռ-նապետութեան փոխուելը և զգացուած ող-բում են Լեւոնի ժամանակ յունական քաղաք-ների քաղաքացիական ազատութեան կորուս-տը։ Ընդհակառակը իրապէս մակեդոնական հարստութեան ժամանակ տեղի է ունեցել փոփոխութիւնը դէպի աւատականութիւն. առանձին նահանգներում հաստատուած ընտա-նիքները աստիճանաբար ուժ են ձեռք բերում։ Նոյն առանձնակի ձգտումները աստիճանա-բար ստեղծել են պետութեան յարատեւ թու-լութիւնը այնպէս, ինչպէս նոյն շաւղով ընթա-ցող արեւմտեան ժամանակակից դեռ բաւական բարբարոսական պետական կազմութիւնները։

Լեւոնը ինքն իրան անպատուեց իր կա-ռավարչական առաջին գործողութիւններից մէկով, երբ նա ստիպեց մեծ Փոտիոսին ստո-րագրել հրաժարական թղթի տակ։ Կայսրը օրթոդոքս եկեղեցու ղեկավարութիւնը հա-ւատաց իր հազիւ տասն և ութ տարին լրա-ցած եղբօր Ստեփանին։ Նոյն եղանակով յետոյ էլ կայսերական իշխաններից մէկը՝ Թէոփիլակտոսը (933-956) արժանացաւ այդ աստիճանին, ինչ որ բոլորովին արտասովոր էր

արեւելահռոմէական պետութեան մէջ։[1] Այդ յիշեցնում է իրերի վիճակը Հայաստանում, որտեղ կաթուղիկոսների ընտանիքը թագաւորական ընտանիքի հետ խնամիացած էր։ Փոտիոսը՝ արժանացած ընդհանուրի յարգանքին քաշուեց մի վանք. «անկասկած աւելի երջանիկ, քան եթէ մնար պատրիարքական գահի վրայ և եթէ ինքը պապ նրան բանադրէին»։[2] Լեոնի ժամանակ հանդէսով հրատարակուեց նաև այն եկեղեցական նոր կարգադրութիւնը՝ բազմահռչակ դ ի ա տ ի ւ պ օ զ ի ս ը (Diatyposis), որով նա Հեմուս թերակղզու եպիսկոպոսների համար, որոնք առաջ ենթակայ էին Հռովմին, հաստատուն տեղ որոշեց պետութեան հոգևորականութեան ժողովների մէջ, այնպէս որ դրանով վերջ տրուեց հոգևոր հովիւների մէջ մինչև այդ տեղի ունեցող այն անվայել դրութեանը, որ երբեմն ծեծով էր վերջանում։

---

1 Գահազուրկ ընտանիքների վանական ժառանգները բնականաբար հաշուի չեն առնում, ինչպէս Ապսիմարոսի որդի Թէոդոսոս Եփեսացին եւ Իգնատիոս պատրիարքը: Միայն մի բիւզանդական իշխան եմ գտել Ախրիդայի գահի վրայ, Ադրիան պանսեբաստոս Սեբաստոսը, իբրեւ վրդ. Յովհաննէս Կոմնէն:

2 Ֆինլէյ՝ Պատմ. Բիւզ. կայսրութեան հատ. Ա էջ 313 (Finlay hist. of the B. Empire).

Ստիլիանոս Նիոյկեսարացու ժամանակ Իգնատեանք նորից իշխանութեան հանելով՝ յարաբերութիւն սկսեցին Հռոմի հետ, և երկար բանակցութիւններից յետոյ՝ վերջապէս 900 թ. միութիւնը իսկապէս գլուխ եկաւ։ Սակայն այդ միայն հռովմէական եկեղեցու կառավարութեան և բիւզանդական պետութեան վարչութեան պարզ արտաքին միութիւն էր. նա այնքան քիչ արժէք ունէր, ինչպէս բոլոր այն բազմաթիւ միութիւնները, որ ստեղծում էին հետևեալ վեց ու կէս դարերի ընթացքում։ Ժողովուրդները շարունակում էին առաջուայ պէս բաժան մնալ ազգովին ևկրօնապէս։

Բայց աւելի նշանաւոր է Լևոնի օրէնսդրական գործունէութիւնը։ Արդէն Բազիլեյոսը նորից մշակել էր տուել Յուստինիանի օրէնսգիրքը և 879 թ. հրատարակել այդ աշխատութեան արդիւնքը՝ պրոխեյրոս կանոն (Procheiros kanon-առձեռն կանոնագիրք) որի վրայ 884-886 թ. աւելացաւ գործածութեան մէջ եղած օրէնքների երկրորդ ձեռնարկը՝ էպանագոգէ-Epanagoge։ Նրա որդու ժամանակ ամբողջ տէրութեան համար հրատարակուեց իսկական գլխաւոր աշխատութիւնը՝ բազիլիկա-Basilika-ժողովածու 887-893 թ. 60 գրքերով իբրև ընդհանուր գործածութեան օրէնսգիրք։

*Արտաքուստ Նրա կառավարութիւնը դէպքերով աղքատ է և խիստ դժբախտ: Քրիստոնեաները Սարակինոսների դէմ պատերազմում էին փոփոխակի յաջողութեամբ: Բիւզանդացիք կողոպտում էին մինչև խորը Ասորիքը: Իսլամական ծովահէնները դարձել առաջուայ պէս Եգեյեան ծովի պատուհաս էին:* 888 *Թ. ասպատակեցին Սամոսը,* 902 *Թ. Թեսալիայում կործանեցին Դեմետրիասը: Այս յարձակումների իսկական ղեկավարը և քրիստոնեաների ամենակատաղի թշնամին, ինչպէս միշտ, փոքր ասիական ծովափերից մի հաւատափոխ էր Լևոն Տրիպոլսեցին: Նորան յաջողուեց միմիայն* 54 *նաւով, որոնց նաւավարները մեծաւ մասամբ «Եթովպացիներից» էին, երբ նա յանկարծակի երևաց Յուլիսի* 29 904 *Թ. բոլորովին անպատրաստ Թեսալոնիկէի առաջ, որ պետութեան երկրորդ քաղաքն էր, երկու օր անցած ծովի կողմից մըտնել քաղաքը և անչափ աւար առնելով և գերիներ վերցնելով* (22,000 *հոգի*) *հեռանալ: Սիկիլիայում և Ստորին Իտալիայում ևս տարեգիրները փիլիսոփայի ժամանակ հաղորդում են միայն դժբախտ պատահարներ:* 889 *Թ. Յոյները Աֆրիկացիներից ծովի վրայ մեծ ջարդ կրեցին Միլէի* (*Մելազոյի*) *մօտ:* 901 *Թ. ընկաւ Ռեգիոնը, իսկ* 902 *Թ. Տաւ-*

րոմենիոնը՝ որ յունական իշխանութեան վերջի յենարանն էր։ Նմանապէս Բարին Ստորին Իտալիայում թէև ժամանակաւոր, ընկաւ Բենեվենտի Լանգոբարդների ձեռքը։ Ամեն տեղ Լևոնի թոյլ և անընդունակ կառավարութիւնը թողնում էր իւր բնորոշ կնիքը։ Բուլղարների հետ էլ չհասկացան խաղաղութիւն պահպանել։ Սիմէոն ուժեղ ցարը (893 927), որ վեցերորդ պատրիարք կարգելով բուլղարական ինքնագլուխ եկեղեցւոյ հիմնադիրն էր դարձել, չկամեցաւ այլ ևս երկար համբերել, որ իւր պետութիւնը կողոպտուի մի քանի Յոյն մեծ վաճառականների մենավաճառութիւնից։ Սակայն Բիւզանդիոնը դիմեց քաղաքական կռւի այն միջոցին, որ վաղուց յաջողութեամբ փորձուել էր. Նա Բուլղարների դէմ հանեց Մաճառներին։ Սոքա յունական նաւատորմղի օգնութեամբ մտան Բուլղարիա. Սիմէոնը հազիւ էր պաշտպանւում իւր ամրութիւններից։ Բայց Բուլղարները հետամուտ լինելով աւարով ծանրաբեռնուած թշնամուն, հիմնովին ջարդեցին նոցա Բեսարաբիայի տափաստաններում։ Այժմ կարելի էր Յունաց հետ հաշւի մըտնել։ Երբ Սիմէոնը նոցա փառաւոր յաղթեց Բուլղարոփիւգոսի մօտ, իւր զէնքի ծանրութեամբ հարուածեց նաև Մաճառներին։ Դընեպրի Պացինակների (Պեչենեգների) օգնու-

Թեւամբ Բեսարաբիայում յարձակուեց Մաճառների ընտանիքների վրայ․ երբ սոքա արշաւանքի էին դուրս գնացել։ Նոցա կամ կոտորեցին կամ գերեցին և Մաճառներին ստիպեցին վերջնականապէս իրանց համար պետութիւնը հաստատել Դանուբի և Թեյսի մէջ։ Ապա Բուլգարները Ցոյների հետ խաղաղութիւն պահպանեցին․ Նոցա մէջ զօրեղ կերպով տարածուեց բիւզանդական-քրիստոնէական քաղաքակրթութիւնը և գրականութիւնը և ներար ազդեցութիւն գործեց կոպիտ ժողովրի վրայ։ Սիմէոնի դարէշրջանը բուլգարական րականութեան ոսկեդարն է համարւում։

Այս ընդհանուր-պատմական դէպքերին ռովմէական կայսերական կառավարութիւնը անակցում էր միայն իբրև բոլորովին անործ հանդիսատես։ Դրա փոխարէն արքուքը խիստ զբաղուած էր բարձրագոյն աուածական խնդիրներով։ Թուլամորթ Լեւոնը րեք կին էր ունեցել․ Թէ դոցանից ամենաշանաւորը՝ Ս. Թէոփանոն, իւր ողորմելի մուսնուն չէր սիրում, իսկապէս շատ հասանալի է։ Ուստի նա կենակցում էր իւր հարճ Զոէյի հետ, որից նա մի որդի ունեցաւ, և այդ նորան անչափ ուրախութիւն պատճառեց։ Նա կամենում էր երրորդ ամուսնու մահից ետոյ իւր ընտրեալ սիրուհուն կայսրուհի

դարձնել, ուրպէս զի որդուն օրինաւոր ժառանգ ճանաչէ։ Սակայն հոգևորականութիւնը իրեն՝ գլուխ ունենալով Նիկողայոս Միստիկոս պատրիարքին, ամենայն ուժով դիմադրեց նրա չորրորդ ամուսնութեանը. և դրանով աւելի քաջութիւն արտայայտեց, քան իւր հոգևոր եղբայրները Ռուսաստանում ԺՋ դարում։ Նիկողայոսին գահազուրկ արին, և մի ուրիշ դիւրաթեք հոգևորականի, Եւթիմիոսը, որը ընդհանրապէս յարգուած մէկն էր, բարձրացաւ պետութեան առաջին գահի վրայ։ Արեւելեան պատրիարքների համաձայնութիւնը հեշտութեամբ ստացան։ Նոցա ներկայացուցիչները՝ խեղճ վարդապետներ, վաղուց էին վարժուել դրամական ընծաների առաջ երբեմն փոտիոսեաններին երբեմն իգնատիոսեաններին ձայն տալ։ Աւելի վատ էր, որ Հռովմն էլ, որ արդէն դէպի անկումն էր ընթանում, նոյնպէս ձայնակցեց իւր ներկայացուցիչների միջոցով։ Յունուարի 6, 906 թ. տեղի ունեցաւ Կոստանդինին գահաժառանգի հանդիսաւոր մկրտութիւնը։

Լեւոնի մահից յետոյ (11 Մայիսի 912 թ.) յաջորդեց իւր եղբայր Ալեքսանդրը (912-913), որ մի և նոյն ժամանակ անչափահաս գահաժառանգ Կոստանդինի խնամակալն էր։ Խիստ ողորմելի իշխանը հազիւ էր կառավա-

բում, նա միանգամայն ենթակայ էր իւր եղբօր հակառակորդներին։ Նոր պատրիարքի և Նիկողայոսի կողմնակիցների մէջ գոյութիւն ունէր ամենաոխերիմ թշնամութիւն, այնպէս որ կային այնպիսիները, որ հաւատ էին ընծայում այն ամենաանմիտ լուրերին իբր թէ պաշտօնազուրկ պատրիարքը դաւաճանական յանցապարտ հնարներ է մտածում Լևոն կայսեր դէմ։ Բիւզանդիոնում շատ սովորական հակառակ հոսանքը նորից սկսուեց։ Իւր հակառակորդի բացարձակ խարդաւանքի շնորհիւ ապաբախտ Եւթիւմիոսը գահազուրկ եղաւ։ «Նրա վրայ յարձակուեցին իբրև վայրի գազաններ, բռունցքներով հարուածում էին և միրուքը փետում»։ Նիկողայոսը նորից (912-925) հանդիսաւոր կերպով գահ բարձրացաւ։ Արտաքսուած Աղէքսանդրը հասկացաւ միայն այն անել, որ անտեղի հպարտութեամբ թուլացրեց իւր և բուլգարական զօրեղ ցարի միջի լաւ յարաբերութիւնները. սակայն պետութեան բախտից նա արդէն մեռաւ միամեայ վատ կառավարութիւնից յետոյ 913 թ. Յունիսի 6, երբ նա իւր անչափահաս եղբօրորդու համար խնամակալութիւն էր հաստատել Նիկողայոս պատրիարքի առաջնութեամբ։

Պատրիարքից զատ խնամակալական խորհրդում մասնակցում էր միայն մի նշանաւոր

մարդ՝ Յովհաննէս Էլադասը. միւսները Աղեքսանդրի նախկին սիրելիներն էին, անձինք սլաւական ծագումից: Կոստանդին Ծիրանածինը (913-959) մարմնացեալ սկզբունքն էր. Le roi règne, mais il ne gouverne pas-թագաւորը իշխում է, բայց նա չէ կառավարում: Թէ անչափահաս և թէ չափահաս ժամանակը նա երբէք չէ կառավարել. և չէ կարելի ժխտել, որ այդ պետութեան համար բախտաւորութիւն էր. որովհետև երկրի վիճակը մնաց բացառապէս աւելի ընդունակ ձեռքերում, քան եթէ գիտութեան հովանաւորող Ծիրանածինը ինքը կառավարէր: Ձնայած դրան՝ փորձել են Ժ-րդ դարի առաջի կէսը ներկայացնել իբրև անկման շրջան՝ համեմատած պատկերամարտութեան շրջանի կայսրների հետ. որոնց շատ են բարձրացնում: Իրաւ է՝ մակեդոնեան հարստութիւնը, երկու հոգու բացառութեամբ, միայն անունով է կառավարել, բայց դրա փոխարէն, ինչպէս հին կայսերական ժամանակները Իլլիւրական կայսրների օրով, սկսած Կլաւդիոս Գոթիկոսից մինչև Կոնստանդինը, կառավարութեան ղեկը յանձնուել էր զինուորական բարձրագոյն խորհրդի արտակարգ ընդունակ և գործունեայ զինուորականներին, որոնք մեծաւ մասամբ հայկական ծագման մարդիկ էին: Կոստան-

*դինոս Դուկասը․ որ մի խիստ ընդունակ զինուորական էր, փորձեց գլորել խնամակալութիւնը, ինչպէս երևում է, պատրիարքի գիտութեամբ, որը կամենում էր աւելի հաճոյքով կառավարել այդ ուժի մարդու հետ, քան թէ այն ժամանակուայ խնամակալութեան պալատական անդամների հետ։ Բայց երբ նա իրան կայսր հրատարակեց, յանձին հեռատես Յովհաննէս Էլադասի գտաւ իւր հաւասարակից հակառակորդ․ Դուկասը և իւր ցեղը ջնջուեցին։ Յովհաննէս Էլադասը կայսեր ցանկութեամբ հրաւիրեց կայսրամայր Զոէին, որին Աղեքսանդրը հեռացրել էր պալատից, և սա մտաւ խնամակալութեան մէջ։*

*Արտաքուստ սկսեցին քաղել Աղեքսանդրի անխորհուրդ քաղաքականութեան պտուղները։ Սիմէոնը իւր բուլղար զօրքով ասպատակելով* 913 *թ․ հասաւ մինչև մայրաքաղաքը․ հետևեալ տարին Բուլղարները դաւաճանութեամբ առան մինչև անգամ Ադրիանուպօլիսը, թէև Յոյների հանդէպ չկարողացան պահպանել։ Կառավարութիւնը պատրաստում էր լուրջ գործողութիւն։ Բոլոր զօրագնդերը, ասիականն էլ, ժողովեցին Եւրոպայում Բուլղարներին մեծ հարուած տալու և առաջնորդութիւնը յանձնուեց տէրութեան ամենաընդունակ զօրավարներից*

մէկին՝ Լեւոն Փոկասին։ Միաժամանակ Բիւզանդական ոսկին ազդել էր Պաչինակների զգացմունքի վրայ. սոյն շարժմանը պէտք է օգնէր հռովմէական նաւատորմիղը Ռոմանոս ծովապետի առաջնորդութեամբ։ Սակայն Ռոմանոսը բաւական երկդիմի դեր բռնեց։ Նրա մեղքն էր որ Պաչինակներից սպասած օգնութիւնը ժամանակին չհասաւ, ուստի Հռովմայեցիք Լեւոնի առաջնորդութեամբ սարսափելի հարուած կրեցին Աքելոյոսի մօտ 917 թ. Օգոստոսի 20։ Երկու հակառակորդների՝ Լեւոնի եւ Ռոմանոսի խարդախ մրցութիւնը վերջացաւ Լեւոնի կատարեալ պարտութեամբ։ Կոնստանդին կայսրը միայն անուամբ հրատարակուեց չափահաս. 919 թ. Մարտի 25 կառավարութիւնը իր ձեռքն առաւ Ռոմանոս Լեկապենոսը, որը հրատարակուեց զօրաց մեծ հրամանատար—Grosshetairreirches, (արտասահմանեան պահապան գնդերի զօրապետ)։ Նրա Հեղենա աղջկայ վրայ ամուսնացաւ կայսրը, նա արդէն նոյն տարուայ Ապրիլ ամսում ստացաւ Բազիլիոպատոր (կայսրահայր) նորահնար պատիւը եւ իր բարձր զինուորական հրամանատարութիւնը, տուեց իր որդի Քրիստափորոսին։ Թոյլ Կոստանդինը շուտով իր զօրեղ աներոջ անուանեց Կեսար, եւ նա 919 թ. Դեկտեմբերի 17 հան-

դիտաւոր կերպով Նիկողայոս պատրիարքից օծուեց կայսրակից 919—944)։

Պետութեան գլխաւոր սպառնալիքներն էին Բուլղարները և կրետական ծովահէնները։ Բուլղարների տէրութիւնը Սիմէոնի ժամանակ (893—927) իւր բարձրութեան գագաթնակէտին հասաւ։ Նրա գործածած տիտղոսը «Բուլղարների ցար և Հռոմէների իշխող (Antokrator)» բացորոշում է նրա պարզ դիտաւորութիւնը, քաղաքականապէս Արևելահըռովմի ծերացած պետութեան տեղը բռնել, ինչպէս որ Պրեսլաւի մետրապոլիտը, որ պատրիարքութեան աստիճանի էր հասել, ակնյայտնի կերպով պէտք է տիեզերական պատրիարքի տեղը բռնէր։ Ադրիանապօլսից, Մեսեմբրիայից և Վոդենայից շարունակ առաջ անցնելով, Բուլղարները ընդլայնում էին իրենց սահմաններում ի հաշիւ հռովմէական պետութեան, որ արևմուտքում հասնում էր մինչև ադրիական ծով, երբ տիրեցին հին Իլլիւրական երկիրներին։ Բիւզանդիոնը դիմեց իւր փորձուած հին քաղաքականութեանը, Սերբերին և Կրովատներին ուղղեցին իրենց եղբայրների դէմ՝ արևելեան Բալկանեան թերակղզում։ Ալոգոբոտորսի (927) Կրովատներից կրած ծանր պարտութիւնը և նոյն տարին պատահած Մեծ ցարի մահը սկիզբն են

բուլղարական պետութեան անկման. Սիմէոնի որդին, բարեպաշտ, խաղաղասէր և թոյլ Պետրոս ցարը (927-968) կարճ ընդհատումներից յետոյ, Մակեդոնիայում Հռոմի հետ խաղաղութիւն հաստատեց. և երկու մեծ պետութիւնների մէջ սերտ բարեկամութիւն հաստատուեց, երբ ցարը ամուսնացաւ Ռոմանոս կայսեր թոռ Մարիայի վրայ. որը առաջի բիւզանդական թագուհին էր բուլղարական գահի վրայ. Տիեզերական պատրիարքարանի քաղաքական ամենախելացի խաղն էր, որ հանդիսաւոր կերպով ընդունեցին բուլղարական պատրիարքութիւնը. դրանով բուլղարական ազգային եկեղեցին վերջնականապէս միաց օրթոդոքս համայնութեան մէջ և Հին-Հռոմի հետ կտրուեց ամեն մի կապ:

Ստորին Իտալիայում Ռոմանոսը պատուաւոր եղանակաւ անկորուստ պահեց բիւզանդական տիրապետութիւնը: Էգեյեան ծովի սարսափելի պատուհասը, հաւատափոխ Լևոն Տրիպոլսեցին 924 թ. Յովհաննէս Ռադինոս ծովապետից Լիմնոսի մօտ ահեղ ծովամարտում այնպէս հիմնովին պարտուեց, որ կարելի էր ասել թէ ծովային վտանգը ընդհանրապէս անցած է:

Վերակենդանութեան զօրեղ ձգտման ապացոյց են ծառայում ամենից առաջ արե-

ւելքի հանգամանքները, արևելքում մղած պատերազմը Բաղդատի խալիֆութեան դէմ, որը խորը կերպով քայքայուել էր և կազմալուծւում էր իւր առանձին մասերի։ Հայազգի ընտիր զօրապետ Յովհաննէս Կուրկուասը քսաներկու տարուայ ծանր պատերազմներից յետոյ (920-942) տէրութեան սահմանները առաջ տարաւ Հալէպից մինչև Եփրատ և Տիգրիս։ Ապոխապս (Աբու-խաֆս) Մալաթիայի (Մելիտենէ) Էմիրը 928 թ. Հռովմի հետ դաշն կապեց։ Դրանով այդ կամրջագլուխը՝ մինչ այդ անհաւատների գլխաւոր յարձակման տեղը. Հռովմէացւոց պետութեան զօրեղ պաշտպանութեան տեղը դարձաւ։ Էմիրի գնդերը հռովմէական զօրքերի հետ կռւում էին իրենց հաւատակիցների դէմ։ Յաղթութիւնը տանելուց յետոյ Հռովմէացիների հետ միասին յաղթանակով մտան մայրաքաղաքը, իրենց հետ բերելով գերուած Հագարացիներ։ Անհաւատ Հագարացիների համար այդ դժբախտութեան մի զարմանալի և անսպասելի նշան էր, պատմում է ուրախացած ժամանակագիրը (Գէորգ Համարտ)։ Ապոխապսի յաջորդները զղջացին իրենց ուրացութիւնը. ծաղկեալ Մելիտենէն և նրա հարևան քաղաքները գրաւեցին և կործանեցին։ Հռովմէական մի կուրատոր

(Հոգաբարձու) հրամանատար էր այն տեղերի վրայ՝ որ այնքան երկար ժամանակ Իսլամի իշխանութեան տակ էր։ Իսկ Կուրկուասը «մեծ զօրավարը՝ ամէն տեղ յաղթութեան նշան կանգնեցրեց՝ լայնացրեց Հռովմայեցիների սահմանները և կործանեց Հագարի որդիների շատ քաղաքներ։

Դրա հետ միասին ահագին նշանակութիւն ունէր արևելեան քրիստոնեաների վերածնութիւնը․ Հայերի և Վրացիների՝ որոնք թօթափեցին Իսլամական լուծը՝ Բագրատունիները արդէն Բազիլեյոսի ժամանակ հաստատել էին մի նոր հայկական անկախ տէրութիւն՝ և կայսրը Աշոտ իշխանաց իշխանին թագաւորական թագ էր ուղարկել՝ երբ որ խալիֆը ևս 885 թ․ հանդիսաւոր կերպով նրան թագաւոր էր հրատարակել։ Աշոտի (889 թ․) և նրա քաջասիրտ Սմբատ որդու մահուանից յետոյ՝ Արաբները նորից գերիշխող դարձան․ Հայաստանում տիրում էր անիշխանութիւն։ Սակայն Սմբատի արժանաւոր որդի Աշոտ «Երկաթը» (915-928) Վրաց և Աբխազների թագաւորների օգնութեամբ մաքրեց երկիրը Արաբներից և Յոյների դաշնակցութեամբ Բագրատունեան իշխանութիւնը հասցրեց ամենամեծ բարձրութեան։ Խալիֆը 922 թ․ նրան շնորհեց շահն

շահ-արքայից-արքայ տիտղոսը, դա դադարկ տիտղոս չէր. դրանով հանդիսաւոր և պաշտօնական կերպով ճանաչուեց նրա գերիշխանութիւնը Վասպուրականի, Աղուանքի, Վրաստանի և Աբխազիայի քրիստոնէական աւատական իշխանութիւնների վրայ։

Այդ ժամանակից սկսած Հայաստանը միանգամայն դուրս եկաւ խալիֆայութեան իշխանութեան շրջանից, սերտ կերպով կապուած էր Արևելահռովմի հետ և կազմում էր քրիստոնէութեան համար պաշտպանութեան նախադուռ։ Իսկ Իսլամը, որ մինչև այդ Արևելքի ներկայացուցիչ էր հանդիսանում, ինչպէս երբեմն Պարթևների ժամանակ, յետ մղուեց և սահմանափակուեց միայն, Ադըրբեյջանի լեռնային սահմանների յայնկոյս մասում։ Հայերը և միանգամայն երկրորդական դերում Վրացիները, այն ժամանակ իշխում էին և իրենց ձեռին ունէին ընդհանուր-պատմական դրութիւնը։ Այդ ազգի քաջ և խելօք որդիները արժանացել էին արևելա-հռովմէական պետութեան թէ բարձր զինուորական շրջանում և թէ կայսերական դիւանում ամենաազդեցիկ և ղեկավարող պաշտօնաների և վարում էին ամենաարժանաւոր եղանակով։ Կարծես երկնքի օրհնութիւնն էր իջել, «աստուածավախ, քրիստոսասէր» Ռո-

մանոս կայսեր վրայ։ Մծբնի առումից յետոյ հանձարեղ Կուրկուասի ձեռքով. սա ստիպեց Եդեսիայի բնակիչներին, որ վերջին ծայր պաշարուած էին, իրենց քաղաքի մեծ սրբութիւնը յանձնել իրեն՝ «Նորա աստուածային անձեռագործ պատկերը, որ իւր հօր անփոփոխ պատկերն է»։ Ամբողջ տէրութիւնը մեծ ոգևորութեան մէջ ընկաւ։ Հանդիսաւոր յաղթական գնացքով, բոլոր քաղաքներում հոգևորականութեան, մեծամեծների և ժողովրդի ցնծալից պատգամաւորութիւններով տօնուելով. այդ սրբասուրբ պատկերը բերուեց մայրաքաղաք, և այնտեղ ընդունեցին այնպիսի արտակարգ շքով և հանդիսով, ինչպիսին սովոր էր տիեզերական գահի հոգևորականութիւնը կատարել այդպիսի առիթներում։

Ռուսները, որ իրենց Իգոր Մեծ իշխանի առաջնորդութեամբ 941 թ. հազարից աւելի նաւերի վրայ, 40,000 մարդով անլուր չարիքներ գործելով, յարձակուել էին մայրաքաղաքի վրայ, այնպէս հիմնովին ջարդ կրեցին ցամաքի վրայ Կուրկուասից, իսկ ծովի վրայ Հիերիոնի մօտ Թէոփանէս Պատրիկիոսից, որ երկար ժամանակ հանդարտ մնացին և շուտով Արևելահռովմի հետ շատ նշանաւոր վաճառականական դաշն հաստատեցին։

Երբ այդպիսով Ռոմանոս կայսեր կառավարութիւնը արտաքուստ ցոյց էր տալիս այդպէս ուժեղացած վերածնութիւն, որը ունեցաւ Արեւելահռոմը Ժ-րդ դարում, ներքուստ էլ գործում էր արտակարգ եռանդով։ Ռոմանոսը ամենից առաջ իր գլխաւոր ուշքը դարձրեց, ինչպէս ցոյց են տալիս նրա կարգադրութիւնները, հողատիրական հարցի վրայ։ Նա ուղղակի Աստուծուն էր օրինակ առել երբ նա հոգ էր տանում անտեսապէս թոյլերի մասին հարուստների ճնշումների դէմ։ Մեծ կալուածների աւելանալը կործանել էր պետութեան անտեսութիւնը։ Այդ պատճառաւ, ասում էր կայսրը, պէտք է օրէնսդրութեան թուրը հանել պատեանից ներքին թշնամիների դէմ. որովհետև հպատակների պաշտպանութիւնը բռնակալական ճնշումներից աւելի պակաս պարտք չէ, քան պետութեան սահմանների վերահաստատութիւնը և ամրացնելը։ Արգելք տրուեց գիւղական կալուածները ազատ վաճառելու և գնելու։ Մեծ սովի տարուց 927 թ. սկսած որը առաջին անգամ գրաւեց կառավարութեան ուշադրութիւնը անտեսական հարցերի վրայ, ոչնչացած հրատարակեցին բոլոր պայմանները որով մէկը այդպիսի նոր կալուածք էր ձեռք բերել և նորից պէտք է վերադար-

*ձնուեր հին սեպհականատէրերին, մինչև անգամ առանց փոխարինելու բարուոքելու համար կատարած ծախքերը։ Միայն անտեսութիւնը չէր որ վնասուել էր մեծացող կալուածատիրութիւնից՝ այդ վնասակար էր ազդում նաև զինուորականութեան վրայ։ Զինուորական ծառայութիւնը հիմնուած էր, ինչպէս հին հռովմէական կայսրների ժամանակ, զինուորական կալուածների վրայ, որոնք որ անփոխարինելի էին։ Եթէ խաշնապահութեան անտեսութեամբ պարապող մեծամեծները գնում էին այդ հողերը, այն ժամանակ զօրաժողովը դժուարանում էր։ Թէև կառավարութիւնը շատ աննշան յաջողութիւն ունեցաւ՝ այդպէս կռուելով ժամանակի զօրեղ հոսանքի դէմ, այնու ամենայնիւ ամենայն գովքի արժանի է այդ միանգամայն գեղեցիկ ձգտումը, որով առնուազն սահման տրուեց ամենավատ չարիքներին։*

*Եւ այն էլ չպիտի մոռանալ, որ ներքուստ և արտաքուստ այդքան զօրեղ կերպով գրաւուած կառավարութիւնը, ստիպուած էր շարունակ կռիւ մղել արքունիքի ըմբոստ կուսակցութիւնների և մեծամեծների դաւադրութիւնների դէմ։ Սակայն Ռոմանոսը հասկանում էր խստութեամբ ճնշել ո և է ընդդիմութիւն. սակայն ուշադրութեան արժանի*

են այդ դէպքերը՝ աճող ազնուականութեան նշանակ ծառայելով։ Դոքա անհաճոյ կերպով յիշեցնում են արեւմուտքի քաղաքակրթապէս աննշան պետութիւնների զուգահեռական համանման պատահարներին։

Անգութ կերպով ամէն ինչ ոտի տակ տալով՝ Ռոմանոսը առանց ակնածութեան, միայն իւր տան մասին էր մտածում։ Իւր բոլոր որդիները անուանեց կայսերակիցներ, Քրիստափորոսը, Ստեփանոսը և Կոնստանտինոսը (924 թ.)։ Նա կայսերական թագ դրեց մինչև անգամ իւր թոռ՝ Քրիստոփորի որդի Ռոմանոսի գլխին։ Քրիստոփորի մայրը Օգոստուհի կոչուեց. (923 թ.) սրա Մարիա աղջիկը պսակեցին Բուլգարների ցարի հետ։ Վերջապէս Ռոմանոսի չորրորդ որդին, որ հիմնական վարժութիւն ունէր ձիավարութեան արհեստում և որի հոգեկան ընդունակութիւնները հաւասար էին ներկայիս թունդ Արիստոկրատ զուարճասէրի կամ ձիարշաւների սիրահարի հասկացողութեան, ընտրուեց որ զարդարի Ս. Անդրէասի և Ս. Ստաքիոսի գահը, միակ անարժան պատկերը. որ պղծել է այդ գահը։ Մակեդոնեան կայսերական տան օրինաւոր ժառանգը. ուսումնական անուանական Կոստանդին կայսրը, երդմնազանցութեամբ. որ սովորական էր այն ժամանակուայ Յունաց

*մէջ, 922 թ. երկրորդական տեղ ստացաւ. յետոյ նրանից առաջնութիւն ստացան նաև միւս Լեկապենները. «և նա, որ պէտք էր առաջինը լինէր, հինգերորդը դարձաւ»։*

*Ռոմանոսը թողեց նաև եկեղեցական վէճը։ Երբ կրքոտ Նիկողայոսը 919 թ. Աղեքսանդրի ձեռքով նորից վերահաստատուեց, տախտակներից ջնջեց հռովմէական եպիսկոպոսի անունը, և չթոյլ տուեց եկեղեցիների մէջ յիշատակութիւնը։ 920 թ. մի հանդիսաւոր միութիւն կնքուեց (բնականաբար բոլորովին անօգուտ), որով ընդունուեց յունական եկեղեցու սկզբունքը, անընդունելի համարել չորրորդ ամուսնութիւնը։ Նիկողայոսը իր կուրութեան մէջ չէր նկատում, որ դրանով ինքը գործիք է դարձել խորամանկ կառավարչի ձեռին։ Միակ օրինական ժառանգը նրանով, որ եկեղեցին անվաւեր հրատարակեց նրա հօր ամուսնութիւնը, բարեպաշտներից հալածուեց իբրև ապօրինի զաւակ, մինչդեռ բռնակալի տունը «անում էր, ինչ որ Աստուծուն հաճելի էր»։ Վարդապետներ և աղքատներ մեծ եռանդով փառաբանում էին «ամենամեծ հաւատացեալ և ամենաջերմեռանդ օրթոդոքս Ռոմանոս կայսեր հրաշալի գործերը և անթիւ բարիքները»։*

*Այսպէս է, այդ ուժի մարդը երկաթէ*

խարդաւանով կառավարել բիւզանդական երկիրը։ Մակեդոնեան տան փոխարէն Լեկապենեանների հարստութեան կատարեալ հաստատութիւնը, լոկ ժամանակի խնդիր էր, երբ ինչպէս որ պայծառ երկինքից մի կայծակ՝ անսպասելի հարուած դիպաւ նրանց, և այն էլ այնպիսի տեղից, որ ոչ ոք ոչ սպասել էր ոչ էլ կարող էր սպասել։

Գիտակցօրէն և սկզբունքով անխնայ կերպով Ռոմանոսը ճնշել էր բռնապետական, որ և է ձգտում, արհամարհելով օտարի բոլոր իրաւունքները։ Միայն նա հաշուի չէր առել իւր սեպհական որդիների փառամոլութիւնը։ Սարսափելի վրէժ էր, որ այդ հանճարեղ բայց բարոյական հիմունքներից զուրկ յանցապարտը, գլորուեց այն անձանց ամենազզուելի անշնորհակալութեան պատճառաւ, որոնց շահի համար ոտի տակ էր տուել ամեն աստուածային և մարդկային իրաւունք։ Ի զուր էր անցել իւր խստակեաց բարեկամ՝ Սերգիոս վարդապետի գուշակութիւնը, թէ նա ունենալու է Հեղի քահանայապետի վիճակը։ Անդրանիկ որդին մեռաւ հօրից առաջ։ Ստեփանոս և Կոստանդինը 944 թ. Դեկտեմբերի 16ն կալանաւորեցին իրենց հօրը[1] և ուղարկեցին

1. Թեոփանեսը այդ գործի մտածող եւ ուղղութիւն տուող համարում է Կոստանդինին կայսեր: Ուրեմն նա այն-

*Պրոտէ կղզու վանքը. «որպէս զի վարդապետների հետ փիլիսոփայութեամբ պարապի»։ Այնտեղ նա մեռաւ 948 թ. «գահից զրկուած, ինչպէս ծեր Կրոնոսը Զեւսից»։*

*Բայց արդէն 945 թ.՝ Յունուարի 27-ն եկաւ, ապստամբներն էլ ստիպուած էին հօրը մօտ վանք մտնել, որ ընդունեց նոցա զաւակը ծայրով։* [1] *Ժողովուրդի ցնծութիւնը օրինա-*

---

պիսի ողորմելի մի թուլամորթը չէր, ինչպէս ընդհանրապէս ընդունում են. Նրա աները դէպի նրան իւր բռնած դիր-քով կատարելապէս արժանի էր այդ վրիժառութեանը։

1. «Ինչ մեծ սովանմանութիւն որ Ձերդ Մեծութիւն-ները բարեհաճել են այցելելու մեր նուաստութեան։ Ցա-ւակցութիւնը, կարծում եմ, որ Ինձ հալածել է պալատից, չէ թողել սուել Ձերդ սիրելիութեանը այնտեղ երկար մնալու։ Ինչքան լաւ էիք անածել, որ ինձ այնքան առաջուց ուղար-կեցիք։ Որովհետեւ իմ սիրելի եղբայրները եւ Աստուծոյ հա-մար համաչափանացողները՝ միանգամայն նուիրուած լինելով երկնային գիտութեանը, չեն հասկանալ, թէ ինչպէս վայել է ընդունել կայսեր, երբ նոքա ինձ, որ այնքան վարժ եմ կայսերական արքունիքի կարգերին, չունենային։ Հանեցէք ուրեմն։ Ջուրը պատրաստ է Ձեզ համար, աւելի բարում քան երբ նրան զովացրած լինէր Ալեքսանդրը. Քնքոյշ լոբի, կա-նաչեղէններ եւ նորաքաղ սանձեր Ձեր տրամադրութեան տակ են։ Ծովից սացած ընտիր խորտիկներ այստեղ չեն գնուում մեր սպասաւորները, աւելի սովոր են յաճախակի պատերը։ Բազմաբիւ եւ շքեղ շքախումբը այս աղքատութեան մէջ մեզ չեն հեշտեալ. Եւ միայն Ձերդ Մեծութիւններին է ընդառա-

ւոր ժառանգի վերահաստատութեան մասին՝ ցոյց տուեց թէ օրինականութեան գաղափարը ինչքան զօրեղ յառաջադիմութիւն էր արել Բիւզանդիոնում, որ մինչ այդ վարժուել էր զինուորական բացարձակ կառավարութեան։ Հարիւր կամ երկու հարիւր տարի առաջ այդ բանը ուղղակի անհասկանալի կլինէր։ 797 թ. երբ ժողովուրդը ցոյց տուեց ամենաթեթև կարեկցութիւն դժբախտ Կոնստանտին Զ-ի համար։ Լեկապենների չափազանց զօրեղ հարստութիւնը յանկարծակի հաւասարուել էր փոշու հետ և այն բոլոր խարդախութիւնները որ նիւթում էին աննշան Թէոփիլակտոսի պատրիարքական պալատից, չկարողացան նրանց նորից բարձրացնել։ Կոնստանդինը Լեկապենների կողմնակիցների դէմ՝ յենուեց Փոկասի պատերազմասէր ընտանիքի վրայ։ Փոկաս բարդասը, երբեմն գահակալական թեկնածու Լեոնի եղբայրը, դարձաւ պալատականների տէր, իւր երեք հմուտ զինուորական որդիները՝ Նիկեփորոս, Լեոն և Կոնստանտինը ստացան ամենանշանաւոր հրամանատարութիւնները Ասիայում։ Գերմանական մի այն գրքերով հետաքրքրուող մարդու փոխարէն

ջում, որ եկել էր որպէս զի Ձեր հօր ծերութեան օրերը մենակութեան զոհ տուած չլինէր»: (Liudprandi anfapod. V. 23).

*իսկական կառավարութիւնն անցել էր նրա փառասէր ամուսին Հեղինէի և սրա ընտրեալ Բազիլիկոս Հետաւորդի ձեռքը։*

*Ասիայում Համդանիդների դէմ մղած պատերազմը չափազանց ժլատ բարդաս Փոկասի ղեկավարութեամբ, սկիզբը այնքան էլ յաջող չէր. բայց նրա ընդունակ Նիկեփորոս որդուն յաջողուեց կարգ հաստատել զօրքի մէջ և կանոնաւորել վարչական մարմինը։*

*Կոստանդնի կառավարութեան վերջի փայլ տուողը եղաւ Ռուսաց մեծ իշխանուհու այցելութիւնը, որը իւր բազմաթիւ հետևորդների հետ մկրտուեց 957 թ. մայրաքաղաքում։ Բիւզանդիոնի համար այնքան մեծ նշանակութիւն ունեցող ժողովրդին քրիստոնէութիւն ընդունել տալը վերապահուած էր յետագայ սերունդներին։ Երբ Կոստանդին Է-ը 959 թ. Նոյեմբերի 9 մեռաւ, տէրութիւնը թողեց իւր Ռոմանոս Բ որդուն (959—963), որ շատ երիտասարդ էր, շուայտ և միանգամայն անբարոյական։ Հայրը սկիզբը նրան ամուսնացրել էր Պրովանսի Հուգօ թագաւորի ապօրինի Բերթա աղջկայ վրայ. յետոյ դահաժառանգը սաստիկ սիրահարուեց մի պանդոկապետի գեղեցիկ փառասէր և փչացած աղջկայ՝ Անաստասի վրայ, որին թոյլ հայրը 957 թ. Թէոփանօ*

անունով գահաժառանգի համար կին առաւ, որ հազիւ 19 տարեկան էր։ Սա կայսերական տան չար ոգին դարձաւ։ Ռոմանոսի ժամանակ իշխանութիւնը վարում էր պատրիկիոս Յովսէփ Բռինգասը, որ խիստ ընդունակ էր։ Նա յանձնեց տէրութեան ամենալաւ զօրավարին՝ Նիկեփորոս Փոկասին, պաշտօնականների գլխաւոր կրետական ծովահէնների դէմ ուղղած ծովային մեծ արշաւանքի ղեկավարութիւնը։ Վաղուց էր այդպիսի փառահեղ արմադա չէր լողացել հռոմէական նաւահանգիստներում։ Ընտիր ղեկավարութեանն էլ համապատասխան եղաւ անօրինակ յաջողութիւնը։ Սակայն արիւնհեղութեամբ 961 թ. մայիսին յարձակմամբ առան կրետական Խանդաքս գլխաւոր քաղաքը և հողի հետ հաւասարեցրին։ Մահմեդական բնակիչներին կամ դուրս քշեցին կամ հռոմէական քարոզիչներով որոնց առաջնորդն էր Ս. Նիկոնը, քրիստոնէացրին։ Այդ գլխաւոր հարուածով Հռոմէացիները վերջապէս նորից տէր դարձան իրենց ծովերին։

Ասիայումն էլ էր Նիկեփորոսը յաջող։ 962 թ. Նրա ձեռքն ընկան Դոլիխէ, Հիերապոլիս և Կիլիկեան Անարզաբան։ Նա յաղթեց Համդանիդեան ցեղից Սէյֆ Ադդաուլային իւր իսկ Հալէպ քաղաքի մօտ, գրաւեց արուար-

ձանները և նոյն իսկ քաղաքը․ միայն միջնաբերդը պաշտպանուեց։ Երբ Դամասկոսից արաբական զօրք մօտեցաւ, նա հարուստ աւարով յետ քաշուեց։

Այդ մեծ յաջողութիւնների ժամանակ 963 թ. Մարտի 15 մեռաւ Ռոմանոս Բ. թողնելով իւր Թէոփանէ կնոջը և երկու անչափահաս որդի Բասիլեյոս (957) և Կոնստանդինոս Ը (961 թ.)։ Նիկեփորոսը, որ Բռինգասի ղեկավարութեամբ կազմակերպուած խնամակալական կառավարութիւնից առաջ․ այրի կայսրուհուն հաւատարմութեան երդում էր տուել, երբ լսեց որ նրա դէմ թակարդներ են լարում, ասիական զօրքի գլուխն անցած, երևաց մայրաքաղաքի առաջ, ստիպեց Բռինգասին յետ քաշուել և 963 թ. Օգոստոսի 16ն պատրիարքի ձեռքով կայսր օծուեց և շատ չանցած ամուսնացաւ կայսերական այրու վրայ։ Նիկեփորոս Բ-ի (963-969) և իւր յաջորդ Յովհաննէս Զմըշկիկի (969—976) և Բասիլեյոս Բուլղարակտոնոսի (բուլղարասպան) (976-1025) կառավարութիւններն են ներկայացնում բիւզանդական իշխանապետութեան իսկական բարձրագագաթը։ «Այն ժամանակ երևաց Փոկասը իբրև կայծակ և շլացաւ Հռովմայեցիների թշնամիների դէմ...Նա կոր-

*ծանեց, այրեց, գերեվարեց բարբարոսների քաղաքները և երկիրները։ Բիւրաւոր Թըշնամիներ ջարդեց և տարածեց Հռովմայեցիների իշխանութիւնն ու ոյժը։ Սարսում էին Արաբները. դողում էին Հայերն ու Ասորիները. Սարակինոսները նահանջում էին և Թուրքերը փախչում. և Հռովմայեցիները տիրապետում էին նոցա տեղերին ու երկիրներին և Փոկասի անունը բոլորի համար սարսափելի էր» (Գէորգ Համարտոլոս)։*

*Նիկեփորոսը կազմակերպել էր մի ընտիր զորք. Հայեր և Վրացիներ, Սլաւներ և Ռուսներ այդ ի մի հաւաքուած օտար վարձկաններ զորքի միջուկն էին կազմում։ Զինուորական ծախքը կլանում էր ահագին գումարներ, և ժողովուրդը կատաղած էր ծանր հարկերի ճնշման տակ, որ ոչ այնքան ազատամիտ կայսրը բարձել էր քաղաքացի ժողովրդի վրայ։ Հոգևորականութեանն էլ ստիպեցին իրենց հարուստ ստացուածքներից մաս հանել պետութեան ծանր բեռան համար։ Որպէս զի իւր զինուորների հայրենասիրութիւնը գրգռի. պահանջում էր, որ Ծաճիկների դէմ պատերազմի ժամանակ բոլոր սպանուածներին մարտիրոս հրատարակեն։ Լոկ քահանայական սահմանափակութեան արգասիք էր, որ ս. Պոլիեւկտոսը՝ այն ժամանակուայ անեղերա-*

կան պատրիարքը, բայց ի բաց մերժեց այդ՝ ս. Բարսեղի կանոնների հիման վրայ, թէև եկեղեցական պատմութիւնից շատ բացառիկ դէպքեր կօգնէր՝ եթէ փոքր ինչ տրամադիր կամք ունենար և ունէր շատ հայրենասիրութիւն: Բայց իրաւ է շատ խելացի Նիկեփորն էլ սահմանափակել էր վանքերի և անկելանոցների անմիտ և անսահման սեպհականութիւններին, և հոգևորականութիւնն այդ բանը նրան չէր ներում:

Հոգևորականութիւնը դարձաւ խանդարեց կայսեր եկեղեցական քաղաքականութիւնը հերձուածողների վերաբերմամբ: Նրա դըրդմամբ Անտիոքի յակոբեանների պատրիարքը յորդոր էր արձակել իւր հաւատակիցներին, գնալ և բնակութիւն հաստատել աւերակ դարձած Մելիտենէյում: Կայսեր հանդիսաւոր խոստմամբ, թէ չեն վերսկսուիլ քաղկեդոնականութեան ցաւալի հալածանքները, հաւաքուեցին մեծ թուով Ասորիներ: 28 տարուական եկեղեցի զարդարում էին քաղաքը, բազմաթիւ վանքեր հիմնուեցին քաղաքում և շրջակայքում. Մար Իոհաննան պատրիարքը՝ Սրեգտո (965—985) մականուանեալը իւր գահը հաստատեց Բարիդկեօնորիում կոչուած տեղում: Քաղաքականապէս ահագին նշանակութիւն ունէր՝ որ Հռովմայեցւոց պետու-

*Թիւնը ճանաչւում էր նաև իբրև արևելքի քրիստոնեաների պաշտպան։ Սակայն Մելիտէնէի Յունաց արքեպիսկոպոսը ստոր նախանձից մղուած, պատրիարքի աջակցութեամբ յաջողցրեց, որ յայտնապէս դրժելով տուած խօսքը, սկսեցին Ասորի եպիսկոպոսներին բանտ նստեցնել, Կոստանդնուպոլիս հրաւիրել և նման միջոցներով ստիպել միանալ իրենց հետ։ Այն բոլոր մանր հալածանքները, որոնց մասին Յոյները լատինական իշխանութեան ժամանակ գանգատւում էին, իրանք էին իբրև իշխողներ գործադրում իրենց Ասորի հաւատակիցների դէմ և դրանով նոյն քաղաքական կարճատեսութիւնը արտայայտեցին ինչպէս Լատինները։*

*Օտտոն Մեծի փորձը՝ արևմտեան կայսրութիւնը արևելահռոմէականի հետ միացնել, անյաջող անցաւ, մասամբ տաքարիւն միջնորդի՝ Կրեմոնայի Լիւտպրանդ եպիսկոպոսի անհմտութեամբ, մասամբ Օտտոնի մեծամեծ պահանջներով, որ այնքան միամիտ էր, որ Յոյներից պահանջեց իրան տալ Սարին-Իտալիայի յունական նահանգները իբրև Թէոփանուհու բաժինք։*

*Աւելի նշանաւոր էին Նիկեփորի յաջողութիւնները Ասիայում։ Նա 964 թ. տիրեց Անազարբ, Ռոսոս, Ադանա և Մոփսուհեստիա*

*քաղաքներին* 965 *թ. ընկաւ Տարսոնը որ մի տարի առաջ պաշարուած էր, և ահագին աւար առան։ Միաժամանակ նաւատորմիղը Նիկետաս պատրիկիոսի առաջնորդութեամբ առաւ Կիպրոսը։ Երկամեայ միջոցից յետոյ* 968 *թ. Կայսրը* 80,000 *զօրքով վերսկսեց ասիական պատերազմը։ Հարուածը ուղղուած էր ասորական Անտիոք մայրաքաղաքի դէմ։ Լաւոդիկիա, Հիերապոլիս, Հալէպ, Արկա և Էմեսան առան. Տրիպոլիսը և Դամասկոսը հարկ էին վճարում։ Ձմեռուայ ընթացքում, յանդուգն և տաղանդաւոր Բուրցես զօրավարին յաջողուեց, որ հրամանատար էր Անտիոքի մօտ բանակ դրած պահապան զօրագնդին, կիլիկեան ձմերանոցից օգնութեան հասնող Պետրոս զօրապետի աջակցութեամբ, գրաւել նշանաւոր մայրաքաղաքը՝ որը* 328 *տարի հնազանդուել էր անհաւատներին։ Բարկացած կայսրը, որ համապատասխան հրաման էր արձակել, այդ յաղթութեան դափնին իրան վերագահելու, երկու զօրապետներին էլ զրկեց հրամանատարութեան իրաւունքից։*

*Աւելի ազնիւ վարուեց Կրետէին տիրողի՝ Նիկետասի հետ, որը Կայրուանի Ֆատիմիտների ձեռքը գերի էր ընկել, Սիկիլիային վերստին տիրելու անյաջող փորձի ժամանակ։ Նա նրան ազատեց յետ տալով Մոհամեդի*

*սուրը, որ առել էին Ասորիքի տիրապետութեան ժամանակ։*

*Ժամանակիցների հպարտութիւնը Ասորիքի և Միջագետքի մինչև յայսկոյս Եփրատի գրաւման պատճառաւ արտայայտուեց նրանով, որ հրատարակուեց Հիերոկլէսի պետութեան նկարագրութիւնը, որ այդ ժամանակից է և պարունակում է Նիկեփորից նորից գրուած պետութեան չափը։ Դիտաւորեալ կերպով—որովհետև անհաւատներին էին հպատակ—բաց են թողնուած Միջագետքի միւս մասը յայնկոյս Եփրատի, Փիւնիկեան, Պաղեստինը, Եգիպտոսը և Կիւրենաիկան։*

*Նոյնպէս զօրեղ էր Նիկեփորոսի քաղաքականութիւնը եւրոպական հողի վրայ։ Որպէս զի Սիմէոն ցարի յաղթութիւնների վրէժը առած լինի, ծրագրեց ընկճել բուլգարական ամբողջ պետութիւնը։ Տարսոնի անկումից յետոյ 965 թ. արշաւեց Բուլգարիա և այդ նպատակով միացաւ Ռուսաց վայրենաբարոյ Սվեատոսլաւ իշխանի հետ՝ մի մեծ միացեալ գործողութեան համար։ Վերջինս 967 թ. երևաց Սալինայի գետաբերանում զօրեղ ծովահէնների նաւատորմղի գլուխ անցած։ Դորըստեր և Դանուբի ուրիշ քաղաքներ ընկան հզօր պատերազմական հերոսի ձեռքը, որը Պրեսլաւում հաստատեց իւր*

ձմեռուայ բանակը։ Ռուսների ջախջախիչ յաջողութիւնները սարսափեցրին թէ Յոյներին և թէ Բուլղարներին։ Շուտով կայսրը Ս. Պետրոսի՝ Բուլղարների ցարի հետ դաշինք հաստատեց, որ ամրապնդեցին փոխադարձ ամուսնութիւններով և բուլղար իշխաններից պատանդ վերցնելով, 969 թ. Ռուսները հետ կանչուեցին դէպի Կիեւ Պեչենեգների յարձակումով։ Սակայն արդէն նոյն տարուայ գարնանը Սվետոսլաւը վերադարձաւ Բուլղարիա և «առաւ Պրեսլավեցը նիզակով»։ Բորիս Բ-ը նրա ձեռքը գերի ընկաւ։ Նրա յարձակումը Հռովմայեցւոց տէրութեան վրայ արդէն ընկնում է հետեւեալ կառավարութեան ժամանակ։

Նիկեփորը չէր սիրուած միայն մայրաքաղաքում. նահանգներում ամէն ինչ խաղաղ էր, և զինուորները նրան աստուածացնում էին։ Նա զոհ գնաց դժգոհ սպաների դաւադրութեան, որոնց կարգին էր պատկանում հալածուած Բուռցեսը, և ամենից առաջ Հռովմայեցւոց զօրավարներից ամենաընդունակը, Յովհաննէս Չմշկիկը։ Նրա Թէոփանէ ամուսինը դաւադրութիւնից անմասն չէր։ 969 թ. Դեկտեմբերի 10 ընկաւ մեծ իշխողը, և անմիջապէս դրանից յետոյ Յովհաննէս Չմշկիկին կայսր հրատարակեցին։ Նա ան-

կասկած Նիկեփորոսի հետ տէրութեան ամենաընդունակ զօրավարն էր, ազգով Հայ, իր հայրենակիցները ոգևորութեամբ էին խօսում Հռովմայեցւոց կայսր Կիւր-Ժանի (Yannis) մասին։ Այդ ծագումը նրա ժողովրդականութեանը Յոյների աչքում չվնասեց. չէ որ այն ժամանակուայ զինուորական բարձր պաշտօնեաները համարեա միշտ Հայերից էին և Վրացիներից։ Նա ժողովրդի համակրանքը գրաւեց իր ազնիւ, համարեա շռայլող բնաւորութեամբ, որ շատ էր տարբերում Նիկեփորի խնայող տնտեսութիւնից և երկար ժամանակ դժուար էր շարունակել։ Պոլիւեկտոս պատրիարքը կամենում էր Յովհաննէսին չօծել, որովհետև նրա ձեռները արիւնաշաղախ էին. սակայն սուրբ մարդը առևտուր սկսեց և Յովհաննէսին օծեց ու թագ կապեց, երբ սա ոչնչացած հրատարակեց Նիկեփորի եկեղեցական խիստ օգտակար օրէնքները, բայց կայսրը Պոլիւեկտոսի մահուանից յետոյ (970) ցոյց տուեց իր բացարձակ ինքնիշխանութիւնը՝ նրա կամակոր յաջորդի օրով։ Հայազգի կայսրը քահանաների սիրուն չէր։

Թէոփանէին, որը երազել էր նոր ամուսնութեան մասին, փակեց մի վանքում ըստ արժանոյն. դրա փոխարէն երկու փոքրահասակ կայսրների հետ վարւում էր պատկա-

ռանքով և յարգում էր իբրև պաշտօնակիցներին, ինչպէս Նիկեփորոսն էր արել, «նա բաւականացաւ առաջի մինիստրի աստիճանով և կայսերական տիտղոսով»:

Մի վտանգաւոր ապստամբութիւն, որ շարժեցին Նիկեփորոսի Լևոն եղբայրը և նրա երկու որդիները, որոնք պահպանւում էին թեթև հսկողութեան տակ, և բոլորն էլ փորձուած զինուորներ էին, 970 թ. ընկճուեց՝ թէև ոչ առանց դժուարութեան. բոլոր ապստամբ իշխաններին կուրացրին: Արտաքին քաղաքականութեան մէջ նա թողեց Նիկեփորի մանրակրկիտ ձևապաշտութիւնը՝ Հարիկէտի կռիւները փոքր կայսրների Թէոփանու քրոջը 912 թ. ուղարկեցին Իտալիա և ամուսնացրին Օտտոնի որդու հետ:

Չմշկիկի օրով բազմաթիւ Պօղիկեաններ և Մանիքէացիք բնակութիւն հաստատեցին Փիլիպոպոլսի շուրջը: Նա դրանով հետևեց խիստ ընդունակ Կոնստանդինի Ե-ի օրինակին: Հէնց իւր ծագման պատճառով այնպիսի մըռայլ մոլեռանդութեամբ չէր վերաբերւում դէպի այդ համայնքները, ինչպէս խստապահանջ Օրթոդոքսներն: Հաւանական է որ նա ուղիղ դատած լինի, թէ այդ քաջ գնդերը անսահման աւելի օգտակար են Հեմուս թերակղզու պաշտպանութեան համար, քան

Ասիայում, որտեղ Համդանիտները, Բուխտաները, Սաֆարիդները էին․ միմեանց դէմ պատերազմում էին՝ միանգամայն թուլացած խալիֆների պետութեան սահմանների վրայ և որտեղից այլ ևս վտանգ չկար․ Թրակեան այդ Պօղիկեանք ևս զօրեղ ազդեցութիւն են գործել Նորադարձ Սլաւների վրայ, իրենց մաքուր և խոր զգացուած քրիստոնէութեամբ։ Պետրոս ցարի ժամանակ (927—968 Բոգոմիլը կամ Երեմեան տարածեց այդ ուսմունքը իր հայրենակիցների մէջ․ քարոզչութեան այն արտակարգ յաջողութեամբ որ նա ունեցաւ Բուլգարների և Ցոյների մէջ․ և ցաւալի նշան է թէ այն ժամանակներում օրթոդոքս եկեղեցին ինչքան չնչին ազդեցութիւն ունէր զգացմունքների վրայ։

Հռովմայեցւոց տէրութիւնը աւելի քան երբ և է կարիք ունէր իւր գլուխ ունենալու մի ընդունակ զինուորականի։ Սարսափելի Սվեատոսլավը Բուլգարների տէրութիւնը ընկճելուց յետոյ՝ Նիկեփորի կառավարութեան վերջերում յարձակուել էր Թրակեայի վրայ․ 970 թ․ անցաւ Հեմուսը, առաւ Փիլիպուպօլիսը յարձակումով ոչ անլուր չարիքներ գործելով։ Զմշկիկը, որ ի զուր առաջարկեց տարեց տարի փող տալ, շտապով հասաւ․ 970 թ․ Ադրիանուպօլսի մօտ ճակատ տուեց,

*որը անորոշ մնաց: 971 Թ. կայսրը անցաւ բալկանեան կիրճերը, որ անուշադիր բարբարոսները առանց պահապանների էին թողել և երեւաց Մեծ—Պրեսլաւի առաջ: Զինայած սաստիկ քաջ ընդդիմութեան, Յոյները յարձակմամբ առան և այրեցին թէ քաղաքը և թէ միջնաբերդը. Չմշկիկը ազատեց Բորիս Բ կալանաւոր ցարին և պահում էր մեծ պատուով: Սվետոսլաւը կարողանում էր միայն սարսափներով գիմանալ Դորոստոլում* (Dorostolum Silistria)*. Ռուսապատներով մեծ թուով փախչում էին ազատարար կայսեր մօտ: Մի զօրեղ ճակատ քաղաքի պատերի առաջ վերջացաւ ի վնաս Ռուսների՝ Յոյների այրուձիու շնորհիւ: Նրանք ամառուայ պաշարումից յետոյ, որի ընթացքում գետի կողմից աջակցում էր յունական նաւատորմիղը, և երբ 971 Թ. Յուլիսի 22 յուսահատական մի փորձ էին արել դուրս գալու, հպարտ Ռուսը ստիպուած ճանապարհ ստանալու պայմանով անձնատուր եղաւ: Սկանդինաւեան բարբարոսի ցանկութեան համաձայն, Չմշկիկը համաձայնուեց նրա հետ տեսակցել Դանուբի կղզիներից մէկի վրայ: Դրանից անմիջապէս յետոյ, ծովահէններից նաւատորմիղը հեռացաւ դէպի Սեւ ծովի ափերը: 972 Թ. գարնանը Սվետոսլաւը ընկաւ Պեչենեգների դէմ պատերազմելիս, և*

*սոյա Կուր իշխանը նրա գանգը գործ էր դնում իբրեւ գինու բաժակ։*

*Չմշկիկի յաջողութիւնները մթնեցրին Նիկեփորինը, եւ մեզ համար հասկանալի է, որ ժամանակակիցները այդպիսի մեծ հերոսին ներեցին որ նա գահ էր բարձրացել արիւնշաղախ ձեռներով։ Բուլղարների պետութիւնը, որ 300 տարիներից ի վեր Արեւելահռովմի մի սպառնալիքն էր, ջախջախուած ընկել էր հռովմէական կայսեր ոտների տակ։ Թէեւ զօրեղ ազգի այդպիսի ոչնչացումը Ռուսների գործն էր. բայց հիւսիսի այդ բնակիչները, որոնցից շատ էին վախենում եւ համարում էին անպարտելի, տեղի էին տուել Հռովմայեցու կատարելագործուած պատերազմական արուեստի առաջ, եւ այդ պատճառաւ ամենասաստիկ եւ ամենաարիւնալից մրցումից յետոյ յաղթութեան ամենափառաւոր վարձը նրա ձեռքն ընկաւ։*

*Միամիտ Բուլղարները կարծում էին թէ Չմշկիկը կվերահաստատի նոցա անկախութիւնը։ Բայց, դրական քաղաքագէտը Արեւելեան Բուլղարիան պարզապէս միացրեց պետութեան հետ, ինչպէս որ այլ կերպ էլ չէր կարող վարուել, եւ այդպիսով նորից ձեռք բերեց այնքան կարեւոր Դանուբեան սահմանագիծը։ Ցարի թագը ձօնեց մայրաքաղաքի երկնային*

իմաստութեամբ. Բորիսը ստիպուեցաւ թողնել ծիրանին և ցարական աստիճանի նշանները և իբրև ողորմելի փոխարինութիւն ստացաւ մագիստրի տիտղոս։ Դրստերի Դամիան պատրիարքն էլ զրկուեց գահից և բուլղարական եկեղեցական նոր պետերը—հաւանալի է բոլորն էլ Յոյներ—ինչպէս հին ժամանակներում հնազանդուեցին տիեզերական պատրիարքին։ Միայն արևմտեան բուլղարիայում (Մակեդոնիայում և Ալբանիայում), որը Շիշման ցարը 963 թ. մայր երկրից խլել էր, շարունակեց պահպանուելու ազգային և եկեղեցական անկախութիւնը, թէև «գրաֆի չորս որդիների» բուլղարական այդ իշխանութիւնը շատ խեղճ բան էր։ Այդ է Յովհաննէս Չմշկիկի մեծագործութիւնը։ Նրա յաղթող սուրը Հռովմայեցւոց տէրութիւնից հեռացրեց Սլաւոնների վտանգը և կարելի դարձրեց նրա գոյութիւնը հետևեալ երկու դարում ևս։

Կայսրը այդպէս փառաւոր կերպով վերջացնելով իւր գործը Եւրոպայում, ուշքը դարձրեց դէպի Ասիա, ուր նա 972—976 թ. կռուեց մեծ բախտով և միանգամ էլ Հռովմէական իշխանութիւնը հասցրեց այն բարձրութեան, ինչպիսին չէին համարձակուել նախագուշակել Պոգոնատոսի և Իսաւրացու ծանր

օրերի ամենայանդուգն երեւակայութեան տէր մարդիկն անգամ։ Քրիստոնեաների մեծամեծ յաջողութիւնների պատճառով Մուսլիմները միացել էին վերստին տիրելու Անտիոքին։ Ղեկավարողները Եգիպտոսի չափազանց գործունեայ Փատիմիտներն էին, որոնք սկսել էին հաստատել իրենց գերիշխանութիւնը Ասորիքի վրայ։ Բայց Նիկետաս քաջ ներքինին ազատեց Անտիոքը։ Սակայն երբ Բիւզանդացիք առան Մ՚ծբինը, անհաւատները այնպէս սարսափեցին. որ 973 թ. Բաղդատից նոր արշաւանք քարոզեցին և կազմակերպեցին որպէս զի բոլոր մուսլիմները ոտքի կանգնեն։ Ամիդի մօտ բիւզանդական զօրքը ծանր պարտութիւն կրեց։ 974 թ. Չմշկիկը ինքն առաւ հրամանատարութիւնը և ղեկավարեց դէպի Վերին Տիգրիս և Ասորիք ուղղած փայլուն արշաւանքը։ Ամիդ և Մարտիւրոպոլիսը անձնատուր եղան. այն տեղի էմիրները սկսեցին հարկ վճարել։ Հիերապոլիս, Ապամէյա, Էմեզա և Հիլեոպոլիսը առնուեցին առանց յիշատակութեան արժանի ընդդիմութեան։ Նա անցաւ Լիբանոսը և գրաւեց Բէյրութը, որտեղից նա մայրաքաղաք ուղարկեց այդ քաղաքի սուրբին՝ խաչեցեալի պատկերը։ Այդ ժամանակները Բիւզանդացիք կանոնաւոր կերպով կողոպտում

էին արևելեան քաղաքների նշխարները յօգուտ երկնային իմաստութեան տաճարի։ Բայց ամուր Տրիպոլսի առաջ ի դերև ելաւ կայսեր պատերազմական արուեստը։

«Եւ ազգերը մեծ սարսափի մէջ էին Զիմիսկիի բարկութիւնից։ Եւ նա տարածեց Հռովմայեցւոց պետութիւնը. փախչում էին Սարակինոսները և Հայերը. սարսում էին Պարսիկները, և ամեն կողմից նրան պարգևներ էին բերում. նոքա նրանից հայցում էին շնորհ և խաղաղութիւն. նա արշաւեց մինչև Եդեսա և մինչև Եփրատ գետը. և երկիրը լցուած էր Հռովմայեցւոց զօրագնդերով։ Ասորիքը և Փիւնիկեան Հռովմէական նժոյգ երիվարներից սմբակահար եղան։ Նա մեծամեծ յաղթութիւններ տարաւ, և քրիստոնեաների սուրը հնձում էր մանգաղի պէս ;«Գէորգ Համարտ ։

Թէև իրաւ է շատ բան էր պակաս այդ անցողական յաղթութիւնները յարատև անելու համար։ Գրաւած քաղաքների բնակիչները, որ մեծաւ մասամբ Իսլամներ էին, հնազանդուել էին միայն առաջի սարսափից. նոքա տէրութեան հաւատարիմ մնալու ոչ մի գրաւական չէին ներկայացնում։ Մինչև անգամ ազատուած Անտիոքը իւր դռները փակեց կայսեր առաջ, և միայն Զիմիսկիի մահից յետոյ նորից առնուեց։

Երևում է որ Ձմշկիկը լաւ էր ճանաչել պետութեան արմատը կրծող որդին, աւա-տականութեան և մեծ կալուածատիրութեան ընդլայնելը, որ ոչնչացնում էր ազատ գիւ-ղացիական դասակարգը և մեռցնում անասնապա-հութեան տնտեսութիւնը: Ուժեղացած զի-նուորական ընտանիքները՝ ինչպէս էին Փոկաս-ները, Սկլերոսները և ն. իշխանական գիւղ էին ձեռք բերել— թէ իրենց ունեցած ան-սահման կալուածներով նահանգներում և թէ իրենց անձնատուր կողմնակիցներին խըմ-բերով: Օրէցօր հին համայնական զինուորա-կան և պաշտօնավարական պետութիւնը աւե-լի էր կերպարանափոխւում նմանուելով միջ-նադարեան բարձր ազնուական կազմին: Ձմըշ-կիկի դառը խօսելու անյագ ներքինու մա-սին[1] որի օգտի համար էր միայն երկիրը աղքատանում և զինուորները արիւնաքամ լինում, անկասկած սարկաւագներն է մասնա-կիցներին, թէև միամիտ ժողովրդական հե-քիաթ է այն պատմութիւնը, իբր թէ ամե-նակարող պետական կանցլեր Բազիլեյոսը որին ամենից շատ էր հարուածելու կայսեր բար-կութիւնը, նրան թոյն է տալ տուել: Դէպի

1. Սեւասի ամպարգան Բազիլեյոսը, Ռոմանոս Ա. կայսեր արտակարգ ընդունակ, բայց եւ արտակարգ անյագ ապօրինի զաւակն էր:

մայրաքաղաք վերադարձի ժամանակ» իւր տարիքների ծաղկեալ հասակում, հազիւ յիսուն և մէկ տարեկան յանկարծակի մեռաւ կայսր Հերոսը 996 Թ․ Յունուարի 10ին։ Այդպիսի անսպասելի պատահար բնականաբար ժողովրդի հասկացողութեան մէջ կարող էր միայն ամենաստոր դաւադրութեան արդիւնք լինել։

Չարիքը, որի վրայ մատնանիշ էր արել Զմշկիկը, արմատներ էր գցում։ Հետևեալ ժամանակներում աւելի յաճախ անգամ է պետութիւնը մեծ ընտանիքների խաղալիք դառնում։ Գուցէ մի երկաթեայ զինուորական, կամ մի զարհուրելի ոյժի մարդ, ինչպէս Սուլլան էր, կարող էր արիւնալից ճանապարհով միանգամ ևս կարգ սահմանել։ Նա չերևաց, և երբ երկու հարիւր տարի յետոյ փորձեց Անդրոնիկոս Կոմնենը, արդէն ուշ էր։ Այդ շրջանի առանձնայատկութիւններից է և այն՝ որ մակեդոնական տան օրինական հաստատութեան հետ միասին ստեղծւում էր մի տեսակ խնամակալութիւն (Hausmeiertum)։ Նախկին բացարձակ զինուորական կայսրները, որ մեծաւ մասամբ ծիրանի էին հագնում զօրքի ձեռնտուութեամբ կամ զինուորական դաւադրութիւններով, ներկայանում են միաժամանակ, ընդհանուր պատ-

մութեան մէջ այլ ևս չկրկնուող՝ իբրև ամենաընտիր իշխանների մի շարք որ ունէին արտասովոր զինուորական և քաղաքագիտական գերազանց յատկութիւններ։ Ժառանգական յաջորդականութիւնը ինքն ըստ ինքեան հակառակ է ամենալաւի ընտրութեան. կառավարիչների մեծագոյն մասը բնական անհրաժեշտութեամբ օժտուած էին միջակ կամ թոյլ ընդունակութեամբ։ Հին դարում դեռ յայտնի չէր, որ իշխողին կարելի է փոխարինել իւր մինխարով, ինչպէս նա գոյութիւն ունի սահմանադրական պետութիւնների մէջ։ Մօտաւորապէս դրա նման մի բան էր, որ Բիւզանդիոնը ստեղծեց Ժ-րդ դարում։ Օրինաւոր ծիրանածինների թոյլ ձեռները չէին կարող վարել իրական կառավարութիւնը, և մենք տեսնում ենք որ բաւական յաջող հետևողութեամբ պետութեան իսկական ղեկը վարում են բարձր ընդունակութեամբ զինուորականներ։ Տէրութեան այդ իրական իշխողները զարդարւում են կայսերական թագով և այդպիսով միանգամայն հաւասարւում օրինական կայսեր, որ կամ Կոստանդին Է-ի նման առանձնացած սենեակի ուսումնական էր, կամ Բազիլէյոսի նման դեռ երեխայ։ Եւ չէր կարելի ժխտել, որ եթէ ոչ Լեկապեններըը, գոնէ յամենայն դէպս Նիկեփորը և Չմշկիկը

ծին չէր։ Դոցա մէջ առաջին տեղը բռնում էր Ասիայի զօրաց հրամանատար Բարդաս Սկլերոսը․ երբ պետութեան կանցլեր Բազիլեյոսը նրան պաշտօնազուրկ արեց, նա բարձրացրեց ապստամբութեան դրօշակը արևելեան սահմաններում և նոր հպատակների, իսլամական աւատական իշխանների օգնութեամբ, երկու անգամ հիմնովին ջարդեց հռովմէական զօրքերը, հեղեղեց ամբողջ Փոքր-Ասիան և լրջօրէն սպառնում էր մայրաքաղաքին։ Կարծես Սկլերոսը երկրորդ Նիկեփորոս էր։ Սակայն կենտրոնական կառավարութիւնը իւր նեղութեան րոպէին հրաւիրեց Սկլերոսի մրցակցին՝ Բարդաս Փոկասին, որ կայսերական բարկութիւնից աքսորական ապրում էր Քիոս կղզու մի վանքում, ինչպէս Հերակլը Փիլիպիկոսին, սրան հանեցին իւր վարդապետական խցից և յանձնեցին հաւատարիմ մնացած զօրագնդերի հրամանատարութիւնը։ Ամորիոնի և Բազիլիկա Թերմայի մօտ կառավարութեան զօրապետը երկու ճակատ տանուլ տուեց։ Սկլերոսը իբրև զօրավար Փոկասից բարձր էր։ Սա ստիպուած էր յետ քաշուել դէպի Վրաստան, որպէս զի տէրութեան հաւատարիմ դաշնակցի՝ Դաւիթ կիւրապաղատի մօտ, նոր զինուորներ վարձէ։ Հալիւսի շուրջը Պաւկալեյի մօտ մի երրորդ

ճակատ դարձեալ անյաջող սկսուեց· սակայն մենամարտութեան մէջ Փոկասը Սկլերոսին ձիուց վայր գլորեց· երբ ձին առանց ձիաւորի սկսեց վազել ապստամբների շարքի առաջ, նոքա կարծեցին որ իրենց զօրապետը սպանուած է և դիմեցին կատաղի փախուստի։ 979 Թ. ամառուայ վերջերում Սկլերոսը ստիպուեց փախչել արաբական սահմանը, որտեղ նա առժամանակ պահուեց իբրև կալանաւոր։

Հետևեալ ութ տարին Փոկասը իւր ձեռքին պահեց ասիական զօրքի հրամանատարութիւնը բացարձակ լիազօրութեամբ, նա յաջող կռուեց Սարակինոսների դէմ և ստիպեց Հալեպի էմիրին հարկ վճարել։ Սակայն արտակարգ զօրեղ կամքի տէր Բազիլեյոսի եռանդը, որը ոչ մի կերպ չէր ցանկանում անուանական կայսր լինել, այլ ինչպէս իւր անուանակից նախապապը, ամուր քաշեց կառավարութեան սանձը, շարժեց, մեծամեծների տհաճութիւնը, որոնք իրար մէջ բաժանել էին քաղաքացիական և զինուորական բարձրագոյն պաշտօնները։ Կայսրներ կարգող Բազիլեյոսը ըստ սովորութեան դաւաճանութիւն սարքեց 987 Թ. Օգոստոսի 15. Բարդաս Փոկասը իրան կայսր հրատարակեց Եւստաթէոս Մալեյինոսի պալատում (Խարսիա-

նոն թեմում)։ Արաբները նրա դեմ հակաթոռ կայսր հրապարակեցին Բարդաս Սկլերոսին՝ քրիստոնեայ փախստականների զորքով։ Սակայն Փոկասը շուտով նուաճեց նրան և ամենայն ուժով դիմեց օրինաւոր կայսեր դեմ։ 988 թ. նա նուաճեց Փոքր-Ասիայի՝ հացահատիկների երկիրների մեծագոյն մասը. օրինական կայսրը սահմանափակուեց միայն մայրաքաղաքով և Հեմուսի թերակղզով, որ հեղհեղուել էր Բուլղարներից։ Ահա առաջին անգամ ռուսական օգնական գնդերը, Վարիագները, եղան տէրութեան ազատարարը։

Մինչև Բազիլեյոսի ժամանակը հին Խերսոնը՝ Տաւրիկեան Խերսոնէսի յունական ամենահին քաղաքը, որ այնքան անձնուիրաբար ընդդիմացաւ Յուստինեան Բ-ի կառավարութեանը, պահպանել էր իր յունականութիւնը և իր հին հասարակապետական-ազնուապետական ինքնուրոյնութիւնը։ Իրաւ է՝ Թէոփիլոս կայսրից սկսած այնտեղ էր ուղարկւում իբրև վերահսկող պաշտօնեայ մի հռովմէական ստրատեգ. սակայն քաղաքական և զինուորական բիւրոկրատիայի այդ գլուխը առանձին նշանակութիւն չունէր։

988 թ. Վլադիմիրը, Սվեատոսլաւի որդին ռուսական մեծ զօրքով երևաց Խերսոնէսի քաղաքի առաջ։ Ինչպէս երբեմն Ամիդը, Կա-

ւսափ պատերազմների ժամանակ Պարսից դէմ ուղղած ամենամեծ ամբոցը, այնպէս ընկաւ Խերսոնը մի քահանայի դաւաճանութեամբ։ Բայց այն ժամանակուայ Ռուսներն այլ ևս Փօտիոսի նկարագրած «զարհուրելի, անաստուած, անհաւատ ժողովուրդը» չէր. Վլադիմիրը ցանկանում էր և մկրտուեց Խերսոնի Ամենափրկիչ եկեղեցում. Նա հռովմէական տէրութեան հետ, որին իւր նախորդները բազմաթիւ վարձկաններ էին տուել, ամենամտերիմ բարեկամութիւն հաստատեց, երբ կայսեր փոքր քոյրը, ծիրանածին Աննա իշխանուհին, ամուսնացաւ ռուսական մեծ իշխանի հետ։ Նա Հռովմայեցիներին նորից վերադարձրեց գրաւած քաղաքը։ Մեծ իշխանի հրամանին հնազանդ, նրա հաւատարիմ ժողովուրդը սուզուեց Դնեպրի ալիքների մէջ, որպէս զի Յոյն քահանաներից և վարդապետներից ընդունի «Սուրբ լուսաւորութիւնը»։ Սուրբ Վլադիմիրի մկրտութիւնը օրթոդոքս եկեղեցու տարեգրութիւնների մէջ ամենայայտնի տարեթուերիցն է. դա այն ժամն է՝ երբ ծնուեց արևելեան եկեղեցու կրօնական և եկեղեցական ժառանգը՝ ռուսական եկեղեցին։

«Ցարգրադի» և Կիեվի իշխողների քաղաքական յարաբերութիւններն անպայման

լաւացան։ Ռուսական նոր և թարմ օգնական գնդերով և կայսերական զօրքով երկու իշխող եղբայրները՝ Բազիլեյոսը և Կոնստանդինը արշաւեցին դէպի Աբիդոս ծովաքերդը, որ պաշարել էր Փոկասը, և որը Հելլեսպոնտի ամենակարևոր բանալին էր։ Երկու զօրքերը կռուի պատրաստ՝ կանգնել էին դէմ յանդիման։ Փոկասը իր սովորութեան համաձայն պատրաստուել էր Բազիլեյոսի հետ մենամարտութեան մտնելու. երբ մի բաժակ սառը ջուր խմելով յանկարծակի մեռաւ՝ ձիուց վայր գլորուեց։ Կատաղի սարսափով ապստամբ գընդերը փախան զանազան կողմեր։ Այդպիսով 989 թ. Ապրիլին յանկարծակի վերջացաւ քաղաքական պատերազմը։ Կաղանաւոր Բարդաս Սկլերոսին տարան կայսեր առաջ։ «Այդպիսի մարդու առաջ դեռ երեկ դողում էինք», բացականչեց Բազիլեյոսը, երբ անօգնական, հաստլիկ ծերը, դեռ իր կայսերական՝ կարմիր կօշիկներով երևաց իր օրինաւոր տիրոջ առաջ։ Նրան ներեցին և շուտով մեռաւ։

Վերջապէս պետութեան կանգներ Բազիլեյոսին ծեր զաւաղքին էլ հասաւ միանգամայն արժանի պատիժը։ Դիւանական համառօտ դատաստանով զրկուեց իր բոլոր պաշտօններից և աստիճաններից, յանձնուելիս

գրաւեցին նրա առասպելական կարողութիւնը, որով նա կարող էր ամբողջ զօրք պահել, թոյլ տուին մայրաքաղաքի խուժանին կողոպտելու նրա պալատը և իրան էլ 989 թ. աքսոր ուղարկեցին։ Վեց տարի յետոյ մայրաքաղաք հրաւիրուեց սահմանի բարոններից Եւստաթէոս Մալեյինոսը, որ անսահման կալուածներ ունէր և շրջապատում էր անհամար հետևորդներով։ Նա այլ և ս չտեսաւ իւր կապպադովկեան դղեակը և նրա մահից յետոյ գանձարանը յարքունիս գրաւեց նրա հարստութիւնը։ Իբր թէ նրա տուած խրատի համաձայն, թէ ինչպէս պէտք է իշխել նահանգների ազնուականութեան վրայ, — հարուստներից արիւն առնել, որպէս զի նոքա չզօրեղանան և վտանգաւոր չդառնան —, Բազիլեյոսը հետևել է բռնացի և ամենայն ճշդութեամբ։ Բազիլեյոսը հրամայեց կործանել պաշտօնների և աստիճանների հասած մի հարուստ գղեակը, որը իւր հայրենի գիւղի ամբողջ տեղը գնել և շինել էր. կործանել և նորից գիւղացիներին բաժանել։ Այդ անուանում են արևելեան սուլթանական քմահաճոյք, իբրև թէ ներկայիս «օրինական պետութիւնը» ուրիշ կերպ վարուեց անտէր մնացած կալուածների գրաւումներով։ Միթէ՞ գերմանական եկեղեցական իշխանները, որոնցից տէրութեան

*պատգամաւորների ժողովը առաւ կալուածները և հացրեց առաքելական աղքատութեան, աւելի պակաս էին զգում իրանց իրաւունքների բռնաբարումը, քան այն բարոնները՝ որոնցից Բազիլեյոսը խլում էր իրենց կալուածները։*

*Հէնց որ Բազիլեյոս կայսրը ընկճեց բարձրը ազնուական ապստամբներին, դարձաւ իւր մեծ պապի՝ Ռոմանոսի օրէնսդրական ուղղութեանը։* 996 *Թ. նրա հրատարակած օրէնքի լեզուն արտասովոր խիստ է։ Բնական է որ գիւղական կալուածների անվաճառելիութեան մասին հրատարակած կարգադրութիւնները միայն թղթի վրայ էին մնացել։ Այժմ ամենայն խստութեամբ ոչնչացած հըրատարակեցին մեծամեծների կալուածատիրական իրաւունքները և առաջն առան այն կեղծ ճանապարհների, որով մեծ կալուածատէրերը սկիզբը գիւղական կալուածները եկեղեցական էին դարձնում և այդպիսով իրաւատէր դառնում։ Սաստ խօսքերով յայտնում է կայսրը որ տէրութեան շահը պահանջում է, ոչնչացնել հողատիրական հաւաքական. մեծ կարողութիւնը և մանաւանդ այդպիսի կալուածները շարունակաբար յաջորդներին թողնելը։ Այդպիսի զօրութեամբ հասկացաւ հզօր կայսրը դէմ դնել մեծ կա-*

լուածատիրական և հողատիրական կարգերին։ Նրա օրէնսդրութեան ամենալուրջ նպատակն էր պաշտպանել միջին և ստորին դասակարգերը, և հէնց մենակ այդ՝ լեռնաչափ բարձրացնում է այդ կոպիտ և անկիրթ զինուորականին իւր ամենաընտիր ասաիճանակիցներից շատերից։

Փինլէյը (Անգղիացի պատմիչ) շատ յարմար է ասում. «Բազիլեյոս Բ-ի կառավարութիւնը ցոյց է տալիս բիւզանդական հզօրութեան ամենաբարձր աստիճանը։ Կոստանդինուպօլսի արծիւները նրա կենդանութեան ժամանակ թռչում էին երկար յաղթական ճանապարհով Դանուբի ափերից մինչև Եփրատի ափերը. և հայկական լեռներից մինչև Իտալիայի ծովեզերքը։ Բազիլեյոսի անընկճելի քաջութիւնը, նրա սոսկալի խստասրտութիւնը. նրա անապրեսութիւնը դէպի դեղարուեստը և գրականութիւնը և նրա կրօնական թերահաւատութիւնը, բոլորը միանում են, որպէս զի նրանից ստեղծեն իւր տէրութեան և իւր ժամանակի մի տիպ։ Նրա կառավարութեան քաղաքականութիւնն էր Եւրոպայի պետական վարչութեան միութիւնը ամրացնել՝ բոլորովին նուաճելով Բուլգարներին և Սլաւներին, որոնք լեզուական նմանութեամբ միացել էին մի ազգութեան մէջ և

բացի այդ մի էին իրենց անհաշտ ատելութեամբ դէպի կայսերական կառավարութիւնը։»

Շիշման Ա-ի որդիները, Դանուբայի վրայ Տրնովոյից ծագած ցեղը «Գրաֆի որդիները»[1] վերջին փայլ տարածեցին Բուլգար ժողովրդի վրայ, նրա վերջնական անկումից առաջ։ Շիշման Ա-ը և Դաւիթը զարգարուած էին ցարի տիտղոսով, նմանապէս Սամուէլը (976—1016) ժողովրդի վերջի հզօր, բայց դժբախտ իշխանը։ Նրանից հետ բուլգարական իշխանութեան գլխաւոր կենդրոնը տեղափոխուեց արևմտեան ազատ երկիրը՝ Ալբանիա և Մակեդոնիա։ Ցարի և պատրիարքի կայարանը Պրեսպան էր, Պրեսպա լճի մի անտառոտ կղզի, որտեղ այսօր էլ մնացած են նախկին բերդի պարիսպների և չորս եկեղեցիների մնացորդները։ Բայց շուտով տեղափոխուեց Օխրիդա, որ գտնւում է ըստ հների Լիխնիտիս լճի մօտ և հարուստ ու փառահեղ իշխանական նիստ էր։ Երբ վերջում Յոյները գրաւեցին գլխաւոր քաղաքը, թագաւորական գանձարանում գտան մի թագ զարգարուած մարգարիտներով, ոսկեհուռ զգեստներ և հարիւր քաշ ոսկի։ Այդ աւատական կազմ ունեցող տէրութեան գլխաւոր պահապանը զօրեղ և պատերազմասէր բո-

1. Դաւիթ, Մոսէս, Ահարոն եւ Սամուէլ:

լեարների դասակարգն էր (Boljarenstand)։ Սամուէլը Թագը ստացել էր Հռոմից․ նա ողորմած իշխան էր, նաև բոգոմիլների համար։ Ուստի նա չէ ապրում, ինչպէս միւս ցարերը, օրթոդոքս եկեղեցու փառահեղ յիշատակութիւնների շարքում։ Զմշկիկի մահը և Սկլերոսի ապստամբութիւնը ծառայել էին իբրև նշան Դանուբեան Բուլղարների ընդհանուր ապստամբութեան։ Ամենակարճ ժամանակում Սամուէլը վերականգնեց նախկին մեծ տէրութիւնը։ Նա արշաւեց Թրակիա Թեսալոնիկէի շրջակայքը և մինչև անգամ Հելլասը․ Լարիսայից Պրեսպա տարաւ ս․ Նահատակ Աքիլլեսի նշխարները։ Բայց Բազիլեյոսը Սամուէլին հաւասար հակառակորդ էր։ Կայսրը միաժամանակ սկսեց գործել ցարի դէմ ծովային և ցամաքային զօրքով Փիլիպպուպոլսից, Մոսինոպոլսից և Թեսալոնիկէից թէև ոչ միշտ յաջողութեամբ, բայց անընկճելի դիմացկանութեամբ։ Սակայն երբ նա 981 թ․ Սրեդեցի (Սերդիկա Սոֆիա) դէմ գնաց, նրա բիւզանդական զօրքը կատարելապէս ջարդուեց։ Տասնուհինգ տարի պատերազմը դադարեց։ Սամուէլը օգտուեց այդ ժամանակամիջոցից միացնելու Դիւռախիոնը և ադրիատական ծովափնեայ երկիրները և Սերբերին էլ ենթարկեց իւր գերիշխանութեանը։ Այն

*ժամանակ Օխրիդայի տէրութիւնը իւր փայլի բարձր գագաթումն էր։*

996 *թ. վառուեց երկրորդ պատերազմը։ Սամուէլը յաղթեց Յունաց Գրիգորիս զօրապետին որ ծագում էր Հայոց Տարօնի իշխանական ցեղից և սպանելով արշաւեց դէպի Հարաւ մինչև Պելոպոնէս։ Սակայն նրա վերադարձի ժամանակ՝ Սպերխեյոսի մօտ բանակել էր Նիկեփորոս Ուրանոսը։ Գիշերը Յոյները անցան գետը և սարսափելի արիւնհեղութիւն առաջացրին Բուլղարների մէջ։ Սամուէլ մեծ նեղութիւնով ազատուեց և փախաւ իւր կղզու բերդը։ Նրա սեպհական փեսան, Հայազգի Աշոտը Յոյներին մատնութեամբ յանձնեց Դիւռախիոնը, որ նրան էին հաւատացել։ Կայսրը միանգամ ևս անյաջող յարձակում գործեց Սրեդեցի նահանգի վրայ, բայց նրա զօրապետները արդէն վերջնականապէս նուաճեցին Դանուբեան Բուլղարիան* (1000 *թ.) մի տարի յետոյ Յոյները հաստատուեցին Ստորին Մակեդոնիայում. Բեռոյեա, Սերվիա, Վոդենա ընկան նրանց իշխանութեան տակ։* 1002 *թ. Բազիլեյոսը առաւ նշանաւոր Բդինը, մինչդեռ Սամուէլի Ադրիանուպօլսի ասպատակելը անցողակի յաջողութիւն էր։ Կայսրը նուաճեց նաև նշանաւոր Սկոպիէ։ Բայց ամուր Պերնիկը Ստրի-*

մոնի կիրճում մնաց անմերձենալի։ Միայն
արևելքի շփոթութիւնները արգելք դարձան
կայսեր վերջի գթութեան հարուածը տալու
ցարի տէրութեանը։ 1014 թ. տեղի ունեցաւ
վերջին պատերազմը։ փոփոխակի պատերազմք
կենդրոնացաւ լեռնական ամուր բերդերի շուր-
ջը։ Ստիպուած էին մէկը միւսից յետոյ գրա-
ւել և պահապանների յանձնել. բուլղարական
բնակիչներին հին ասորական սովորութեամբ
քշեցին մինչև Հայաստան։ Աւելի փայլուն էր
Նիկեփորոս Քսիփիասի զէնքի յաջողութիւնը
(1014 թ.) նա շրջապատոյտ արաւ Բելասիկա
բերդը (Balathista) և յարձակուեց Բուլղար-
ների վրայ հետևի կողմից։ Բուլղարական ամ-
բողջ զօրքը յուսահատական պաշտպանու-
թիւնից յետոյ ոչնչացաւ։ Մեծ դժուարու-
թեամբ ցարը փախաւ Պրիլեպ։ Բազիլեյոսը
կուրացրեց 15,000 գերեալներ, այնպէս որ
հարիւր կոյրին մի միականի առաջնորդ էր
ծառայում։ Երբ դժբախտների ամբոխը տե-
սաւ Սամուէլը, ինչպէս Հեղին՝ ուշագնաց
գետին գլորուեց։ Սոսկալի սրտի բաբախու-
մից արդէն երկու օրից յետոյ 15 Սեպտեմ-
բերի 1014 թ. մեռաւ դժբախտ թագաւորը։
Սամուէլի որդի Գաբրիէլ Ռոմանը (Radomar),
մի քաջ պատերազմող. որի ժամանակ Յոյնե-
րի ձեռքն ընկան Բիտոլ, Պրիլեպ, Ստիպ, Վո-

գենա և Մոգլենան ի զուր առաջարկեց խաղաղութիւն: 1015 թ. նա սպանուեց իւր եղբօրորդու՝ Աշարոնի որդի Յովհաննէս Վլադեսլաւի դաւաճանութեամբ: Բռնաւորը, որ Յոյներին կողմնակից էր, բուլղարներից ստիպուեց շարունակել ազգային պատերազմը և 1016 ու 1017 թ. կռուեց յաջողութեամբ: Բայց նրա ծրագիրը՝ դաշն կապել Պեչենեգների հետ, ի դերև ելաւ Յունաց Դանուբեան բերդերի բերդապահների արթուն հըսկողութիւնից: Դիւռախիոնի առաջ, որ Բուլգարները պաշարել էին, ընկաւ 1018 թ. Յովհաննէս Վլադիսլաւը, Օխրիդայի վերջին ցարը: Բուլղարների մի զօրեղ կուսակցութիւն, Դաւիթ պատրիարքը, Մարիա թագուհին և թագաւորութեան ամենամեծ զօրապետը՝ Բոգդանը, առաջարկեցին խաղաղութիւն՝ եթէ ճանաչուի իրենց առանձնաշնորհութիւնները: Բազիլեյոսը մայրաքաղաքից ճանապարհ ընկաւ: Անդրիանուպոլսում նրան ընդառաջեցին բուլղարական լրատուները յայտնելով, որ Պերնիկը և շրջակայ 35 բերդերը անձնատուր են եղել: Ստրումիկայում պատրիարքը նրան յանձնեց թագուհու նամակը: Երբ նա հասաւ Օխրիդա, նրա առաջ եկան թագուհին և բոլոր «Գրաձի որդիները»: Ալբանիայի լեռներում մի առժամանակ դեռ մնացին պա-

տերազմի կուսակցութեան պարագլուխները, Փրուժին իշխանը և քաջ Իվացը։ Հռոմէական սուրը և բիւզանդական խարդախութիւնը խորտակեցին նաև այդ վերջին ընդդիմութիւնը։

Քառասունամեայ պատերազմից յետոյ սլաւոնական հզօր պետութիւնը, որը այնքան երկար ժամանակ Հռոմէացւոց պետութեան դէմ յանդիման կանգնել էր իբրև հաւասարակից մեծ տէրութիւն, միանգամայն ընկճուած և փոշու մէջ էր նետուած։ Բազիլեյոսը իւր մեծամեծ յաղթութիւնների տպաւորութեան տակ գնաց Աթէնք, ուրպէս զի Պարթենոնի, որ Ճշմարիտ հաւատին էր նուիրուած, աստուածամօրը բերէ իւր շնորհակալիքը և ընծաներ պարգևէ։ Անսահման էր ցնծութիւնը, երբ «Բուլղարասպանը» մտաւ մայրաքաղաքը։ Զարդարուած ոսկեայ ցից փետուրներով թագով։ 64 տարեկան ծերը իբրև յաղթանակող ձիավարեց ոսկէ դռներից ներս. Նրա առաջից քայլում էին Մարիա թագուհին, Սամուէլի աղջիկները և կալանաւոր բոլեարները։ Բուլղարական պետութիւնը ջնջուել էր ինքնուրոյն իշխանութիւնների շարքից։ Ցուստինիանից ի վեր ոչ մի կայսր այդպիսի զօրութեամբ չէր հրամայել Հեմոս թերակղզու վրայ։

Բազիլեյոսը նուաճուած երկրի հետ վարուեց շատ մեղմ և մեծ իմաստութեամբ։ Նա անձեռնմխելի թողեց նրա քաղաքական և եկեղեցական հաստատութիւնները։ Օխրիդայի ցարի տէրութիւնը կարծես անձի միաւորութեամբ, միացել էր հռովմէական մեծ պետութեան հետ։ Նա պահպանեց բոլոր զինուորական և հարկահանական կարգերը. բուլղարական բարձր ազնուականութիւնը պահեց իւր առանձնաշնորհութիւնները, Օխրիդայի ինքնիշխան եկեղեցին 1019 թ. ունեցաւ Յովհաննէսին իւր ազգային գլուխ։ Կայսեր երեք ոսկեայ հրովարտակները տարածում էին նրա իշխանութեան սահմանները ոչ միայն բուլղարական ազգային և սերբական վիճակների վրայ, այլ և յունական այն նուաճումների վրայ, որոնք «Սիմէոն ցարի և Պետրոսի՝ փառաց յիշատակութեան արժանի» ժամանակները միացած էին բուլղարական պետութեան հետ։ Միայն Դրիստայում (Drster-Dorostolum) առաջուայ պէս մնաց մի մետրապոլիտ, որ հնազանդում էր տիեզերական պատրիարքին։ Ցարի տան անդամները և Բոլեարների ընտանիքները տեղափոխուեցին Կոստանդնուպոլիս և ընդունուեցին տէրութեան ազնուականների շարքում։ Բազմաթիւ յունական նշանաւոր ընտանիքներ յետոյ նոցա հետ

խնամՀական կայսեր հաստատեցին. ազնուականութեամբ հպարտ Դուկասները և Կոմնենները հոչակում էին իրենց ծագումը Շիշմանիդներից։

Բուլղարական սարսափելի պատերազմների ժամանակ, կայսրը երբեք իր ուշադիր աչքը չէր հեռացրել արևելքի խնդիրներից։ 995 գնաց արևելք, որտեղ մի տարի առաջ ընդունակ Նիկեփորոս Ուրանոսը Արաբներից պարտութիւն էր կրել։ Կայսերական զէնքը յաղթական էր, Նա առաւ Հալէպ, Հեմս և Շայիզար. միայն ամուր Տրիպօլսի պարիսպները նրա յարձակումներին էլ դիմացան։ Նրա դարձից յետոյ Կոստանդնուպոլիս, Հալէպը դարձեալ Ֆատիմիդների ասար դարձաւ։

Աւելի նշանաւոր էր նրա միջամտութիւնն հայկական հողի վրայ։ Սմբատ Բ-ը 977-989 թ. «աղքատների շահինշահ» և «տէրաքալ»ը, հոյակապ շինութիւններով Անին դարձրել էր արևելքի ամենափառաւոր քաղաքներից մէկը։ Նա և իր եղբայր Գագիկը իշխում էին հզօր և բախտաւոր, թէև շարունակ պատերազմելով քրիստոնեայ աւատական իշխանների հետ, որոնց ստեղծել էր Բագրատունեաց անհեռատես ընտանեկան քաղաքականութիւնը, և արևելեան Հայաստանի ամիրաների դէմ։ Դաւիթը Տայքի և Վրաստանի մի մասի քաջ

իշխանը 998 թ. իւր հարեւանների օգնութեամբ փառաւոր ջարդ էր տուել Ցեմոյի մօտ Մամլուն ամիրային եւ նրա անհամեմատ բազմաթիւ զօրքին։ Նա Բաղիլեյոսից ստացաւ կիւրապաղատ տիտղոսը։ Իւր մահուան ժամանակ 999 թ. Բաղիլեյոսին իրան ժառանգ կարգեց, որը Տարոնից այդտեղ ուղղուեց, գոհ, որ այդպիսով յարմար առիթ է գտնում խառնուելու հայկական գործերում։ Բայց Գագիկի խելացիութիւնը արգելք դարձաւ կայսեր ծրագրերին։ Սրա (Գագիկի) մահուանից յետոյ գահակալական վէճ ծագեց ուտուձնական եւ թուլամորթ Յովհաննէսի եւ իւր աւելի ընդունակ Աշոտ եղբօր մէջ։ Վրաց թագաւորի միջամտութեամբ շփոթութիւնը սուր կերպարանք առաւ, մինչեւ Աշոտը յունական զօրքի օգնութեամբ հաստատեց իւր հեղինակութիւնը։

Այն ժամանակներում 1021 թ. առաջին անգամ երեւում են հայկական հողի վրայ Սելջուկեան զզուելի հրոսակները, որ կարծես նախասահմանուած էր Հայաստանի եւ արեւելեան Փոքր Ասիայի համեմատաբար բաւական բարձր քաղաքակրթութիւնը ջնջելու հողի երեսից։ Որպէս զի միայն աւերակներ թողնէին, ինչպէս յետոյ իրենց աւելի զարհուրելի եղբայրակիցները՝ մոնղոլները։ Վաս-

պուրականի վերջի Արծրունին՝ Սենեքերիմը սարսափելով իւր երկրի աւերումով Թուրքերի ձեռքից, իւր բոլոր իշխանութիւնը տուեց Բազիլեյոսին, որը դրա փոխարէն նրան տուեց կիսահոյ բնակութեամբ Սեբաստիան (մեռաւ 1027 թ.)։ Նաև մահմետական ամիրաները Վանի շրջակայքի քաղաքներում (Բերկրի, Մանազկերտ, Խլաթ, Արճէշ) բիւզանդական տէրութեան վասալները դարձան, այնպէս Բագրատունեանց իշխանութիւնը շուրջ բոլոր շրջապատուեց հռովմէական տիրապետութիւններով։ Վրաց Գէորգ թագաւորը, որ ապստամբեց Յունաց գերիշխանութեան դէմ և ասպատական արշաւանքներ հասցրեց մինչև Տրապիզոն, ծանր պատիժ կրեց Հռովմայեցւոց հանդստութիւն չիմացող կայսրից, և նրա դաշնակիցը, Յովհաննէս Բագրատունի թագաւորը ստիպուեց Անին գիջանել Բազիլեյոսին և սրանից ստանալ իբրև աւատական իշխանութիւն։ Նրա մահից յետոյ նրա թագաւորութիւնն էլ պէտք էր միանար կայսեր տէրութեան հետ։ Ինքն ըստ ինքեան հասկանալի է, որ Կելցենէի մետրապօլտի ձեռքի տակ կազմակերպուեց մի զօրեղ յունական կրօնական վարչութիւն, որ ամենայն ոյժով գրգռում էր Հայերի և Յոյների սոսկալի ատելութիւնը և իրենց ծայրահեղ անհամբե-

քողութեամբ ամենից շատ են պատճառ դարձել Հռովմայեցւոց պետութեան անկմանը արեւելքում։ Բայց այդ ժամանակի սխալներն էին եւ ոչ Բազիլեյոսի։ Անձնապէս ամեն ինչ ձեռնարկում էր, որպէս զի նոր գրաւած արեւելեան սահմանը ընդունակ լինի պաշտպանուելու։ Երբ Կոնստանդին Թ-ի ժամանակ Սելջուկները ներս խուժեցին, բոլոր բերդերը եւ դղեակները գտան լաւ ամրացրած եւ պահապան գնդերով պաշտպանուած։ Այդ գործը այդ անտարտամ զինուորական տաղանդինն էր։

Նրա յոգնութիւն չիմացող հոգին չբաւականացաւ այդ յաջողութիւններով։ Իր երբէք չհանգստացող եռանդով զրահաւորեց մի հզօր արմադա, որով ուզում էր անհաւատներից յետ խլել Սիկիլիան, որ կորցրել էին իր երկու մեծ պապերը՝ Բազիլեյոսը եւ Լեւոնը։ Այն ժամանակ մահը վրայ հասաւ 66 ամեայ ծերունուն 1025 թ. Դեկտեմբերին, իր ծրագիրները իրագործելիս։

Սլաւների ընկճմամբ եւ Հայաստանի միացմամբ բիւզանդական տէրութիւնը այնպիսի ծաւալ էր ստացել. որ երբէք չէր լսուած Յուստինեանի օրերից ի վեր։ Բազիլեյոսի խստութեան հետ միացած մեղմութիւնը, սլաւոնական միլիոնաւոր հպատակներից չէր խլել նոցա հայրենի հիմնարկութիւնները եւ

ազատութիւնը։ Վտանգաւոր էր և լաւ մտածուած պետական քաղաքականութիւն չէր արևելքում հայկական իշխանութիւնների միացումը, որ թէ ազգով օտար՝ էին և թէ կրօնապէս բաժան պետութիւն էին կազմում։ Այդ դրաւումը կարող էին արդարացնել անհրաժեշտ ստրատեգիական զինուորական հիմունքներ։ Բայց դրա հետ միացած էր մի ծանր ճակատագիր։ Այդտեղ մոնոֆիզիտական հաւատոյ դաւանանքը դեռ մի իրական ոյժ էր, որը պէտք էր հաշուի առնել։ Այն բոլոր աղէտները որ պատահել էին Յուստինեան և Նախայուստինեան շրջանները Եգիպտոսում և Ասորիքում, այստեղ նորից վերակենդանացան։ Միայն Բազիլեյոսի նման աննկուն զինուորականներն էին կարող, որ երկաթէ ձեռքով կառավարում էր վէճ սիրող և միաբանութեան ձգտող կղերականութիւնը, այստեղ էլ նրա քաղաքականութիւնը առաջ տանել յաջողութեամբ և [illegible] իրերի դրութիւնը բարւոքել։

Մինչ դեռ Հայաստանը պատահեց։ Ազնուական մեծ կալուածատիրութիւնը անընդհատ տարածւում էր։ Կայսրները այդ մեծամեծների ձեռքին խաղալիք դարձան։ Արևելեան փոքր Ասիայում համարեա բոլորովին անհետացաւ գիւղական ազատ դասակարգը։ Ծե-

րոպայում Սլաւներից խլում էին նոցա ազգային առանձնաշնորհութիւնները և դրանցով վարձատրում էին Յոյներին։ Ամենաընդունակ զօրապետներին նոցա ամենափայլուն ձեռնարկութիւնների ժամանակ կանգնեցնում էին, և այդ անում էր Սէնատի մէջ կենդրոնացած և ուժեղացած քաղաքացիական պաշտօնեաների Օլիգարխիան՝ նախանձից և կասկածից էր դրդուած. իսկ նոքա էլ յուսահատուած ապստամբում էին։ Դրա վրայ աւելացաւ հարկերի անտանելի ծանրութիւնը, որը փոքր առ փոքր բնական տուրքերի (պտուղի) վճարին. աւելի ծանր՝ փողային վճարի փոխուելով ստիպում էր Սլաւներին և Ասիացիներին կամ ապստամբուել կամ գաղթել։ Իսկ արքունիքում ժամանակի հոգոյն համեմատ, իբր թէ իշխում էր կատարեալ անզօրրութիւն, նուիրուած էին անճաշակ սրամտութիւնների և կատարելապէս աննպատակ գրականական ոգևորութեան։ Իսկապէս շատ հասկանալի է, որ այդպիսի իշխողները և այդպիսի ազնուականութիւնը անկարող էր դիմադրելու թէ Սելջուկներին և թէ Նորմաններին։



## Զ·

### ՏԻՐՈՒԹԵԱՆ ԱՆԿՈՒՄԸ

(*1026—1081*)



*Արդէն կայսեր կենդանի մնացած եղբայր Կոնստանդին Ը-ի (1026—1028) կարճատև կառավարութիւնը անհաճոյ կերպով զանազանւում էր իւր նախորդի կառավարութիւնից։ Չէր կարող աւելի մեծ տարբերութիւն լինել քան ինչ որ կար Կոնստանդինի և Բազիլեյոսի մէջ, այնպէս որ Բիւզանդացիք նրանց մասին այս առակն ունէին՝ խաչն ու թքատուփը նոյն փայտից։ Կոնստանդինը ինքը բոլորովին անպատերազմասէր էր և կասկածով էր նայում զօրքի և նորա առաջնորդների վրայ։ Զինւորական և քաղաքացիական վարչութեան ամենաբարձր տեղերը նա հաւատաց միայն իւրան անձնատուր պալատականներին. օրինակ Սպոնդիլոս ներքինուն ուղարկեցին Անտիոքի կուսակալ, մի երկրորդին Վրաստան, որ թէ խիստ նշանաւոր և թէ պատասխանատու*

տեղեր էին։ Մի և նոյն ժամանակ հարկերը ժողովում էին առանց խնայելու։ Բայց այն աննման կազմակերպութիւնը, որ ստեղծել էին երկու նախորդ սերնդի մեծ հանճարները, առ ժամանակ դեռ գործում էր ամենայն ճշտութեամբ։ Կոնստանդինոս Դիոգենէսը 1027—ին․ Դանուբի սահմաններից դուրս վանեց ներս խուժող Պեչենեգներին, նմանապէս յաղթութեամբ յետ մղուեցին աֆրիկեան մահմեդականների յարձակումները, որոնք սպառնում էին Իգեյեան ծովին։ Կայսրը մեռնելուց յետոյ միայն երեք աղջիկ թողեց․ Եւդոքսեան կոյս էր, Թէոդորան չէր կամենում ամուսնանալ և այդպիսով մնաց միայն «ծիրանածին Զոէն», որը արդէն բաւական հասակով էր (նա 48 տարեկան էր)․ բայց դեռ ամուսնանալու խիստ տրամադիր և մայրաքաղաքի ժողովրդից չափազանց սիրուած․ տէրութեան վիճակը կախուած էր այն ամուսնութիւնից, որը կընտրէր կայսերական գահի այդ օրինաւոր աղջիկ ժառանգը։ Հօրը վերջին կարգադրութեան համեմատ նա ամուսնացաւ Ռոմանոս Արգիւրոպուլոս բաւական յառաջացած սենատորի հետ որը ստիպուեց այդ նպատակի համար վաթսուն տարեկան հասակում, բաժանուել իւր կնոջից։ Ոչինչ չեն հաղորդում, թէ պատրիարքը և կառավարող սինոդը, որոնք [illegible]

այդ ժամանակները անհաշիւ հրամաններ էին արձակում ամուսնական խնդիրների վերաբերեալ, արգելք որ և է կերպ յանդիմանել են ոչ միայն քահանայական կանոնների, այլ և աստուածային հրամանի ոտնահարութիւնը։

52 տարիներից 'ի վեր միայն ծիրանածիններ էին գահի վրայ բազմել։ Հասկանալի է, որ Ռոմանոսը, որը այդքան բարձրացել էր և ծեր ու երկչոտ մի անձն էր, ամենից առաջ ձգտում էր ժողովրդական զանազան դասակարգերի յարգանքը գրաւել։ Նա ժողովրդին սիրելի դարձաւ նրանով, որ Պեչենեգների պատերազմի ժամանակ գերուածներին յետ գնեց. պարտքի համար բանդարկեալներին՝ ընդհանուր ներումն շնորհեց և մասնաւոր մարդկանց պահանջներին բաւականութիւն տուեց գանձարանից։ Ազնուականութիւնը և բարձր հոգևորականութիւնը գրաւեց՝ դադարացնելով — Alleleugyon — այն է հարուստների պարտաւորութիւնները, որով նոքա իրենց հարկահանական սահմաններում աղքատների չվճարած հարկերի փոխարէն իրանց կարողութիւնով պատասխանատու էին ճանաչւում. իսկ ամենից առաջ Ռոմանոսը քահանաների սրտի ուզած կայսրն էր։ Ս. Սոփիա եկեղեցու հոգևորականութեան առանց այն էլ չափազանց մեծ եկամուտները աւելի մեծացրեց։ Աստրական

*հետեւեալ եպիսկոպոսները և ականաւոր աստուածաբանները, ամենից առաջ Մելիտէնէ քաղաքում գահակալող բռնութեամբ կանչուեցին Կոստանդնուպոլիս։ Չթոյլ տուին որ վիճաբանութիւն լինի խօսելում աւելի ընդունակ արեւելցիների հետ, այլ երկու բնութեան մասին նոցա դէմ կանոնաւոր Ինկվիզիցիական դատաստան սկսեցին։ Որովհետեւ նոքա համարեա առանց բացառութեան հաստատակամ էին մնում, աքսոր և բանդ եղաւ նոցա վիճակը։ Անկասկած բարեբարոյ կայսրը այս դէպքում աւելի մղուածն էր քան մղողը։ Ինչպէս պատմում են՝ այդ մասամբ իսկապէս զզուելի արարքների ժամանակ յայտնի արքունական պաշտօնեաներ դառն արցունք են թափել, միայն ուղղահաւատ եկեղեցական պետերն էին մնում սառը ինչպէս ժայռ։ Բայց կառավարութիւնը ծանր պատասխանատուութեան տակ ընկաւ։ Դժբախտ Ասորիները ամբողջ խմբերով գաղթեցին մահմեդական երկիրը։ Տէրութիւնը յաջողեցրել էր բոլոր հետեւեալների տածած համակրանքը ոչնչացնել, մի սխալ որ ծանըր կերպով վրէժ էր հանելու։*

*Աւելի արժանի էր մի ուրիշ կարգադրութիւն։ Կառավարութիւնը Պաղեստինում իշխող Փաղիմիդների համաձայնութեամբ մեծ գումարներ տուաւ Ս. Անաստաս եկեղեցու վերաշինու-*

թեան համար, որ կործանուել էր խելացնոր Խալիֆ և Դրուզների աստուած Հաքիմի հրամանով (967—1021)։ Կայիրէի դեռ բաւական մոլեռանդ շիիտական կառավարութեան հակառակութիւնների պատճառաւ շինութիւնը վերջացաւ միայն Կոնստանդին Թ-ի ժամանակ՝ 1048 Թ։ Զոէ կայսրուհին սաստիկ նախանձ էր տածում դէպի իւր խելօք և կամքի տէր քոյր Թէոդորան։ Սրան մեղադրեցին որ նա է բուն պատճառը և հեղինակը Պրուզինոսի (Fruzin) և Կոնստանդին Դիոգինէսի դաւադրութեանը, արդեօք արդարացի՞ կերպով, որոշել դժուար է. որովհետև Բիւզանդական արքունական խարդաւանանքների մէջ ստութիւնը շատ է. իսկապէս հազիւ թէ հաւատալի լինի։ Պրուզինոսին մեղադրում էին որ գահի է ձգտել, Կոստանդինոսին՝ որ ծածուկ կերպով գրգռել է Սլաւներին և Բուլղարներին ապստամբելու։ Երկու մեղադրութիւնների մէջ էլ արտայայտւում է միայն կառավարութեան անհանգիստ խիղճը՝ բուլղարական հպատակներին վատ կառավարելու համար։ Թէոդորան և իշխան Փրուժինը ստիպուեցան մտնել վանք, Կոնստանդինին կամենում էին կուրացնել, բայց ինքնասպանութիւնը դրա առաջն առաւ։ Բարձր ազնուականութեան բազմաթիւ անդամներին աքսորեցին՝ դաւադրութեան մասնակցած լի-

նելու պատրուակաւ: Անտիոքի Սպոնդիլէս կուսակալի մեղքից Բիւզանդացիք 1029 թ. մի ծանր պարտութիւն կրեցին: 1030 թ. կայսրը ինքը անձամբ եկաւ Ասորիքի պատերազմական դաշտը, որպէսզի Հալէպի և Տրիպոլսի ամիրաներից այնպիսի ջարդ կրէ, որ ինքը և իր զօրքը հազիւ հասան Անտիոքիա: Յաղթողները հարուստ աւար տարան:

Այստեղ է առաջին անգամ պատմութեան մէջ հանդէս գալիս Գէորգ Մանիակէս[1] «պատերազմական հերոսը: Յաջողութիւն ունենալով փոքր կռիւներում, շուտով նա ձեռք բերեց «Սարրին Մ'որատանի» հրամանատարութիւնը Սամոսատա մայրաքաղաքով, նա 1032 թ. մի յանդուգն քայլով Եդեսիայի տէր դարձաւ, քրտինքի ջնջոցի հետ նա Քրիստոսի Աբգար թագաւորին ուղղած նամակն էլ ուղարկեց Կոստանդնուպոլիս, իբրև երկրորդ մեծագոյն սուրբ նշխար:

---

[1] Վամբէրին եւ նրանից յետոյ Նեումանը (Բիւզանդական պետութեան աշխարհակալական դերը էջ 43) ասում են որ այդ բառը տաճկերէն է եւ նշանակէ «ազնուական»: Բառի այդ բացատրութիւնը երեւում է Վամբէրու երեւակայութեան արդիւնք. որովհետեւ այդ բառը չկայ ոչ Պերչի եւ ոչ էլ Վամբէրու իր սեփական ցանկական բառգրքի մէջ:

ծեր կայսրը երկու վերջին տարին շարունակ հիւանդ էր և լուրեր էր պտտում որ ամուսինն է թունաւորել։ Յովհաննէս վարդապետը՝ երբեմն Ռոմանոսի տան սենեկապետը այն ժամանակը բարեգործական հիմնարկութիւնների մինիստր, ունէր մի եղբայր որ արտակարգ գեղեցիկ էր, թէև ընկնաւոր, Կայսրուհին պառաւութեան հասակին յատուկ՝ ամենամեծ կրքոտութեամբ սիրահարուեց նրա վրայ։ Յամենայն դէպս խիստ անհաճելի էր, որ կայսեր մահից անմիջապէս յետոյ, Ապրելի 11—ին, 1034 թ. կայսրուհին ժողովեց բոլոր արքունականներին և նոցա ներկայացրեց իբրև կայսրը իւր նախկին սիրական Միքայէլ Դ Պափլոգոնացուն. (1034—1044)։ «Յողթոյինն է աւարը», ահա այն սկզբունքը՝ որով առաջնորդուելով՝ կառավարութեան պաշտօնները իրար մէջ բաժանում էր Ռոտուրցու ամենաստորին խաւերից այդքան բարձրացած ընտանիքը։ Յովհաննէսը, իսկական թագաւոր հաստատողը, պետութեան կանցլեր դարձաւ համարեա անսահման արտօնութիւններով. մի ուրիշ եղբայրը Կոնստանդինոսը կարգուեց ընդհանուր հրամանատար. կամ մեծ դոմեստիկոս, Ստեփանը, որ առաջ նաւագործ էր, կայսերական նաւատորմիղի ծովակալ, և նրա Միքայէլ Կալաֆատար որդին վե-

*բակոչուեց Կեսար։ Այդ բախտախնդիրները համարեա առանց բացառութեան բոլորն էլ չափազանց ընդունակ մարդիկ էին, նա մանաւանդ Յովհաննէսը, որ վարչական հանճար էր, որը սակայն իւր բռնակալական աննկունութեամբ և իսկական յունական ագահութեան անտեսութեան մէջ՝ յիշեցնում էր իւր վատահամբաւ եղ և մօրից մինիստր անուանակցին Յուստինեանի ժամանակ։*

*Արդէն Ռոմանոսի ժամանակ ափրիկեան և սիկիլեան ծովահէնները անհանգստացնում էին Ադրիայի ափերը։ Բայց այս անգամ հռովմէական կառավարութիւնը ընդդիմացաւ նոցա ամենայն ուժով։ Ինչքան որ պակասում էր գիւղական ազատ դասակարգը, զոհ գնալով մեծամեծների անխնայ հալածանքներին, որից մի ժամանակ Բուլգարների և մահմեդականների դէմ գլխաւոր և յաղթանակող զօրագնդեր էին կազմուել, այնքան աւելի էր կառավարութիւնը ստիպուած վարձկանների դիմել։ Դոցա մէջ թւով և նշանակութեամբ առաջին տեղը բռնում են «Վարանգները» և «Ռուսները»* (Roso-Warjager)*։ Սկանդինաւցիներ՝ Ռուսաստանից, Նորվեգցիք, Իսլանդցիք.* 1066 *թ. Վիլհելմ Աշխարհակալի յաղթութիւնից յետոյ բազմաթիւ Դանիացիք և Անգլոսաքսեր լցնում են նոցա շար-*

քը· բայց ոչ մէկը այնքան հռչակաւոր չէր որքան Հառալդ Հառդրատաղէն, Սիգուրդի որդին, Ս. Օլաֆի եղբայրը (Նորվեգիայի թագաւոր 1047-1066), որը 1033 - 1043 թ. Նորդբրիկտի՝ պատերազմի մարդու (hom de guerre) ձեռքի տակ ասիական հերոս Գէորգ Մանիակէսի հետ Հռովմայեցւոց տէրութեան համար կատարեց պատերազմական ամենամեծ գործեր։

1032 թ. Ռագուզայի հասարակապետութեան, որ ամենալաւ ծովագնացներ էին և կայսերական միացեալ նաւատորմիղը կայսեր փեսայ, Նաւպլիայի կուսակալ Կոնստանդին Կարանդինոսի առաջնորդութեամբ՝ այստեղ առաջին անգամ միացած Սարակինոսներին այնպէս հիմնովին ջարդեցին, որ նոքա որոշեցին ամենայն զօրութեամբ վրէժը լուծել։ 1034 և 1035 թ. նոքա արշաւանքներ գործեցին Էգեյեան ծովի կղզիների և Լիւկիայի վրայ. բայց ծովափնեայ երկիրների կուսակալները (Թրակեսիոն և Կիբիւռայոտիկոն) ոչընչացրին ծովահէնների նաւատորմիղները։ Պատիժը սովորական էր։ Փոքր Ասիայի արևմտեան և հարաւային ափերի երկարութեամբ շարուեցին կախաղաններ և սիւներ։ Յաղթական Հառալդը իր Վարանգների հետ աֆրիկեան ծովեզերքի սարսափն էր։ Գլխաւոր հարուածը պատրաստուած էր Սիկիլիայի համար, որը Փա-

տիմիզներից բաժանուելուց յետոյ, ընկել էր ամիրաների անիշխանական կառավարութեան տակ։ Մանիակէս պատրիկիոսը, որ Իտալիայի հրամանատարն էր, հրաման ստացաւ արշաւել Սիկիլեայի վրայ. Սալերնոյից Լոնգոբարդներ, Իտալական Նորմաններ և Վարանգներ Հարալդի առաջնորդութեամբ՝ զամաքային զօրքի միջուկն էին կազմում՝ նրա ձեռնարկութեանը օգնում էր նաւատորմիղը կայսեր Ստեփան եղբօր առաջնորդութեամբ։ 1038 թ. յարձակումով առան Մեսինան, և Արաբները Ռամետայի մօտ պարտութիւն կրեցին Մանիակէսի զինուորական արուեստի շնորհիւ։ Մի նոր զօրք, որ ծովի վրայով Աֆրիկայից էին ուղարկել, ջարդուեց 1040 թ. Դրագինայի մօտ։ Բայց անձնական զօրեղ տարաձայնութիւնը՝ հրամանատարի և ծովակալի մէջ պատճառ եղաւ, որ միջամտեց կայսերական դիւանը։ Մանիակէսին կալանաւորեցին և ուղարկեցին մայրաքաղաք։ Այդտեղից կայսերական զէնքից բախտը շուռ եկաւ։

Միքայէլի ժամանակ աւելի վտանգաւոր էր սլաւոնական հպատակների ապստամբութիւնը Հեմուս թերակղզու վրայ։ Պատճառը տնտեսական էր։ Կառավարութիւնը սկսեց՝ համաձայն աւելի բարձր քաղաքակրթութեան պահանջներին, բնական արդիւնքներից հարկ

*մարդուց բաղկացած մի զօրք 1040 թ. Հոկտեմբերին ամբողջ վեց օր յարձակումներ էր կատարում Թեսալոնիկէի վրայ։ Սակայն Հերոսական քաղաքացիները մի անգամ էլ միացրին Ցուլեաց Պօլիսի (քաղաքի) անունը և ազատեցին տէրութիւնը՝ ընդդէմ թոյլ կառավարութեան։ Ինչպէս երբեմն իրենց Հայրերը՝ յուսալով Հայրական աստուածների և Հերոսների վրայ, դուրս էին եկել մեդացի ժառանգական թշնամիների դէմ, այնպէս էլ Ս. Դեմետրիոսը՝ Թեսաղոնիկեցոց Հզօր յաղթող պաշտպանը, շնորհեց պատերազմելու քաջութիւն և փառաւոր յաղթութեան ոյժ։ Այդ վճռողական ճակատով ջախջախուեց ապստամբութիւնը։ Առաջնորդների Հակառակութիւնը, որի պատճառով Ալուզիանոսը կուրացրեց Դելեան ցարին և վերջն էլ մատնեց, վերջ տուաւ ապստամբութեանը։ Թեթև միջոցներով Միքայէլը յաղթանակեց բաժան բաժան, առանձնացած կռուողների վրայ. բայց սև լեռների սերբերը պահեցին իրենց ազատութիւնը և Կոնըստանդին Թ-ի առաջնորդութեամբ յարձակողական մի զօրախմբի Համար այնպիսի վիճակ պատրաստեցին, որպիսին, յետոյ այնքան յաճախ անգամ պատրաստելու էին կիսալալուն-վայրենի զօրքերին։ Բուլղարիայում քաղաքական կազմակերպութիւնը միանգամայն յուն-*

կանի վերածեցին Օխրիդայի ինքնուրոյն եկեղեցին և բոլոր եպիսկոպոսական աստիճանները, ինչպէս Փանարիոտների տխուր ժամանակներում, բոլորն էլ ընկան մայրաքաղաքի փառասէրների ձեռքը, գլխաւորապէս Սոֆիա եկեղեցու հոգևորականութեան ձեռքը, և հելլենական այդ եկեղեցական իշխանները, որոնք իրենց հարուստ տեղերի վրայ նայում էին իբրև ոսկու հանքի վրայ, դեռ բարձրաձայն գանգատւում էին բարբարոսների երկիրը քշուելներուն համար, ինչպէս այդ երևում է Թէոփիլակտոսի անբովանդակ նամակներից: Այն ժամանակուայ Յոյները ցոյց տուին քաղաքագիտական այնպիսի իմաստութիւն, ինչպէս յետոյ Լատինները. այսինքն, մասամբ քմահաճոյքէն, մասամբ կարճատեսութեամբ, ամեն բան անում էին վաղ թէ ուշ առաջացնելու սլաւոնների ազգային հակառակութիւն:

Միքայէլ Դ-ի մահից յետոյ Զոէն Միքայէլ Ե Կալափատէին, որ մինչ այդ կեսար էր, կայսր կարգեց: Ապրիլի 18-ին 1042 թ. հպարտացած բախտախնդիրը իր պառաւ բարերարուհուն Պրինկիպոս կղզու մի վանք նետեց: Դա նշան եղաւ մայրաքաղաքի ժողովրդի ընդհանուր ապստամբութեանը: Ազնուականութիւնը, որ արդարացի կերպով ատում էր և արհամարհում դահը բարձրացած

անտերեւ արկածախնդիր ցեղին՝ ապստամբութեան գլուխն անցաւ։ Երկու ծիրանածին իշխանուհիները՝ Զոէն և Թէոդորան հաւասար կերպով հրատարակուեցին օգոստուհիներ Ապրիլի 22 1042 թ. և արեան մէջ խեղդեցին ընդդիմութեան փորձը։ Կալաֆատէսը ընդունեց վարդապետական սքեմ։ Բնական է որ նախկին կառավարիչներին պատժեցին, գրաւելով նոցա ստացուածները։ Երկու քոյրերի մէջ խաղաղութիւնը միայն կարճ ժամանակ տեւեց։ Յունիսի 11-ին 1042 թ. 62 ամեայ Զոէն ամուսնացաւ Կոնստանդին Թ Մոնոմաքոսի վրայ, որ կայսերական ցեղից էր. սա կայսրուհու հետ կառավարեց մինչև 1050 թ. իսկ մենակ մինչև 1054 թ։ Պառաւի բազմաթիւ յիմարութիւններից վերջինն, լոկ քաղաքական ամուսնութիւնը ամենամեծն էր. տէրութեանը հարկաւոր էր պատերազմող իշխան և Մանիակէսը ամենայարմար թագաւորն էր։ Տէրութեան դժբախտութիւնից յօգնացած և շուայտ մեկը գահ բարձրացաւ։ Կոնստանդինի կառավարութիւնը տէրութեան վերջի երջանիկ շրջանն* էր, որը սակայն կայսեր արժանիքը չէր։ Նա փառասիրակալ էր, հակազինուորական էր, խնայում էր զինուորների վարձը, և անչափ գումարներ էր ծախսում շինութիւնների և գիտութիւնն-

րը բարձրացնելու վրայ, որ այդ բոլոր ժամանակները խիստ անյարմար էր։

Իտալիայում Նորմանները, որ երբեմն Մանիակեսի վարձկաններն էին, դարձել էին յունական իշխանութեան ամենամեծ թշնամիները։ Նրանք 1041 թ. մտան Ապուլիա, նուաճեցին Մելֆին, և երկու անգամ հիմնովին ջարդեցին Կատապանոն Դոկէանոսին։ Սրա յաջորդը ևս բախտաւոր չէր։ Բարիի ազդեցիկ եպիսկոպոսը Արգիւրոսը միացաւ նրանց հետ։ Մանիակեսը, որին Միքայել Ե-ը Իտալիա ուղարկեց, որտեղ Յոյներին հպատակ էին մնացել միայն Տարենտոն, Բրենտեզիոն և Հիդրուսը, նորից յաջողութիւններ էր հետ բերում. 1042 թ. Մոնոպոլի մօտ մեծ յաղթութիւն տարաւ։ Բայց երբ Կոստանդինը կայսր դարձաւ, որի Սկլերայնա սիրուհու և սրա ազգականների հետ չափազանց թշնամացած էր, հերոսը սաստիկ կատաղեց։ Նա իրան կայսր հրատարակեց. արքունիքը անյաջող փորձ արաւ դաւաճան Արգիւրոսին գնել նրա դէմ։ Նա Հիդրուսում նաւ նստեց և 1043 թ. Փետրուարին ափ իջաւ Դիւրրախիոնում։ Բոլորը սպասում էին, որ հին via Egnatia ճանապարհով յառաջ խաղալով, տէրութեան նոր կայսր կդառնայ։ Սակայն նրա վախճանը Ցեզար Բորջիայի պէս էր. մի պատահական նետի սլաք

սպանեց Հզօրին և ոչնչացրեց նրա սկսուածքը։ Կոնստանդինը նորից ամուր նստեց իշխանական փտած գահի վրայ։

Յունաց Իտալական իշխանութիւնը շուտով վերջ ունեցաւ։ Նորմանների յառաջադիմութեան առաջը չկարողացան առնել ոչ արևմուտքի կայսրը և ոչ էլ պապը․ 1055 թ․ ընկաւ Հիւդրոսը (Otronto), 1060 թ․ ամուր Տրոյան։ Ռեգիոնի և Սկիւլակիոնի առումով վերջացաւ Կալաբրիայի տիրապետութիւնը։ Յուստինեանի յաղթութիւնների վերջին մնացորդը կորաւ Արևելահռոմի համար։ Նորմանների յաղթութիւնը, որոնք շուտով Սիկիլիայի էլ տէր դարձան, միաժամանակ Հին-Հռոմի յաջողութիւնն էր, որ այդպիսով կարողացաւ նորից իւր իրաւունքի սահմանը տարածել ամբողջ Իտալիայի վրայ, որ վաղուց սահմանափակուած էր։ Այդ պատահարների հետ միասին Հին և Նոր-Հռոմի մէջ տեղի ունեցաւ կատարեալ բաժանում։ Լևոն Թ պապը գիտէր իւր նպատակը և հըպարտ էր։ Իւր Նոր-Հռոմի պաշտօնակիցը՝ Միքայէլ Կեռուլարիոսը ոչնչով յետ չէր մնում նրանից։ Բայց հարկաւոր էր արևմուտքի ամբողջ սահմանափակութիւնը, որպէս զի Միքայէլ Կեռուլարիոսի թղթի մէջ վիրաւորանք նկատէր, մինչդեռ նա էր վիրաւորեալը։ Ամեն

մի ճշմարիտ օրթոդոքս պէտք էր այն հանգամանքի մէջ, երբ Հիւդրուսի, Հագիա Սեվերինէի, Ռոսանոյի և Ռեգիոնի մետրապոլիտութիւնները արդէն միացել էին Հին-Հռոմի հետ, որ Յունաց աչքում կիսահերձուածող էր ընդունւեր, որ շատ հոգիների փրկութիւնը վտանգուած է, ուստի Միքայէլը պարզօրէն կատարել է իւր բարձր հովուական պարտքը, երբ նա Լևոնի, Օխրիդայի ինքնիշխան եկեղեցու եպիսկոպոսապետի հետ, զգուշացրեց իտալական օրթոդոքսներին (butikoí) կասկածաւորների աղանդներից: Արևելեան եկեղեցու մի մեղմ բայց և յարգուած աստուածաբան՝ Անտիոքի Պետրոս պատրիարքը, Դոմինիկոսին Գրադոյի (կեղծ) պատրիարքին ուղղած թղթում նախատել է միայն Միքայէլի հրամանների և կարգադրութիւնների կրքոտութիւնը. էապէս միանգամայն նրա հետ համաձայն լինելով:

Կառավարութեան համար այդ կռիւը շատ անհաճելի էր. եթէ դեռ Իտալիան պիտի ազատուէր, պապը անհրաժեշտապէս կարևոր էր: Սակայն կառավարութիւնը թոյլ էր և ժողովրդի ազգասիրական, հակալատինական գիտակցութիւնը այնպիսի ոյժ էր որ հեշտութեամբ չէր կարելի ընկճել: Լևոն Թ-ը իրաւ է ամեն ինչ արել էր, որպէս զի իւր ներկա-

յայտուցչի վատ ընտրութեամբ կառավարութեան խաղաղասիրական ձգտումներին դէմ գնացած լինի: Հումբերտ կարդինալի կոպիտ և վիրաւորիչ ընթացքը բնականաբար պէտք է որ խորը խոցէր ամէն մի ազնիւ Յոյնի: Նոքա խիստ հանդիսաւոր կերպով միմեանց նզովում էին, և վերջ ի վերջոյ ամենից խելացին այն էր: Փոտիոսից գլուխ բերած Հերձուածի թէքով միացումը, որ կեղծ էր և կասկածելի, դադարեց. սկսեցին իրար ճանաչել իբրև բացարձակ, ակնիւ թշնամիներ:

Տէրութեան համար խիստ լուրջ էր Կոստանդինի ժամանակ Պեչենեգների վտանգը: Տուրակ (Տիրախ) խանը կատաղած Յոյների վրայ որ նրա ժողովրդի մի մասին Կեգէն ցեղապետի առաջնորդութեամբ ընդունել էին, դրոշակները ծածանեցրեց: Բայց հիմնովին ջարդ կրեց. և հնուց փորձուած վարչական սովորութեամբ Բիւզանդացիք գերիներին բնակեցրին Նիշի և Սարդիկէի ամայութիւններում. որ յետոյ իրենց դժբախտութեան պատճառ եղաւ: Նոր Գաղութի քրիստոնեաները (christianos) օգնութեան կանչեցին Դանուբի միւս ափում ապրող քաջերին (bravos): Երկուսը միացան, հրի և սրի մատնեցին ամբողջ Բուլղարիան մինչև Անդրիանուպոլսի դռները: Նոքա յաղթեցին և ոչնչացրին հռովմէական երեք զօրաբանակ:

*Միայն 1051 թ. կարողացաւ աւազակաբարոյ խուժանին դուրս վռնդել Թրակիայից և Մակեդոնիայից. Տիւրակը՝ վտանգի ենթարկուելով Պրեսլաւի մօտ իւր գլխաւոր բանակում, խնդրեց խաղաղութիւն բարբարոսին, յատուկ երկչոտութեամբ: Կոստանդինը արևելքում շարունակեց Բազիլէյոսի անմիտ քաղաքականութիւնը: Անիի Բագրատունիների մէջ Աշոտ Դ—ի մահով. Հայաստանում ծագել էին գահակալական սովորական կռիւները, և Միքայէլ Դ-ը վերջապէս կամեցաւ իւրացնել Հայաստանը: Բիւզանդական զօրքը պաշարեց հայկական մայրաքաղաքը. բայց Փափլագոնացու պատուհասը 1041 թ. ստիպեց նոցա յետ նահանջել: Հայոց մեծամեծները միացան և տասնեւթ տարեկան Գագիկին թագաւոր կարգեցին. նա և իւր զօրավար Գրիգոր Մագիստրոսը յաջողութեամբ կռւում էին Սելջուկների դէմ: Բայց հենց որ Կոստանդինը ամրացաւ գահի վրայ. միացրեց բոլոր հայկական մանր իշխանութիւնները: 1045 թ. Գագիկին կանչեցին մայրաքաղաք, և մի տարի յետոյ Յոյները առան Անին: Եթէ կային մարդիկ Հայաստանում, որոնք կարծում էին թէ Յունաց կառավարութիւնը զօրեղ պաշտպանութիւն ցոյց կտայ Հայոց քրիստոնէական կրօնին, հիմնովին զգացին իրենց սխալը: Մի*

խումբ Յոյն սովալլուկ հոգեւորականներ Հայոց հարուստ վիճակների եւ վանահայրութիւնների գլուխն անցան։ Ուղղափառ մոնոֆիզիտների կրօնական հալածանքներին վերջ չկար։ Պետրոս կաթողիկոսին (մեռաւ 1056 թ.) կանչեցին Կայսրաքաղաք. երբ սրա յաջորդը մեռաւ, արգելք դրուած նոր կաթողիկոսի ընտրութեանը։ Ութներորդ դարու բոլոր ծանր փորձերը առանց հետեւանք էին մնացել Յոյն եպիսկոպոսների համար, որոնք ոչինչ չէին սովորում եւ ոչինչ չէին ներում։ Բնորոշ է, որ դեռ Ռոմանոս Դիոգինէս չարաբախտութեան կայսրը իւր արշաւանքի ժամանակ երդուել էր վերադարձին ոչնչացնել հայկական հաւատը։ Հայոց վարդապետները նզովում էին առ Աստուած. թող նրան հիմնովին խորտակէ, ինչպէս Յուլիանին որին նզովել էր Ս. Բարսեղը։ Ահա Հայերի այս զգացուած ատելութիւնն է մեզ միջոց տալիս լուծելու Սելջուկների յաջողութեան խնդիրը. ատելութիւն, որի շարժառիթը եւ պատճառը յունական անհամբեր եկեղեցական վարչութիւնն էր։

Այդ փոքրիկ լեռնային պետութիւնները իւրացնելուց անմիջապէս յետոյ, յունական տէրութիւնը ստիպուած էր ուղղակի դիմադրելու Սելջուկների հարուածներին, որոն

*Տուղրուլ Բէգի առաջնորդութեամբ Ասիայում առաջնակարգ դեր էին գրաւել: Թուրանական չարչիական մինչ քաղաքականութիւնը, ինչպէս սովորաբար, խնայողութեան սխալ հաշիւ էր արել: Ծանր հարկեր էր բարդել նոր տիրած, լեռնային աղքատ գաւառների վրայ և արձակել էր 50,000 Հայ և Վրացի զինուորներ: Սակայն մեծ Բազիլեյոսը, Նրանով որ ամենաընտիր ամրութիւնների շարքով ամրացրել էր արևելեան սահմանը, փեր յիմար յաջորդներին ազատութիւն էր պարգևել: Վասպուրականի նէրս խուժող Թիւրքական հրոսակներին ջարդեցին 1048 Թ. Ստրագնայի մօտ; բայց Հռովմայեցոց Արզնը (Կարին-Թէոդոսուպօլիս), հարուստ վաճառաշահ քաղաքը, որ ամրացրած չէր, հրոսակները մոխիր դարձրին: Դրա մեծա-ար մասամբ հաւատարմութեց Նրանով որ յաղթութիւն տարան նոցա դէմ Կապետրոնի մօտ, Վրաց ազգի օգնութեամբ, որ ոտքի է կանգնել: Տուղրիլբէկի 1000 Թ. անձնական յարձակումը ի գերև ելաւ Մանազկերտի ամուր բերդի առաջ:*

*Կոնստանդինը արտակարգ բախտ ունէր: 1047 Թ. հայազգի Լևոն Թոռնիկի սարքած վտանգաւոր ապստամբութիւնն էր, որը հասել էր մինչև մայրաքաղաքի պատերի տակ, անյաջող անցաւ, և նա Զոէի մահից յետոյ էլ հանդար-*

տութեամբ կառավարեց մինչև իր մահուան օրը՝ 1054 թ.։ Նա մեծ հաճոյքով իշխանութիւնը կյանձնէր Մակեդոնիայում զօրքի հրամանատար Նիկեփորոս Բռուէննիոսին. բայց օրինականութեան պահանջը արթնացաւ։ Ժողովուրդը, սենատը և պահապան գունդը, ցնծութեամբ ողջունեցին՝ երբ պառաւ Թէոդորան, «Ծիրանածիններից վերջինը» իշխանութեան գաւազանը ձեռքն առաւ (1054-1056) և բըռնեց արտասովոր եռանդով։ Թէ նախկին կառավարութեան արբանեակները պատժուեցին աքսորով, հալածանքով և ստացուածքի գրաւումով, բիւզանդական գահակալութեան փոխուելու սովորական կարգերին էր պատկանում։ Միայն այդքանով չվերջացաւ պառաւի գործունէութիւնը, որը կարծես ժառանգել էր իր հօրեղբօր ամբողջ եռանդը։ Նա կասկածութեամբ վերաբերուեց դէպի զինուորական բարձր խորհուրդը՝ համաձայն այն ժամանակուայ գիւանների բնածին ուղղութիւններին, և եթէ արդար դատուէր ոչ առանց իրաւունքի, որովհետև նրա բարձր ազնուական անդամների համար կայսրութեան ձգտելը և հատատուելը, ուղղակի ժառանգական և մաղայի հիւանդութիւն էր դարձել։ Նա յետ կանչեց Սելջուկների դէմ գործող զօրքի հրամանատարը, չափազանց ընդունակ Իսահակ Կոմնենին,

և նրա տեղը կարգեց մի աւելի ճկուն պալատական։ Իւր մահուան ժամանակ (30 Օգոստոսի 1056 Թ.) կայսերական աստիճանը տուաւ ծեր զօրապետ և սենատոր Միքայէլ Ստրատիոտիկոսին (30 Օգոստոսի 1056-ից մինչև 1057 Թ. Օգոստոսի 31.)

Զօրքի ինքնագիտակցութեան համար այդ անտանելի էր։ Ժառանգական իշխանական տան հաւատարմութիւնը և սէրը, որից Զոէն և Թէոդորան այնպիսի շօշափելի ապացոյցներ էին ստացել, անհետացան մակեդոնիան հարստութեան վախճանով։ Ծագեց մի զօրեղ զինուորական յեղափոխութիւն։ Զօրականները, մեծ մասամբ փոքր Ասիայի կալուածատէրները, միացան ինչպէս Սեւերոսի կամ Աւրելեանի ժամանակ։ Առանձնակի զօրագնդերի ցնծալից ձայնակցութեամբ 1057 Թ. Յունիսի 8 կայսըր հրատարակեցին Իսահակ Կոմնենին սկիզբը Կաստամոնայում, յետոյ Գունարիայի դաշտում։ Իսկական Թագաւոր կարգողը Կատակալոնը, Անտիոքի պաշտօնազուրկ ստրատեգը, դրդեց Նիկոպոլսի գնդերին էլ միանալ, Իսահակը արշաւեց Նիկիայի վրայ, յաղթեց կայսերական գնդերը. Միքայէլը հրաժարուեց, և 1057 Սեպտեմբերի 2-ին Իսահակը օծուեց Ս. Սոփիայի եկեղեցում։

Այդ զինուորականների յաղթութիւնն էր

*Սենատի արիստոկրատիայի և քաղաքացիական բիւրոկրատիայի դէմ։ Ուստի կայսեր առաջին ընդունելութիւնը անջնջելի տպաւորութիւն թողեց բոլոր մասնակցողների վրայ։ Սենատորները կանգնած էին և նայում էին դէպի գետին։ Կայսրը միայն ամենահարկաւոր բաները խօսեց, և իւր կամքը զգալ տուեց համարեա թէ միայն գլխի և ձեռքի շարժումով, և խօսելը թողեց իւր քարտուղարներին։ Այդ սկսուածքին համաձայն էր կառավարութեան ընթացքը։ Իսահակը ցոյց տուեց արտասովոր եռանդ։ Որպէս երկարամեայ զօրքի գլուխ՝ շատ լաւ կերպով էր զգացել իւր գլխաւորների հետ Բազիլեյոսի մահից յետոյ քայքայուած անտեսական խառնակ վիճակը։ Նա Վեսպասիանի նման չվախեցաւ ատելի դառնալուց եթէ միայն կարողանար ուղղել անտեսական դրութիւնը։ Նա ոչնչացրեց պալատականների և ուսումնականների նշանակած անպաշտօն ռոճիկները և կարճեց քահանաների մեծ բանակը։ Հիմնական փոփոխութիւն մտցրեց տընտեսութեան մէջ։ Թէ նա ինչքան աննշան ուշադրութիւն էր դարձնում պետական խորհրդի ակնյայտնի ընդդիմադրութեանը, երեւում է նրանից, որ պաշտօնազուրկ արեց Միքայէլ Կեռուլարիոսին, որի հոգևորական ոտնձգութիւնները անտանելի էին։ Ընկերեցաւ*

այս պետը իր պապական բարձրաստիճանութեամբ օրթոդոքս եկեղեցու մէջ իր նման միայն մէկին ունէր, Մոսկուայի պատրիարք Նիկոնին՝ Իսահակը Բիւզանդիայում և Ալեքսէյը Ռուսաստանում հէնց ծնունդի մէջ խեղդեցին սկսող պապականութիւնը։

Ծերունի Իսահակը, որ 1059 թ. Պեչենեգների և մաճառական ասպատակախմբերի դէմ յաջող արշաւանքից յետոյ հիւանդութիւնից ուժեղ էր թուլացել, այլևս համապատասխան չէր կայսրութեան ծանրութեանը։ Նրան աւելի էր թուլացնում Բիւրոկրատիայի լուռ և կրաւորական ընդդիմութիւնը։ «Աստուած» սովորել էին ասելու, «վեց օր ժամանակ է գործածել աշխարհը ստեղծելու, իսկ այս մարդը կամենում է ամէն բան մի օրում լինել»։ Արևելահռովմի կայսր դառնալը այլևս զուարճութիւն չէր, այլ ճակատագրական պաշտօն։ Ինչպէս երրորդ դարում Հռովմում, նոյնպէս այստեղ էլ արժանաւորները կայսեր թագը համարում էին պարտաւորութիւն և վիճակ։ Յոգնած ծերը հրաժարուեց և մտաւ Ստուդիոն վանքը։ Իշխանութիւնը յանձնեց իր ընկեր և մինիստր Կոնստանդին Դ. Դուկասին (1059—1067), որ տնտեսական գործերում մի հանճար էր և երկրորդական պաշտօններում փայլուն յա-

ջողութիւն էր ունենալու։ Ակնյայտնի է որ Իսաահակը նրան ընտրել է առաջնորդուած բարոյական հիմունքներով, որովհետև հաւատացած էր թէ այդպիսով տէրութեան մեծ բարիք արած կլինի և գահից զրկեց իւր շափազանց ընդունակ Ցովհաննէս եղբօրը և նրա դեռ էլ աւելի ընդունակ որդիներին։ Սակայն երևաց որ այդ ընտրութիւնը մեծ սխալ էր։

Կոստանդին Ժ-ով սկսւում է Դուկասների գահը, այն է բիւրոկրատիայի, հռետորների և ուսումնականների[1] իշխանութեան ամենադժբախտ շրջանը։ Արդէն միանգամ Մարկոս Աւրելիոսի ժամանակ տէրութեան համար կործանարար հետևանք էր ունեցել Պղատոնի Politeia-յի (պետութեան) գաղափարի փիլիսոփաների գաղափարական իշխանութեան իրագործումը։ Դուկասը սաստիկ բազմացրեց Սենատի արիստոկրատների թիւը, նոցա շարքում ընդունելով բազմաթիւ ժողովրդական տարրեր արհեստաւորներից և բարբարոսներից։ Հին սենատորները, որոնց ազնուականութիւնը իրաւ է խիստ կասկածելի է

[1] Այս շրջանի մասին համեմատիր Կ. Նեումանի գրքի՝ աշխարհաքաղաքական Բիւզանդական կայսրութեան պատմական դիրքը, խաչակրաց արշաւանքներից առաջ C. Neumann. Die Weltstellung des byz. Reiches vor den Kreuzzügen. eipzig 1894.

և մի օր առաջ սկսուած, այդ չափի վայ, կատաղութեամբ էին նայում. բայց կարող էին գոնէ նկատով մխիթարուել, որ ժողովրդական սենատորների կուսակցութիւնը բոլորովին իր ձեռքն առաւ պետական հարկերը։ Բիւրոկրատները կառավարում էին, առաջի խօսքը պատկանում էր նրա և մերից պաշտօնեաներին։ Դա մի տեսակ փոխարինութիւն էր քաղաքացիական վարչութեանը՝ զինուորականութեան դէմ, մայրաքաղաքի գաւառական ազնուականութեան դէմ գործին. այդ վարում էր զինուորական բարձր պաշտօնները և Իսահակին կայսր հաստատելու ժամանակ, նորից արտայայտել էր իր արիստոկրատական ոգին։ Որոշուած էր ընդ միշտ այդ զինուորական գահակալական ձգտման առաջն առնել։ Եւ այդպէս վարուեցին նրանով, որ կարճեցին զինուորական բիւջէն և զօրքը արձակեցին։ Կայսրը և մինիստրները վախեցած հետ մղում էին, որպէս մի գլուխ բերեն սենատի նոր կուսակցութեան հակազինուորական գաղափարը։ Ամեն տեղ քշացնում էին զօրքի գլխաւորմասը, կարճում վարձը, առանց լրացնելու թողնում զէնքի և պատերազմական մթերքների պաշարը և չէին ամրացնում սահմանի ամրութիւնների քանդուած մասերը։ Մի խօսքով այն ժամանակուայ Կոստանդնուպոլսին-

պակասում էր միայն ժողովրդից ընտրած [illegible] (պետական խորհուրդ), որպէս զի կատարեալ լինէր՝ գերազանց եղանակով այս օրուայ սահմանադրական պետութեանց ամբողջ դժբախտութիւնը։

Վարչութեանը համապատասխան էր կառավարութիւնը։ Արեւելեան ճգնաժամի մէջ երեւաց թուլութիւնը։ Եւ հէնց արեւելքում էր անհրաժեշտ կարիք, մի զինուորականի զօրեղ ձեռք։ Որովհետեւ այնտեղ նոր հզօր կեանք էր սկսուել Սելջուկների մէջ, սկսած այն օրից երբ մեծ Տուղրիլ բէկի մահից յետոյ 1065 թ. Նրա որդին, որ մինչ այդ Խորասանի կուսակալ էր, Ալփ-Ասլանը կառավարութեան ղեկն առաւ։ Նա ուղղահաւատ սուննաների առաջնամարտիկն էր, եւ միաժամանակ իւր բոլոր թրքական վայրագութեան հետ, քաջայանդուգն եւ ասպետ անձ էր. իւր հեծելազօրքի աստուածը, եւ կատաղի թշնամի հռովմէական պետութեանը, որ կառավարւում էր թուլամորթ բիւրոկրատների եւ գեղեցկախօս հռետորների ձեռքով։ Նրա յարձակումը Հայաստանի վրայ նշան էր այն տեղի բարձր քաղաքակրթութեան մեռնելուն։ Սելջուկների սուլթանի պատերազմական ճանապարհը իւր ուղղութեամբ թողնում էր միայն սակալի ծրագրուած աւեր եւ ամայութիւն։ Այժմ

*համաձայն տաճկասիրական հոսանքին, խօսում են «Սելջուկների խիստ զարգացած քաղաքակրթութեան հրաշալի մնացորդների մասին», որովհետեւ Ռումի Սուլթանը Ալաէդդին Կեյկոբադ Ա. (1220—1236) իսկապէս փառաւոր շինութիւններ ունի։ Միայն մոռանում են ի հարկէ այն փոքր հանգամանքը որ բոլոր այդ Սելջուկեան փառահեղութիւնները ոչ թէ ինքնուրոյն, այլ պարսկական և բիւզանդական փոխառութիւններ են։ Ուղղակի նոյնպիսի իրաւունքով կարող ենք Պիւքսոսի թագաւորներին, որոնք Տանիսում որոշ գեղարուեստական գործեր են թողել Եգիպտականի հետեւողութեամբ և փոխառնութեամբ, համարել Նեղոսի հովտի ճշմարիտ քաղաքակրթութեան տարածողներ։*

*Ալփ-Ասլանը կառավարութեան գլուխն անցնելուց անմիջապէս յետոյ անհամար զօրք ժողովեց և արշաւեց դէպի Հայաստան։ Երբ նա արեւելքից ներս խուժեց, Աղուանքի և Վրաստանի թագաւորները սարսափած անձնատուր եղան։ Այն ժամանակ նա արշաւեց թագաւորական անառիկ Անի ամրոցի վրայ։ Ասիական բարբարոսները իսկապէս սովոր չեն եղել քաղաքներ պաշարել. սակայն անօրինակ զօրութեամբ տաճիկ հրոսակները դիմացան պարիսպների առաջ։ Կենդրոնական կառավա-*

*րութիւնը փող և զօրք չունենալով, չուղարկեց օգնական գնդեր և այսպիսով 6 Յուլիսի 1064 թ. Հռչակաւոր քաղաքը բարբարոսների աւար դարձաւ։ Միաժամանակ նոցա հեծելազօր գնդերը կողոպտելով, այրելով և յափշտակելով տարածուեցին մինչև Եփրատի նահանգները, Կարսի փոքրիկ իշխանը զգալով իւր թուլութիւնը, ժողովրդական այդ աշխեղ հոսանքի առաջ, իւր տէրութիւնը տուեց Յոյներին և փոխարէնը ստացաւ Կամենդավ քաղաքը կիլիկիական Տաւրոսի երկրում, որ պէտք էր շուտով Հայ ազգի համար երկրորդ հայրենիք դառնալ։ Փոփոխութիւնը լաւ էր, որովհետև Կարսը շուտով ընկաւ թուրքերի ձեռքը։*

*Ինչպէս Ասիայում, Եւրոպայում էլ կառավարութեան քաղաքականութիւնը զօրեղ չէր։ 1064 թ. Մաճառները առան Դանուբեան նշանաւոր Բելգրադ ամրոցը։ Հետևեալ տարին Պեչենեգներից սպառնացող վտանգին փոխարինեց Կոմանների սարսափը։ Ուզերը (Օղուզները, որոնց Ռուսները անուանում էին Պոլովցի, Յոյները Կոմաններ), որ նմանապէս ցեղակից, ձիահարուստ տաճկական հրոսակներ էին, ապրում էին թաղիքէ վրաններում կերակրւում մատակների կաթով և ձիու մսով, հագնում ոչխարի մորթի, զի-*

նուած ըստ սովորութեան աղեղով և նետա-
րով, հետևելով իրենց բազմաթիւ եղբայրների
օրինակին, բռնել էին արևմուտքի ճանապար-
հը, Պեչենեգներին նոքա քշեցին Դնեստրի
ափերից Վալախիա։ 1065 թ. նոցանից 60,000
հոգի անցան Դանուբը։ Ի զուր փորձեցին
Բազիլեյոս Ապոկապէս և Նիկոփորոս Բոտա-
նիատէս հռովմէական զօրավարները, ընդդի-
մանալ նոցա։ Քաղաքացիական վարչութեան
շնորհիւ, չունէին բաւականաչափ զինուորներ։
Մի հրոսակախումբ հասաւ մինչև Թեսաղո-
նիկէ։ Վարակիչ հիւանդութիւնները և երկրի
բնիկ ժողովրդի կատաղութիւնը ոչնչացրին
նոցա։ Գլխաւոր ոյժը՝ ճնշուելով Հեմուսի վրայ,
ոչնչացումը հռովմէական խղճալի կառավարու-
թեան արժանիքը չէր, այլ բուլղարական
ընտիր զինուորների և վրէժխնդրութեամբ լցը-
ուած Պեչենեգների արարքը, որոնք մոլթո-
տում էին սաստիկ անգթաբար։ Մնացորդը
գթութիւն հայցեց և Մակեդոնիայում բը-
նակութեան տեղ ստացաւ։

Համաձայն հակազինուորական գեղեցկա-
մոլութեան և ուսումնականութեան փայփա-
յելու ախտին, ծերացած կայսրը ամուսնացաւ
երկրորդ անգամ։ Եւդոկիա Մակրեմ Բոլի-
տիսան, որ մի գեղեցիկ և գրասէր տիկին էր,
նրանից վեց զաւակների մայր դարձաւ։ Բայց

*այդ Դուկասը առաջի ամուսնութիւնից ունէր երեք որդի, որոնք արդէն ապահովութեան համար օծուել էին։ Մեռնող կայսրը, մտածելով միայն իւր տան համար Թագը ապահովելու փափագով, փորձեց կայսրուհուն և սենատին պարտաւորեցնել գրաւոր խոստումներով և երդումներով — Բիւզանդացիների մօտ անվստահելի միջոցներ —։ Եւդոկիան, թէև ապրում էր միանգամայն ուսումնական իմաստակների մթնոլորտում, որտեղ ուղղութիւն էր տալիս զզուելի շատախօս Պսելլոս փիլիսոփան և ճոռոմաբանը, ապացուցեց, որ ամենահիմնական ճարտասանական անմիտ կրթութիւնն էլ չէ կարող մի խելացի կնոջ միտքը միանգամայն փչացնել։ Նա ճանաչեց այն վտանգը, որ հասել էր տէրութեանը նոր ուղղութեան շնորհիւ։ Միայն աւանդական զինուորականութիւնն էր կարող տէրութիւնը փրկել Սելջուկների վտանգից։ Նա լսեց ժողովրդի ձայնին, որ պահանջում էր նորից ամուսնանալ մի քաջ զինուորականի հետ. միայն դրանով կարելի էր ընդհանրութեան այնքան վնասակար Բիւրոկրատիայի առաջն առնել։ Իրաւ է նա սխալ գործեց ամուսին ընտրելիս։ Ռոմանոս Դիոգենէսը՝ Սրեդեցիայի* (Sredec) *հրամանատարը, այն Կոնստանդին Դիոգէնեսի որդին էր, որ իբր թէ երբեմն փորձել էր*

Սելճուկներին ապստամբեցնել Ռոմանոս կայսեր դէմ։ Նրա դեռ երեսնամեայ որդին էր, որ Տորքի նման հսկայ էր, տաքարիւն և համարեա խելացնոր փառասիրութեամբ, կասկածոտ Բիւրոկրատիան նոյն մեղադրանքներով դատապարտեց, սակայն դարձեալ անիրաւացի։ Եւդոկեան, որ արդէն քառասունն անցել էր, բայց վայելչագեղ էր և աշխոյժ բնաւորութեամբ, հաճելի էր տեսնել չափազանց գեղեցիկ Ռոմանոսին որ որոշեց տիրել նրան՝ Հարաւի կնոջ յատուկ կրակոտութեամբ։ Բայց նրա գրաւոր խոստումը չամուսնանալ երկրորդ անգամ, գտնւում էր սրբազնասուրբ Յովհաննէս Քսիփիլինոսի ձեռին։ Կանացի խորամանկութիւնը լաւ հասկացաւ պատրիարքի թոյլ կողմը։ Ձևանալով թէ մտադիր է նրա բարեկամներից մէկի հետ ամուսնանալ՝ ձեռք բերեց այդ կասկածաւոր թուղթը և զարմացրեց մայրաքաղաքը 1067 թ. Դեկտեմբերին ամուսնանալով Ռոմանոսի հետ։ Դա զինուորական կուսակցութեան յաղթանակն էր. այդ եղանակով խաբուած Բիւրոկրատիայի կառավարութիւնը արտայայտուեց իւր գլխաւորների ծածուկ և յայտնի ընդդիմութեամբ, դոքա էին կայսեր եղբայր՝ Յովհաննէս Դուկաս կեսարը, որը իւր երկու որդիների հետ Սենատի մէջ զօրեղ կուսակցութիւն ունէր, բարեկա-

ցած պատրիարքը և ամենից առաջ Թիւնալից Պսելլոս ճարտասանը։ Դրա վրայ աւելացաւ և այն որ Դուկասից փայփայած Պրետորեան-ները՝ Վարեագները, նախկին արքունիքի կողմն անցան, հէնց միայն նրա համար որ Ռոմանոսը սիրուած էր ազգային զօրքից։ Միայն մի արտաքին փառաւոր յաղթութիւն կարող էր զինուորական կայսեր տալ հարկաւոր գիրքը։

Անհրաժեշտ էր զօրեղ գործով դէմ դընել Սելջուկներին, որ փոքր Ասիայի և Ասորիքի նահանգների մշտական պատուհասն էին դարձել։ Ռոմանոսի քաջութիւնը և զօրապետական հմտութիւնը յոյս էին տալիս, որ տէրութեան համար դուրս է եկել մի նոր Լևոն Իսաւրացի կամ Կոնստանդին։ Դժբախտաբար նրա մոլեգնութիւնն ու դէպի թշնամին ունեցած արհամարհանքը նրան կործանեցին։ Բիւրոկրատիայի երկարատև վատ կառավարութիւնը ոչնչացրել էր զօրքի մէջ կարգը. աննպատակ տնտեսութիւնն էլ չէր լցրել տէրութեան գանձարանը։ Վարձկան զօրքերի այլատարազութիւնը, որոնց հրամանատարները մեծաւ մասամբ լինելով ցեղից սպաներ էին, դժուար և անապահով էր դարձնում ընդհանուր հրամանատարութիւնը և գործողութեան միատեսակութիւնը։ Չնայած դրան 1068 թ.

արշաւանքը միանգամայն յաջող անցաւ. որով լաւ պատժեցին թէ Հալէպի մուսուլմաններին և թէ խիստ հարուած տալով յետ մղեցին Սելջուկների աւազակային գնդերը՝ որ կողոպտում էին Պոնտոսի շրջակայքը։

1069. վայրենի աւազակները նորից հեղեղեցին Կապպադովկեան, որը կրեց վանդալական աւերումների և կոտորածների բոլոր սարսափները։ Թաթարական թեթև ձիաւորների առաջ անզօր էր բիւզանդացոց ծանր սպառազինութիւնը, ինչպէս երբեմն Կրասոսի լեգէոնները պարթևական զրահաւորուած ձիաւորների և նետաձիգների առաջ։ Բայց կայսերը վերջ ի վերջոյ կարողացաւ աւազակային հրոսակներին Եփրատից հեռուն քշել. սակայն երբ նա յանդուգն արշաւանքով, նախկին չորրորդ Հայքով կամենում էր անապատելի գրաւել Խլաթը, Վանայ լճի ամրոցը, լսեց որ իւր զօրապետը՝ Փիլարետը Կապպադովկիայում ջարդ է կրել։ Սելջուկները կողոպտեցին մինչև Իկոնիա։ Կայսրից փախան նոքա, որ կամենում էր նոցա դարձի ճանապարհը կտրել, զոհ տալով հաւաքած աւարը։

Իտալիայի երկրի տարատամ վիճակը ստիպեցին կայսեր 1070 թ. վերադառնալ մայրաքաղաք։ 1068 թ. ընկել էր Հիւդրոնտը (Otronto) և պաշարման մէջ էր ամուր Բարին, Յունաց

գլխաւոր զինարանը Ապուլեան հողի վրայ։ Հերոսական ընդդիմութիւնից յետոյ պահապան գունդը անձնատուր եղաւ 16 Ապրիլի 1071 Թ։ Դրանով վերջացաւ Յունաց տէրութիւնը Իտալիայում։ Եւ 1073 Թ. Ամալֆիտանները էլ մտան Ռոբերտ Գիսկարդի իշխանութեան տակ։ Այլ եւս չէր կարելի այդ տեղի պատուհասի առաջն առնել. բայց արևելքում դրութիւնը աւելի սուր կերպարանք ստացաւ։ Մանուէլ Կոմնենը, Իսահակ կայսեր եղբօր որդին, որը Ռոմանոսի բացակայութեան ժամանակ ընդհանուր հրամանատար էր, Թաթարներից լաւ ջարդ էր կրել, ինքն էլ գերի ընկնել։ Խոնաէն, որին ս. Միքայելը այնքան անգամ շնորհել էր իր հրաշագործ օգնութիւնը, այս անգամ ընկաւ Թաթարների ձեռքը։ Հրեշտակապետի սրբավայրը պղծեցին և կողոպտեցին։ Յետոյ Ալփ—Ասլանը հայկական արևելքում պաշարմամբ առաւ Մանազկերտ խիստ նշանաւոր քաղաքը։ Այն ժամանակ կայսրը լարեց իր բոլոր ուժերը։ 100,000 մարդուց բաղկացած զօրքի գլուխն անցած, անձամբ դուրս եկաւ Քրիստոսի Թաթարական թշնամու դէմ։ Մի զօրաբաժինը, որ բաղկացած էր գլխաւորապէս Ուզերից և արևմտեան վստահելի վարձկաններից՝ Փրանսիացի Ուրսել Բայլէյլի առաջնորդութեամբ գտնւում էր

Խլաթը, գլխաւոր զօրքը կայսեր առաջնորդութեամբ յետ առաւ Մանազկերտը: Սակայն ձիաւորների կռիւների ժամանակ երևաց Ալփ-Ասլանի պատերազմներում փորձուած գնդերի գերազանցութիւնը: Կայսրը ի զուր կանչեց Խլաթի դէմ ուղարկած գունդը. Թաթարները նոցա յետ էին քշել դէպի Միջագետք: Ալփ-Ասլանը զգալով որ ինքը առաջ կանգնած է արժանաւոր մրցակից. առաջարկեց խաղաղութիւն հաստատել: Ռոմանոսը յիմարաբար հըպարտութեամբ մերժեց այդ: Տեղի ունեցաւ զարհուրելի ճակատ: Զարանչան նախագուշակութիւններ սարսափեցրին կայսեր զօրքը, որ նա շտապով ամենակարճ ժամանակում ի միասին էր հաւաքել և ամէն խիստ կարգապահութեամբ էլ չէր կարողացել կանոնաւորել: Սպաների և զինուորների դաւաճանութիւնը և մատնութիւնը սեպհական բանակում թուլացրեց բոլորի եռանդը: Չնայած դրան առաջին օրը Երկու կողմն էլ հերոսաբար կռուեցին առանց որոշման: Սակայն երբ երկրորդ օրը Անդրոնիկոս Դուկաս իշխանը դաւաճանութեամբ իւր գնդով յետ խաղաց. սարսափը տիրեց զօրքին: Ուրիշ զօրապետներ էլ հետևեցին Անդրոնիկոսին իրենց վստահացած զօրագնդերով: Թաթարական հեծելազօրը վայրենի սաստկութեամբ յաղթելով. անարգել առաջ անցաւ:

ութիւնը փող և զօրք չունենալով՝ չուղարկեց օգնական գնդեր և այդպիսով 6 Յուլիսի 1064 թ. հրաշալի քաղաքը բարբարոսների աւար դարձաւ։ Միաժամանակ նոցա հեծելազօր գնդերը կողոպտելով, այրելով և յափշտակելով տարածուեցին մինչև Եփրատի նահանգները, Կարսի փոքրիկ իշխանը զգալով իւր թուլութիւնը, ժողովրդական այդ ահեղ հոսանքի առաջ, իւր տէրութիւնը տուեց Յոյներին և փոխարէնը ստացաւ Ծամնդավ քաղաքը կիլիկիական Տաւրոսի երկրումն որ պէտք էր շուտով Հայ ազգի համար երկրորդ հայրենիք դառնար։ Փոփոխութիւնը լաւ էր, որովհետև Կարսը շուտով ընկաւ Թուրքերի ձեռքը։

Ինչպէս Ասիայում, Եւրոպայում էլ կառավարութեան քաղաքականութիւնը զօրեղ չէր։ 1064 թ. Մաճառները առան Դանուբեան նշանաւոր Բելգրադ ամրոցը։ Հետևեալ տարին Պեչենեգներից սպառնացող վտանգին փոխարինեց Կոմանների սարսափը։ Ուզերը (Օղուզները), որոնց Ռուսները անուանում են Պոլովցի, Յոյները Կոմաններ), որ նմանապէս ցեղակոյտ, ձիահարուստ տաճկական հրոսակներ էին, ապրում էին թաղիքէ վրաններում կերակրւում մատակների կաթով և ձիու մսով, հագնում ոչխարի մորթի, գի-

նուած ըստ սովորութեան աղեղով և նետա-լով, հետևելով իրենց բազմաթիւ եղբայրների օրինակին, բռնել էին արևմուտքի ճանապարհը, Պեչենեգներին նոքա քշեցին Դնեստրի ափերից Վալախիա։ 1065 թ. նոցանից 60,000 հոգի անցան Դանուբը։ Ի զուր փորձեցին Բազիլեյոս Ապոկապէս և Նիկոփորոս Բոտանիատէս՝ հռովմէական զօրավարները, ընդդիմանալ նոցա։ Քաղաքացիական վարչութեան շնորհիւ, չունէին բաւականաչափ զինուորներ։ Մի հրոսակախումբ հասաւ մինչև Թեսաղոնիկէ։ Վարակիչ հիւանդութիւնները և երկրի բնիկ ժողովրդի կատաղութիւնը ոչնչացրին նոցա։ Գլխաւոր ոյժը ճնշելով Հեմուսի վրայ, ոչնչացումը հռովմէական խղճալի կառավարութեան արժանիքը չէր, այլ բուլղարական ընտիր զինուորների և վրէժխնդրութեամբ լցըուած Պեչենեգների արարքը, որոնք մոլթոտուած էին սաստիկ անգթաբար։ Մնացորդը գթութիւն հայցեց և Մակեդոնիայում բընակութեան տեղ ստացաւ։

Համաձայն հակազինուորական գեղեցկամոլութեան և ուսումնականութեան փայփայելու ախտին, ծերացած կայսրը ամուսնացաւ երկրորդ անգամ։ Եւդոկիա Մակրեմ Բոլիտիսան, որ մի գեղեցիկ և դրաւէր տիկին էր, նրանից վեց զաւակների մայր դարձաւ։ Բայցի

*այդ Դուկասը առաջի ամուսնութիւնից ունէր երեք որդի, որոնք արդէն ապահովութեան համար օծուել էին։ Մեռնող կայսրը, մտածելով միայն իւր տան համար թագը ապահովելու փափագով, փորձեց կայսրուհուն և սենատին պարտաւորեցնել գլխաւոր խոստումներով և երդումներով—Բիւզանդացիների մօտ անվստահելի միջոցներ—։ Եւդոկիան, թէև ապրում էր միանգամայն ուսումնական իմաստակների մթնոլորտում, որտեղ ուղղութիւն էր տալիս զգալի շատախօս Պսելլոս փիլիսոփան և ճոռոմաբանը, ապացուցեց, որ ամենահիմնական ճարտասանական անմիտ կրթութիւնն էլ չէ կարող մի խելացի կնոջ միտքը միանգամայն փչացնել։ Նա ճանաչեց այն վնասը, որ հասել էր տէրութեանը նոր ուղղութեան շնորհիւ։ Միայն աւանդական զինուորականութիւնն էր կարող տէրութիւնը փրկել Սելջուկների վտանգից։ Նա լսեց ժողովրդի ձայնին, որ պահանջում էր նորից ամուսնանալ մի քաջ զինուորականի հետ. միայն դրանով կարելի էր ընդհանրութեան այնքան վնասակար Բիւրոկրատիայի առաջն առնել։ Իրաւ է նա սխալ գործեց ամուսին ընտրելիս։ Ռոմանոս Դիոգենէսը՝ Սրեդեցիայի* (Sredec) *հրամանատարը, այն Կոնստանդին Դիոգէնեսի որդին էր, որ իբր թէ երբեմն փորձել էր*

*Սլաւոններին ապստամբեցնել Ռոմանոս կայսեր դէմ։ Սրա դեռ երեսնամեայ որդուն էր, որ Տորքի նման հսկայ էր, տաքարիւն և համարեա խելացնոր փառամոլութեամբ, կասկածոտ Բիւրոկրատիան նոյն մեղադրանքներով դատապարտեց, սակայն դարձեալ անիրաւաբար։ Նուգոկեան, որ արդէն քառասունն անցել էր, բայց վայելչագեղ էր և աշխոյժ բնաւորութեամբ, հազիւ էր տեսել չափազանց գեղեցիկ Ռոմանոսին որ որոշեց տիրել նրան՝ Հայուհի կնոջ յատուկ կրակոտութեամբ։ Բայց նրա գրաւոր խոստումը չամուսնանալ երկրորդ անգամ, գտնւում էր սրբազնասուրբ Յովհաննէս Քսիփիլինոսի ձեռին։ Կանացի խորամանկութիւնը լաւ հասկացաւ պատրիարքի թոյլ կողմը։ Ձեւանալով թէ մտադիր է նրա բարեկամներից մէկի հետ ամուսնանալ՝ ձեռք բերեց այդ կասկածաւոր թուղթը և զարմացրեց մայրաքաղաքը 1067 թ. Դեկտեմբերին ամուսնանալով Ռոմանոսի հետ։ Դա զինուորական կուսակցութեան յաղթանակն էր. այդ եղանակով խափանւած Բիւրոկրատիայի կառավարութիւնը արտայայտուեց իւր գլխաւորների ծածուկ և յայտնի ընդդիմութեամբ, դուքա էրին կայսեր եղբայր՝ Յովհաննէս Դուկաս կեսարը, որը իւր երկու որդիների հետ Սենատի մէջ զօրեղ կուսակցութիւն ունէր, բարկա-*

ցած պատրիարքը և ամենից առաջ Թունալից Պսելլոս ճարտասանը։ Դրա վրայ աւելացաւ և այն որ Դուկասից փայփայած Պրետորեանները՝ Վարեագները, նախկին արքունիքի կողմն անցան, հէնց միայն նրա համար որ Ռոմանոսը սիրուած էր ազգային զօրքից։ Միայն մի արտաքին փառաւոր յաղթութիւն կարող էր զինուորական կայսեր տալ հարկաւոր դիրքը։

Անհրաժեշտ էր զօրեղ գործով դէմ դընել Սելջուկներին, որ փոքր Ասիայի և Ասորիքի նահանգների մշտական պատուհաս էին դարձել։ Ռոմանոսի քաջութիւնը և զօրապետական հմտութիւնը յոյս էին տալիս, որ տէրութեան համար դուրս է եկել մի նոր Լևոն Իսաւրացի կամ Կոնստանդին։ Դժբախտաբար նրա մոլեգնութիւնն ու դէպի թշնամին ունեցած արհամարհանքը նրան կործանեցին։ Բիւրոկրատիայի երկարատև վատ կառավարութիւնը ոչնչացրել էր զօրքի մէջ կարգը. աննպատակ տնտեսութիւնն էլ չէր լցրել տէրութեան գանձարանը։ Վարձկան զօրքերի այլատարազութիւնը, որոնց հրամանատարները մեծաւ մասամբ իրենց ցեղից սպաներ էին, դժուար և անապահով էր դարձնում ընդհանուր հրամանատարութիւնը և գործողութեան միատեսակութիւնը։ Չնայած, դրան 1068 թ.

արշաւանքը միանգամայն յաջող անցաւ. որով լաւ պատժեցին թէ Հալէպի մուսուլմաններին և թէ խիստ հարուած տալով յետ մղեցին Սելջուկների աւազակային գնդերը՝ որ կողոպտում էին Պոնտոսի շրջակայքը։

1069. վայրենի աւազակները նորից հեղեղեցին Կապպադովկեան, որը կրեց վանդալական աւերումների և կոտորածների բոլոր սարսափները։ Թաթարական թեթև ձիաւորների առաջ անզօր էր բիւզանդացոց ծանր սպառազինութիւնը, ինչպէս երբեմն Կրասոսի լեգէոնները պարթևական գլխահաւորուած ձիաւորների և նետաձիգների առաջ։ Բայց կայսրը վերջ ի վերջոյ կարողացաւ աւազակային հրոսակներին Եփրատից հեռուն քշել. սակայն երբ նա յանդուգն արշաւանքով, նախկին չորրորդ Հայքով կամենում էր անսպասելի գրաւել Խլաթը, Վանայ լճի ամրոցը, լսեց որ իւր զօրապետը՝ Փիլարետը Կապպադովկիայում ջարդ է կրել։ Սելջուկները կողոպտեցին մինչև Իկոնիա։ Կայսրից փախան նոքա, որ կամենում էր նոցա դարձի ճանապարհը կտրել, զոհ տալով հաւաքած աւարը։

Իտալիայի երկրի տարատամ վիճակը ստիպեցին կայսեր 1070 թ. վերադառնալ մայրաքաղաք։ 1068 թ. ընկել էր Հիւդրոսը (Otronto) և պաշարման մէջ էր ամուր Բարին, Յունաց

գլխաւոր զինարանը Ապուլեան հողի վրայ։ Հե-
րոսական ընդդիմութիւնից յետոյ պաշտպան
գունդը անձնատուր եղաւ 16 Ապրիլի 1071 Թ։
Դրանով վերջացաւ Յունաց տէրութիւնը Իտա-
լիայում։ Եւ 1073 Թ. Ամալֆիտաններն էլ
մտան Ռոբերտ Գիսկարդի իշխանութեան
տակ։ Այլ եւս չէր կարելի այդ տեղի պատուհա-
սի առաջն առնել. բայց արեւելքում դրութիւնը
աւելի սուր կերպարանք ստացաւ։ Մանուէլ
Կոմնենը, Իսահակ կայսեր եղբօր որդին, որը
Ռոմանոսի բացակայութեան ժամանակ ընդ-
հանուր հրամանատար էր, Թաթարներից լաւ-
ջարդ էր կրել, ինքն էլ գերի բռնուել։ Խո-
նաէն, որին Ս. Միքայէլը այնքան անգամ
շնորհել էր իւր հրաշագործ օգնութիւնը,
այս անգամ ընկաւ Թաթարների ձեռքը։ Հրեշ-
տակապետի սրբավայրը պղծեցին եւ կողոպտե-
ցին։ Ցեռոյ Ալփ—Ասլանը հայկական արեւել-
քում պաշարմամբ առաւ Մանազկերտ խիստ
նշանաւոր քաղաքը։ Այն ժամանակ կայսրը
լարեց իւր բոլոր ոյժերը։ 100,000 մարդուց
բաղկացած զօրքի գլուխն անցած, անձամբ
դուրս եկաւ Քրիստոսի Թաթարական Թշնա-
մու դէմ։ Մի զօրաբաժինը, որ բաղկացած
էր գլխաւորապէս Ուզերից եւ արեւմտեան
վստահելի վարձկաններից, Փրանսիացի Ռուսել
Բայլէյլի առաջնորդութեամբ գնացել էր։

Խլաթը, գլխաւոր զօրքը կայսեր առաջնորդութեամբ յետ առաւ Մանազկերտը։ Սակայն ձիաւորների կռիւների ժամանակ երևաց Ալփ-Ասլանի պատերազմներում փորձուած գնդերի գերազանցութիւնը։ Կայսրը ի զուր կանչեց Խլաթի դէմ ուղարկած գունդը. Թաթարները նոցա յետ էին քշել դէպի Միջագետք։ Ալփ-Ասլանը զգալով որ իր առաջ կանգնած է արժանաւոր մրցակից, առաջարկեց խաղաղութիւն հաստատել։ Ռոմանոսը յիմարաբար հըպարտութեամբ մերժեց այդ։ Տեղի ունեցաւ զարհուրելի ճակատ։ Չարանշան նախագուշակութիւններ սարսափեցրին կայսեր զօրքը, որ նա շտապով ամենակարճ ժամանակում ի միասին էր հաւաքել և ամեն խիստ կարգապահութեամբ էլ չէր կարողացել կանոնաւորել։ Սպաների և զինւորների դաւաճանութիւնը և մատնութիւնը սեպհական բանակում թուլացրեց բոլորի եռանդը։ Չնայած դրան առաջի օրը երկու կողմն էլ հերոսաբար կռուեցին առանց որոշման։ Սակայն երբ երկրորդ օրը Անդրոնիկոս Դուկաս իշխանը դաւաճանութեամբ իւր գնդով յետ խաղաց, սարսափը տիրեց զօրքին։ Ուրիշ զօրապետներ էլ հետևեցին Անդրոնիկոսին իրենց վստահացած զօրագնդերով։ Թաթարական հեծելազօրը վայրենի սաստկութեամբ յաղթելով, անարգել առաջ անցաւ։

*Կայսեր տակի ձին վիրաւորուեց։ Նա գլորուեց և գերի ընկաւ Թաթարների ձեռքը։*

*Մանազկերտի սոսկալի պարտութեան օրը* 1071 *թ. բիւզանդական մեծ պետութեան մահուան ժամն էր։ Թէև նրա հետևանքները իրենց բոլոր արհաւիրքներով անմիջապէս զգալի չէին, բայց փոքր Ասիայի արևելեան մասը՝ Հայաստանը և Կապպադովկիան, այն երկիրները որոնցից այնքան կայսրներ և զօրապետներ էին դուրս եկել. և որոնք ներկայացնում էին տէրութեան ոյժը, ընդ միշտ կորած էին, և Թաթարը իւր վրանը զարկեց հին հռովմէական անցեալ փառահեղութեան աւերակների վրայ։ Քաղաքակրթութեան որրանը զոհ գնաց իսլամական բարբարոսութեան և կատարեալ վայրենութեան։ Ոչ թէ դժբախտ կայսեր, այլ Բիւրոկրատիային և արքունիքի կուսակցութեանը, որ կարճատես կուրութեամբ ընդդիմացել էին զինուորականութեան դէմ, տէրութիւնը կանոնաւորապէս զրկել էին պաշտպանութիւնից և իրենց գըլխաւոր ներկայացուցիչի ձեռքով ազգի դէմ բացարձակ դաւաճանութիւն էին գործել, ծանրանում է այդ սոսկալի հարուածի ծանր բարոյական պատասխանատուութիւնը, որից Յոյնը այլ ևս չկարողացաւ ոյժի կանգնել և ոչ էլ կարող էր։*

*Յետագայ բոլոր սերունդները իրաւացի գնահատել են այն ուղղակի անօրինակելի ազնուասրտութիւնը, ինչպէս որ կոպիտ Թաթարը վարուեց ընկճուած և գերուած հակառակորդի հետ։ Նա նրան ազատութիւն տուաւ՝ փոխարէնը առնելով Սելջուկ գերիներին և մի միլիոն Բիւզանդական դրամ։ Միայն յուսահատ ճակատագրական վիճակն էր կարող դրդել անբախտ կայսեր վերադառնալ իւր մայրաքաղաքը։ Նոյն իսկ քաղաքականապէս ամենապարզամիտն էլ պէտք է հականար, որ կայսեր անյաջողութեան հետևանքը լինելու էր նրա և նրա հետևողների՝ զինուորական կուսակցութեան անկումը։ Այդպէս էլ Բիւրոկրատները ամենայն փութահաւթեամբ իրանց ձեռքն առան հաշուետետրերը։ Պսելոսի առաջադրութեամբ Եւդոկիան և նրա անդրանիկ անհարազատ որդին՝ Միքայէլ Դուկասը, հրատարակուեցին կառավարիչներ. ինչպէս կառավարում էր Ռոմանոսի ոխերիմ թշնամին, ծեր Յովհաննէս Դուկաս Կեսարը։ Պսելոսի կուսակցութեան օժանդակութեամբ, պահանջեց Եւդոկիայից որ իւր ամուսնուն հրատարակէ գահազուրկ։ Երբ քաջարի կինը դժկամակած մերժեց այդ անամօթ առաջարկը, չնայած նրա խնդրանաց և պաղատանքներին, դուրս քշեցին պա-*

լին։ Երկիրը կառավարում էին Կեսարը և Նիկոփորիցէս Նիրքինին, երկուսն էլ ոչ ընդունակ և գործերում ծերացած. բայց բիւրոկրատիկական ամբողջ կազմը անզօր էր այնքան ծանր դրութիւններում։ Մինչդեռ անլուր անհասկացողութեամբ անուշադիր էին թողնում տէրութեան պաշտպանութեան գործը, մինչդեռ խնայում էին զինուորական և ծովային ծախսերը, թողնում էին որ ամրոցները ու ճանապարհները քանդուէին, բարձրը պաշտօնեաների և ղեկավարող մինիստրըների արքանեակներին վճարում էին ճըշտութեամբ, և ռոճքունիքի, ինչպէս նաև մայրաքաղաքի զուարճութիւններին անհրաժեշտ միջոցները առձեռն էին։ Հազիւ է Բիւզանդիոնում գոյութիւն ունեցել դրանից աւելի ապաշնորհ, աւելի ձեռնէրեցութեամբ խեղճ կառավարութիւն, քան այն որ կազմում էին պաշտօնեաների արիստոկրատիայի ղեկավարները։

Ինքը կայսրը Պսելոսի արժանաւոր աշակերտն էր. հէնց իր ուսուցիչն էր նրա մասին ասում, որ թողնում էր գործերն ընթանալ ինչպէս կուզեն։ Մինչդեռ արևելքում և արևմուտքում հանգամանքները միշտ աւելի էին սրւում, Միքայելը Պսելոսի հետ պարապում էր ճարտասանութեամբ և փորձում էր

տասնաւորներ գրել։ Բուլգարիայում պաշտօնեաների ճնշումները նորից ժողովրդին հասցրել էին ապստամբութեան։ Բուլգարական ազգային կուսակցութիւնը, Գէորգ Վոյտէշի (Boïtachos) առաջնորդութեամբ, կամենում էր միանալ ցեղակից սերբերի հետ, որոնց Միքայէլ իշխանը (1050-1084) պապից ստացել էր թագաւորի տիտղոս, բուլգարները խնդրեցին նրա որդի Բոդինին իրենց համար ցար։ Նա հանդիսաւոր կերպով, Պետրոս անունով ցար հրատարակուեց և Դամիանոս Դալասենոսին փառաւոր կերպով յաղթեց՝ որի ժամանակ Յունաց զօրապետը գերի ընկաւ։ Ապա Բոդինը արշաւեց Նիշի դէմ, իսկ Սերբիացի Պետրիլ զօրապետը Կաստորիայի դէմ։ Սակայն Յոյները նրա դէմ հանեցին բաւական զօրեղ զօրք, որի մէջ բազմաթիւ էին Նորմանական վարձկանները։ Բոդինը յաղթուեց և գերուելով՝ քշուեց Անտիոք, որտեղից նա Վենետիկեցոց օգնութեամբ փախաւ իր հօր մօտ՝ Սկոդրա։ Ապստամբութիւնը ընկճուեց, վերջումն էլ տեղի ունեցան սովորական անգթութիւնները։

Այն խաղաղութեան դաշնադրութիւնը, որ Ռոմանոսը կապել էր Ալփ-Ասլանի հետ, նոր կառավարութիւնը իսկոյն քանդել էր, բայց ոչ մի միջոց չէր ձեռնարկել տէրու-

թիւնը պաշտպանելու, ինչպէս որ արեւելքը զոհ էր տրուած սելջուկեան բարբարոս աւազակախմբերին։ Ալփ-Ասլանի մահից յետոյ 1072 թ. գահ բարձրացաւ հզօր Մելիք-Շահը (1072-1092), որը Հռոմի դէմ կռիւը յանձնեց իւր ընդունակ Սուլէյման եղբօրորդուն։ Այդ քաղաքագէտ բազմահմուտ մարդը, հասկացաւ արեւելքում Յոյներին հասցնել ամենամեծ մահու հարուածը։ Իզուր էին Ռոմանոսը եւ Բոգիլիէյոսը օրէնքներով կռիւ մղել կալուածների մեծամասնութեան դէմ, որը ոչ մի տեղ այնքան զարգացած չէր ինչպէս արեւելքում։ Ճորտերը եւ մանրուկները մշակում էին մեծամեծների կալուածները։ Այն ժամանակ Սուլէյմանը մտցրեց տնտեսական յեղափոխութիւն։ Բոլոր այդպիսի գիւղացիները գլխահարկ վճարելով ազատ հողատիրակութեան եւ այդպիսով կենտրոնական հարցի լուծումով սերտ միացան Սելջուկների իշխանութեան հետ։ Տառն անգամ մուսուլմանական տարուկները եւ ոչ օրթոդոքս քրիստոնեաները առանց այն էլ տէրութեան հետ առանձին համակրութեամբ էլ չէին միացած։

Կառավարութիւնը վերջապէս ստիպուած էր սթափուել իւր անփորձութիւնից։ Սակայն նոր զօրավար՝ Իսահակ Կոմնենը մեծ պարտութիւն կրեց Կեսարիայի մօտ։ Կեսար

Դուկասը, որը յետոյ ստանձնեց ընդհանուր հրամանատարութիւնը, ամենից առաջ գնաց Ռուսէլի առաջնորդութեամբ խռովութիւն յարուցող Նորմանների դէմ, բայց Սանգարիոսի մօտ յաղթուեց Ռուսելից և գերուեց։ Եւ ահա չեղած բան պատահեց։ Նա որ մինչ այդ տէրութեան կործանիչն էր, շուտով միացաւ Նորմանական արկածախնդրի հետ, հանդէս եկաւ իբրև գահակալութեան ձգտող և արշաւեց իր հարազատ եղբօրորդու և մայրաքաղաքի դէմ։ Յուսահատութեան մէջ կենդրոնական վարչութիւնը դիմեց թաթարներին։ 1074 թ. Սուլէյմանը Մելիք-Շահի համաձայնութեամբ Հռովմայեցոց հետ դաշն կապեց, որով նա ճանաչուեց օրինաւոր տէր արևելքում բոլոր գրաւած նահանգների վրայ։ Դրա փոխարէն Սելջուկները խոստացան զօրեղ օգնական զօրք ուղարկել, և հաստատ մնացին իրենց խոստմանը։ Նրանց ձիաւորները հալածեցին ապստամբների զընդերը և երկու առաջնորդներին էլ գերեցին։ Դուկասը գնաց վանք․ Ռուսելը փախաւ և սկսեց նոր գնդեր հաւաքել Արմենիական թէմում։ Նրա դէմ 1074 թ. ուղարկեցին Ալեքսիոս Կոմնենիի որդուն, Իսահակ կայսեր եղբօրորդուն։ Նա այդպիսով առաջին անգամ յաջողութեամբ հանդէս է գալիս ընդհանուր

պատմական ասպարիզում. որովհետև յաղթանակելով անհանգիստ ապստամբին կալանաւորած բերեց մայրաքաղաք։ Թէև իրաւ է դեռ թաթարների նեղութիւնները փոքր Ասիայում, շարունակում էին՝ նոցա յարձակումներով և աւարառութիւններով։

Բիւրոկրատիայի իշխանութիւնը կործանման համար հասունացել էր։ Այդ էր տիրող համոզմունքը։ Ազատութիւն կարելի էր միայն զօրքից սպասել։ Ուստի 1078 թ. Ասիայում և Եւրոպայում բռնկեցին միաժամանակ երկու ապստամբութիւն։ Նիկեփորոս Բրիեննիոսը, Դիւռախիոնի հրամանատարը՝ արշաւեց մինչև մայրաքաղաքի դռները, մինչդեռ Նիկեփորոս Բոտանիատէս ինքն իրան ինքնիշխան էր հրատարակել փոքր Ասիայում՝ նախապէս ստորացուցիչ զիջումներով ստանալով Սելջուկների համաձայնութիւնը։ Ժողովրդի և ազնուականութեան խռովութիւնը ստիպեց Միքայէլին հրաժարուել. նա դարձաւ Եփեսոսի արքեպիսկոպոս, իսկ Նիկեփորոս Գ Բոտանիատէսը (1078—1081) ամենքի կողմից կայսր ճանաչուեց։ Հակաթոռ կայսեր հիմնովին յաղթեց Աղեքսիոս Կոմնենը Կալաբրիայի մօտ Թրակիայում, նոյնպէս մեծ եռանդով յաղթեց մի քանի միմեանց յաջորդող կայսերական թեկնածուներին, մինչև

փոքրագը նորմանական իշխանուհիներին փակեց մի վանքի մեջ և դրանով գրգռեց տաքարիւն Հիրոսին մինչև վայրենի կատաղութիւն։ Երբ սա 1080 գործերից ազատուեց, սաստիկ վճիռ ուղարկեց Բիւզանդիոն որով պահանջում էր նորից վերահաստատել Դուկասին։ Ի զուր անցաւ, երբ ցոյց տալով ճըշմարիտ Միքայէլին, վերցրին նրա անունը կրողի կեղծ դիմակը։ Պառակտումը արդէն անխուսափելի էր։

Ալէքսիոս Կոմնենը, զօրապետներից ամենաընդունակը, մինչև այդ օգնել էր Նիկեփորոս կայսեր, որովհետև լուելեայն յուսացել էր թէ նրանից կորդեգրուի իբրև Կեսար։ Բայց երբ անժառանգ ծերը ընդհակառակը կամեցաւ յաջորդ նշանակել իւր եղբօրորդի Սինադենոսին, վաղուց գոյութիւն ունեցող լարուած դրութիւնը բռնկուեց բացարձակ թշնամութեամբ։ Ալէքսիոսը փախաւ դէպի Ցուրուլոն. Դուկասի տան, ինչպէս նաև զինուորական կուսակցութեան կողմնակիցները, ամենից առաջ պատրիարգմասէր Գէորգ Պալէոլոգոսը խմբուեցին նրա շուրջը։ Նա գնաց մայրաքաղաքի դէմ։ Դրութիւնը խիստ կրիտիքական էր. որովհետև ծեր կայսրը և նրա մինիստրները արդէն որոշել էին՝ հաշտութիւն կապել Մելիսենոսի և թաթարների հետ։

Սակայն մի Գերմանացի վարձկանի մատնութեամբ Ալէքսիոսը 1 Ապրիլի 1081 բացեց Քրամինեան դուռը։ Դեռ Վարեագները և մի քանի ուրիշ գնդեր հաւատարիմ էին մնացել կայսեր։ Բայց սա ինքը իր գահը կորած համարեց։ Ապրիլի 2 Ալէքսը օծուեց Սոփիայի եկեղեցում։

Կոմնենը իր թագը պարտական էր զինուորական ապստամբութեան, և դրա բնորոշ վախճանն էր, ինչպէս 900 տարի առաջ Սեպտիմոս Սեվերոսի օրով, որ մայրաքաղաքի հետ վարուեցին ինչպէս առած քաղաքի հետ։ Դրանով ամենակատարեալ պարզութեամբ հասկացրին մայրաքաղաքի Բիւրոկրատիային, որը տէրութիւնը հասցրել էր կործանման, որ նա դադարել է գոյութիւն ունենալուց։ Զինուորականները, ինչպէս հնում, նորից գործի գլուխ անցան և կարելի է ասել՝ տէրութեան փրկութեան համար։ Կոմնեններն այլևս չէին կարող տիեզերքին հրամայողներ լինել։ Արևմուտքը մնաց Նորմանների ձեռին, և աւելի կարևոր արևելքը, որտեղ բարձրացաւ Հոռոմ (Իկոնիայի) տէրութիւնը, Սելջուկների ձեռին, բայց այնու հանդերձ այդ հերոս հարստութիւնը հռովմէական բազմաչարչար ազգի համար պատրաստեց նրա վերջի փայլուն վերջալոյսը և հետևեալ շըր-

ջանի տէրութեան կործանման սոսկալի խաւարի ժամանակները յետագայ սերունդները անձկութեամբ և խորին շնորհակալութեամբ յիշում էին այդ հզօր հարստութիւնը, որ տէրութեան ազատարարները և պաշտպաններն էին։

---

## Է.

## ԿՈՄՆԵՆՆԵՐԸ ԵՒ ԱՆԳԵԼՆԵՐԸ

*(1081—1204)*

---

Մեծ Կոմնենը (1081—1118) կանգնած էր մի սարսափելի ծանր խնդրի առաջ։ Նա իշխան էր, եթէ կարելի է այսպէս ասել, միայն ծովափնեայ աւերակների վրայ։ Ասիայում համարեա միայն քաղաքներն էին տէրութեան իրական իշխանութեան տակ։ Հիւսիսի եւրոպական նահանգները անընդհատ պատերազմներից աւերակ էին դարձել, սպառւում էր հարկ վճարելու կարողութիւնը։ Դրա վրայ աւելացաւ Բոտանիատէսի անլուր յիմարութիւնից ծագած Նորմանների վտանգը։ Ճշմարիտ հարկաւոր էր հերոսական քաջութիւն չյուսահատուելու համար. և Մեծ Ալեքսիոսը ունէր

այդ։ Ամենից առաջ նրա ձեռին էր մայրաքաղաքը՝ որի պարիսպների օղակի մէջ էր միայն քանիցս սահմանափակուած ծանր աղէտների ժամանակ հռովմէական կայսեր իշխանութեան սահմանը, և որի անման դիրքը՝ ամենափայլուն ապացոյց է առաքելանման Կոստանդինի նախագուշակող սուր շրջահայեցողութեան. որ միշտ նորից հնարաւորութիւն էր տալիս տէրութիւնը կրկին վերականգնել աւերակներից։ Ալեքսիոսը այն անձն էր, որ այդ դժուար խնդրին նուիրեց իւր երկար աշխատալից և անձնազոհ կեանքը այնպիսի զուտ հռովմէական պարտաճանաչութեամբ որ այնքան հաճելի փայլեցնում է բիւզանդական կայսրների մէջ լաւերին։

Ալեքսիոսը իւր գահը պարտական էր զինուորական Արիստոկրատիային և Դուկասին։ Երկուսն էլ հարկաւոր էր յարատև կապել Կոմնենների հետ։ Հենց սկզբից դատարկուած պետական գանձարանը չէր կարող թոշակ վճարել. Ալեքսիոսը ցոյց տուեց իւր շնորհակալութիւնըն ու գնահատութիւնը դասակարգային աստիճանական բազմաթիւ տիտղոսները շնորհելով ինչպէս այսօրուայ իշխաններն շքանշաններ են բաշխում։ Արժանաւորներին անուանում էին Սեբաստոս, պրոտո Սեբաստոս, պանհիպեր Սեբաստոս, Սեբաստոկրատոր ևն. Դեռ պահուած

է պատրիարքական դիւանատան մի գրութիւնը, որ մի անփորձի իբրև նամակագիր սովորցընում է, այդ վեհ գաղտնիքները թէ նա ինչ դիմումներ և տիտղոսներ պէտք է գործ դընէ, երբ նա մի գրութիւն է ուղղում մի բարձրաստիճան հոգևորականի, կամ աշխարհական աստիճանաւորի։ Ինչ որ մենք սովորաբար անուանում ենք բիւզանդական տիտղոսների և կարգերի սովորութիւն, եթէ ոչ իւր ծագումով, գոնէ իւր զարգացմամբ Կոմնենների և հետևեալ ժամանակների գործ է։

Մելիսենոսը որ ձգտում էր գահի, յարմար դատեց հաշտուել իւր հզօր աներոջ հետ. նա դրա փոխարէն ստացաւ Կեսարի տիտղոս։ Բայց որ գլխաւորն է, հարկաւոր էր այն մեծ պատրաստութեան, որ ձեռնարկել էին Նորմանների հերցոգը և նրա քաջարի Բոհեմունդ որդին, դէմ դնել տէրութեան բոլոր ոյժերի միացմամբ։ Ալէքսի պատերազմներում մեծ դեր է խաղում իբրև հաւատարիմներից հաւատարիմ և այդ պատճառով մեծ կալուածներով և իշխանական պատիւներով արտակարգ շնորհաբաշխուած, Վրացի իշխան Գրիգոր Պակուրիանոսը (Բակուր), արևմուտքի մեծ Դոմեստիկոսը։ Նրա հիմնածն է Ստանիմաքի հարաւում վանքը, որ դեռ այսօր էլ հելլենականութեան կենդրոնն

է Փիլիպուպօլսի շրջակայքում։

1081 թ. սկիզբը Բոհեմունդը, յետոյ Ռոբերտ Գիւսկարդը ափ իջան 30,000 մարդով Օրիկոսում (Էպիրոս)․ Ինչպէս երբեմն Կեսարը, ծովի և ցամաքի կողմից պաշարեց Դիւռախիոնը, հելլենական ծովափնեայ ամրոցը Ալբանիայում, որը մի և նոյն ժամանակ երկրի ներսը մտնելու համար Էգնատեայի ճանապարհով առաջին հանգոյցն էր։ Մինչ այդ Ալեքսիոսը ամենածանր զոհաբերութեամբ գնել էր Վենետիկեցոց օգնութիւնը։ Ոչ թէ հնուց դէպի տէրութիւնը ունեցած հաւատարմութեան պատճառաւ, որ խելօք վաճառականները միայն այն ժամանակ էին հարցնում, երբ իրանց օգուտ էր բերում, այլ իրանց լաւ հաշուած շահի համար նոքա զօրեղ նաւատորմիղով օգնեցին Յունաց տէրութեանը Նորմանների դէմ։ Վենետիկի համար այնքան նշանակութիւն ունեցող թանգագին այն նպաստաւոր վաճառականական պայմաններն էին, որոնցով արևելեան տէրութիւնը տնտեսապէս և վաճառականապէս ուղիղ այնպէս էր կախում ստանում Վենետիկից, ինչպէս այսօր Տաճկաստանը Անգլիայից։ Այդ չէ կարելի Ալեքսի մեղքը համարել. նրա դրութիւնը յուսահատական էր. նա ստիպուած էր օգնութիւն վերցնել, որտեղից

կարողանար և վճարել ամեն մի գին։ Վենետկեցիք էլ ինչ իրենցից էր կախուած կատարեցին։ Վենետկեան նաւատորմիղը Դոմենիկօ Սելվօի առաջնորդութեամբ միացած յունականի հետ՝ ոչնչացրեց նորմանականը. Ռոբերտ Գիւիսկարդը, ինչպէս Կեսարը, փախաւ դէպի Փարսալոս. և Ալէքսը հպարտ իւր զօրեղ 70.000 զօրքի վրայ, որոնց մէջ բազմաթիւ «Վարեագներ» կային (Անգլսաքսեր և Դանիացիք) չնայած Պալէոլոգի ընդդիմութեան, առաջարկեց նրան ճակատ 18 Հոկտեմբերի 1081 թ։ Նրա վիճակը այն եղաւ ինչ որ Պոմպէյոսինն էր։

1082 թ. սկզբին Գիւիսկարդը պաշարումով առաւ Դիւռախիոնը. բայց ստիպուած լինելով վերադառնալ Իտալիա, պատերազմի շարունակութիւնը թողեց Բոհեմունդին։ Ալէքսիոսը գերմանական կայսեր դրամական օժանդակութիւն էր անում, որպէս զի Նորմանների Հերցոգին Իտալիայում զբաղեցնի։ Մինչ այդ Բոհեմունդը հաստատուեց Էպիրոսում. 1083 թ. երկու անգամ յաղթեց Ալէքսիոսի նոր զօրքը, նա գրաւեց Կաստորիան, Մոգլենան, Սկոպիէն և բոլոր մակեդոնական քաղաքները մինչև Վարդար։ Բայց բիւզանդական կաշառքը ապստամբութիւն ծագեցրեց նրա զօրականների մէջ, որոնք

դժգոհ էին այդ երկրում ուր աւար չկար։ Բոհեմունդը գնաց Թեսալիայի դէմ. սակայն ամուր Լարիսան վեց ամիս դէմ դրաւ նրա բոլոր յարձակումներին։ Ալէքսիոսը, խելոքացած առաջի անյաջողութիւններից, բաւականացաւ միայն թեթև յարձակողական կռիւներով, որ մղում էր Նորմանների ասպետների համար կործանաբեր եղանակով Սուլէյմանից ուղարկուած Սելջուկեան 7000 ձիաւոր և նետաձիգ գնդի օգնութեամբ։ Նորմանները չէին հասկացել գոնէ դժգոհ Ալաների համակրանքը վայելել։ Մեծ Փոտիոսի ստուերը տէրութեան ազատարարը եղաւ. որովհետև մեծաւ մասամբ թունդ օրթոդոքս բոլեարները և գիւղացիները Նորմանների վրայ նայում էին իբրև հերետիկոսների վրայ։ 1084 թ. ամառը Բոհեմունդը սահմանափակուած էր միայն Էպիրոսի ծովափնեայ երկըրներում. և շուտով Սալերնօ հօրը յայտնելու իր անյաջողութիւնը։

1084 թ. ծեր Հերցոգը իր նաւատորմղով նորից երևաց Ալբանիայում. բայց Կորիւֆոյի (Korfu-Kerkyra) խղճուկ գրաւումից այն կողմը չանցաւ։ Ծովային ճակատներում պատերազմի բախտը փոփոխւում էր, մինչև 1085 թ. Յունաց և Վենետիկեցոց միացեալ նաւատորմիղը Կորիւֆոյի և Բուտրիթոնի մէջ

հիմնովին ջարդեց Նորմաններին։ Վարակիչ հիւանդութիւնները ծանր վնասներ հասցրին Ռոբերտի ցամաքային զօրքին, 17 Յուլիսի 1085 թ. ծեր Հերձոգը ջերմի զոհ գնաց։ Նրա որդիների՝ Բոհեմունդի և Ռոջերի վէճերը Ստորին-Իտալիայի տիրապետութեան մասին, հեշտացրեց Հռովմայեցիներին յետ գրաւել կղզիները և ծովային ափերը։ Հռովմէական տէրութիւնը դա՛ր ու կես էլ ազատուեց Փրանսիական առաջնակարգ ասպետներից։

Հազիւ էր Ալեքսիոսը Նորմաններից ազատուել, տէրութեան վտանգը նրան կանչեց հիւսիս։ Թրակիայում և Բուլղարիայում, չնայած որ խիստ հալածում էին Պօղիկեանների և Բոգոմիլների հաւատը, բայց տարածուել էր պարզամիտ գիւղացիների և հովիւների մէջ, և մինչև անգամ քաղաքի բնակիչների և ազնուականների մէջ. արդէն տիեզերական պատրիարքներից մէկն էլ կասկածանքի ենթարկուելով, ստիպուեց հրաժարուել (Կոսմաս Ատտիկոս)։ Արդէն 1078 թ. Կումանների արշաւանքի ժամանակ Լեկաս Պօղիկեանը Տրիադիցայի (sredec, Sofia) շրջակայքում և Դոբրոմիր Բոգոմիլը Մեսեմբրիայում հաւատոյ պատերազմ էին սկսել ընդդէմ «սատանայից բնակարանների կուռք պաշտողների»։ Այդ միաժամայն յիշեցնում է Թոմաս Մինցերի (բա-

ղոքականութեան ժամանակ) Թափառաշրջիկ խումբը, երբ այդ «կատարեալները» իրենց շուրջն էին հաւաքել 80,000 գիւղացիներ: Ծրաւ է մի կանոնաւոր բիւզանդական զօրք առանց դժուարութեան ցիրուցան արեց Աստուծոյ համար մարտնչողներին. բայց երբ 1086 թ. Բոլեարները ընդհանուր գործի համար միացան Դրիստրայի (Drster) շրջակայքի Կումանների հետ, իսկոյն նոցա հետ միացան բոգոմիլները, յայտնի Տրաւղոս Պօղիկեանի առաջնորդութեամբ, տիրեցին Բելյատովօ լեռնային բերդին և աւերեցին Թրակիան: Բակուրիանոսը և Բրանասը 1086 թ. ջարդ կրեցին, այնպէս որ Դրիստրան և ամբողջ դանուբեան Բուլղարիան բաժանուեց անէքրութիւնից: 1087 թ. երևաց Ցելգու-խանը 80,000 Պեչենեգների և Կումանների հետ: Նիկողայոս Մաւրո-Կատակալոնը մեծ դժուարութեամբ էր կարողանում նոցա առաջն առնել, այնպէս որ 1088 թ. Ալէքսիոսը ինքն անցաւ Հեմուսը. բայց Դրիստրայի մօտակայի ճակատում այնպէս հիմնական ջարդ կրեց, որ Յոյները չկարողացան պատերազմի դաշտը պահպանել: Թրակիան առանց արգելքի զոհ էր տրուած բարբարոս հրոսակների ասպատակութեանը: Կոտորածը և աւարառութիւնը տարածուեց մինչև Մայրաքաղաք: Բայց ինչ-

պէս երբեմն Նորմանների դէմ, յետոյ խաչակիրների դէմ, բիւզանդական քաղաքագիտութիւնն և դրամը ցոյց տուեց իւր ծառայութիւնը: 40,000 Կումաններ անցան Ալէքսիոսի ծառայութեան մէջ և 29 Ապրիլի 1091 թ. միացեալ Յոյներն ու Կումանները Լեբունիոնի արիւնահեղ ճակատում այնպիսի ջարդ տուեցին Պեչենեգներին, որ այդ զզուելի ժողովուրդը երկար ժամանակ կատարեալ անվնաս դարձաւ: Նոցա խղճուկ մնացորդները կայսրը բնակեցրեց Վերին-Մակեդոնիայում Մօգլենայի շուրջը:

Վերջին անգամ տէրութեան վտանգ սպառնաց հիւսիսային ժողովուրդներից, երբ 1094 թ. կեղծ Կոնստանդին Դիոգենէսը գահի ձգտելով, Կումաններին անցրեց Դանուբի վըրայով: 48 օր պաշարեցին Ադրիանուպօլիսը. սակայն Տաւրոկոմոնի ճակատը այդ շարժմանը վերջ տուաւ: Աւելի վատ էր արևելքում: Համարեա ամբողջ Փոքր Ասիան թաթարների ձեռքին էր: Աւելի խորամանգութեամբ քան զէնքի ոյժով Ալէքսիոսը առաւ Նիկոմեդիան և Սինոպէն: Սուլէյմանի փոխարէն այժմ իբրև Հռոմի սուլթան իշխում էր Ղլիճ-Ասլանը (1092-1100) Իկոնիայում, իսկ նրա աներ Չախասը, երբեմն Յունաց զօրական, բոյն էր դրել 1090 թ. Փոքր-Ասիայի արև-

մնեւան ափերում և Սարդինիայի կղզիների վրա։ 1092 թ. Զմիւռնիան «Հռովմայեցոց կայսեր» մայրաքաղաքը դարձաւ, ինչպէս նա էր իրան անուանում։ Սակայն Ցախայ ար-ծաթը այդտեղ էլ գործեց, և փեսան իր աներոջը 1093 թ. անվնաս դարձրեց։

Հռովմայեցոց եկեղեցին միշտ ցաւ էր զգացել եկեղեցիների բաժանման պատճառով։ Ամբողջ դարեր նա մտածում էր յուսալով նորից միութիւն ստեղծել։ Ուստի ամեն անգամ երբ քաղաքականապէս նեղն էին ընկնում, խոստանում Յոյները, հանդէս էին բերում միարարական ծրագրեր։ Անհաւատալի է թէ ինչպիսի նրբամտութեամբ միշտ կրկնում էին նոյն բանը պարզամիտ արևմուտքցիներին խաբելու և միշտ գտնում էին հաւատացողներ. թէև նոքա երբէք Փլորենտանի ժողովից առաջ, երբէք լուրջ կերպով չէին մտածել միանալու մասին։ Միայն խաբէբայական խոստումներ էին քաղաքական օգտուելու նպատակների համար։ Ահա այդպէս Միքայէլ Է կայսրը 1074 թ. իր թակարդն էր գցել Գրիգոր Է մեծ պապին։ Սակայն այս անգամ Ալեքսիոս կայսեր դիմումը օգնութիւն հասցնելու, պատրաստ հող գտաւ. Քրիստոնեաների յաջողութիւնները Սպանիայում, Սիկիլիայի վերստին ազատուելը անհաւատներից զօրեղ կերպով

բարձրացրել էր քրիստոնեաների զգացմունքը։ Յայտնի է Հերակլի ժամանակներից, թէ ինչպիսի զգացուած անձնուիրութեամբ ազգերի պարզ հաւատը կապուած էր այն տեղերի հետ, որտեղ պատել էր Իւր Տէրը։ Երբ Երուսաղէմում համեմատաբար համբերող Փաթիմիդների հալածումից յետոյ, 1078 թ. սկսեցին իշխել կոպիտ և մոլեռանդ Օրտոկիդները, ամբողջ Եւրոպայում, որ ճշմարիտ և խոր հաւատացեալներ էին, համարեցին որ մեր Տիրոջը և Փրկչին դրանով անտանելի նախատինք է հասել։

Ուստի Ուրբան Բ պապի խաչակրական քարոզը շարժել է այն ժամանակուայ մարդկութեան սրտերի ամենանուրբ թելերը և հասարակաց կարծիքի առաջ պապականութիւնը, որ սովոր էր յաղթելու, պատուաւոր յաջողութիւն ունեցաւ։ Բայց մինչդեռ իտալական հասարակապետութիւնները՝ Վենետիկը, Ջենովան և Պիզան իսկական չարչիական զգացմունքներով հասկացան այդ հզօր կրօնական շարժումը շահագործել միայն վաճառականական կողմից, Ֆրանսիական[1] և Փլանդրիայի ասպետականութեան կրակոտ մարդկանց համար սրտի և համոզման գործ էր և արգա-

[1] Այն ժամանակուայ Նորմանները Ֆրանսիացի էին։

րացի է որ Նոցա գործերը կոչւում են՝ gesta Dei Per Francos (Գործք Աստուծոյ ձեռամբ Փռանկաց)։ Նոցա պատուաւոր յաղթական գնացքը ոչ ոքի այնպէս չուրախացրեց, ինչպէս արևելքի՝ Յոյներից և Թաթարներից անտանելի տանջանքների ենթարկուած քրիստոնեաներին՝ Հայերին և Ասորիներին։ Եթէ Հայերը կարողացան Կիլիկիայում հաստատուել և պահպանել մի կիսաեւրոպական աւատական իշխանութիւն, որ համարեա երեք դար տևեց, ամենից առաջ արևմտքի ժողովրդական մեծ շարժմանն են պարտական։ Նոցա պատմագիրները, մանաւանդ Մաթէոս Ուռհայեցին և Սամուէլ Անեցին ոգևորուած գովասանքով են խօսում արևմտքի Աստուծոյ համար կռուողների և Երուսաղէմի ազատողների մասին և ամենածանր մեղադրանքներ են բարդում ստախօս և ուխտադրուժ Յոյների Ալէքսիոսի և Մանուէլի վերայ։

Եթէ չենք կամենում անարդար լինել, լաւ կըմբռնենք թէ ինչու Հռովմայեցոց կայսրը մեծ կասկածանքով էր նայում խաչակիր զօրքի մօտենալուն։ Իրենց հպարտ և պատերազմներում վարժուած ասպետներով շրջապատուած իշխանները վարձկան առաջնորդներ չէին, որոնց կարելի լինէր բիւզանդական

*փողով ըստ ցանկութեան գործի գնել Եւրոպայում կամ Ասիայում։ Նոցա մէջ էր Բոհեմունդը. Տարենտի հերցոգը, կայսեր ոխերիմ թշնամին։ Յամենայն դէպս բաւական դժուար աշխատանք էր կարողանալ հաշտ վարուել այդ ինքնավստահ և տաքարիւն մեծամեծների հետ։ Սակայն կայսեր խարդախ խաղերը, հին դպրոցի քաղաքագէտի վստահամբաւ արհեստը բաւական չափով սրա-ցրել են Յոյների և Լատինների ատելութիւնը և Յունաց երկլեզուութեան և խարդախութեան համբաւը — Փրանկներն էլ չէին գերազանցում արտակարգ ազնուութեամբ — Եւրոպայի հասարակական կարծիք են դարձրել, շատ հեռանալով արդարութեան սահմանից, նաև մինչև մեր օրերը։*

*Այստեղ մենք կյիշենք միայն խաչակրաց արշաւանքների ազդեցութիւնը յունական տէրութեան վրայ։ Ալէքսիոսի բանակցութիւնները սկզբից այն արդիւնքն ունեցան, որ Ֆրանսիական իշխանները խոստացան իրենց Պաղեստին-ասորական տիրապետութիւնները հաշուել իբրև հռովմէական կայսրից ստացած աւատական սեփականութիւն։ Մանաւանդ կայսեր համար գնահատելի է այն, որ նոցա օգնութեամբ նորից գրաւեց Փոքր-Ասիան։ 1097 թ. Ղլիճ-Ասլանը մեծ պարտութիւն*

*կրեց խաչակիրներից Նիկիայի մոտ։ Սակայն Ալէքսի խարդախ խաղն էր, որի շնորհիւ Նիկիայի Թաթարները՝ քաղաքը, որ նրա համար այնքան մեծ նշանակութիւն ունէր, նրան յանձնեցին։ Քաղաքը պաշարողների կատաղութիւնը, որոնք այդպիսով զրկուել էին իրենց այնքան նեղութիւնների պտղից, կատարելապէս արդարացի էր, և ոչ մի ընծայ կամ բարեկամութիւն չէր կարող լաւ յարաբերութիւնը վերահաստատել։ Բացի այդ, կայսրը այնքան աւելի էր պարտական շնորհակալութեան, որ 1-ն Յուլիսի 1097 թ. Դորիլեայոնի մեծ յաղթութիւնը օգնել էր Բիւզանդացիներին տիրելու Արևմտեան Փոքր-Ասիային։ Արևելահռոմի համար դա բացարձակ չլսուած բախտ էր. որովհետև իւր սեփհական ուժերով նա երբէք չէր կարողանալու Ասիայում որ և է աչքի ընկնող գործ կատարել։*

*Արևմտեան Փոքր Ասիան միայն խաչակիր ասպետների պատերազմասէր հերոսական ըղձացմանն էր պարտական, որ երկու դար էլ պահպանեց իւր քաղաքակրթութիւնը և ազատուեց բարբարոսներից Լաւոդիկիա, Փիլադելփիա, Սարդէս, Զմիւռնիա, Եփեսոս. Յունաց պատմութեան ամենափայլուն անունները, ազատուեցին անհաւատների ստրկու-*

թիւնից։ Բայց կայսեր յարաբերութիւնը Փըրանկների հետ օրէցօր վատացաւ։ Մինչդեռ սոքա յարձակումով առել էին Անտիոքը և Երուսաղէմը, կայսրը միայն առաջ էր խաղացել արևելեան Փոքր-Ասիայում, արդարացի գանգատւում էին խաչակիրները, որոնք նրան այնքան նշանաւոր ծառայութիւն էին մատուցել, որ նա իրենց համար ոչ մի յայտնի գործ չէ կատարում։ Թէև պէտք է ասած կայսեր աչքում իւր քրիստոնեայ դաշնակիցները նոյնքան վտանգաւոր էին, ինչքան Հոռոմի թաթարները, և եթէ ի նկատի առնուէին Ռոբերդ Գիւսկարդի ծրագրերն ու 1204 թ. դէպքերը, դրա համար նրան չէ կարելի մեղադրել։

Աւելի լուրջ կերպարանք ստացան Ալէքսիոսի և Բոհեմունդի միջի տարաձայնութիւնները, որը 1098 թ. հաստատուել էր Անտիոքում։ Հայազգի Փիլարէտ կուսակալի դաւաճանութեամբ, Թոյները դեռ 1085 թ. էին թաթարների ձեռքը գցել արևելքի այդ նշանաւոր մայրաքաղաքը. որ երբեմն գրաւել էին Նիկեփորոս Փոկասի մեծագործ զէնքի ոյժով. Հասկանալի է, որ նոքա ամեն միջոց գործ կգնէին նրան նորից տիրելու։ 1099 թ. պատերազմ ծագեց Բոհեմունդի դէմ ծովի և ցամաքի վրայ, որը Բոհեմունդը մղում էր

Կիլիկիայում, իսկ նրա դաշնակիցները՝ Պիզացիք, կողոպտում էին Լիւկաա և Կեփալենիա կղզիները։ 1104 թ. նա գնաց Իտալիա և Պասքալիս Բ պապի օգնութեամբ ժողովեց չափազանց մեծ զօրք։ Բայց փոխանակ նրանով անցնելու արևելք, վերսկսեց իւր հօր ծրագիրը, և խաբելով Յունաց զօրքը, մտաւ Վելոնան՝ Էպիրոսում։ Սակայն կատարեալ անյաջողութիւն ունեցաւ Դիւռախիոնի պաշարման ժամանակ։ Ալեքսիոսը, վարպետ դարձած Նորմանների առաջի պատերազմում, խոյս տուեց ճակատ տալուց, այլ մեծ հմտութեամբ կարողացաւ մանր յարձակումներով թուլացնել թշնամու առանց այն էլ նեղութեան մէջ եղող զօրքը և կաշառներով ազդել նրա շարքերում։ 1108 թ. Բոհեմունդը ստիպուած էր Դեվոլում Deabolis) մի խիստ նուաստեցուցիչ խաղաղութիւն կնքել, հրաժարուելով Լավոդիկէյի և Կիլիկիայի պահանջից, և Անտիոքի իւր իշխանութիւնը իբրև Յունական աւատական իրաւունք ճանաչել։ 1111 թ. Բոհեմունդը փառազուրկ մեռաւ Ապուլիայում։ Նրա դաշնակիցները, Պիզանցիք, Հռովմէացոց տէրութեան հետ վաճառականական դաշն կապեցին, որ Բիւզանդացոց համար էլ մեծ նշանակութիւն ունէր, ոչ միայն նրա համար որ իտալական այդ ծո-

վային հասարակապետութեան մինչ այդ շարունակուող ծովահինային արշաւանքների առաջն առնուեց, այլ որովհետև դոցանից մի մրցակից դուրս եկաւ Վենետիկեցիների դէմ, որոնք վաճառականական մենավաճառութեամբ չափազանց անտանելի էին դարձել՝ ծանր գների շնորհիւ։

1110—1117 թ. Ալէքսիոսը նորից ստիպուած էր ահեղ պատերազմ մղել Սելջուկների դէմ, որոնք իրենց աւարառութիւնը տարածում էին մինչև Պրոպոնտիս։ Սակայն Փելեմիլիոնի գրաւումից և 1116 թ. Պոլիբոտոսի մօտ փառաւոր յաղթութիւնից յետոյ Մելիք-Շահ սուլթանը 1117 թ. որոշեց հաստատել Ակրոյնոնի խաղաղութիւնը։ Փոքր-Ասիայի ծովափնեայ ամբողջ երկիրը և Պափլագոնիայի արևմուտքը՝ „Փռիւգիայից մինչև Պիսիդիա և Պամփիւլիա տէրութեան համար վերջնականապէս ազատուած էր։

Ներքուստ կայսրը ստիպուած էր աւելի քան օգտակար էր պետութեան շահերին, փայփայել բարձր ազնուականութիւնը, որի միջից ինքն էր դուրս եկել և որը ամեն բան արել էր կայսեր բարձրանալու և պահպանելու համար։ Հին միապետութիւնը վտանգաւոր կերպով մօտենում էր արևմտեան Եւրոպայի աւատական պետութիւններին, որոնց

պետական կազմը օրինակելի դարձաւ Ռուբենեան հայկական թագաւորութեան համար Կիլիկիայում։ Սակայն չնայած իւր անհանգիստ զինուորական կեանքին, Ալէքսիոսը ժամանակ էր գտնում արդարադատութեան և ոստիկանութեան մասին հոգ տանել և ամենից առաջ փառաւոր կերպով կարգի բերել վերին աստիճան քայքայուած տնտեսութիւնը։ Զարմանալի է նրա սերտ յարաբերութիւնը հոգևորականութեան հետ։ Ալէքսիոսը կրօնասէր խիստ հաւատացեալ եռանդուն իշխան էր. նա ինքը երկար ու բարակ վիճում էր Պօղիկեանների և Բոգոմիլների հետ և ում որ չէր կարողանում համոզել, պատժում էր կրակով։ Լևոն փիլիսոփայի մասամբ հնացած եկեղեցական կարգերը, փոխեց համաձայն ժամանակի պահանջներին։ Սակայն ամեն դէպքում հետևում էր մի քաղաքական նպատակի։ Եթէ ուղիղ առաջնորդէին— և կայսրն ունէր խիստ՝ բայց և հոգևորականութեան օգտակար դիտաւորութիւն—չափազանց ազդեցիկ և հարուստ հոգևորականութիւնը, փրկարար ընդդիմադիր ոյժ էր զինուորական ազնուականութեան դէմ, որ անընկճելի էր և միշտ պատրաստ գահի ձգտելու։

Ծերը կարող էր գոհունակութեամբ նա-

յել իւր աշխատալից կեանքի ստեղծագործութիւնների վրայ։ Կատարեալ անիշխանութիւնից և խորին անկումից նա բարձրացրել էր տէրութիւնը այնպիսի աստիճանի վրայ, որ կարող էր ժառանգական մեծ պետութեան դիրքը, եթէ ոչ հին զօրութեամբ, բայց միշտ պատուաւոր կերպով դեռ երեք սերունդ էլ պահպանել։ Բայց նրան չէր վիճակուած հանգստութիւն ունենալ անգամ մահուան անկողնի մէջ։ Նրա ամուսինը՝ բարեպաշտ Իյրենէն, և նրա սիրելին Աննան, պատմութիւն գրողը, խնդիրներով նեղում էին նրան, որպէս զի Աննայի ամուսնուն՝ Նիկեփորոս Բռիւեննիոս Կեսարին կայսերական գահ բարձրացնէ, փոխանակ վաղուց գահաժառանգ նշանակուած Յովհաննէսին։ Սակայն կամքի տէր ծերը, թէև խիստ նեղուած յօդացաւից, անընկճելի մնաց, և երբ 15-ն օգոստոսի 1118 թ. մեռաւ, Յովհաննէսը հասկացաւ տիրելու ժառանգութիւն մնացած գահին, առանց կարիք զգալու անվարական խռովութիւնների և վարդապետացնելու միջոցների դիմելու։

Յովհաննէս Բ Կոմնենը (1118—1143) ընտիր իշխանի կատարելատիպ է։ Նա իւր քաջութիւնով և մեղմութիւնով ոչ միայն իւր հպատակների սրտերը գրաւեց, որոնք

այդ պատճառով նրան անուանում էին բարի Յովհաննէս՝ Կալոյովհաննէս, այլ նաև արևմտեան պատմութիւնները լի են նրա գովքով, որը փորձում էր իւր քաղաքական նըպատակներին հասնել ոչ թէ Յոյների մօտ արդէն սովորական դարձած խորամանկ խաբեբայութեամբ, այլ ուղիղ ճանապարհով: Նա [illegible] իւր ընտանիքի առանձնայատկութիւնից բացառութիւն էր կազմում, և այդ երեւում է իւր ազգակիցների բռնած ընթացքից: Իրաւ է խարդախ կայսրամայրը, շուտով քող առաւ, որ շատ խելացի էր նրա կողմից, բայց նրա Աննա քոյրը, որ գործ սիրող և մասամբ երես առած կին էր, որը դառնութեամբ գանգատւում էր, որ իբրև տղամարդ չէ ծնւել, շարունակեց թակարդներ լարել թէև նրա ամուսինը բաւական խելացի և հանդարտ մի պարոն, ոչինչ չէր ուզում լսել: Նրա Իսահակ հօրեղբայրը, որ ամեն անգամ յաղթուած զօրավար էր, իւր որդիների հետ ապրում էր Իկոնիայի արքունիքում: Ահա այդպիսով թէև հէնց իւր մերձաւորներից ամեն կողմից գրգռուած, այնու ամենայնիւ Յովհաննէսը իւր արքունիքը ազատ պահեց անգթութիւններից. այդ բանում նրան շատ էր օգնում նրա երիտասարդութեան ընկեր և մինիստր Աքսուխոսը, որ մի ուղղամիտ,

ազնիւ, արտակարգ խելօք և գործերում օգտակար թաթար էր։

Կոմնենների հարստութիւնը խիստ զանցառութեան էր տուել մի բան, ծովագնացութիւնը, մինչդեռ առաջի դարերում արեւելահռոմէական նաւատորմիղը իշխում էր ծովերի վրայ և մակեդոնական հարստութեան վերածնութեան ժամանակ ձեռք էր բերել յարգանք ազդող դիրք։ Իրաւ է, Կիբիւռայոտիկոն թեմը, որտեղից առաջի դարերում դուրս էին եկել ծովային հերոսներ և նաւաստիներ, մասամբ ընկել էր Սելջուկների իշխանութեան տակ, մասամբ աւերակ էր դարձած և ամայացած։ Բայց Եգէյեան ծովի կղզիները և ափերը իրենց ընտիր ծովագնաց բնակիչներով կարող էին ամենալաւ նաւաստիներ տալ, որով կարելի էր առաջնակարգ ծովային ոյժ ստեղծել։ Որովհետև այդտեղ կառավարութիւնը ոչինչ չէր արել. զգաց խիստ ծանր։

Որովհետև Վենետիկեցոց ամբարտաւանութիւնից յունական ազգային զգացմունքը խիստ վիրաւորուած էր, ուստի բոլոր հայրենասէրների սրտերում ամենաուրախ արձագանք գտան Յովհաննէսի նկատմունքը, երբ բացարձակ կերպով հրաժարուեց հաստատել հպարտ վաճառականների վաճառականական առանձնաշնորհութիւնները, որ ստացել էին

նոքա իւր հօրից՝ Նորմանների աղէտալի կրիտիքական հանգամանքներում։ Այդ միանգամայն յիշեցնում է Բրիտանիայի ծովային քաղաքականութիւնը Դանիայի հանդէպ, երբ Վենետիկեցիք սկիզբը յանդուգն ցոյցեր արին իրենց նաւատորմիղով, յետոյ սկսեցին կողոպտել Յոնիական և Էգէյեան ծովափերը։ Վենետիկեցոց Վաճառականներին երկրից դուրս քշելը, իրերի դրութիւնը աւելի էր սրացրել։ Դժբախտաբար Արևելահռոմը չունէր յարգանք ազդող ծովային ոյժ։ Ուստի երբ Դոմենիկօ Միքիելէ դոժը 1126 թ. մի նոր նաւատորմիղով առաւ Կեփալենիան, Յովհաննէսը դիմեց պապի միջնորդութեանը, եկեղեցական միութեան գլուխ միջոցին, չնայած քանիցս կրկնուած խաբեբայութեան փորձը, այս անգամ էլ ունեցաւ իւր ազդեցութիւնը պապի դիւանի վրայ, և բաւական տանելի խաղաղութիւն հաստատուեց. Իրաւ է դժբախտ կայսրը ստիպուած էր հանդիսաւոր կերպով, ի կորուստ իւր տէրութեանը, նորից հաստատել Վենետիկեցոց առանձնաշնորհութիւնները։

Աւելի երջանիկ էր Յովհաննէսը իւր ցամաքային քաղաքականութեան մէջ։ Սելջուկների 1120 և 1121 թ. գրաւեց Մէյանդրոսի և Ատայէլի միջի երկիրները։ Փռիւգական Լավոդիկեան, և Սողոպօլիսը, յետոյ մի շարք

Պիսիդեան և Պամփիւլեան քաղաքներ գրաւեցին։ Ասորիքում և Պաղեստինում բնակուած Պուլլանները, որոնք իրենց հայրերի հերոսական ոգին փոխել էին խիստ ասիական խորամանկութեան հետ, սխալ քայլ արին երբ Անտիոքի ժառանգ իշխանուհուն սկիզբը առաջարկեցին Մանուէլ դահաժառանգին և յետոյ ամուսնացրին Ֆրանկական իշխաններից մէկի վրայ։ Եւ երբ Անտիոքի դաշնակից Կիլիկիայի Հայերը կայսեր դէմ պատերազմ սկսեցին, վերջինս սկսեց եռանդով գործել, տիրեց Կիլիկիային, և Անտիոքի Ռայմոնդ իշխանին ստիպեց խոնարհել իրան։ Անտիոքացոց ապստամբութիւնը և այն դաշինքը որ Հռոմի Թաթարները կռւեցին Սեբաստիայի Դանիշմենդի հետ, կայսեր ստիպեցին գնալ Փոքր Ասիական պատերազմի դաշտը։ Նա յաղթահարելով 1139 թ. հասաւ մինչև Նեկսար (Neokaisareie) և հետևեալ տարին թաթարներին կատարելապէս ոչնչացրեց։

Մաճառների հետ, որոնք քրիստոնէութիւնը ընդունելուց յետոյ հաստատուած իրենց Պեշտնեգ և Կումանս եղբայրակից ժողովուրդներին քաղաքակրթութեան մէջ մեծ յառաջադիմութիւն էին գործել, Ալէքսիոսի օրերից ի վեր տիրում էին ամենալաւ յարաբերութիւններ, մինչև անգամ Յովհաննէսի ա-

մուսինը հունգարական իշխանուհի էր։ Սակայն Այմուս իշխանի բռնակալութիւնը, որ Արեւելահռովմի հետ բարեկամացած Կոլոման թագաւորին զրկել էր գահից, եւ նրա Բելա որդուն կուրացրել էր, որպէս զի իւր որդի Ստեփան Բ-ի համար ապահովեցնէ գահը, պատճառ եղաւ որ արեւելահռովմէական կայսրը միջամտեց 1124 թ. անբախտ Բելա իշխանի օգտի համար։ Մագեառները, որ սկիզբը յաղթում էին, յետոյ մեծ պարտութիւն կրեցին կայսրից Խրամի մօտ, Դանուբի վրայ։ Բռանիչեւօյա կամուրջի գլխի նշանաւոր գիւղը 1126 թ. կայացած խաղաղութեամբ մնաց Հռովմէացոց ձեռին։

Դեռ առաջ կայսրը կարգին պատժել էր Պեչենեգների աւազակաբարոյ ցեղին. 1112 թ. անցել էին Դանուբը, բայց Հեմուսի կիրճերը լաւ ամրացած էին գտել։ 1123 թ. գարնանը կայսրը այնպէս կոտորեց նոցա, որ այդտեղից սկսած Դանուբի երկրի այդ պատուհասի անունը ընդ միշտ ջնջւում է պատմութիւնից։

Կայսեր վերջին ջանքը նուիրուած էր Ասորիքի վերստին տիրապետութեանը. Նիկեփորի եւ Զմշկիկի ձեռնարկութիւնները այդ հերոսի օրինակներն էին։ Քանի որ 1142 թ. յաջողութիւնները ոչ մի կերպ չէին համապատասխանում իւր յոյսերին, նա մի մեծ

արշաւանք պատրաստեց։ Եւ մի դժբախտ պատահմունքի շնորհիւ, վտանգաւոր վիրաւորուեց Կիլիկիան Տաւրոսում խոզի որս անելիս։ Հաւատարիմ Աքսուխոսը շտապեց մայրաքաղաք, որպէս զի Մանուէլ գահաժառանգի գահակալութիւնը ապահովի։ Եւ երբ «բարի» Յովհաննէսը իւր արիութեան ծաղկեալ հասակում՝ դեռ միայն 55 տարեկան 8 Ապրիլի 1143 Թ. կնքեց իւր հերոսական մահկանացուն, նրան յաջորդեց իւր որդի Մանուէլը (1143—1180) առանց ընդդիմութեան հանդիպելու։ Ազնիւ, մտաւորապէս խիստ ընդունակ և մարմնով թէ գեղեցիկ և թէ հըսկայական ոյժով Կոմնենի շառաւիղը ունէր իւր բնաւորութեան մէջ, իրաւ է, բոլորովին տարբեր քան իւր հայրը՝ մի զուտ արեւմըտեան գիծ։ Մանուէլը ասպետի իդէալ էր համաձայն Ֆրանկեան հայացքի։ Զուտ ասպետական էր նաև այն երևակայական գիծը, որ հակառակ իւր հօր և պապի սառը զատող և իրական քաղաքականութեան, մտածում էր բարձրաթռիչ ծրագիր, ձգտում էր անհասանելի նպատակների, և չնայած բոլոր արտաքին փայլին, քիչ չնպաստեց յետագայ զարհուրելի հարուածներին։ Պապից ժառանգել էր աստուածաբանական երակը։ Նա շարունակ բանակցութեան մէջ էր Հռոմի և

Հայաստանի հետ եկեղեցական միութեան համար․ այդ բոլորի միակ հետեւանքը եղաւ բաւական հարուստ վիճաբանական գրականութիւն՝ բաժան դաւանութիւնների զանազան լեզուներով։

Մանուէլի համար բնորոշ է նրա տածած սէրը դէպի լատինները, որ կապ ունէր արեւմտասէր հոգեկան ուղղութեան հետ, Նրա երկու կանայքն էլ արեւմուտքի իշխանուհիներ էին, նաև իր որդիների համար որոնում էր խնամութիւն հաստատել արեւմուտքի հետ։ Նա իր պահապան զինուորները շարունակ վարձել էր տալիս գերմանական ռոմանական և սլաւոնական ազգերի քաջ և պատերազմասէր ժողովուրդների միջից։ Շատ անգամ վարչական պաշտօններում էլ նշանակում էին հաւատարիմ արեւմուտցիներ, որոնց մէջ կաշառակերութիւնը, յափշտակութիւնը այնպէս սովորական չէր ինչպէս Հռոմայեցոց մէջ։ Այն ժամանակուայ պետական եւ և մտքի արտասովոր ծաղկումով Հռոմայեցոց կայսրը գուցէ պարտական էր այդ անարատ օտարականներին այն չափով, ինչպէս չինական տէրութեան պետերը պարտական են Շանխայի Անգղիացի մաքսապետներին։ Վենետիկի և Պիզայի մեծ արտօնութիւնները՝ վայելող վաճառականների վրայ 1155 թ.

դաշնադրութեամբ աւելացան նոր և շուտով յաջող մրցողներ՝ Ջենովացիքը։ Այդ բոլորը հասկանալի է կացուցանում թէ ինչու Յոյների մէջ սաստիկ զարգացաւ ատելութիւնը դէպի լատինները։

Քանի որ Մանուէլի քաղաքականութիւնը ընթանում էր հօրը արդէն լաւ փորձուած ճանապարհով, բախտը նրան միշտ խնդում էր։ Անտիոքի հպարտ և տաքարիւն Ռայմոնդ իշխանի ոտնձգութիւններին նա այնպիսի վերջնական սահման դրեց, որ արեւմուտքի իշխանի համար խիստ նուաստացուցիչ էր։ Կալօ Յովհաննէսի դամբարանի առաջ նա ստիպուեց խոստովանել իրան իբրև Հռովմի կայսեր ամենահպատակ վասալ։ Հռոմի Սելջուկներին քշեց մինչև Իկոնիա։ Նաև երկրորդ խաչակիր արշաւանքի վտանգաւոր դրութեան ժամանակ (1147—1149) նա արտայայտեց բարձր քաղաքագիտական հասկացողութիւն։ Հասկանալի է, որ հռովմէական կայսրը խիստ կասկածանքով էր նայում․ ժողովրդական այդ լաւայանման հոսանքի մերձանալուն, որ շարժուել էր արևմտեան հասարակական կարծիքի սարսափելի դղրդմամբ Եդեսիայի անկման պատճառով։ Նոցա արշաւանքը Հռովմի արևմտեան թեմերի միջով, որոնք Պեչենեգներից, Կումաններից և նման

ցեղերից կանոնաւոր յաջորդականութեամբ ծընուել էին, ընդհանուր դժբախտութիւն էր, և բոլորովին անարդար էր Փրանսիացիների գանգատը, որոնք հետևեցին միայն 1147 թ. աշնանը, Յունաց կառավարութեան և յունական ժողովրդի խնայողութեան և խարեբայութեան մասին. Նոյն տարուայ ամառը այնտեղով անցնող Գերմանացիները չափազանց նեղել էին երկիրը: Կոնրադ Գ թագաւորի հետ դեռ կարելի եղաւ մի կերպ վարուել: Արդէն երկու պետերը միմեանց հետ խնամիացած էին, որը սակայն արգելք չեղաւ, որ երբ Կոնրադը անցաւ մայրաքաղաքով, որպէս զի ստուեր չձգուի իրենց աստիճանին և վեհափառութեանը, խոյս տուին փոխադարձ այցելութիւն անելու: Բնական է որ թեթև ընդհարումներ չպակասեցին, գերմանական կոպիտ զօրքի և առանձին նրբութիւն չունեցող բնիկների մէջ: Իսկ ընդհանրապէս Ասիա անցան առանց ակն յայտնի դժուարութիւնների: Աւելի վատ եղաւ երկրի դրութիւնը Փրանսիացիների հետ: Նոքա արդէն չափազանց դժգոհ էին Յոյների խնամքից՝ Թրակիայից անցնելու ժամանակ, իսկ մայրաքաղաքի պարիսպների առաջ մօտ էր բացարձակ դժգոհութիւնը: Արդէն Փրանսիական գլխաւոր խորհրդարանում մտածում

էին Կոստանդնուպօլիսը յարձակումով առնել. բայց յունական քաղաքականութիւնը և ճշմարիտ բարեպաշտ Լուդովիկոս Է Թագաւորը, որը Աստուծոյ համար պատերազմելու խնկական նպատակը երբէք աչքից չէր գցում, արգելք եղաւ այդ անարժան միտումներին։ Մեր նպատակից հեռու է կանգ առնել խաչակիր զօրքի և նրա Դամասկոսի դէմ անյաջող արշաւանքի վրայ, որոնք առանձնացած արշաւելով, առանձնացած էլ ենթարկուեցին Իկոնիայի Սելջուկների հարուածներին և տխուր վախճան ունեցան։ Մանուէլ կայսեր օգուտն այն եղաւ, որ 1149 թ. Թեսալոնիկէյում Գերմանացոց թագաւորի հետ ամուր դաշն կապեց Նորմանների դէմ։

Ասորիքի խեղճ Փրանկ իշխանները, արեւմուտքից օգնութիւն չգտնելով, սկսեցին Մանուէլի հետ, հէնց որ սա իր հաշիւները Նորմանների հետ վերջացրեց, յարաբերութեան մէջ մտնել։ Մանաւանդ սրտանց էր Երուսաղէմի Բալդուին Գ-ի բարեկամական կապը։ Բայց կայսրը ստիպուած էր Անտիոքի դէմ, որ միշտ վատ կառավարւող պետութիւն էր, և որտեղ 1153 թ. իշխում էր կոպիտ և վեղխ Ռայմոնդ Շատի. Լիոնի իշխանը, 1159 թ. արշաւանքով ցոյց տալ իւր անընկճելի խստութիւնը։ Ռայմոնդը

և նրա հայազգի դաշնակիցները նորից ստիպուած էին յունական գերիշխանութիւնը ճանաչել։ Իրենէ կայսրուհու մահից յետոյ (Bertha von Sulzbach) Մանուէլը 1161 թ. ամուսնացաւ Անտիոքի Մարիա իշխանուհու վրայ, որ հռչակուած էր իր գեղեցկութեամբ։ Նուր-էդ-դինին՝ Առաջաւոր-Ասիայի ամենահզօր վեհապետին միջնորդելով Պաղեստինի քրիստոնեաների համար, բաւական նպաստաւոր խաղաղութիւն հաստատեց։ Նաև Բալդուին Գ-ի յաջորդի՝ Երուսաղէմի Ամալրիխ թագաւորի հետ Մանուէլը ամենալաւ յարաբերութիւն ունէր։ 1169 թ. 200 նաւերից բաղկացած յունական նաւատորմիղը օգնում էր նրա յարձակմանը Դամիետի դէմ, որ անյաջող վախճան ունեցաւ։

Հիւսիսի պայմանները այնքան վտանգաւոր չէին, երբ բարբարոս հրոսակները մասամբ ոչնչացել և մասամբ ընտանիացել էին։ Յարաբերութիւնները վատացաւ Մաճառների հետ, որովհետև նոքա օգնում էին Սերբիայի և Բոսնիայի պետական նպատակներին, երբ սոքա ձգտում էին ազատուել, թէև այդ կախումն աւելի անուանական էր քան իրական։ Յոյները տիրեցին նշանաւոր Զիւգմինը և 1115-1154 պատերազմ մղեցին ընդհանրապէս պատուաւոր կերպով։ 1162 թ. Մանուէլը միջամտեց

դէպի Կորիւփոս, որտեղ հարկերի ծանրու-թեանց սովորական դժգոհութիւնը ապստամ-բութիւն էր ծագեցրել, և որտեղ Նորման-ներին ընդունեցին գրկաբաց: Սակայն հա-րուստ վաճառականական Մոնեմբեզիա քա-ղաքի դէմ ձեռնարկած փորձը անյաջող վախ-ճան ունեցաւ: Ծարքայի և Ատտիկայի աւե-րումից յետոյ Սիկիլեան նաւատորմիղը նորից անցաւ արեւմուտք, որտեղ Ակերմաննեան-Ըառ-լիան ծովակները կողոպտելուց յետոյ Կրիսա-յում ափ իջաւ, և ուղղակի արշաւեցին Թէ-բէի վրայ: Այն ժամանակուայ Թեբէն իր ապրեշումեայ գործուածներով և ծիրանեայ զգեստներով կայսրութեան ամենահարուստ արդիւնաբերական քաղաքն էր: Նորմանները կատարելապէս աւերեցին: Նոքա վերցնում էին ոչ միայն ոսկի, արծաթ և եկեղեցական թանկագին իրեր, այլ իրենց հետ տարան նաև խանութների լիքը ամբարած հարուստ մթերքները: Ահագին քանակութեամբ ապ-րեշումի կծիկներ և ներկած կաշիներ տարան նաւերի վրայ: Ի վերջոյ ստիպուած էին դժ-բախտ բնակիչները խոստովանել, որ իրենց ունեցածից ոչինչ չեն ծածկել: Չնայած դրան բազմաթիւ առաջնակարգ մարդկանց ստիպե-ցին փրկանք վճարել: Ապրեշումեայ գործա-ւորներից ամենահմուտներին ընտրեցին և ու-ղարկեցին Սիկիլիա:

*Նորմանները Բոյոտիայից արշաւեցին Կորնթի դէմ։ Նիկեփորոս Կաղուփէսը հենց առաջի պահանջին յանձնեց անընկճելի Ակրոկորինթը, այնպէս որ նոյն իսկ Սիկիլացի ծովապետը բացականչեց. Նա կռւում է երկնքի հովանաւորութեան տակ, որը բերդակալին վախկոտ է դարձրել ինչպէս ջահիլ աղջիկ։ Այդ հարուստ արդիւնաբերական քաղաքն էլ ենթարկուեց հիմնական կողոպուտի մինչև անգամ եկեղեցու մասունքներն էլ էին վերցնում, իսկ գերիների մէջ կային բազմաթիւ հմուտ վարպետներ։ Նրանք չէին մտածել յարատև գրաւել քաղաքը, այլ որոշել էին միայն կանոնաւոր կողոպտել։ Հելլադի և Պելոպոնէսի ծաղկեալ վաճառականութիւնը և հարուստ արդիւնաբերութիւնը դրանով մահացու հարուած ստացան, որից այլ և ոչ վերականգնեցան։ Երբ նրանք Սիկիլիա վերադարձան, Թեբէի և Կորինթի արհեստաւորներին սոցա ընտանիքներով բնակեցրին Պալերմոյում և պահում էին շատ ազատ, այնպէս որ արդիւնաբերութեան այդ ճիւղը անսպասելի զարգացում ունեցաւ։ Հռովմէական պետութեան մենաշնորհութիւնը, որ մինչև այդ կառավարութիւնից խնամւում էր առանձին նախանձով և ամենամեծ գաղտնապահութեամբ, ապրեշումեայ փարթամ ըզ-*

գետանների և զառ կատարների պատերազմու-թիւնը, շուտով Նորմանների տէրութեան մէջ մի միջադէպից ունեցաւ որ օրէցօր խիստ վտանգաւոր դարձաւ: Դանուբի վրայ ծագած խռովութիւնները արգելեցին կայսեր Նորմաններից վրէժ առնել: Բայց Վենետիկեցիք երբ արտօնութիւն ստացան առանց մաքսի առևտուր անել Կրետէում և Կիպրոսում, իրենց նաւատորմիղով օգնեցին կայսեր Կորֆուի պաշարման ժամանակ: Չնայած Նորմանների զօրեղ ընդդիմութեանը՝ 1149 թ. ամրոցը անձնատուր եղաւ:

Մանուէլը պատերազմը տեղափոխեց Իտալիա: Դա միակ ճանապարհն էր ազատուելու նորմանական ծովահէններից, որոնք իրենց աւարառութիւնները հասցնում էին մինչև Կոստանդնուպոլսի դռները: 1151 թ. ժամանակաւորապէս գրաւեց Անկոնան, որով մեծ յուզում առաջ բերեց իր հին բարեկամների՝ Վենետիկեցոց մէջ: Երբ 1154 թ. Նորմաններից պարտութիւն կրեց, Մանուէլը բանակցութիւններ սկսեց Պապի և կայսեր հետ. բայց երկուսն էլ չկամեցան և չէին կարող օգնել նրա ծրագիրներին, որպէս զի նա հաստատուէր Իտալիայում: Արևմուտքը ոչինչ չէր կամենում լսել յունական Իտալիայի մասին: Ապուլիայում հաստատուելու

հետև Լանգոբարդցիք սատորին նեղն ընկած քաղաքին օգնութեան հասան։ Բայց երբ 1175 թ. Յունաց թշնամի Էնրիկո Դանդոլոյի ձեռնտուութեամբ Վենետիկը դաշն կապեց Սիկիլեայի Վիլհելմ Բ-ի հետ, Մանուէլը նահանջեց։ Վենետիկցիք նորից ձեռք բերին իրենց հին առանձնաշնորհութիւնները և պատերազմական ծախքերի համար առացան մի միլիոն ու կէս դուկատ։

Ամենից շատ Մանուէլը վնասել է տէրութեանը իր ապագայի համար ունեցած ծրագիրներով, որոնցով անուղղակի Բիւզանդիացին հետամուտ էր Յուստինիանի աշխարհակալական գաղափարները իրագործելու։ Իր քաղաքագէտների վրայ պարտք էր դրել յարաբերութիւններ սկսել Իտալիայում՝ Պապի դիւանում, յետոյ հռովմէական կայսեր բոլոր թշնամիների հետ և արեւմուտքում մրտքերը պատրաստել։ Սակայն իշխանները առանձին սէր չցոյց տուին նրան։ Դրա փոխարէն 1169 թ. սերտ յարաբերութիւն հաստատեց Լոմբարդիայի քաղաքների հետ։ Վենետիկը յունական փող էր ստանում իբրև նպաստ։ 1167. Անկոնան յունական պահապան զօրք մտաւ։ Ամենից առաջ կայսրը փորձեց խելօք և գործունեայ Աղէքսանդր Գ-ին, երբ սա Բարբարոսայի հետ խիստ թշնամա-

ցած էր, գրաւել իր կողմը խոստանալով արեւելքի և արեւմուտքի եկեղեցիները միացնել այն պայմանով, եթէ նա իրան արեւմուտքի կայսր կոչէ։ Այս անգամ կայսրը իսկապէս այդ կամենում էր լրջօրէն. յունական մի ժողովի վրայ պարտք դրուեց Հոգոյն Սրբոյ բխման մասին այնպիսի մի ձեւակերպութիւն ընդունել, որ նման լինէր արեւմտեան ուսմանը. բայց այդ խնդրում օրթոդոքս Հոգեւորականութիւնը գլխաւորապէս պատրիարքը անընկճելի էր։ Պապն էլ չհամաձայնուեց կայսեր օծումը. Նրա շահը չէր անդառնալի բաժանուել գերմանական տէրութիւնից. նա մինչև անգամ չէր էլ կարող վստահանալ։ Գործնականապէս ոչինչ չհասաւ. կայսրը մի յուսախաբութիւնից միւսի մէջն էր ընկնում։ Ցաւալին այն էր որ նրա այդ լաւատես երազները տէրութեան իրական վնասներ էին հասցնում. որովհետև դրանով խախտուել էին այն քաղաքական յարաբերութիւնները, որ իրերի բնական ընթացքից ցոյց էր տրուած։ Մանուէլի տիեզերական քաղաքականութիւնը բաժանում է առաջ նրա նախորդների հին դաշնակիցների՝ արեւմուտքի կայսրների մէջ։ Մինչդեռ երկուսի ընդհանուր թշնամութիւնը Նորմանների դէմ կարծես պէտք է որ այսպէս ասած բնական

որը իւր՝ հօր նման վաղաժամ մեռաւ՝ 24-ն Սեպտեմբերի 1180 թ. դեռ 58 տարեկան հասակում։

Մանուէլի անչափահաս Ալէքսիոս Բ որդու փոխարէն կառավարութիւնը վարում էին կայսրամայր Մարիան և Ալէքսիոս Պրոտոսեբաստոսը, կայսեր եղբօրորդին։ Այդ կառավարութիւնն էլ ընթացաւ սովորական լատինասէր ուղղութեամբ, թէև ժողովրդի և հոգևորականութեան մէջ վաղուց էր եռում լատինական կատաղի ատելութեան լուռ բարկութիւնը, և մինչև այդ միայն Մանուէլի զօրեղ ձեռքն էր կարողացել հանդարտ պահպանել այդ ազգային հելլենական ազգատիրական բորբոքումները։

Այն ժամանակ ազգային ոգևորուածների գլուխն անցաւ Անդրոնիկոս Կոմնէնը, որի նման հանճարեղ ոչ ոք չկար։ Եթէ այդ խորը հանճարեղ մարդը ունենար բարոյական կըրթութիւն և համոզուած սկզբունքներ, նա կարող էր հռոմէական ազգի վերածնողը դառնալ՝ քաղաքական ինչպէս նաև կրթական ասպարիզում։ Անդրոնիկոսը որ մի բնատուր իշխանական բնաւորութիւն էր, հաւասար մեծ՝ թէ իբրև զօրապետ և թէ իբրև քաղաքագէտ, աստուածաշնորհ ճառախօս, իւր մէջ ունէր համարեա բոլոր այն արժանիք-

ները, որ այն ժամանակուայ ուղղութիւն տուող շրջաններին՝ արեւելքի եւ արեւմուտքի տուրնիրներով եւ զուարճութիւններով զբաղուած ազնուական դասակարգի աչքում ան-նարաքծր եւ անձնամեծ զարմանք ազդողն էին: Իւր Հօրեղբօրորդի Մանուէլի նման արտակարգ գեղեցկութեան եւ հերկուլէնեան ոյժով՝ մի մարդ լինելով. նա ապրել էր առանց երկիւղի եւ արատի, սիրահարի անձնուիրութեամբ նուիրուած արտորդութեան, քաջահմուտ մարտնամարզական բոլոր վարժութիւններով, եւ դեռ երիտասարդական հասակից վարժուել էր մարտնական ամեն մի նեղութիւն կրելու: Այդպիսի անձը բնականաբար զինուորների եւ ազնուականների աստուածն էր: Բայց փտած արմատից չի կարող առողջ ծառ բուսնել: Նրա հայրը Կալոյովհաննէսի այն ազգապատուածան եղբայրն էր, որը իւր ազգը մատնելով, գլխաւորապէս ապրում էր Հռովմ արքունիքում, եւ եթէ մահմեդական չէր, բայց անտարբեր էր դէպի եկեղեցին, եւ ուստի, ինչպէս բնական էր, զուրկ էր բարոյական սկզբունքներից: Այն ժամանակուայ քարոզած օրթոդօքսութիւնը ոչ արեւելքում եւ ոչ էլ արեւմուտքում չունէր այլ եւս այն ոյժը, որ կարողանար քրիստոնէական հաւատի հետեւողներին բարոյապէս էլ կրթել:

րին մատնում էր Յունաց պետական գաղտնիքները. Նա Իկոնիայի սուլթանից իրան գործ էր առնել տալիս ինչպէս Դաւիթը Փղշտացոց իշխանից: Նա իւր աւազակային դղեակից յարձակումներ էր գործում Յունաց սահմանային երկրների վրայ, և քրիստոնեայ գերիներին իբրև ստրուկներ տալիս էր իւր հովանաւորողին: Եւ չնայած դրան՝ ազնիւ Մանուէլը դարձեալ ներում էր: Երբ Անդրոնիկոսը, որը անկասկած երդման մասին մտածում էր ինչպէս երբեմն Լիւզանդրը՝ հանդիսաւոր կերպով խոստացել էր, միշտ հաւատարիմ լինել նրա և նրա որդի Աղէքսիոսի շահերին, նրան բախշուեց Օյնէոն հարուստ քաղաքը Պափլագոնիայում, իւր հարուստ եկամուտներով: Բայց Անդրոնիկոսին բարոյապէս կործանել էր իսկապէս նրա անզուսպ զգայական կրքոտութիւնը, որին նա զոհում էր ամեն մի նկատում. և որը նրա լաւ յատկութիւնները թուլացնում էր:

Դրա հետ միասին ունէր անդիմադրելի քաղցրաբարոյութիւն և բոլորովին դիւական հմայութիւն, որին ապահովապէս զոհ էր գնում նա, որին նա թողնում էր իւր ցանցի մէջ. Դրանով կարելի է համեմատել ԺԶ դարու երկու հանճարեղ յանցապարտների հետ, Աղէքսանդր Զ պապի և նրա որդի Ցե-

ժար Բոլինիայի հետ։ Մանուէլայ կանայք անձնատուր էին նրան մոտենալ չկար։ Իւր ընտանիքը զրկեցին իշխանուհիները, յաւիտեան ազնուականութեան կանայքը ինչպէս նաև Ասորու Պաղեստինեան Փրանկական իշխանական տների տիկինները ծուփում էր նրան փոփոխակի իրենց շնորհքը։ Ճշմարիտ համարձակութիւն և ոգևորուած. սէր էր սածնում միայն դէպի մէկը՝ Թէոդորան, Երուսաղէմի այրի թագուհին, որ ծագումով Կոմնեն էր, իւր մօտ ազգականը։ Երկուսն էլ անհամբեր են իսկապէս զգայուն հաւատարմութիւն, միմեանց հետ կռուել են աքսորի հայր և դիմադրել հոգևորականութեան անէծքներին (մօտիկ ազգականութեան պատճառաւ)։ Բայց երկուսն էլ այն. ժամանակ այն հասակուած էին, ինչպէս երբեմն Անտոնիոս և Կլէոպատրան, երբ այդպիսի սիրահարական արկածները միայն ծիծաղ են շարժում։ Ահա այդպէս էր այդ զարմանալի մարդը, որին չենք կարող մեր սովորական չափերով չափել։ Միայն մի բան մնում է։ Նրա բարոյական անկայանութիւնը, որ կարող էր տէրութեան օրհնութիւնը լինել, իւր համար, անէծք է դառնել։

1182 Թ. Մայիսի 2-ին ապստամբութիւն ծագեց Մարիայի՝ Փրանսիական խնա-

միակալուհու դէմ։ Ժողովրդի և ազնուականութեան ազգասէր մասը, ինչպէս նաև օրթոդոքս հոգևորականութիւնը Անդրոնիկոսին որ արդէն 67 տարեկան էր, հռչակեցին տէրութեան ազատիչ։ Նա երևաց Քաղկեդոնի առաջ որպէս մի երկրպագու կայսեր ազատի նորա վատ խորհրդատուներից։ Երբ Լատինները իրենք իրենց կառավարութեան տիրապետութեան տակ դրին, այն ժամանակ Անդրոնիկոս Կոնդոստեփանոս բազմահաղթ հերոսը և նաւատորմիղը անցան թշնամու կողմը։ Տեղի ունեցաւ ազգային ատելութեան սարսափելի բռնկում։ Յարձակուեցին Լատինների բնակարանների վրայ։ Յոյներին առանձնայատուկ վայրագութեամբ ամենասոսկալի անգթութիւններ գործեցին մարդկանց և կանանց, հոգևորականների և աշխարհականների, նոյն իսկ երեխաների և հիւանդների դէմ։ Աւանդական ընդհանուր պատմութիւնը, աւելի քան արդար կերպով ազդուելով գործի ընթացքից, ըստ այնմ բոլորովին զուգահեռական գործողութիւնների մասին՝ միանգամայն հակառակ արժանիքի ջատագովն է կարդում։ Սիկիլիան երեկոն տօնում են իբրև ազատութեան ազնիւ գործ։ Իսկ նման գործողութիւնների համար, որ կատարել են Փոքր Ասիայից Միհրդատ Մեծի

ցող տունը։ Աւատական ազնուականութիւնը կռւում էր իր գոյութեան համար։ Նոր կառավարութիւնը նրան կործանում էր։ Լոպադիոնը, Նիկիան, Պրուսան առնուեցին։ Սակայն առաջինը գրաւեց Ալեքսիոս Բրանասը 1185 թ. ձմեռը, միւս քաղաքները առաւ գարնանը կայսրը, որ անձամբ դուրս էր եկել պատերազմի դաշտ։ Ոտքի կանգնած խռովարարները ըստ արժանոյն խիստ պատիժ կրեցին։ Անդրոնիկոսը ներեց միայն Իսահակ Անգելոսին՝ կարծես իր կորստեան համար։ Իսահակ Կոմնենը՝ կայսերական տան տակ երկրորդական շառաւիղներից մէկը ապստամբեցրեց Կիպրոսը և ինքն իրան հրատարակեց անկախ ինքնիշխան։ Բայց այդպիսի գահակալութեան ձգտողները Բիւզանդիոնում սովորական էին։ Դրանով նա չէր գլորուել։ Վտանգը եկաւ արևմուտքից։

Արդէն Կոստանդնուպոլսի 1182 թ. արեան բաղնիքից յետոյ իրենց նաւերի վրայ ազատուած Լատինացիները սկսել էին ծովահէնական պատերազմ, ծովափնեայ երկիրները մինչև Թեսալոնիկէ կողոպտել էին և եկեղեցիներն ու վանքերը այրել։ Բայց Վենետիկի և Պիզայի վաճառականները մնում էին անգործ։ Աւելի եռանդով զինուեց Սիկիլիայի Վիլհելմ Բ-ը (1166—1189)։ 1185 թ. Յու-

նիսին 200 նաւերից բաղկացած արմադան Մարգարիտոնէ ծովապետի և Լէնչէի Տանկրեդ դուքսի ղեկավարութեամբ, որը յետոյ Նորմանների վերջի թագաւորը եղաւ, նաւեց դէպի Դիւռախիոն: Ցուդաց Ցովհաննէս Բռանաս զօրապետը չվստահացաւ դէմ դնել Նորմանների զօրեղ և պատերազմում վարժ զօրքին: Դիւռախիոնը յարձակումով առան: Յետոյ յարձակւող զօրքը բաժանուեց: Ցամաքային զօրքը անարգել առաջ խաղաց մինչև Թեսալոնիկէ: Օգոստոսի 15-ն Նաւատորմիղն երևաց աէրութեան երկրորդ գլխաւոր քաղաքի նաւահանգստի առաջ: Բնակիչների բազմաթիւ օտարազգիները անվստահելի էին: Օգոստոսի 18-ն գրոհ Ալդոյինոն յարձակումով առաւ սորին քաղաքը, և Լատինները յիշելով 1182 թ. երբեկոն, սարսափելի վրէժ առան Ցոյներից: Արեան այդ հեղեղները, որ հոսեց այն ժամանակուայ ազգային ատելութիւնից, երկու ազգերի միջի պառակտումը հետևեալ ժամանակների համար ևս անբուժելի են դարձրել:"

Կոստանդնուպոլսում կատարուեց մրտքերի զօրեղ փոփոխութիւն այդ լուրերի ծանր" ճնշիչ տպաւորութեան տակ: Աղնուականները և արտօնեալները որոնց կողոպուտների առաջը կայսրը փակել էր, վաղուց էին

մասամբ վրէժխնդրութեան մասին։ Բայց նաև ժողովուրդը, որի սիրելին էր, քանի որ նա յագուրդ էր տուել նորա ատելական, պանծարձակ կրքերին, դժգոհ էր, որովհետև կայսրը սահմանափակել էր հասարակական ծախսերը, և սովորութեան համաձայն՝ ինքը իր ներկայութեամբ չէր պատւում։ Անդրոնիկոսը իւր դէպի մարդիկ ունեցած ատելութեամբ արհամարհել էր սպառնալից վտանգը։ Օդը փոթորիկներով եղկուացած էր և ամենաթեթև առիթից փրթկեց ահեղ փոթորիկը։ Կայսրը խնայել էր Անգելների տան մեծին, երկչոտ և բնաւորութիւնից զուրկ Իսահակին, բոլորովին անվտանգ համարելով։ Յետոյ նրա ոստիկանութեան մինիստրը՝ Հագիոքրիստոփորոսը իւր սեպհական իրաւունքով կամեցաւ նրան կալանաւորել տալ։ Սակայն Իսահակը մահուան օրհասը տեսնելով դիմեց Սոփիա եկեղեցու ապաստանարաններին։ Ժողովրդի բոլոր դասակարգերը հաւաքուեցին ի միասին տեղի ունեցան—չլսուած երևոյթ, կայսերական աղմկալից ընտրողական ժողովներ։

Իսահակ Անգելոսին կայսր հրատարակեցին 1185 թ. Սեպտեմբերի 15։ Անդրոնիկոսը միայն այդ ժամանակ մայրաքաղաք շտապեց Մելուդիոնի իւր ամարանոցից։ Իւր վարժ սրատեսութեամբ նկատեց որ զուր

*Իսահակ Անգելոսը* (1185—1195)։ մարմնացեալ չարախօրիղծը՝ բազմեց Կեսարների փառած գահի վրայ։ Ամենից առաջ նա ստիպուած էր դէմ դնել Նորմանների վտանգին, որ ծագել էր յունական ազգային զգացմունների գազազման պատճառով։ Բայց երևաց որ այդ վտանգը աւելի փոքր էր, քան ենթադրել էին։ Զեխ կեանքը և խաղողի անչափ գործածութիւնը Նորմանների մէջ տարածեցին չարագուշակ հիւանդութիւններ, նուազացնելով նոցա շարքերը։ Դրա վրայ աւելացաւ նոցա հաղորդութիւնը և անհոգութիւնը, որ ծառայելու էր ի վնաս շարունակ յաղթելու սովորածներին։ Իսահակը այնքան խելօք էր, որ Յունաց ամենալաւ զօրապետին՝ Ալէքսիոս Բրանասին կարգեց պաշտպանողական զօրքի հրամանատար։ Մոզինոպոլսի մօտ յաղթող ընդհարումից յետոյ 1185 թ. Նոյեմբերին 5-ն տարան Դեմետրիցայի (Demetrica) արիւնալից յաղթութիւնը, որի ժամանակ նոցա ձեռքն ընկան Նորմանների առաջնորդները 4000 մարդով։ Մնացորդը սարսափահար փախաւ Թեսալոնիկէ, այնտեղից Դիւռախիոն կամ Նաւատորմղի վրայ։ 1186 թ. Նորմանները մնացին սահմանափակուած Դիւռախիոնում և յոնիական կղզիներում։ Բայց Դիւռախիոնն էլ և 1191 թ. մինչև անգամ

Կորիւֆոն գրաւեցին Վենետիկը: Միայն Կեփա-լենիան և Զակինթոսը մնացին իրենց օրինական տեր-հպատակութիւններ: Թեսալիան Մակեդոնիայի ծովափնեայ իշխանութեան տակ: Այդ էր միայն խղճուկ «Թագաւորը» ամբողջ մեծ յաջորդող մեծ ձեռնարկութիւնից:

Իսահակի իշխանութեան ընթացքում հե-տևողութիւնն էր, որ այնքան էլ նրա մէջքը չպէտք է համարել, պետական և տնտեսական վարչութեան մէջ կատարեալ յեղաշրջութիւն. Անդրոնիկոսի այնքան փրկարար կարգադրու-թիւնները ընդմիշտ ոչնչացրին: Փողի եկա-մուտները նորից մտնում էին աղմուկ ականու-թեան և գլխաւոր պաշտօնեաների գրպան-ները: Իսահակը սիրում էր փառաւոր տօ-քունիք և ազնուական հանդիսաւոր տօներ: Այդ էլ էր ահագին գումարներ կլանում: Հունգարների հետ, որոնք 1183 թ. Անդրո-նիկոսի ժամանակ գրաւել էին յունական Դալ-մատիան, Իսահակը խաղաղութիւն հաստա-տեց և ամուսնացաւ թագաւորի աղջիկ Մար-գարիտի վրայ, որը հազիւ տաս տարեկան էր: Այդ բարձր ազգակցութեան դէպքի պատճառով, բոլոր նահանգներից արտակարգ հարկեր հաւաքեցին: Մանաւանդ անտանելի-պէս խիստ վարուեցին կայսերական հարկա-ժողովները Անխիալոսի և Հեմուսի շրջակայ-

ցինչ ամէն Մելիսէ։ Բոտանիաթը, որին պատերազմ ուղարկեցին, ինքն իրան հակաթոռ կայսր հրատարակեց Սիրիականապոլսում և գլխաւորեց։

Հետևեալ տարիների պատերազմներում Բուլղարները դիմադրեցան Կումանների հետ միացած, նրանք թալանում էին մինչև Ադրիանուպոլիս և Մակեդոնիան, երկար ժամանակ ճնշուած ժողովրդի դառնութիւնը արտայայտւում էր սոսկալի անգթութիւններով կոտորելով. Նոյն ախորժակն ունէին նոցա դաշնակից Կումանները։ Անհնարին ձևով այդ երկիրների Յոյները հողի երեսից ջնջուեցին և սահմանափակուեցին ծովափներում և մի քանի կղզիացած դիրքերում, ինչպէս այսօր է։ Ոչ թէ խաչակիրները այլ Սելջուկները Անիայում, Բուլղարները և [Վլ]ախները Եւրոպայում ընդմիշտ անհնար են դարձրել յունական ազգի մեծ պետութեան վերականգնութիւնը։ Դանուբի և Հեմուսի մէջ սահմանուել էր արդէն անկախ Բուլղարիա։ Զմըշկեկի և Բասիլեյոսի գործը ոչնչացել էր։ Տէրութեան կազմալուծութեան գործը սկսուել էր։

Յոյների ճշմարիտ բախտն էր, որ յաջողեցին նոցա թագաւորին գերի վերցնել։ Դրանով մայրաքաղաքի փոքր կռիւները դոնէ մի-

առժամանակ 1188 թ. զինադադարով ընդհատուեց։

• Ինչքան էլ ողորմելի էր Իսահակը, նա անարդար կերպով է տուժել իր նախորդների մեղքերի փոխարէն, թէ Նորմանների պատերազմում և թէ խաչակիրաց երրորդ արշաւանքի ժամանակ։ Մանուէլ կայսեր ձգտումը՝ ստեղծել մեծ պետութիւն, որով նա սուլթանների հետևից էր վազում, քանդել էր արևմուտքի կայսեր այնքան կարևոր նշանակութիւն ունեցող բարեկամական կապերը։ Ուստի հեշտ հասկանալի էր, երբ Երուսաղէմի անկման սարսափելի լուրը (Յուլիս 1187) միանգամ ևս ամբողջ Եւրոպան ոգևորեց խաչակիր արշաւանք վերսկսելու, Հռովմայեցոց կայսրը երկչոտ կասկածանքով էր նայում իր գերմանական եղբօր՝ Ֆրիդրիխ Բարբարոսա կայսեր մօտենալու վրայ։ Մինչդեռ գերմանական կայսրը ուղղամիտ դիտաւորութեամբ 1188 թ. Նիւրնբերգում բանակցութեան մէջ էր մտել Յունաց դեսպանի հետ երկրից անցնելու համար և առաջուց ուղարկել էր մի փառաւոր դեսպանութիւն։ Բայց բիւզանդական կայսրը իր անսահման վախկոտութեամբ դիմեց ամենայիմար գործողութիւնների։ Երբ 80,000 մարդկանցից բաղկացած գերմանական զինուոր գնդերը մօտեցան նրա տէրութեա-

նը, Իսահակը պահել կապեց Սալահ-էդ-դինի՝ խաչակիրների ոխերիմ թշնամու հետ, ընդ-դեմ խաչակիրների, և այնքան սերտացավ, որ թույլ տվեց մուսուլմաններին մայրաքա-ղաքում մզկիթ շինել։[1] Բացի այդ նրա գի-ւանը անզօր Հպարտութեամբ՝ վիրավորեց պատերազմի Հայտնի Հերոսին մանկամիտ տիտ-ղոսներով կոչելով՝ «Մեծ իշխան Գերմանիա-յի»։ 1189 թ. Օգոստոսի 26-ն Փրիդրիխը Հասավ Փիլիպպուպոլիս. բայց նա տէրութեան քայքայման վիճակի մասին մանրամասն տե-ղեկութիւններ քաղեց այդտեղ բնակվող Հայ վաճառականներից։ Յոյները վարւում էին չա-փազանց թշնամաբար և անտառներում, ու-ղեներում յարձակւում էին խաչակիր զորքի առանձնացած գնդերի վրայ։ Դրա փոխարէն Սերբիայի Ստեփան Նեմանեան իշխանը Հիւ-րասիրութեամբ ողջունեց Փրիդրիխին Նի-

1. Հարկաւոր չէ այստեղ Յունաց համբերողութեան մասին գեղեցիկ ճառեր անել։ Այն ժամանակուայ Յոյների եւ արեւմտեցիների ընդհանուր կարծիքով այդ քայլը համարւում էր դաւանանութիւն Աստուծոյ դէմ։ Այդ գործը յիշատակելի է միայն իբրեւ այն խելացնոր ատելութեան առաջի արտայայտութիւն, որ հետեւեալ շրջանի Յոյներին անել էր տալիս, թէ աւելի լաւ է ընդունել թուրքերի հա-ւատը քան լատինիներինը, եւ այդ բոլորը՝ «և յորդւոյ»— filioque-ի պատճառով։

շում, և բուլղարների իշխանները նրանց առաջարկեցին իրենց դաշինքը և նպաստութիւնը 40,000 կումանական և բուլղարական զօրքով, եթէ կուզենայ «Ցարիգրադը» առնել: Բայց կայսրը, Հաստատամիտ իւր ուխտին, չկամեցաւ մի քրիստոնեայ պետութեան կործանումով իւր իսկական նպատակը աչքից գցել: Նրա հաստատամտական դիրքը այնպէս ազդեց յունական թուլամորթի վրայ, որ սա որոշեց համաձայն դաշինքի անարգել թողնել նրա զօրքին անցնել Ասիա: Ասիական հողի վրայ էլ Յոյները շարունակեցին իրենց խարդախութիւնները: Բայց և այնպէս Գերմանացիները նոցա համար մեծ ծառայութիւն մատուցին: Սելջուկները, որ Թրակեցւոց թեմի յարատև պատուհասներն էին: Իկոնիայի առաջ հիմնովին ջարդ կրեցին, և նոցա քաղաքն էլ յարձակումով առնուեց: Սելջուկների իշխանութեան թուլանալը Յոյների օգուտն էր: Բայց Իսահակը Ալեքսիոս չէր, որպէս զի այդ յաջող փոփոխութիւնից բոլոր ոյժով հարկաւոր օգուտն ստանար:

Ընդհակառակը՝ կայսրը իտալական հասարակապետութիւնների հանդէպ, այնպիսի խելացի քաղաքականութիւն բռնեց, որ համապատասխան էր տէրութեան վատ դրութեանը: Որովհետև Նորմանները միացել էին

Կիպրոսի հետ և 1186 թ. յաղթել էին յունական նաւատորմիղը, կայսերական դիւանը փորձեց 1182 թ. յիշատակը մոռացնել տալ և 1187 թ. կանոնաւոր դաշինք հաստատեց Վենետիկի հետ, վերահաստատելով և ընդլայնելով նոցա հին արտօնութիւնները, նա հաստատեց նաև 1192 թ. Պիզացոց և 1193 թ. Ջենովացոց հին իրաւունքները։

Բուլղարների դէմ Իսահակը 1190 թ. Բերոյէայի մօտ ծանր պարտութիւն կրեց. Վառնան, Անխիալոսը, Նիշը և Տրիադիցան նոցա զոհ գնացին։ Դրա փոխարէն նա կարողացաւ յաղթել հպարտ Սերբին 1193 թ. Նիմանեայի մօտ Մորաւայի վրայ։ Բայց միացեալ Բուլղարները, Կումանները և Վլախները նրան զգալի հարուած տուին 1194 թ. Արկադիուպոլսի մօտ.

Դրա վրայ աւելացաւ տէրութեան սպառնացող վտանգը Գերմանացոց կայսր Հենրիկոս Զ-ից, որ կտրուկ եղանակով արտայայտեց իւր դժգոհութիւնը բիւզանդական քաղաքականութեան մասին Մանուէլից սկսած և իբրև Նորմանների իշխանների յաջորդ, պահանջեց իրան տալ Դիւռախիոնը և Թեսալոնիկէն։ Իսահակը պատրաստութեան վրայ էր Բուլղարների դէմ արշաւելու, երբ 1195 թ. Ապրիլի 1-ն գահընկէց եղաւ իւր եղբայր Ալէք-

սիոս Գ-ից (1195-1203) և կուրացաւ։ Փոփոխութեանը առաւելութիւններ չունէր։

Իրաւ է տէրութիւնը 1198 թ. Սալահ-էդ-դինի մահով ազատուեց իւր մի սարսափելի թշնամուց. բայց գերմանական Հէյնրիկոս Զ կայսեր բռնած դիրքը աւելի վտանգաւոր էր։ Ալէքսիոսը յիմարաբար Վենետիկեցոց էլ էր իրենից հեռացրել, երբ 1196 թ. հրաժարուեց հաստատել նոցա առանձնաշնորհութիւնները։ Եւ այդ նրանով էր հակաքաղաքական, որ նա միայն նոցա օգնութեամբ էր կարող դիմադրել գերմա-նորմանական մեծ ոյժին. բացի այդ 1193 թ. դոժ էր հաստատուել ծեր Էնրիկօ Դանդոլոն, որ առաջնակարգ քաղաքագէտ էր, բայց առանձին համակրանք չունէր դէպի Բիւզանդիոնը, և նրան հարկաւոր չէր գռգռել։ Այդպիսով արևելեան հռովմէական դիւանը նորից բոլորովին առանձնացած էր, երբ 1196 թ. աշնանը եկան Հէյնրիկոսի դեսպանները և սարսափահար կայսեր ընդունել տուին ամենանուաստացուցիչ պահանջներ։ Նա ստիպուած էր, որպէս զի մեծ հողեր տուած չլինի, հարկ վճարել, միայն թէ առաջուց 5000 ոսկու պահանջը իջեցրին 1500-ի։ Սակայն Հէյնրիկոսի մահը 1197 թ. ի մեծ ցնծութիւն հռովմէական ազգի՝ նոցա ազատեց «Ալլեմաններին հարկից»։

Ալեքսիոսի կառավարութիւնը, որը հըպարտութեամբ իրան վերակոչել էր Կոմնէնը, աւելի լաւ չէր քան նրա եղբայր Իսահակինը։ Եթէ Ստրիւփնոս ծովապետը աճուրդի էր հանում հնացած նաւեր և անգործածելի իրեղէններ, այնքան էլ վատ չէր. ինչպէս Նիկետաս պատմագիրն է կամենում մեզ հաւատացնել։ Սակայն զուտ բիւզանդական յատկութիւն էր, որ ստացած դրամը գործ էր դրւում ոչ թէ նորերը գնելու համար, այլ մտնում էր այդ բարձր պաշտօնեայի գրպանը։ Սև ծովի ծովահինութեանը կայսրը և օրքունիքը մասնակցում էին իբրև գաղտնի աշխատակիցներ, Թէև Հռոմի սուլթանի պահանջի հանդէպ ստիպուած էին նրա հպատակների վնասը հատուցանել։

Կայսրը չէր կարող բուլղարների հետ խաղաղութիւն հաստատել նոցա անամօթ պայմանների պատճառով։ Սերէի մօտ նոքա յաղթեցին մի յունական զօրք։ Այդ ժամանակ սարսափելի Յովհաննէս Ասեն Ա-ը 1196 թ. սպանուեց Տրնովոյի պալատում իր հաւատարիմներից մէկի՝ Իվանկոյի Հելենա թագուհու քրոջ սիրականի ձեռքով։ Նա փախաւ բիւզանդացոց մօտ։ Իսկ Կալոպետրոսի (մեռաւ 1197) կարճատև կառավարութիւնից յետոյ, յաջորդեց Յունաց անհաշտ թշնամի

Կալոջանը (1197—1207)՝ որը իր խորամանկութեամբ, անգթութեամբ և անողորմ խստութեամբ՝ միացած քաղաքական մեծ խելքի հետ, Յոյների համար այնպէս սարսափելի դարձաւ, ինչպէս երբեմն Բազիլիոս Բ-ը Բուլղարների համար էր։ Մակեդոնիայում էլ Բուլղարները ոտքի՝ կանգնեցին։ Ալէքսիոսը չկարողացաւ ընկճել Դոբրոմիր Սարէզ բոլեարին. նա նրան կնութեան տուաւ իր ազգականներից մէկին։ Իվանկոն, որը իբրև Յոյն կոչւում էր Ալէքսիոս, թէև Բուլղարներին յաղթեց Փիլիպպուպոլսի մօտ, դաւաճանեց Յոյներին էլ. ինչպէս երբեմն իր հայրենակիցներին և կարողացան միայն 1200 թ. նրան կալանաւորել, երբ նա կողոպտելով հասել էր մինչև Էգէյեան ծովը։ Վերջապէս 1201 թ. երբ կայսեր եղբօրորդի Կամիւցէսը ևս ապըստամբուեց, Յոյները խաղաղութիւն հաստատեցին Բուլղարների հետ, որը վերջիններիս համար խիստ շահաւէտ էր, որով նոքա պահպանեցին իրենց բոլոր տիրապետութիւնները Բելգրադից մինչև Սև ծովը և Վարդարը։ Այդ գործը Կալոջանի նշանաւոր քայլերից էր որ Հռովմի հետ հաստատեց երկարատև բանակցութիւններից յետոյ միութիւն, որը սակայն լուրջ չէր։ Իննոկենտ Գ-ի կարդինալ Լէօ պեսպանը Բարսեղին օծեց բուլղարիայի

*արքեպիսկոպոս, իսկ մետրապոլիտ Պալիէնի և եպիսկոպոսների համար — բոլորն էլ բուլղար ցեղից քահանաներ էին — Թագեր բերեց.* 1204 *թ. Նոյեմբերի* 8-*ն Կալոջանին հանդիսաւոր կերպով օծեց կարդինալը։*

*Մինչդեռ այդպիսով իրերի դրութիւնը Եւրոպայում Հռովմայեցիների համար անյաջող ընթացք ստացան, Ասիայում էլ նոքա ստիպուած էին շարունակ կռուելու Սելջուկների և ապստամբ նահանգների դէմ։ Յունաց հպատակները գրաւուելով Քայ քո-ռու սուլթանի առաջարկած նպաստաւոր պայմաններով, մեծ թւով գաղթում էին նրա երկիրը։ Բնական է այդ ողորմելիները դառն զգում էին որ խաբուած են և աւելի ճնշման տակ ստանում էին իրենց դաւաճանութեան արժանի վարձը։*

*Իտալական վաճառականների հպարտութիւնը անտանելի էր դարձել։ Գաֆոռ Ջենովացին, մեծ ծովապետից դրամական տուգանքի ենթարկուելով, ծովահէն դարձաւ և կողոպտում էր անպաշտպան կղզիները և ծովափերը։ Նոյնքան վատահամբաւ Ջիովանի Ստիրոնէն Կալաբրիայից, ընդունուեց կայսերական ծառայութեան մէջ իբրև փոխ ծովապետ, և սա միայն Պիզացիների օգնութեամբ* 1198 *թ. կարողացաւ անվնաս դարձնել Գա-*

ֆոռին։ Սակայն նրա փեսա Վենետիանոն շարունակեց ծովահինական կռիվը, և երբ այդ պատճառով յունական կառավարութիւնը ճընշիչ միջոցներ գործ դրեց Ջենովացոց դէմ, որոնք սկսեցին երկարատև բանակցութիւններ և վերջ ի վերջոյ տէրութիւնը ստիպուած եղաւ զիջումները տալ։ Երբ կայսրը Պիզացիներին գերադասութիւն տուեց, դրանով կատաղեցրեց զօրեղ Վենետիկեցոց։ Կորստաբեր էր, որ կայսրը չհասկացաւ լաւ յարաբերութիւն պահպանել հզօր Դանդոլոյի հետ։ Տէրութեան կազմալուծութիւնը մեծ քայլեր էր անում։ Զանազան նահանգների փառասէր կուսակիցները փորձում էին հաստատուել իբրև անկախ բռնակալներ. նոցա մէջ ամենայայտնին է Լևոն Սգուրոսը, Նաւպլիոնի արքոնտը, որը 1202 թ. գրաւեց Արգոսը, շուտով նաև Կորինթը։ 1203 թ. նա արշաւեց Աթէնքի դէմ. սակայն Միքայէլ Ակոմինատոս մետրապոլիտի հերոսական պաշտպանութիւնը ազատեց Ակրոպոլիսը (միջնաբերդը)։ Ընդհակառակը Թեբէն իսկոյն անձնատուր եղաւ։ Սակայն Թերմոպիլէի մօտ յաղթուեց Թեսալոնիկէի նոր թագաւորի՝ Բոնիֆացիօ ֆոն Մոնֆերատի պատերազմներում վարժուած ասպետներից։ Նման կիսանկախ դրութիւն ունէր. «իբրև Խալքիայի հերձողների» Գաբե-

*րաս հայկական տունը, որ ծագում էին Տարօնի հին իշխաններից։ Մեծամեծ աւատական և սեպհական կալուածներ ունէին Կիպրոսում և Էտոլիայում Կանտակուզինները, Բռանանները, Մելիսինները և լն։ Մի խօսքով տէրութիւնը աւելի էր աւատական իշխանութեան կերպարանք ստացել, որի կնիքը վերջնականապէս զարկեց Ֆրանկների տիրապետութիւնը։*

*Տէրութեան վախճանը անդադար մօտենում էր։ Փիլիպ Շվաբացու, գահազուրկ Իսահակի Էյրենէ աղջկայ ամուսնու ձեռքերը առժամանակ կապուած էին գերմանական հակաթոռ թագաւորից։ Սակայն իրերը նորից ստացան իրենց սովորական ընթացքը, երբ Ինոկենտիոս Գ մեծը (1198—1216) կարողացաւ իւր նոր խաչակրական քարոզով ոգևորել մանաւանդ Ֆրանսիական բարեպաշտ, անձնազոհ և պատերազմասէր ազնուականութիւնը ս. երկրին վերստին տիրելու համար։ Ճշմարիտ պետական մարդու խելք էր մեծ պապի միտքը, զօրեղ յարձակումով Աղեքսանդրիայի և Եգիպտոսի դէմ՝ բուն երկրի մէջ մահացու հարուած տալ Էյյուբիդների պետութեանը, որ իշխում էր Պաղեստինի վրայ։ Վենետիկում հաւաքուեցին Ֆրանկների և Ֆլամանդրացիների խաչակիրները, որպէս զի*

պայմաններ հաստատեն հասարակապետութեան դօժի հետ, որ ծովերի իշխողն էր։ Սակայն Էնրիկո Դանդոլոն Եգիպտոսի հետ ամենալաւ յարաբերութեան մէջ էր, որովհետև արևելեան Հնդկաստանից Եգիպտոսի հովիտը եկող թանկագին ապրանքներն ուղարկւում էին ջրանցքների քաղաքը։ Այն կրօնական նպատակները, որ պապը իւր աչքի առաջն ունէր նորանցով ոգևորուած էին ազնիւ ֆրանկները, այդ հանճարեղ՝ իշխելու ընդունակ անձի համար, որ սակայն ունէր իւր մէջ զուտ վաճառականական ոգի, միանգամայն օտար էին և անտարբեր։ Բացի այդ, ասպետների խաչակրաց գաղափարով ոգևորուած առաջնորդը՝ Շամպայնի Թիբօ Գրաֆը մեռաւ 1201 թ. մայիսի 24-ին և Վիլէհարդուին մարշալը ընտրել տուեց Մոնֆերրատի Բոնիֆացիօ Բ մարկ Գրաֆին, որը քաղաքական միանգամայն առանձին ծրագրեր ունէր և որը բացարձակապէս հակայունական էր։

1201 թ. մայիսին արդէն հասկացել էր Էնրիկո Դանդոլոն խաչակրաց հետ իւր կապած դաշնագրութեան, որ քաղաքագիտական հմտութեան փայլուն վարպետական մի գործ էր, առանց այն էլ տնտեսապէս բոլորովին հասարակապետութիւնից կախում ունեցող ասպետներին կատարելապէս ծառայե-

ցնել իւր շահերին և ծրագրերին։ Մեծ պապը հասկացաւ իւր հակառակորդի միտքը և կամեցաւ դաշնագրութիւնը միայն այն պայմանով ընդունել, եթէ ձեռնարկութիւնը ուղղուած չլինիլ քրիստոնէականների դէմ։ Սակայն Վենետիկը բացարձակապէս հրաժարուեց ընդունել այդ պարտաւորութիւնը։ Այդպիսով խաչակիրների կրօնական ոգևորութիւնը Վենետիկեցիք ծառայացրին իրենց քաղաքական նպատակներին, այնպէս անվայել եղանակով, ինչպէս Վիեննայի վեհաժողովի քաղաքագէտներն օգտուեցին 1813 և 1815 թ. ժողովուրդների կողմից ազգային գաղափարի համար մատուցած զոհերից։ Դիպուածը օգնեց Վենետիկեցւոց։ Իսահակի որդի Ալէքսիոսը Պիզացիների օգնութեամբ փախաւ արևմուտք։ Իննոկենտը բաւական հաւատարիմ իւր սկզբունքներին՝ նորան չընդունեց. սակայն իշխանի փեսան Փիլիպ Շվաբացին նորան ընդունեց գրկաբաց. խաչակիրների զօրքի մէջ կային բազմաթիւ Գերմանացիներ Հռենոսի կողմերից. Բոնիֆացիօ Մարկ Գրաֆը Փիլիպպի հետ լաւ յարաբերութեան մէջ էր։ Ուստի նրա ցանկութիւնը՝ վերահաստատել Իսահակին և նրա որդուն, մի պայման որ այնքան համաձայն էր Դանդոլօի ծրագրերին, մեծ հաճոյքով ընդունեցին խա-

*ծերի։ Հռոմը բանադրեց Վենետիկեցւոց և հասկացրեց խաչակիրներին, որ նոցա գործը չէ Յոյներին և նոցա կայսեր պատժել նորա մեղքերի համար։ Սակայն Ալեքսիոս իշխանը խոստացաւ երկու հարիւր հազար մարկ արծաթ և անհաւատների դէմ կանգնելու համար տասը հազար զինական զօրք մի տարի ժամանակով և միութիւն հռոմէական եկեղեցւոյ հետ, որոնք խիստ շահաւոր և խելացի պայմաններ էին։ Դեռ խաչակիրներից շատերին խիղճը տանջում էր. բայց Դոժի և Մարկ գրաֆի համոզեցուցիչ խօսքերը մանաւանդ անսահման աւարի յոյսը, մեղմացրեց շատ չնչին բացառութեամբ ասպետներին, որոնք ընդհանրապէս անուանապէս խեղճ վիճակ ունէին։ Աստուծոյ գործը զոհեցին մամոնային։*

*Դանդոլօն և Բոնիֆացիօն այդ ձեռնարկութեանը ուղղութիւն տուին ճշմարտապէս զարմանք ազդող խոհականութեամբ։ Վենետիկեցւոց նաւատորմիղը յաջողապէս մտաւ արբելին 1203 թ. վերջերին Դիւռախիոնը։ Արդէն յունիսի 27-ին նաւատորմիղը, որ ունէր քառասուն հազար կռուողներ, խարիսխ ձգեց Սկիւտարի՝ հին Քրիսոպոլսի մօտ, կայսեր մայրաքաղաքի դէմ յանդիման։*

*Կայսրը մայրաքաղաքի մէջ դոցա դէմ*

ժողովել էր, ինչպէս ասում են, վաթսուն հազար մարդկանցից բաղկացած մի զօրք. սակայն կարելի էր միայն յուսալ վարանգների վրայ։ Միայն վերջին րոպէին էին մտածել վերանորոգել պարիսպները և կարգի բերել թոյլ և փթած նաւատորմիղը։ Յարձակումը սկսեցին Պերա արուարձանի դէմ։ Յուլիսի 6-ին ընկաւ Կալաթիայի ամուր աշտարակը։ Կայսեր քաջ փեսան՝ Թէոդորոս Լասկարիսը Վարանգները և Վենետիկեցւոց թշնամի Պիզանցիք պաշտպանում էին հերոսաբար, երբ յարձակումն ուղղեցին նոյն իսկ մայրաքաղաքի դէմ։ Յուլիսի 17-ին կայսրը համարեա թէ սարսափած՝ փորձեց քաղաքից դուրս գալ միայն Փրանկների քաջութեան առաջ տեղի տուաւ։ Ողորմելի իշխանը գիշերը հետն առնելով թանկագին քարերը և գանձը փախաւ Դեբելտոն։ Այն ժամանակ Կոստանդինը՝ պետութեան գանձապետը, բանտից հանեց կոյր Իսահակին և նրան և նրա որդի Ալէքսիոս Դ. (յուլիսի 18. 1203—28-ն յունվարի 1204 թ.) հրատարակեց կայսր։ Իշխանը բարոնների առաջնորդութեամբ հանդիսաւոր մուտք գործեց իւր քաղաքը։ Խաչակիրների առաջնորդներն իջան Բլախերների կայսերական պալատում, իսկ ուխտաւորները բանակեցին քաղաքում։ Սակայն Իսահակ

կայսեր խնդրանքով ուխտաւորների բանակը
տեղափոխեցին Ղալաթիայի դաշտը և Նաւա-
տորմիղը խարիսխ ձգեց Պերայի մօտ, երբ
Դանդոլօն քաղաքի պարիսպների մի մասը
կործանել էր։ Ալէքսիոս Դ-ին ծառայում էր
Փրանկների պահապան գունդը։ Սկզբից Յոյ-
ները վճարեցին հարիւր հազար մարկ. սա-
կայն Վենետիկեցիք ուղղակի կէսը իրենց հա-
մար վերցրին. Մնացածի 35,000 մարկը առան
ուխտաւորների պարտքի փոխարէն։ Անհեռա-
տես խաչակիրների մէջ տիրում էր ընդհա-
նուր դժգոհութիւն։ Նորա չըմբռնեցին ժա-
մանակի նշանները, թէև արդէն այժմ սկսուել
էր այն դրութիւնը, որ երկու և կէս դար
տևողութիւն պիտի ունենար։ Տէրութիւնը
և նրա կայսրը արդեօք Փրանկներ էին դոքա
թէ Յոյներ, չնայած այն բարձր ինքնահա-
ւանութեան, որ կայսրներն երբեմն արտա-
յայտում էին, կատարելապէս կախումն ու-
նէին իտալական մանրավաճառ ժողովրդի
գթութիւնից։ Նոքա գլորուելու էին հէնց որ
Վենետիկը յետ քաշուէր, կամ աւելի ճիշտն
ասած եթէ նա ստիպուած լինէր վաճառակա-
նական-քաղաքական հաշիւների պատճառով
հեռանալ նոցանից։ Նախկին յարաբերու-
թիւնը փոխուել էր, առաջուայ ծառաները
այժմ դարձել էին տէրեր։ Միայն մայրաքա-

գաւթն էր պատկանում երկու կայսրներին. Նահանգները դեռ հնազանդ էին Ալէքսիոս Դ-ին որ գնացել էր Ադրիանուպոլիս: Շուտով ծագեց յունական ժողովրդական ապստամբութիւն, որին զոհ գնացին Պիզացւոց և Ամալֆիացիների խանութների մթերքները և թաթարների մզկիթը: Դրա վրայ աւելացաւ մի սոսկալի հրդեհ: Մինչդեռ Ալէքսիոս Դ-ը Փրանկների օգնութեամբ նուաճեց Թրակիան, մայրաքաղաքի մեծամեծները որոշեցին ընդդիմանալ, և վերաշինեցին քաղաքի պարիսպները: Իսահակը և Ալէքսիոսը բոլորովին յոգնել էին Փրանկների անամօթութիւնից. Դանդոլոյի կոպիտ խօսքերը, ուղղած երիտասարդ կայսեր, կրակի վրայ իւղ աւելացրին. «անամօթ տղայ մենք հանեցինք քեզ աղբի միջից և կարող ենք քեզ աղբի մէջ թաղել»: Այն ժամանակ յանդուգն և քաջ Ալէքսիոս Դուկաս Մուրծուֆլոսը` կայսերական տան ազգականներից մէկը, ինքն իրան հրատարակեց տէրութեան խնամակալ: Յոյները մի քանի անգամ, թէև անյաջող, յարձակումներ գործեցին մայրաքաղաքից: Բայց Փրանկների բանակում իշխում էր սոսկալի սով: Յունվարի 25 ին ծագեց յեղափոխութիւն. ազնուականները, հոգևորականները և ժողովուրդը միացան, կայսերական ընտրութիւն անելու

որ վերջի ժամանակները սովորական էր դառնել։ Երբ որ յունվարի 28 առանց պատրիարքի համաձայնութեան Նիկողայոս Կանաբոսին կայսր օծեցին, այն ժամանակ պատրիարքը հանգիստաւոր կերպով (1204 թ. փետրուարի 5-ին Մուրզուֆլոսին օծեց օրինաւոր կայսր Ալեքսիոս Ե. անունով։

Ալեքսիոս Դ-ին խեղդեցին. Նրա խղճալի հայրը մեռաւ սարսափից։ Անհիմն փթած գիջողութիւնները դադարեցին։ Յոյները և Լատինները կանգնած էին միմեանց դէմ յանդիման իբրև կատաղի թշնամիներ։ Նոր կայսրը իսկոյն դադարեցրեց փող վճարելը և խաչակիր զօրքից պահանջեց հեռանալ. ազատութիւնը կռուի մէջ էր։ Կայսեր յարձակումը Ֆրանկների վերայ, որոնք Սև ծովի հարաւում Փիլէա քաղաքի աւարով ծանրաբեռնուած վերադառնում էին, անցաւ այնպէս անյաջող, որ տէրութեան մեծ սրբութիւնը՝ Պանագիա Հոդեգետրիա՝ գթութեան պատկերը, որ ձեռների վերայ տանում էր պատրիարքը և որը Ղուկաս աւետարանչի ձեռագործն էր, ընկաւ Պիերրը Բրաշեօլի ձեռքը։ Ամբողջ մարտ ամսում Փրանկները մեծամեծ պատրաստութիւններ էին տեսնում։ Շինեցին հզօր պաշարողական մեքենաներ և մագլցելու սանդուխներ։ Սակայն Ալեքսիոս

Ծ-ը ղեկավարում էր պաշտպանութիւնը խոհեմութեամբ և աներկիւղութեամբ։ Առաջին յարձակումն անյաջող անցաւ։ Ապրիլի 12-ին տեղի ունեցաւ գլխաւոր յարձակումը։ Վարեազները պաշտպանւում էին առիւծի սըրտով։ Երկու աշտարակ ընկան։ Պետրոս Ամիենացին կործանեց քաղաքի դռներից մէկը։ Հերոս կայսրը զուր էր փորձում ընդհանուր տարափահարութեան առաջն առնել։ Ինչպէս միշտ. ազգերը խոր անկման ժամանակ իրենց դժբախտութեան յանցանքը բարդում են իրենց քաղաքական առաջնորդների վերայ կամ զինուորական առաջնորդների վերայ կամ՝ զինուորական առաջնորդների դաւաճանութեան վերագրում, այդպէս էլ պատահեց Ալէքսիոսի հետ։ Արդէն մտածում էին նրան գահընկէց անել. կոտրուած սրտով հպարտ կայսրն էլ հասկացաւ, որ հայրենիքի բաղդը մարել է։ Նա փախաւ ոսկի դռնով, «որպէս զի վրիժառութեամբ լցուած Լատինների ծընոտների համար կերակուր չծառայէ»։ Ազգաւէրների մի խումբ փորձում է Սոֆիայի եկեղեցում կայսր ընտրել Թէոդորոս Դուկասին կամ Թէոդորոս Լասկարիսին. բայց երբ նորից հրաւէր են կարդում ընդդիմանալու, ձայնակցող չեն գտնում, ժողովրդի փոքրոգի յուսահատութեան և վարձկանների անտարբե-

*րութեան պատճառով։ Լասկարիսը փախչում է Փոքր Ասիա. ի զուր բնակիչների խղճուկ Թագաւորը Հայցեց Բոնիֆացիոյի գութը։ Հպարտ Բիւզանդիոնը պէտք էր իւր նեղութեան բաժակի վերջին կաթիլը դատարկէր անսանձ զինուորների կատաղութիւնը, որոնք ներս խուժեցին մայրաքաղաքի փողոցները, անընկճելի էր։ «Վենետիկեցւոց նշանաբանն էր կողոպտել և ոսկի դիզել, Փրանսիացիներն՝ ծաղրել և պղծել, Գերմանացիներինը՝ լափել և կործանել»։ Ամենամեծ աւերումը հասցրին արևմուտքի գաղթականները, որոնք մինչև այդ ծծել էին կայսեր հպատակներին, իսկ այժմ մարդասպանների մէջ ամենաանգութներն էին։*

*Արդէն 1204 թ. մարտին կնքել էին բաժանման դաշնագիրը, որի համաձայն տէրութեան մի քառորդը բաժին էր ընկնելու նոր կայսեր և Յունաց ազգը, որ զրկուեց իւր թագաւորութիւնից, պահպանելու էր իւր հոգևորական իշխանութիւնը՝ պատրիարքութիւնը և Ս. Սոֆիայի եկեղեցու անսահման կալուածները. միւս երեք քառորդը պէտք է բաժանուէին Վենետիկեցւոց և ասպետների մէջ։ Այդ նոր կարգերին ուղղութիւն տուողը բազմահռչակ Դանդոլոն էր։ Նա բացարձակ անհեռատես և սահմանափակ վաճառականական հայեցակէտով հող տարաւ միայն Վե-*

Ծ-ը ղեկավարում էր պաշտպանութիւնը խոհեմութեամբ և աներկիւղութեամբ։ Առաջին յարձակումն անյաջող անցաւ։ Ապրիլի 12-ին տեղի ունեցաւ գլխաւոր յարձակումը։ Վարեագները պաշտպանւում՝ էին առիւծի սըրտով։ Երկու աշտարակ ընկան։ Պետրոս Ամիենացին կործանեց քաղաքի դռներից մէկը։ Հերոս կայսրը զուր էր փորձում ընդհանուր տարափահարութեան առաջն առնել։ Ինչպէս միշտ. ազգերը խորը անկման ժամանակ իրենց դժբախտութեան յանցանքը բարդում են իրենց քաղաքական առաջնորդների վրայ կամ զինուորական առաջնորդների վրայ կամ՝ զինուորական առաջնորդների դաւաճանութեան վերագրում, այդպէս էլ պատահեց Ալէքսիոսի հետ։ Արդէն մտածում էին նրան գահընկէց անել. կոտրուած սրտով հպարտ կայսրն էլ հասկացաւ, որ հայրենիքի բաղդը մարել է։ Նա փախաւ ոսկի դռնով, «որպէսզի վրիժառութեամբ լցուած Լատինների ծընոտների համար կերակուր չծառայէ»։ Ազգասէրների մի խումբ փորձում է Սոֆիայի եկեղեցում կայսր ընտրել Թէոդորոս Դուկասին կամ Թէոդորոս Լասկարիսին. բայց երբ նորից հրաւէր են կարդում ընդդիմանալու, ձայնակցող չեն գտնում, ժողովրդի փոքրոգի յուսահատութեան և վարձկանների անտարբե-

րութեան պատճառով։ Լասկարիսը փախչում է Փոքր Ասիա. Ի զուր բնակիչների խղճուկ մնացորդը հայցեց Բոնիֆացիոյի գութը։ Հպարտ Բիւզանդիոնը պէտք էր իր նեղութեան բաժակի վերջին կաթիլը դատարկէր անսանձ զինուորների կատաղութիւնը, որոնք ներս խուժեցին մայրաքաղաքի փողոցները, անընկճելի էր։ «Վենետիկեցւոց նշանաբանն էր կողոպտել և ոսկի դիզել, Փրանսիացիները՝ ծաղրել և պղծել, Գերմանացիներինը՝ լափել և կործանել»։ Ամենամեծ աւերումը հասցրին արևմուտքի գաղթականները, որոնք մինչև այդ ծծել էին կայսեր հպատակներին, իսկ այժմ մարդասպանների մէջ ամենաանգութներն էին։

Արդէն 1204 թ. մարտին կնքել էին բաժանման դաշնագիրը, որի համաձայն տէրութեան մի քառորդը բաժին էր ընկնելու նոր կայսեր և Յունաց ազգը, որ զրկուեց իւր թագաւորութիւնից, պահպանելու էր իւր հոգևորական իշխանութիւնը՝ պատրիարքութիւնը և Ս. Սոֆիայի եկեղեցու անսահման կալուածները. միւս երեք քառորդը պէտք է բաժանուէին Վենետիկեցւոց և ասպետների մէջ։ Այդ նոր կարգերին ուղղութիւն տուողը բազմահռչակ Դանդոլոն էր։ Նա բացարձակ անհեռատես և սահմանափակ վաճառականական հայեցակէտով հոգ տարաւ միայն Վե-

*նետիկեցւոց հասարակապետութեան դրամական շահերը պաշտպանելու և յիմար կասկածոտութեամբ, փոխանակ մի զօրեղ լատինական կայսրութիւն հաստատելու, ստեղծեց մի այնպիսի անպէտք գործ որ արժանի չէր արեւի լոյսը տեսնելու։ Այդպէս էլ լատինական կայսրութիւնը հէնց սկզբից մահամերձ, կեանքից յոգնած մի մեքենայ էր, որի ամբողջ գոյութիւնը մի երկարատև հիւանդոտութիւն էր և յարատեւող մահ։*

*Դանդոլօն արգելեց հմուտ և գործունեայ Բոնիֆացիոնին կայսր ընտրել։ Նա ընտրել տուեց ճկուն և հանճարեղ Բալդուին Փլանդրացուն, որը հէնց սկզբից ցոյց տուեց, որ միայն անուանական կայսր է, երբ Բոնիֆացիոնին առաջարկեց Բոսֆորի միւս կողմի ամբողջ երկիրը-Լ'իլ-Դը Գրբէոս։ Այդպիսով ամեն ինչ արդէն սկզբից կործանման պատրաստ էր. միայն Վենետիկեցիք հասկացան վաճառականական օլիգողխիայի առանձնայատուկ շահագիտութեամբ ամեն տեղ անցկացնել իրենց սեփական օգուտները։ Չնայած ֆրանսիական հոգևորականութեան ընդդիմութեանը, Թովմաս Մորոսինին պատրիարք կարգեցին, բացի այդ 13 Վենետիկեցի կղերականներ հաստատեցին Սոֆիա եկեղեցու կանոնիկոսներ։ Արտաքուստ ստեղծել էին միութիւնը։*

*Տիեզերական հպարտ պատրիարքութիւնը Հին Հռոմի առաջ գլուխ էր խոնարհեցրել։ Իրապէս դրութիւնը մօտաւորապէս այնպէս էր, ինչպէս Իռլանդիայում անգլիական եկեղեցու տիրապետութեան ժամանակ։ Լատինական բաւական բազմաթիւ հոգեւորականներ ապրում էին իրանց փոքր հօտերով, կամ առանց հօտի յունական եկեղեցու հարուստ եկամուտներով. սակայն օրթոդոքսութեան աղքատացած հոգեւորականութիւնը իւր կողմն ունէր ժողովուրդը. օտարի լուծի տակ մխիթարում էր նրա և ապագայի վերակենդանութեան յոյսը վառ պահպանում։*

*Այստեղ տեղը չէ մանրամասն յիշել, թէ ինչպէս հին միապետական կայսրութեան նահանգները փոփոխութեան ենթարկուեցին արևմտեան աւատական կարգերի համաձայն. ինչպէս որ Հոպֆ պատմագիրը այնպէս օրինակելի կերպով կատարել է։ Նա ունի ԺԳ. ԺԴ դարերի քաղաքակրթութեան կամ Անատոլիայի տնտեսութեան պատմութեան կարևոր գլուխներ։ Այստեղ մենք աչքի առաջ ենք ունեցել միմիայն բիւզանդական ժողովրդի քաղաքական պատմութիւնը. ուստի այստեղ չի կարող տեղ բռնել լատինական կայսրների կամ Թեսալոնիկէի թագաւորների, կամ Աթենքի և Աքէնոյի Հերցոգների, ինչ-*

պէս նաև Հռոմի Սելջուկների և Եգիպտոսի մամելիւքների պատմութիւնը, որոնք նոյնպէս նախկին բիւզանդական պետութեան մասերն էին բարբարոսների ձեռքն ընկած։



## Ը.

## ՆԻԿԻԱՅԻ ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆԸ

*(1204—1261)*։



Ֆրանկների աւատական պետութիւնների կազմակերպութիւնը, որի հետ անհրաժեշտապէս միացած էր բազմիշխանութիւնը և զինուորական ոյժերի բաժան բաժան լինելը)։ Յոյների բախտից անկարելի էր դարձնում միացած գործողութիւնը և լատինական բըռնաւորների կենդրոնացումը։ Երբ վերջի ազդասէր Ալէքսիոս Ե Մուրզուփլոսը ընդհանուր ընդդիմութեան համար կամեցաւ միանալ Ալէքսիոս Գ-ի հետ, վերջինից կուրացուեց և խաչակիրները, որոնք կալանաւորեցին իրենց հերոս հակառակորդին, այնքան անգութ էին, որ նրան Թէոդոսի սիւնից ներքև գլորեցին, նրան հրատարակելով Ալէք-

սիոս Դ-ի երդմնազանց սպանող։ Անկիլաւ Ալէքսիոս Գ-ը իւր արժանաւոր Եւփրոսինէ ամուսնու հետ շնորհքի արժանացաւ Բոնիֆացիօն Թագաւորից և աքսորուեց Հալմիւրոսի ախորժելի գղեակը։ Բայց Յունաց ուրիշ մեծամեծներ աւելի բախտաւոր էին և գործունեայ։ Միքայէլ Անգելոս Կոմնենը, Անգելների անհարազատ հօրեղբօր որդին, 1204 Թ. տիրացաւ Նիկոպօլիս Թեմին և զօրեղ ձեռքով կառավարում էր Էպիրոսի իշխանուԹիւնը, որ Լատիններից բոլորովին անկախ էր և տարածւում էր Նաւպակտոսից մինչև Դիւռախիոն։ Կարծես պատմուԹեան մէջ աւելի պիտի մեծանար Թէոդորոս Լասկարիսի անունը։ Նա անցել էր ԲիւԹինիա և փորձեց Ասիան ազատել Յոյների համար։ Բայց Փիլադելփիայում գլուխ բարձրացրեց Թէոդոր Մանկափասը իբրև հակաԹոռ կայսր։ Լեւոն Գաբալասը իրան անկախ հրատարակեց Հռոդոսում, իսկ Մանուէլ Մաւրոզոմէսը Մէանդրի հովտում։ Նիկիան նրա առաջ փակեց իւր դռները, դէպի նրա աներ Ալէքսիոս Գ-ը ունեցած ատելուԹեան պատճառով։ 1204 Թ. խաչակիրները, զօրեղացած Պաղեստինից վերադարձող 10,000 ուխտաւորներով, մեծ պատրաստուԹիւններ տեսան Փոքր-Ասիային տիրելու։ Ի զուր Լասկարիսը միացաւ Հռոմի

Սելջուկների և Փիլադելփիայի կայսեր հետ։ Պետր դը Բրաշեյը նրան յաղթեց 1204 թ. Դեկտեմբերի 6ն Պոյմանենոնի մօտ, վերցրեց Լոպադիոնը, Ապոլոնեյան և Նիկոմիդիան։ Ընդդիմութիւն ցոյց տուաւ միայն անառիկ Պրուսան։ Մինչ այդ գրաֆ Հենրիխը արշաւելով Աբիւդոսից 1205 թ. Մարտի 12-ն յաղթել էր Մանկափասին։ Ամեն ինչ կորած էր համարւում, երբ յանկարծակի լուր հասաւ թէ Բուլգարները Բալդուին կայսեր գերել են. Թէոդոր իշխանը շունչ քաշեց։

Կալոջանը «Հռովմայեցոց կոտորողը» շատ էր աշխատել լաւ յարաբերութիւն ստեղծել Լատինների հետ։ Սակայն նրան մերժել էին, ծաղրելով ամենախայտառակ եղանակով, նա էլ մտածեց վրէժ առնել, որը շուտով սոսկալի կերպով արտայայտուեց։ Ռոմանիայի Յոյները մոլեռանդաբար ատելով լատիններին, միացան իրենց ազգային մահացու թշնամու հետ։ Կալոջանը խոստացաւ օգնութեան գալ իւր բոլոր զօրութիւնով և 10,000 Կումաններով։ Դեռ հազիւ հազ ընկճուած Ռոմանիայի ամբողջ երկրում Յոյները ոտքի կանգնեցին։ Կայսրը և Դանդոլօն իսկոյն փոքր ոյժով արշաւեցին և պաշարեցին Ադրիանուպոլիսը։ Այն ժամանակ վրայ հասաւ Կալոջանը թուով աւելի մեծ զօրքով և Ֆրանկ-

ներին ծանր կերպով յաղթեց։ Ով որ ազատուեց սոսկալի կոտորածից, փախաւ Պրոպոնդիս։ Բուլղարին կայսրը մեռաւ բուլգարական գերութեան մէջ։ Այդ օրից սկսած Փրանկների իշխանութիւնը Ռոմանիայում ընդմիշտ վերջացաւ։ Կալոյանը, կատաղած որ Յոյները շուտով էլի անցան Լատինների կողմը, հետեւեալ տարիները անխնայաբար կոտորում էր խեղճ ժողովուրդը։ Նիկետաս պատմագիրը ողբում է երբեմն ծաղկեալ քաղաքների աւերակների վրայ, այն դաշտերի եւ պարտէզների անգութ անապատանալու վրայ, որ առաջ այնքան գեղեցիկ եւ դուրեկան էին, իսկ յետոյ մարդկանց փոխարէն սկսել էին գազաններ բնակուել։ Ամբողջ Մակեդոնիան զոհ գնաց բուլգարական իշխանի վայրագութեանը։ Փիլիպուպոլիսը, Հերակլեյան, Պանիոնը, Ռէդեստոսը, Խարիուպոլիսը, Տրայանուպոլիսը, Մակրէն, Կաւդեապոլիսը, Մոսինուպոլիսը, Պերիբէորիոն եւ բազմաթիւ ուրիշ քաղաքներ առաւ եւ բնակիչներին կոտորեց, իսկ խղճուկ մնացորդները տարաւ բնակեցրեց Դանուբեան բուլգարիայում։ Նա ասում էր, որ կամենում է Բազիլեյոս կայսեր՝ իւր բուլգար հպատակների դէմ գործած չարիքների վրէժը լուծել։ Նրան անուանել էին Բուլգարոկտոնոս, իրան էլ հրամայեց անուանել Հռոմէկ-

տոնոս։ 1207 թ. նա մեռաւ Թեսալոնիկէի առաջ։ Յոյների բարեպաշտ առասպելը նրա մահը վերագրում է իրենց ազգային պաշտպանի՝ ս. Դեմետրիոսի նիզակից առաջացած։ Իսկ բուլղարական ժողովուրդը միշտ բարձր է պահել իր «մեծ և ամենաբարեպաշտ» ցարի յիշատակը։

Մինչդեռ Լատինների նոր կայսրը Հենրիխը սաստիկ զբաղուած էր, Թէոդորոս Լասկարիսը կայսր ընտրուեց Նիկիայում, որ յոյն Արիստոկրատիայի և հոգևորականութեան ժողովման տեղն էր և 1206 թ. հանդիսաւոր օծուեց Միքայէլ նոր պատրիարքի ձեռքով։ Նա միացաւ Սելջուկների հետ Դաւիթ Կոմնենի դէմ։ Սելջուկները յաղթեցին սրա եղբայր Ալեքսիոսին Ամեսոսի պարիսպների մօտ, մինչդեռ Թէոդորոսը ինքը յաղթեց Դաւթի զօրապետ Սիւնադենոսին Սանգօրիոսի մօտ։ Դաւիթը միացաւ Ֆրանկների հետ։ Սակայն Անդրոնիկոս Գիդոսը 1206 թ. ոչնչացրեց նոցա օգնական գունդը Նիկոմիդիայի առաջ։ Սակայն երբ 1206 տարուայ վերջին գործունեայ Հենրիխ կայսրը մեծ զօրքով անցաւ Ասիա, առաւ Կիւզիկոն, Նիկոմիդիա, Խարաքս և Կիբոտոս քաղաքները, Լասկարիսը Կալոյան բուլղարին օգնութեան կանչեց և դրանով ստիպեց Լատիններին բաժանել իրենց զօրքը։ Թէոդորի

*տոր աները՝ Ալէքսիոս Գ-ը։ այդ ժամանակ փախել էր Սելջուկների մօտ, և սոքա պահանջում էին Թէոդորոսից այդ ծերին օրինաւոր կայսր ճանաչել. Թէոդորը արագ համաձայնութիւն կայացրեց լատինների հետ և Հենրիխ կայսեր հետ 1207-ին հաստատեց երկամեայ զինադադար։ 1209 թ. նա յաղթեց հզօր Գիյեռ դը Բռաշէյլին, որին կատաղած Յոյները չարաչար սպանեցին։ Փրանկների վարձկանների օգնութեամբ զօրացած 1211 թ. սաստիկ ջարդ տուեց Քայխոսրովին, որ պաշարել էր Անտիոքը, նրան և ծեր Ալէքսիոս Գ-ին գերեց, որը—ինչ որ շատ մեղմ էր այն ժամանակների համար—վանքերի պատերում փակուած, ազատ ժամանակ ունէր ողբալու իւր բազմաթիւ. մեղքերը Թաթարները պարտաւորուեցին տախական ափերի մեծ մասը զիջանել Յոյներին. Փրանկների համար այդ անտանելի էր։ Հենրիխ կայսրը դուրս եկաւ Թէոդորի դէմ, յաղթեց Լուպարկոսի մօտ 1212 թ, ներս մտան Փոքր-Ասիայի խորքերը՝ իսկ հիւսիսում Նիկիայի գահակալը նեղն էր գցել Փրանկների վասալ՝ Դաւիթ Կոմնենին, նրան հալածելով դէպի արևելք. Նրա ձեռին թողեց միայն Սինոպէի իշխանութիւնը։ Բիւզանդիոնի և Նիկիայի կայսրները շուտով բաւական արդար խաղաղութիւն կապեցին։ Թէո-*

դոր կայսրը հզօր օգնական գտաւ յանձին Յովհաննէս Դուկաս Վատացէսի, որին նա 1212 թ. գլխաւոր սենեկապետ էր կարգել և ամուսնացրել իւր Իրինէ աղջկայ վրայ։ Յոների առանձին բախտն էր՝ խիստ ընդունակ և եռանդոտ Լատինների Հենրիխ կայսեր մահը, որ տեղի ունեցաւ 1216 թ. Յունիսի 11ն Թեսալոնիկէում։ Այդտեղից սկսած Թէոդորի գործը թեթևացաւ Կոստանդնուպօլսի թոյլ խնամակալների պատճառով։ Երբ նա 1222 թ. մեռաւ, իւր գայխանի տակն էր առել ամբողջ արևմտեան Փոքր-Ասիան բացառութեամբ Բիւթինիայի մի փոքր կտորից, որ Փրանկների ձեռքին էր։ Իսկ Սելջուկների իշխանութիւնը սկսւում էր միայն Սանգարիոսի և Մէանդրի վերին հոսանքներից։ Նրա անչափահաս Կոնստանդին որդու փոխարէն՝ ընդհանուր համաձայնութեամբ գահ բարձրացաւ Յովհաննէս Դուկաս Վատացէսը (1232—1254), որ թէ ընտիր զօրապետ էր և թէ հմուտ կառավարիչ, որի ժամանակ յունական Փոքր-Ասիան հիմնովին վերակենդանացաւ Անգեների անարգ կառավարութիւնից յետոյ։

Յոյն ժողովրդի ազգային ստորացումը և օտար լատինական լծի ամօթը արձակել էին կապանքներից նրա մի շարք գեղեցիկ յատկութիւնները, որ մինչ այդ կաշկանդուած

էին։ Ժողովուրդը ցոյց տուեց՝ թէ դեռ ինչպիսի ընտիր տաղանդներ ունի իր մէջ։ Ինչպէս որ Լասկարիսները Ասիայում, այնպէս յաջող կերպով Անգելները Եւրոպայում ուղղութիւն տուին այն հզօր դիմադրութեանը որ Յոյները գործ դրեցին լատինական իշխանութիւնից ազատուելու համար։

Էպիրոսում Միքայէլին յաջորդել էր նրա Թէոդորոս Դուկաս Անգելոս եղբայրը, որ մի բռնակալ և կոպիտ, բայց ընդունակ անձ էր։ Նա ամեն կողմից՝ բուլղարների և Ֆրանկների դէմ տարածել էր իր իշխանութիւնը։ Արեւմուտքի ազգասէրները, ինչպէս ապացուցանում են Դեմետրիոս Խոմատիանոսի խիստ կարևոր նամակները, նայում էին նրա վրայ իբրև լատինական և սլաւոնական լուծից ազատողի վրայ։ 1221 Թ. նա յարձակուեց Թէսալոնիկէի թագաւորութեան վրայ, որտեղ իշխում էր անզօր Դեմետրիոսը։ 1222 Թ. ի մեծ ցնծութիւն Յոյների նրա ձեռքն ընկաւ Թեսալոնիկէ մայրաքաղաքը, և երբ քաղաքի մետրապոլիտը տատանւում էր խախտելու տիեզերական պատրիարքի առանձնայատուկ իրաւունքները, Ախռիդայի ինքնիշխան արքեպիսկոպոսը՝ Դեմիտրիոս Խոմատիանոսը հանդիսաւոր կերպով նրան օծեց արևմուտքի կայսր։ Ի հաշիւ Բուլղարների տէ-

րութեան սահմանները առաջ տարան մինչև Ադրիանուպոլսի, Փիլիպուպոլսի և Խրիստուպոլսի մօտերքը և ամեն տեղ բուլղար ազգի եպիսկոպոսներին փոխարինում էին յոյն եպիսկոպոսներով։ Մեծ դժուարութեամբ կարողացաւ գաւառական մի եկեղեցական ժողովում, որին նախագահում էր Դեմետրիոսը, Մոգլենայի խելացի և մեղմ եպիսկոպոսը գոնէ այն ընդունել տալ, որ օրինաւոր համարուի սլաւական ծագում ունեցող օրթոդոքս եպիսկոպոսների կատարած ձեռնադրութիւնը. մի զուտ յունական, անհեռատես և մոլեռանդ կուսակցութիւն, որի ղեկավարը Կաստորիայի աւագ եպիսկոպոսն էր. կամենում էր—իրաւ է անյաջող—այդ էլ չթոյլ տալ։ Այդ չափաւորութիւնը ապացուցանում է, որ Ախրիդայի այն ժամանակուայ արքեպիսկոպոսական դիւանը դժուար խնդիրների վերաբերմամբ ունէր անհամեմատ աւելի մեծ եկեղեցական — քաղաքագիտական իմաստութիւն, քան մեր օրերի փանարը։

Երևում է որ զուր չէր Նիկիայի Գերմանոս պատրիարքի մեղադրանքը, թէև Դեմետրիոսը զօրեղ կերպով բողոքում էր դրա դէմ, թէ նա ձգտում էր արևմտքի պատրիարքութիւն հաստատել։ Որովհետև եկեղեցական և քաղաքական խնդիրներում թե-

սալոնիկէի և Նիկիայի Յոյները շատ օտար էին միմեանցից իրենց գործողութիւնների և նըպատակների մէջ։ Երկու այնպիսի զօրեղ իշխող բնաւորութիւններ, ինչպէս էին Թէոդորը և Յովհաննէս Գ-ը, ոչ մէկը միւսին չէր ստորադրուիլ։ Սակայն երկուսն էլ 1224 Թ. յաղթանակեցին լատինական մահամերձ կայսրութեան դէմ։ Ռոբերտ կայսրը և նրա բարոնները պարտութիւն կրեցին Թէոդոր կայսրից Սեռէի մօտ. իսկ Ֆրանսիացիք Մակերդը ս. Մենեհուլտի առաջնորդութեամբ Պոյմաննենի մօտ Վատացէսից։ Սա առաւ Ֆըրանկների ամուր դիրքերը Փոքր-Ասիայում, գրաւեց Կոսը։ Իկարիան, Սամոսը, Քիոսը և Լեսբոսը, Հռոդոսը հարկատու արեց և կողոպտեց Վենետիկեցոց ծովափնեայ երկիրները։ Յունաց մի զօրագունդ Իսէս Պրոտոստրատորի և Յովհաննէս Կամիւցէսի առաջնորդութեամբ անցաւ Հելլեսպոնտը և հետևելով Ադրիանուպօլսի բնակիչների հրաւէրին, գրաւեց այդ նշանաւոր քաղաքը։ Սակայն այստեղ հանդէս եկաւ Հռովմայեցոց երկու փառասէր կայսրըների շահերի տարբերութիւնը։ Թէոդորոսը Ադրիանուպօլսից դուրս քշեց Նիկիայի գունդը, և Վատացէսը զբաղուած լինելով Ասիայում, Լատինների հետ խաղաղութիւն հաստատեց, մինչդեռ Թէոդորոսը միացաւ բուլղարների հետ։

Ցոյների համար մեծ սպառնալիք էր բուլղարների նոր իշխան Յովհաննէս Ասէնը (1218—1241)․ «Մեծ և բարեպաշտ ցարը՝ ծեր Ասէն Թագաւորի որդին, որ իւր ունեցած մեծ սիրով առ Աստուած՝ փառաւորեց բուլղարների Թագաւորութիւնը աւելի քան նրանից առաջ բոլոր բուլղար ցարերը»։ Բուլղար վարդապետի գովասանքը հաստատւում է յոյն ճառախօսի վկայութիւնով։ «Բոլորն էլ նայում էին նրա վրայ իբրև մի զարմանալի և բախտաւոր մարդու վրայ։ Որովհետև նա իւր Թուրը չէր հանում հայրենակիցների դէմ, ոչ էլ իրան արատաւորում էր արիւնալից գործերով Հռովմայեցիների դէմ, ինչպէս բուլղարական իշխաններից նրա նախորդները։ Այդ պատճառով նա սիրուած էր ոչ միայն բուլղարներից, այլ նաև Հռովմայեցիներից և ուրիշ ազգերից»։ Այդ ճշմարիտ բարեպաշտ իշխանը ցոյց տուեց իւր իսկական պետական մարդու իմաստութիւնը նրանով, որ կատարեալ ազատութիւն տուեց Բոգոմիլներին։

Բիւզանդիոնի լատինական կառավարութիւնը, որ Ֆիզիքապէս և բարոյապէս սնանկացել էր, կամեցաւ 1228 Թ. Ռուբերտի մահից յետոյ, անչափահաս Բալդուին Բ-ի խնամակալութիւնը նրան հաւատալ, որ խիստ

խելացի մտածուած քայլ էր, և կարող էր ամենից շատ անհաճելի լինել Նիկիայի և Թեսալոնիկէի արքունիքներում։ Ասէնն էլ բոլորովին պատրաստ էր և խոստացաւ Թրակիան Լատինների համար առնել Վատացէսից։ Սակայն Ցոյների բախտից լատին հոգևորականութիւնը ընդդիմացաւ և թոյլ չտուեց պետութեան մէջ օրթոդոքս կառավարիչ նշանակել։ Քաջ, բայց իբրև քաղաքագէտ անընդունակ Ժան դը Բրիէնը Նիկիայի համար առանձին վտանգ չէր ներկայացնում։ Թէոդորոս Դուկասը՝ Թէսալոնիկէի Կայսրը, որի հետ Ասէնը դաշն էր կռել, ունայն ինքնավստահութեամբ հրաժարուեց մեծ ցարի բարեկամութիւնից և յարձակուեց Թրակիայի վրայ յոյն և ֆրանկ վարձկան զօրքով։ 1230 թ. Ապրելին երդմնազանց Ցոյնը—Ասէնը հրամայեց լուծուած դաշնագիրը մի նիզակի ծայրում զօրքի առաջից տանել--կատարեալ պարտութիւն կրեց Կլոկոտնիկայի մօտ և գերի ընկաւ։ Ասէնը մեղմ էր վարւում հասարակ զինուորների հետ։ Անգելների տէրութեան մեծ մասը ընկաւ բուլղարների ձեռքը, և Ասէն ցարը շուտով գրաւեց իւր նոր հպատակների սրտերը իւր հեզութեամբ և մարդասիրութեամբ։ Թեսալոնիկէն և Էպիրոսի իշխանութեան մի մասը շնորհեցին Թէոդո-

րոսի եղբայր Մանուէլ «կայսեր.» որ նմանապէս խիստ ընդունակ անձ էր և Ասէնի փեսան էր, ամուսնացած լինելով սրա ապօրինի Մարիա աղջկայ վրայ։ Տրնովայի եկեղեցու վրայի մի արձանագրութիւն փառաբանում է մեծ ցարի գործերը։[1]

Մինչ այդ Վատացէսը անդադրում գործում էր Վենետիկեցոց և Ֆրանկների դէմ։ Նա փորձեց ընկճել Հռոդոսի Լեոն Գաբալա-

1. «1738 թուին (=1230) 9 Ընդիկտիոնին: Ես Յովհաննէս Ասէն, Քրիստոսով Աստուծուն հաւատարիմ թագաւոր եւ ինքնակալ Բուլղարների, ծեր Ասէնի որդի, կառուցել եմ այս մեծափառ եկեղեցին, հիմքից ի վեր եւ նկարներով կատարելապէս զարդարել ի պատիւ քառասուն ս. մարտիրոսների, որոց օգնութեամբ ես իմ կառավարութեան 12 տարիներում, երբ նկարւում էին տաճարը, դուրս եմ եկել պատերազմելու Ռոմանիայի դէմ, յաղթել եմ Յունաց զօրքը եւ գերել եմ Կիւր Թոդոր Կոմնին Ցարին բռնած իւր բոլոր բոյարներով: Եւ տիրել եմ ես բոլոր երկիրներին Օդրինից (Ադրիանուպոլիս) մինչեւ Դուաչ (Դիւռախիոն), Յունաց, յետոյ Ալբանացոց եւ յետոյ Սերբերի երկիրը. Միայն Ցարիգրադի շրջակայքի քաղաքները եւ այդ իսկ քաղաքը, ունէին Ֆրանգիները (Ֆրանկները), բայց սոքա էլ խոնարհուեցին իմ թագաւորութեան ձեռի տակ. որովհետեւ նոքա չունէին ուրիշ ցար ինձնից բացի, եւ իրենց օրերը անցնում էին իմ կամքով, որովհետեւ Աստուած այդպէս էր հրամայել. Որովհետեւ առանց Նորան գլուխ չի գալ ոչ խօսք եւ ոչ գործ: Նմա եղիցի փառք յաւիտեանս ամէն»։

սին և իւր նաւատորմիղով օգնութեան հասնել Կրետացիներին, որոնք կատաղած էին Վենետիկեցոց վատ կառավարութեան պատճառով։ Սակայն Գաբալասը անձնատուր եղաւ հասարակապետութեանը և Վատացէսի զօրքը, որ Կրետէում ափ էր իջել, 1235 թ յաղթուեց Վենետիկեցիներից։ Նա 1234 թ միացաւ Ասէնի հետ Կոստանդնուպօլսի դէմ և 1235 թ. առաւ և կործանեց Վենետիկեցոց Կալլիպօլիսը։ Լամփսակոսում երկու կայսերական ընտանիքները փոխադարձ ամուսնական խոստումներով դաշինքը կնքեցին. և Գերմանոս Բ-ը միւս պատրիարքների համաձայնութեամբ, Տրնովոյի Յովակիմ արքեպիսկոպոսին հանդիսաւոր կերպով օծեց բուլղարիայի ինքնագլուխ եկեղեցու պատրիարք։ Ապա երկու իշխանները դարձան լատինների դէմ. Պրոպոնդիսի և Հեբրոսի մէջ տեղում Նիկիացիք արտակարգ յառաջադիմութիւն արին։ Սոսկալի նեղ վիճակը 1236 թ. միանգամ էլ ստիպեց լատիններին ոտքի կանգնել։ Պիզայի և Ջենովայի նեղսիրտ վաճառականները, մանաւանդ Վենետիկեցիք հասկացան, որ բացի լատինական կայսրութիւնը, իրենց վաճառականութիւնն էլ է վտանգուած։ Աքէայի հերցոգն էլ օգնութիւն ուղարկեց։ Այդպիսով Բրիենը յաղթեց բուլղարներին

ցամաքի վրայ, Վենետիկեցիք՝ Յոյներին ծովի վրայ։ Կոստանդնուպոլիսը ազատուած էր, մանաւանդ որ շուտով լուծուեց յունա-բուլղարական դաշնագրութիւնը։ Այդպիսով ողորմելի Բալդուին Բ-ը դեռ 25 տարի էլ անցկացրեց իւր աղքատի կեանքը։ Նա շրջում էր արևմուտքում վաճառքի հանելով իւր տէրութեան մայր եկեղեցիների և վանքերի նշխարները և գնողներ էր գտնում իւր թանկագին սուրբ իրերի համար, որոնցից ամենաեռանդունը մանաւանդ Ս. Լուդովիկոսն էր։ Սա վճարեց նաև Վենետիկեցոց մօտ գրաւ դրած փշեայ պսակի գրաւականը։ Այդ բոլորը չէր խանգարում Վատացէսի յառաջադիմութիւնը։ Նա Ֆրանկներից խլեց նոցա վերջին կալուածները ասիական հողի վրայ։ 1240 թ. խեղճ Բալդուինը վաճառել էր իւր ժառանգական վերջին կալուածները խաչակիր զօրք վարձելու համար և կարողացաւ ինչպէս Յոյներից յետ խլել նշանաւոր Ցուրուլոնը։ Նմանապէս Վենետիկեցիք 1241 թ. Յոյների դէմ մի փառաւոր ծովային յաղթութիւն տարան։ Բայց նոյն տարին Վատացէսը միացաւ Փրեդրիխ Բ-ի հետ ամուսնանալով նրա Աննա աղջկայ վրայ։ Դրա փոխարէն լատինները բարեկամացան Քայխոսրով Բ-ի՝ Հռոմի իշխողի հետ, որը խոստացաւ ընդունել քրիստոնէութիւնը։

*Սակայն Մոնղոլների հրոսակների սարսափելի երկիւղը, որոնք հեղեղել էին իսլամական իշխանութեան արեւելեան մասը՝ Հայաստանը եւ Վրաստանը, Ռուսաստանը ջախջախել էին եւ Հունգարիան գետնով էին զարկել, փոքր ասիական մանր իշխանութիւններին յանկարծ մոռացնել տուեց իրենց բոլոր քաղաքական երկպառակութիւնները եւ կրօնական վէճերը։ Տրապիզոնի Մեծ իշխանը որոնեց Հոռոմի սուլթանի բարեկամութիւնը, եւ 1244 թ. Վատացէսը եւս վերջինիս հետ դաշն կապեց Տրիպօլսում. որով միաժամանակ Լատիններին զրկեց Սելջուկների օգնութիւնից։ Սակայն Սելջուկները Արզուգայի (Երզնկայի) մօտ Մոնղոլների դէմ յաղթուեցան։ Սոքա յառաջ խաղացին մինչեւ Անգորա. Հոռոմը կարողացաւ ազատ մնալ ծանր հարկի գնով։ Իկոնիայի սուլթանութեան անկման պտուղները քաղեցին Տրապեզունդի եւ Նիկիայի Յոյները։ Վատացէսը լաւ յարաբերութիւն հաստատեց Մոնղոլների հետ եւ անցաւ Եւրոպա Անգելների դէմ։ Այնտեղ ամէն ինչ խռովութեան մէջ էր։ Միքայէլ Բ-ը Միքայէլ Ա-ի հարազատ որդին, Կորիւֆոյում եւ արեւմուտքում հաստատել էր իւր համար անկախութիւն. կուրացած Թէոդորոսը, ազատուելով բուլգարական կապանքներից, փոր-*

ձեց իւր Յովհաննէս որդու օգնութեամբ Մանուէլից խլել իւր երկիրը։ Մանուէլը դիմեց Նիկիային, բայց շուտով մեռաւ, և այն ժամանակ Վատացէսը սկսեց իւր գործողութիւնը։ Ծեր Թէոդորոսին 1242 թ. հրապուրելով՝ բերին Նիկիա. յետոյ Վատացէսը անցաւ Եւրոպա և մեծ զօրքով պաշարեց Թեսալոնիկէն։ Սակայն առանց նաւատորմղի նա չէր կարող առնել ամուր քաղաքը։ Ուստի երկուստեք զիջողութիւն եղաւ։ Յովհաննէս Անգելոսը հրաժարուեց կայսերական տիտղոսից և «դեսպոտէս»՝ տէր անունով դարձաւ Նիկիայի վասալ։ Շատ էլ չանցած 1244 թ. մեռաւ։ Նրա եղբօր և յաջորդի վատ կառավարութիւնը Վատացէսի ձեռքը յարմար պատճառ էր միջամտելու։ 1246 թ. անցաւ Հելլեսպոնտոսը։ Նա Բուլղարների երիտասարդ ցարի մահից օգտուեց և նոցանից խլեց Սեռէն Մելենիկոսը, Ստենիմաքոս և ամբողջ Հիւսիսային Մակեդոնիան։ Երբ յետոյ Վատացէսը երևաց Թեսալոնիկէի առաջ, Դեմետրիոսը իսկոյն անձնատուր եղաւ։ Յովհաննէս Գ-ը 1246 թ. յաղթանակով վերադարձաւ Նիկիա. և 1247 թ. Լատիններից խլեց Բիզէնէն և Ցուռուլոնը։ Հռովմէական պետութեան վերահաստատութիւնը իւր գլխաւոր մասերով արդէն կատարուած էր։ Միևնոյն ժամա-

ձակ այդ քաջ հերոսը շարունակ աշխատում էր նաև երկրի ներքին բարեկարգութեան համար։ Նա հովանաւորում էր գիւղատըն-տեսութիւնը, որով նա ինքը սիրով և հըմ-տորէն պարապում էր։ Նա կանոնաւորեց ել և մուտքը, պաշտպանում էր և նպաս-տում վաճառականութեանը և յունական ապ-րեշումեայ արդիւնագործութեանը։ Վատ էր միայն նրա յարաբերութիւնը իտալացի ա-տուած վաճառականների հետ. բայց Յոյները չէին կարող նոցա հետ ուրիշ կերպ վարուել։ Նաև յունական վերջին անկախ իշխանը՝ Էպի-րոսի Միքայէլը ստիպուեց 1254 թ. ընդու-նել Նիկիայի հզօր կայսեր գերիշխանութիւ-նը։ Նա 1253 թ. ծեր Թէոդորոս Դուկաս Անգելոսի դրդմամբ դուրս էր եկել Վատա-ցէսի դէմ։ Չնայած որ նա քաջաբար ընդ-դիմացաւ Թեսալիայում և հարաւային Մա-կեդոնիայում, կայսրը անարգել առաջ ան-ցաւ, 1254 թ. ընկաւ նշանաւոր Կաստորիան, շուտով նաև Դէաբոլիսը (Devol), որ իշ-խում էր Ալբանիայի կիրճերի վերայ։ Ալբա-նացիք ապստամբեցին։ Այն ժամանակ Միքա-յէլը անձնատուր եղաւ և ծեր խռովարար Թէոդորոսը ստիպուած վանք մտաւ։

Էպերոտեան պատերազմից վերադառնա-լիս 1254 թ. Հոկտեմբերի 30ն Նիմֆէո-

նում, ոչ հեռու Նիփեոսից մահը վրայ հասաւ հզօր կայսեր։ Նրան յաջորդեց նրա ընդունակ որդի Թէոդորոս Լասկարիսը (1254-1258), որ անփոփոխ պահպանեց իւր իւր հօրից աւանդաբար ստացած պետական ընտիր վարչութիւնը, մանաւանդ առանց հարկերի ճնշման՝ հիանալի կարգաւորեց տնտեսութիւնը և միևնոյն ժամանակը հովանաւոր էր ուսման և կրթութեան։ Չնայած իւր հիւանդոտութեանը նա շատ լաւ զինուոր էր։ Բուլգարների Միքայէլ Ասէն ցարը, որ կամեցել էր Վատացէսի գործերի վրէժն առնել, գրաւել էր Ռոդոպէ լեռների և Վերին Մակեդոնիայի դղեակները։ 1255 թ. Թէոդորոսը դուրս եկաւ նրա դէմ։ Իւր Ալէքսիոս զօրավարը յաղթեց Սեռէի մօտ. ինքը դրա փոխարէն փառաւոր յաղթութիւն տարաւ Ռուպելիոն կիրճի մօտ։ Նա յետ վերցրեց կորցրած երկիրները և երկրորդ յաղթութիւնից յետոյ 1256 թ. ընդունեց խաղաղութիւն Սերբերի Ստեփան Ուրոշ Ա. թագաւորի միջնորդութեամբ։ Երբ 1257 թ. մեռաւ Միքայէլը և շուտով նրա տեղն անցաւ Կոնստանդին Սերբացին, որը ամուսնացաւ կայսեր Իրենէ աղջկայ վրայ, վերստեղծուեցին լաւ յարաբերութիւններ։

Աւելի անհնազանդ գտնուեց Միքայէլ

*Էպիրոտցեն, որից իրաւ է կայսրը ճշմարիտ բիւզանդական խորամանկութեամբ խլել էր Սերբիա և Դիւասխիոն նշանաւոր քաղաքները, բայց դրա փոխարէն խոստացել էին Միքայելի Նիկեփորոս որդուն ամուսնացնել կայսեր Մարիա աղջկայ վրայ։ Միքայէլը միացաւ Ալբանացոց և Սերբերի հետ. եւրոպական Յունաց կուսակալը, մեծ ճարտասան Գէորգ Ակրոպոլիտէսը, որը աւելի գրչի քան զէնքի մարդ էր, յաղթուեց և գերի ընկաւ։ Նաև Թէոդորոսի ամենաընտիր զօրապետը՝ Միքայէլ Պալէոլոգը լեռնային կռիւների մէջ, որ միացած էր մեծ դժուարութիւնների հետ, չկարողացաւ ոչինչ անել։ Այն ժամանակ* 1258 *թ. Թէոդորոս Բ Լասկարիսը մեռաւ Մագնեզիայում, Հերմոսի վրայ։*

*Յիմարաբար նա կայսր էր նշանակել իւր անչափահաս Լասկարիս Յովհաննէս Դ. որդուն Մուզալոն Պրոտովեստիարիոնի և Արսէնիոս պատրիարքի խնամակալութեան տակ։ Այնպիսի կատաղի ժամանակներում անհնար էր մանկան կառավարութիւնը։ Խնամակալը սաստիկ կատաղեցրել էր օտար վարձկաններին իւր զուտ բիւզանդական ընթացքով։ Նա հրաժարուեց նոցա տալու այն դրամական ընծան, որ խոստացել էր Թէոդորոսը։ Մուզալոնը և նրա տունը զինուո-*

րական խռովութեան զոհ գնացին։ Իշխանները հոգևորականները և զորքը Միքայէլ Պալէոլոգին դեսպոտ տիտղոսով իբրև խնամակալ՝ հրաւիրեցին կառավարութեան գլուխն անցնել։ Պալէոլոգների ցեղը Ալէքսիոս Ա-ի օրերից սկսած տէրութեանը մատուցել էր նշանաւոր ծառայութիւններ։ Վատացէսը լաւ էր գնահատել Միքայէլի զինուորական մեծ արժանիքները և նրան կնութեան էր տուել իւր եղբօր աղջիկ Թէոդորա Դուկէնային։ Թէոդորոս Բ Լասկարիսը ոչ առանց պատճառի միշտ կասկածանքով էր նայում փառասէր և միջոցների մէջ անընտրող զօրապետի վրայ։ Չնայած դրան, նրան հաւատացել էր նշանաւոր կուսակալութիւններ, և Միքայէլը հասկացել էր իւր մեծ խորամանկութեամբը կրիտիկական րոպէներում խոյս տալ սպառնացող վտանգից։ Այդ ընթացքով բաւական թուլացել էր Միքայէլի հաւատարմութիւնը թագաւորական տան վերաբերմամբ, և կայսրը պարտաւոր էր իմանալու, որ բիւզանդացու համար երդումը նշանակութիւն չունի։ Ուստի բոլորովին աւելորդ էր, որ նոյն եղանակով Արսէնիոս պատրիարքը փորձեց նոր կառավարչին տրամադրել, որ Լասկարիսի տան համար պահպանէ թագը։ Տիրող հանգամանքների փոթորկալից ժամանակը գահի վրայ

պահանջում էր քաջարի զինուորներ։ Օրինաւոր երախաների դահակալական իրաւունքի պաշտպանութիւնը, տէրութեան համար մեծ վնաս էր։ Արդէն 1261 թ. Յունուարի 1-ն Միքայէլը հանդիսաւոր կերպով օծուեց կայսրակից։ 1261 թ. դժբախտ Յովհաննէս ազնուական կայսեր կուրացրին և բանտ նետեցին։ Շուտով երևաց թէ հռովմէական պետութեան համար ինչքան անհրաժեշտ էր մի զօրեղ ձեռք։

Էպիրոսի անհանգիստ Միքայէլը դաշն էր կապել Սիկիլիայի Մանֆրեդի և Աքէայի Վիլեհարդուինի հետ և սպառնում էր Թեսաղոնիկէին։ Միքայէլ Պալէոլոգը, դրանով ստիպուած կանոնաւոր պատերազմ մղելու, շտապեց արագ հարուած հասցնել։ 1259 թ. նրա զօրապետները առան Վոդենան և Էպիրոսներին հալածեցին Կաստորիայի և Պենտոսի յետևը։ Մակեդոնիան Նիկիայի իշխանութեան տակն էր, առնուեցին նոյն իսկ Դէաբոլիս և Բերատ։ Մինչ այդ հասել էին Ապուլիայից և Աքէայից օգնական գնդերը։ 1259 թ. Հոկտեմբերին ծանր զրահաւորուած ասպետները պարտութիւն կրեցին սելջուկեան, սլաւոնական և կումանական ձիաւորներից և բիւզանդական կայսեր արագաշարժ նետաձիգներից։ Մեծ-Վլախիայի Յովհաննէս դեսպոտը,

Էպերոսի դեսպոտի անհարազատ որդին, ինքը
դաւաճանեց իւր գործին։ Ծանր կորուստներ
ունեցան մանաւանդ Մոռէայի Ֆրանկները։
Վիլհելմ իշխանը Յունաց ձեռքը գերի ըն-
կաւ։ Պելագոնիայի յաղթութիւնը ահագին
նշանակութիւն ունեցաւ տէրութեան հա-
մար։ 1262 թ. խաղաղութեամբ Էպիրոտցին
ստիպուած էր գոհ լինել միայն իւր ցեղա-
կան երկրով, իսկ Վիլհելմը իւր պելոպոնէ-
սեան իշխանութիւնից զիջաւ Մոնեմբազեան,
Միզիթրիան և Մայնան և խոստացաւ յա-
րատե խաղաղութիւն պահպանել Հռովմայե-
ցիների հետ։

Մինչ այդ կատարուել էր նաև Հռովմա-
յեցոց ժողովրդի մեծ բաղձանքը, մայրաքա-
ղաքը առնուել էր։ 1260 թ. Միքայէլը ան-
ցել էր Հելլէսպոնտը և լատիններից խլել էր
նոցա վերջին երկիրները։ Նա մի տարի զի-
նադադար շնորհեց։ Քաղաքագիտական աս-
պարիզում եռանդով աշխատում էր։ Բարե-
կամական կապեր հաստատեց բուլգարների
հետ. իսկ Վենետիկեցոց հզօր մրցակից-
ներին՝ Ջենովացոց բոլորովին իւր կողմը գրա-
ւեց։ Վենետիկեցիք նեղսիրտ վաճառականա-
կան քաղաքականութեամբ աչքի թողի էին
արել լատինական շահերը։ Յետոյ երբ ար-
դէն ուշ էր, տենդային արագութեամբ զի-

նուաճում էին և գրաւեցին արևմուտքի օգնութեան։ Նիւմֆէոնի դաշինքը (1261 թ․) ցոյց է տալիս Միքայէլի մեծ իմաստութիւնը։ Վատացէսի քանիցս կրկնուած անյաջողութիւնները ապացուցել էին, որ Յոյները կորցրել են իրենց ծովային ոյժը։ Ուստի կայսրը կարիքից ստիպուած Ջենովացիներին տուեց այն բոլոր իրաւունքները և առանձնաշնորհութիւնները, որոնց վրայ հիմնուելով Վենետակեցիք ստեղծել էին իրենց իշխանութիւնը Էգէյեան ծովում, Բոսփորի վրայ և Սև ծովի եզերքում։ Այսուհետև միայն Պիզացիների համար էին էլի բաց մնալու տէրութեան և Սև ծովի վաճառանոցները։ Վենետիկեցիք պէտք է զրկուէին Լևանտի շահաւէտ վաճառականութիւնից։

Միայն 800 մարդով Ալէքսիոս Ստրատեգոպուլոսը կանգնած էր Բոսփորի մօտ. նա լսեց որ Վենետիկեցոց նաւատորմիղը Պողեստա Գռադենիգոյի առաջնորդութեամբ նաւել է դէպի Դաֆնուսիոն։ Արագութեամբ յունական զօրավարը մայրաքաղաքի բնակիչների հետ համաձայնութիւն կայացրեց։ 1261 թ․ Յուլիսի 25-ն բարձրացան քաղաքի պարիսպներով։ Բալդուինն Բ կայսրը համարեա առանց կռուի Վենետիկեան մի նաւի վրայ փախաւ Եւբէա։ Երբ Ֆրանկները և Վենետիկեցիք սկսե-

ցին իրենց թաղերում ընդդիմութիւն ցոյց տալ՝ Ստրատեգոպուլոսը այդտեղ կրակ գցեց։ Նաւատորմիղը շատ ուշ հասաւ։ Լատինները, հոգևորականների և «հերձուածող» պատրիարքի հետ իրենց ունեցածներով գաղթեցին Եւբէա և Աթենական կղզիները։ Այդպիսով Յոյները առանց նեղութեան, վերջապէս մայրաքաղաքին էլ տիրեցին։ Հին հռովմէական պետութիւնն ամբողջութեամբ վերահաստատուել էր, և Միքայէլը ժողովրդի անսահման ցնծութիւններով 1261 թ. Օգոստոսի 15-ն մտաւ մայրաքաղաք և երկրորդ անգամ հանդիսով օծուեց երկնային իմաստութեան տաճարում։ Լատինական նախատինքը պատկանում էր անցեալին։

Իբրև յաւելուած այստեղ կաւելացնենք մի համառօտ ակնարկ Տրապիզոնի կայսերական պատմութիւնից։ Անդրոնիկոս Ա Կոմնենն կայսեր սարսափելի դժբախտութեան ժամանակ, երբ նրա ամբողջ տունը ջնջուեց, մի քանի հաւատարիմների յաջողուեց ազնիւ Մանուէլ իշխանի որդիները ապահովապէս փախցնել Վրաստան, որոնք այդ ժամանակ մանկական ամենաքնքոյշ հասակում էին։ Այնտեղ 1184—1212 թ. իշխում էր երկու իշխանների մօրաքոյրը Թամարա մեծ Թագուհին, որը տափաստաննե-

րում ապրող ցեղերի օգնութեամբ ստեղծել էր Վրացոց կարճատև մեծ իշխանութիւնը։ Որովհետև նա Ալէքսիոս Գ.ի հետ կռուած էր, միջոցներ տուեց իւր քրոջ որդիներին հռովմէական արևմտեան երկիրներում իրենց համար անկախ պետութիւն ստեղծել։ Ալէքսիոսը իւր զինուորներից Հռովմայեցիների կայսր հրատարակուեց և 1204 թ. մտաւ Տրապիզոն, որտեղ հաստատեց իւր աթոռը և ընդունեց «Մեծ-Կոմնեն» անունը։ Մինչ-դեռ իւր եղբայրը յաղթելով հասաւ մինչև Փափլագոնիա։ Ամեն տեղ երկու եղբայրները գրաւեցին Հռովմայեցիների սրտերը։ Միայն Սաբբասը՝ Ամիսոսի իշխանը, ընդդիմացաւ, և Ալէքսիոսը պաշարեց նրա քաղաքը։ Հռովմէական կայսրութեան անկումը, և Նիկիայի կայսրութեան հաստատութիւնը Թէոդորոս Լասկարիսի և Կոմնենի մէջ բարեկամական կապեր հաստատելու ոչ և է կերպ չնպաստեց։ Ընդհակառակը Դաւիթը փորձում էր օգտուել Փոքր Ասիայի իշխանութեան թուլութիւնից և ընդարձակել իւր սահմանները։ Սակայն երբ Թէոդորոսը միացաւ Սելջուկների հետ, որոնք Ալէքսիոսին հարուածեցին Ամիսոսի մօտ, և Թէոդորոսի Դաւթի դէմ տարած յաղթութիւնը Սանգարիոսի ափերում, Կոմնենների յառաջխաղութեան առաջն-

տուան։ Ի զուր անցաւ նաև այն, որ Դաւիթը Հերակլեյան ապահովելու համար, ընդունեց Լատինների վասալութիւնը, սոցա օգնական գունդը ջնջեց Թէոդորոսը։ 1212 թ. հզօր Լասկարիսը Դաւթից խլեց ամբողջ արևմուտքը և սահմանափակեց նրան Սինոպէի իշխանութեան մէջ՝ Կարամբեսի լեռներից մինչև Հալիս գետը։ Դաւթի համար աւելի վտանգաւոր էին Սելջուկները, որոնք շարունակ ձգտում էին հասնելու ծովը և 1214 թ. յարձակումով առան նրա մայրաքաղաք Սինոպէն, երբ Դաւիթը քաջաբար կռուելով, մեռաւ։ Այն երկիրը, որտեղից երբեմն ծագել էին Կոմնենները, ընկաւ թաթարների իշխանութեան տակ։ Մինչդեռ Դաւթի եղբայրը, Վրացիների օգնութեամբ, կարողացաւ աւելի յաջողութեամբ պաշտպանել Տրապիզոնը Թաթարների յարձակումների դէմ։ Իրաւ է նա էլ ստիպուած էր հարկ վճարել Հռոմին, որպէս զի փրկած լինի երկրի ներսի առևտուրը, որ կենտրոնանում էր Տրապիզոնում։ Նոր կայսրութիւնը բռնում էր մօտաւորապէս հին Պոնտոս Պոլեմոնիակոսը, արևելքից տարածւում էր մինչև Փազիս։ Ալէքսիոս Ա-ի կառավարութիւնը, որ ընտիր կառավարիչ էր և ճըշմարիտ իշխանական բնաւորութիւն, ներկա-

յացնում է Տրապիզոնի համեստ իշխանութեան ամենափայլուն շրջանը։ Արդէն նրա մահով սկսում է մի տեսակ անկում։ Աւատականութիւնը իւր կռիւներով անկարելի էր դարձնում կարգաւորեալ պետութեան հաստատութիւնը։ Երկու ազնուական դասակարգերի՝ սքոլարների և մեզոսքոլարների կռիւները, որոնք էին Կոմնէնների հետ եկած արքունիքի ազնուականները և արևելքում ապրող բնիկ մեծամեծները, տակն ու վրայ արին տէրութիւնը։ Ալէքսիոսին անմիջապէս յաջորդեց նրա փեսա Անդրոնիկոս Գիդոսը, որը իշխեց մինչև 1235 Թ. և քաջութեամբ կռուեց Սելջուկների դէմ։ Ալէքսիոսի անդրանիկ որդու կարճատև կառավարութիւնից յետոյ (մեռաւ 1238 Թ), յաջորդեց քաջ Մանուէլը, որը Մոնղոլների երկիւղից սերտ միացաւ Հոռոմների հետ։ Նրա որդիներից Յովհաննէսը խաղաղութիւն հաստատեց 1282 Թ. Պալէոլոգների հետ և մի կողմ թողնելով «Հռովմայեցոց կայսր» տիտղոսը, իրան անուանում էր Արևելքի, Վրաստանի և յայնկոյս Ծովի կայսր։ Արտաքուստ այդ շրջանը բաւական խաղաղ էր։ Ալէքսիոս Բ (1297-1330) Կոմնէնների մէջ լաւագոյններից մէկը, զէնքի ուժով կարողացաւ իւր դիրքը պաշտպանել Ջենովցիների դէմ, որոնք չափը կորցրած էին

վարւում, ինչպէս Բոսփորի ափերին, այնպէս էլ արեւելքում։ Նրա մահից յետոյ սկսեցին անտանելի խռովութիւններ։ Անչափահաս Մանուէլի փոխարէն սկիզբը կառավարում էր իւր հօրեղբայր Բազիլեյոսը, յետոյ 1340 թ. սրա այրին՝ բիւզանդական Էյրենէ իշխանուհին։ Ազնուականութեան մի մասը օտարուհու դէմ էր, միւս մասը պաշտպանում էր։ Քաղաքի փողոցներում փրթկեց կռիւը, որի ժամանակ կործանուեց Տրապիզոնի պաշտպան սրբի՝ Ս. Եւգենիոսի վանքը։ Դիարբեքիրի թաթարները ասպատակելով հասել էին մինչեւ քաղաքի դռները, նոքա այրեցին արուարձանները եւ կողոպտեցին օտար վաճառականների գրասենեակները։ Կրկին մի ուրիշ կանացի կառավարութիւն, ազնուական խմբերի կատաղի կռիւներ եւ գժտութիւններ Ջենովացիների հետ, որոնք իրենց դէմ գործած բռնութիւնների վրէժը լուծելով 1348 թ. աւերեցին Կերասոսը եւ սաստիկ թուլացրին տէրութիւնը։ Մի եւ նոյն ժամանակ իշխանական ընտանիքում տիրում էին ուղղակի զզուելի անբարոյական բարք ու վարք։ Սքոլարները 1349 թ. յեղափոխութեամբ գահի վրայ բազմեցրին տասներկուամեայ Ալէքսիոս Գ-ին, որը հասակին առնելով, երկիրը բաւական լաւ կառավարեց, նոր

դաշնագրութիւն հաստատեց Վենետիկեցոց հետ 1367 թ. և ոչնչացրեց Ջենովացիների մենավաճառութիւնը. իսկ քաղաքը զարդարեց եկեղեցիներով, վանքերով։ 1390 թ. տէրութիւնը թողեց իր Մանուէլ Գ որդուն ծաղկեալ դրութեան մէջ։ Սա խոնարհուելով Թեմուր-Լանգի առաջ, համարեա անկախ կառավարեց իր երկիրը մինչև իր մահը 1417 թ.։ Այստեղից սկսած Մեծ-Կոմնենների պատմութիւնը ներկայացնում է սարսութիւնների, ամենավատ տեսակի խայտառակ գործերի, բնութեան հակառակ արատների և հայրասպանութիւնների մի շղթայ. այդ բարոյական վայրագութիւնը զարհուրելի ապացոյց է Կոմնենների հին իշխանական տան հոգեկան և ֆիզիքական կատարեալ անկմանը, որտեղ արատները շարունակաբար բարդուել էին սերունդների մէջ։ Հայրասպան Յովհաննէս Դ-ը ստիպուեց Կոստանդնուպօլսի անկումից յետոյ Բարձր-Դրանը հարկ վճարել։ Նա կապեր հաստատեց սպիտակ խոյի Թուրքմանների հետ և իր դուստր Կատարինային (Dozpina Katon) Ուզուն—Հասան մեծ խանին կնութեան տուեց։ Երբ նա մեռաւ 1458 թ. նրա եղբայր Դաւիթը, հեռացնելով օրինաւոր ժառանգին, ինքն անցաւ կառավարութեան գլուխը։ Նա ինչքան էլ երկչոտ

էր և բնաւորութիւնից զուրկ, հեռու չմնաց քաղաքական խարդախութիւններից և փորձեց դաշինքներ հաստատել. բայց միակ իշխանութիւնը՝ Թուրքմենները արդէն Տաճիկների հետ խաղաղութիւն հաստատեցին։ Տաճկական նաւատորմիղը արդէն պաշարել էր Տրապիզոնը։ Երբ ցամաքային զօրքը մօտեցաւ, Դաւիթը անձնատուր եղաւ, և աքսոր քշուեց Մաւռոնորոս՝ Սեռէզի մօտ։ Սակայն երբ կասկածի տակ ընկաւ, թէ յարաբերութեան մէջ է իւր եղբօր աղջկայ՝ մեծ խանի կնոջ հետ, կառափեց սուլթանը։ Որովհետև Դաւիթը ազնուութեամբ հրաժարուեց ընդունել մահմետականութիւնը, մահուան դատապարտուեց իւր եղբօրորդու և եօթը որդիների հետ։ Դեռ աւելի շուտ էր Տրապիզոնը տաճկական քաղաք դարձել։ Սուլթանը մայրաքաղաք տարաւ ազնուականներին և աչքի ընկնող քաղաքացիներին. նոցա տները և սեպհականութիւնները բաժանեցին տաճիկ զինուորականների մէջ։ Այդպիսով վերջացաւ Կոստանդնուպոլսի անկումից 8 տարի յետոյ Մեծ Կոմնենի թագաւորութիւնը, որը մինչև այդ մօտ երեք դար պետութեան հեռու արևելեան անկիւնում տարածել և պահպանել էր քրիստոնէութիւնը և յունական քաղաքակրթութիւնը։

## Թ.

# ՊԱԼԷՈԼՈԳՆԵՐԻ ՎԵՐԱՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԿՈՐԾԱՆՈՒՄԸ.

(1261—1453)



Մենակ Յոյների ամենավատ բարեկամները չեն՝ որոնք Կոստանդնուպոլսի վերստին գրաւումը համարում են նոցա ազգային դըժ-բախտութեան ճշմարիտ սկիզբը։ Դրանով նորից վերակենդանացաւ այն դժբախտ ուրուականը, որը դեռ այսօր էլ Նոր-Հելլէններին համարեա անպէտք է դարձնում գործնական քաղաքականութեան մէջ, քանի որ նոքա հետամուտ են μεγάλη ἰδέα — մեծ գաղափարի օդային պատկերին։ Բուլգարների անխնայ կոտորածները և ոչնչացումը Հիւսիսում և Սել-ջուկեաններին արևելքում թուով այնքան էր նուազեցրել և թուլացրել Յունաց ազգը, որ անհնար էր պահպանել առաջուայ մեծ պետութեան դիրքը։ Չնայած դրան՝ Հելլենական ազգը դեռ կարող էր դիմանալ, եթէ միա-

նար օրթոդոքսութեան միջոցով, երբ այն ժամանակ հաւատոյ կապն այնքան մեծ էր, երկու խիստ ընդունակ և սերտ կապուած սլաւոնական տէրութիւնների հետ, կարող էր իբրև երկրորդական պետութիւն բաւական յարգանք ազդող դիրք ունենալ, եթէ իմաստուն խոհականութեամբ պահպանէր իւր ոյժերը և միջոցները, որ առաջուայ պէս այլ ևս անսպառ չէին: Դրա փոխարէն դեռ Միքայէլն էր հետամուտ ռոմանտիքական ցնորքների, և ինչքան ողորմելի էր նրա յաջորդների անզօրութիւնը, այնքան աւելի զօրեղացաւ մեծութեան այդ ցնորքը, և այնքան աւելի սկսեցին ցաւակցել և ծաղրի առարկայ դարձնել օրէց օր գլորուող բիւզանդականութեան նման ընթացքը և այդ ցնում էր այն գերմանո—ռոմանական արևմուտքը, որ քիչ առաջ դեռ բարբարոսական դրութեան մէջ էր և քաղաքակրթապէս աստիճանաբար Նոր-Հռոմի առաջը կտրել անցել էր:

Միքայէլը ամենայնիւ զօրաւոր էր և քաղաքագէտ, բայց նա չունէր Վատացէսի վարչական ընդունակութիւնը: Անգելներից սկսած տէրութիւնը համարեա սնանկութեան մէջ էր: Այն ժամանակուայ նախնական տնտեսական վարչութիւնը դեռ ծանօթ չէր մեծ չափերով փոխառութիւնն: Նեղ վիճակից ա-

պատւում էին վատ փող կտրելով։ Մինչդեռ մինչև Կոմնենների տան անկումը, բոլոր վաճառանոցներում իշխում էր բիւզանդական հին լիարժէք Սոլիդոսը և դրանով քիչ չէր նպաստում այն հզօր դիրքին, որ ունէր հռովմէական կայսրութիւնը արևելքի և արևմուտքի բոլոր ազգերի մօտ՝ նոյն Վասացէսը ոսկի դրամները երրորդ մասով խառնել էր։ Այդ եղանակը, որ մնաց տէրութեան վերջին, Պալէոլոգները այնպիսի մեծ չափերով գործ դրին, որ նոքա արդէն երկրորդ սերնդի ժամանակ գործ էին դնում կիսարժէք ոսկիներ։

Բայց պէտք է ասած այն դժուարութիւնները, որ բարդւում էին նոր կայսեր առաջ, շատ մեծ էին։ Աքէայի Վիլհելմը պապի միջոցով լուծեց իւր երդումը և սկսեց սահմանային պատերազմ Յոյների և Ֆրանսիացիների մէջ Պելոպոնէսում, ուր շնորհիւ երկիրը բոլորովին աւերակ դարձաւ։ Դրա փոխարէն Միքայէլը ստիպեց անհանգիստ Էպիրոսցիներին 1265 թ. իրան զիջանել Յովհաննինան, Մինչ այդ փախստական Բալդուին Բ-ը կարողացել էր իբրև դաշնակից գրաւել 1264 թ. Սիկիլիայի Մանֆրեդին, և Ջենովայի ներկայացուցիչը Կոստանդնուպօլսում կամենում էր ստոր մատնութեամբ քաղաքը նորից դցել

Լատինների ձեռքը, որի հետևանքն այն եղավ, որ Միքայելը Վենետիկցիների հետ մոտենալու առաջին փորձն արեց, որոնք դեռ իշխում էին ծովերի վրա և հակաքաղաքագիտական ընթացքով դեռ դանդաղում էին. Ջենովացիներին պատժելով քշեցին Հերակլիա։ Միքայելը ամեն տեղ թշնամիներ ուներ։ Մարիա թագուհին դժբախտ Յովհաննես Դ-ի քույրը, շարունակ գրգռում էր իր Կոնստանդին ամուսնուն նրա դեմ։ Բուլղարները յաղթութեամբ մտան Մակեդոնիա։ Սակայն Միքայելը նրանցից խլեց Փիլիպուպոլիսը և Ստենիմաքոսը, և յետոյ ահագին նշանակություն ունեցող Անքիալոս և Մեսեմբրիա ծովաքաղաքները։ Ցարը 1265 թ. վայրենի կատաղութեամբ հարաւային Ռուսաստանի Թաթարների հետ այնպես ավերեց Թրակիան, որ երկար ժամանակ հազիվ էին դաշտերի մեջ մի երկրագործ նկատում։

Բայց Միքայելին գլխավոր վտանգ սպառնում էր Անժուվինների կողմից։ Պրովանսի Կարոլոս գրաֆը 1266 թ. գրաւել էր Մանֆրեդի տէրութիւնը և երկու Սիկիլիայի ֆրանսիական թագաւորութիւնը, տարածեց իւր գերիշխանութիւնը նաև Աքէայի վրայ ամեն կերպ օժանդակութիւն գտնելով Կղեմես Դ պապից որ կուրօրէն անձնատուր էր

Ֆրանսիական իշխանին և Բալդուին Բ կայսերին, որ ապրում էր ողորմութիւններով։ Կարլոսը նորոգեց Նորմանների բոլոր պահանջները Յունաց տէրութեան զանազան մասերի վրայ։

Որպէս զի այդ վտանգի առաջն առնի, Միքայէլը բանակցութիւն սկսեց պապի հետ։ Վերջինիս միջնորդութեամբ 1267 թ. Ջենովացիները նորից ստացան իրենց իրաւունքները. նոցա վաճառականութիւնը Սև Ծովի վրայ սկսեց այնպէս ծաղկել որ երկիւղ էր ազդում Վենետիկեցիներին։ 1275 թ. կայսրը Զաքարիա տանը շնորհեց Փոկէա քաղաքը. այդ տունը ձեռք բերեց ահագին հարստութիւն՝ շահագործելով այնտեղի պաղլեղի հանքերը։

Յետոյ երբ արդէն ուշ էր, հանդէս եկան Վենետիկեցիք. նոքա 1268 թ. հինգ տարի ժամանակով մի դաշնագրութիւն հաստատեցին աւելի աննպաստ պայմաններով, քան որ նոցա առաջարկուել էր 1265 թ։ Բացի այդ. կայսրը պայման դրեց, որ երկու մրցակիցները իրաւունք չպիտի ունենան իրենց մասնաւոր կռիւները մղել իւր տէրութեան ծովերում։ Դեռ միանգամ էլ տէրութիւնը յարգանք ներշնչեց վաճառականներին։

Ամենավտանգաւոր հակառակորդը մնաց

Կարլոս Անժուացին։ 1267 թ. առավ Կորֆուն։ Միքայել Բ-ի մահից հետո (1271 թ.) գրավեց Իլլիրիայի ծովափնյա երկիրները. կաթոլիկ Ալբանացիք միացան նրա հետ. 1272 թ. Դիռախիոնը՝ անձնատուր եղավ։ Մի առանձին բախտ էր, որ կաթոլիկների հավատափոխ անելու եռանդը միշտ սարսափեցնում էր օրթոդոքս ազգաբնակությանը։ Սակայն եռանդոտ Պրովանսացին կարողացավ Սլավոն ժողովրդի համակրանքն էլ գրավել, մինչև որ 1272 թ. Կոնստանդին ցարը Իրենեի մահից հետո ամուսնացավ Մարիա Պալեոլոգի հետ, որին բաժինք տրվեց Մեզեմբրիան և Անքիալոսը։ 1273 նոր աղետ ծագեց. Սերբերը 1272 թ. ի վեր, Վարդարի վերին հովտից սկսելով, հաղթությամբ առաջ էին խաղացել, Յովհաննես Դ Լասկարիսը փախավ Փոջիա, որտեղ Կարլոսը նրան կայսրավայել ընդունելություն ցույց տվեց։ Վենետիկեցիք էլ դաշնագրությունը վերջանալուց հետո, սկսեցին ծովահենական պատերազմ։ Այն ժամանակ հմուտ քաղաքագետը, որ միջոցների համար երբեք նեղություն չէր կրում, եկեղեցական խնդիր հարուցեց։ Եվ Գրիգոր Ժ-ը բախտ ունեցավ տեսնելու, որ 1274 թ. Լիոնի ժողովում Միքայելի դեսպանը՝ Գեորգ Ակրոպոլիտեսը ներկայացրեց հունական եկե-

դեցու դաւանանքը «tilique»—ով և ընդունեց պապի նախապատւութիւնը։ Կայսրը, որպէս զի հանգստացրած լինի Տրնովոյի պատրիարքին և Պեցի ինքնագլուխ մետրապօլտին 1272 թ. ոսկեայ հրովարտակով, որ դեռ պահպանուած է Սինայի վանքում, վերստին հաստատեց Բազիլեյոս Բ-ի Օխռեդայի ինքնագլուխ եկեղեցուն բաշխած բոլոր առանձնաշնորհութիւնները։ Այդպիսով Օխռիդայում գահակալող Յոյները ճանանչուեցին երկու պատրիարքութիւնների բոլոր վիճակների տէրեր և հիւսիսի ամբողջ հոգևորականութիւնն ու ժողովուրդը սկսեցին զբաղուիլ, որ շատ հաճելի էր, մանր վէճերով թեմերի, ինչպէս նաև ազգութիւնների սահմանների խնդիրներով։ Կայսեր կաթոլիկասէր քաղաքականութիւնը հասկանալի էր, եթէ ինկատի առնուի նրա քաղաքական նեղ դրութիւնը. չնայած դրան, այդ մի ծանր սխալ էր։ Հաւատի խնդիրներում օրթոդոքս հոգևորականութիւնը աւելի էր լսում Աստուծուն քան մարդկանց. և բացարձակապէս հակառակ էր այն ուսմանը, ըստ որում «պէտք է հետամուտ լինել շատ հոգիների փրկութեան շահաւէտ տնտեսութեան համար»։ Արդէն սկզբից կամակոր Արսենիոսը՝ ազնուութեամբ հաւատարիմ մնալով Լատ-

կարիսի տանը, թէև այդ տէրութեան օգուտը չէր, նզովել էր կայսերական գահը յափշտակողին։ Յետոյ ինչպէս պատկերամարտութեան վէճերի ժամանակ, հռովմէական տէրութիւնից անկախ երկիրները՝ Տրապիզոնը, Նէոպատրէն, Ամբրակիան (Arta) և Բուլղարների թագուհին հանդիսացան օրթոդոքս փախըստականներին հովանաւորողները։ Բայց Միքայէլը մնաց անընկճելի և ըմբոստ ու հալածական Յովսէփ պատրիարքի փոխարէն նշանակեց ճշմարիտ լատինասէր Յովհաննէս Բեկկոսին։ Ամէն կերպ՝ բարոյական վարքով, վերջում ցոյց տուած մարտիրոսական առաքինութեամբ, խոհականութեամբ և ուսումնականութեամբ այս նշանաւոր մարդը շատ էր բարձր կանգնած—կրթական վիճակը վերցրած— իւր և հետևեալ ժամանակների հոգևորական ընդդիմամարտ քարոզիչների և հակաճառող հեղինակների խմբից, որոնք սարսափելի սուր էին. բայց նա էլ ոչինչ չկարողացաւ անել իւր սեպհական հոգևորականութեան դէմ, որ պաշտպանում էր Աստուծոյ և ազգի դատը։ Նիկեացական վէճերը ամէն տեղ գրգռեցին օրթոդոքս ժողովուրդը այն մարդու կառավարութեան դէմ, որ նրա աղանդաւորը և քաղաքական իշխանութիւն տուողն էր։

Նեմուս թերակղզու վրայ նրան մեծ նեղութեան մէջ էին ձգել Անգեւինները և Ֆրանկները, որոնց հզօրապէս օգնում էր Նէապոլը։ Երբ մանաւանդ Կարլոս Անժուացին պատրաստուեց ինքը գործի գլուխ անցնել, թւում էր թէ նորոգուելու է Նորմանների առաջվա աղէտը։ Կարլոսը արդէն 1278 թ. Հուգօ Ռուսօ դը Սիւլլին կարգել էր իւր Էպիրոսեան իշխանութեան ընդհանուր զօրապետ և կառավարիչ, որը մեծ եռանդով պատրաստւում էր կռուի։ 1280 թ. վերջը նա յայտունէր առնել Նշանաւոր Բերատը։ Բայց Միքայէլը իւր ամենայն զօրքով նրան ընդառաջեց։ 1281 թ. Փետրուարին նրա մեծ զօրապետ Միքայէլ Տրաքանիոտէսը Բերատի մօտ փառաւոր յաղթութիւն տարաւ։ Սիւլլին գերի ընկաւ։ Բայց Մարտին Դ պապի ձեռքով Յուլիս 3, 1281 թ.) Հռոմի, Նէապոլի և Վենետիկի մէջ հաստատուած Լիգայի դէմ Միքայէլը կարողացաւ գլխաւորել միայն իւր վարժ քաղաքագիտական հնարներով։ Հաւատարիմ Զաքարիա Բենեդետտոն և Ջիօվաննի դը Պրոչիդան Արագոնի Պետրոս թագաւորին խոստացան յունական փողերով օգնել, եթէ կկռուի Նէապոլի դէմ, և Սիկիլեան երեկոն (10 Մարտի 1282) Կարլոսին բոլորովին թուլացրեց. իսկ կղզին Սպանիա-

ցոց ձեռքը խաղացրեց։ Դրական մնացող Վենետիկեցիք հեռացան անզօր Կարլոսի դաշինքներից. և 1285 թ. Յոյների հետ հաստատեցին տասնամեայ խաղաղութիւն։ Դեռ փոքր առաջ անխոնջ կայսրը մեռել էր [11 Դեկտեմբերի 1282 թ.) Նէոպատրէի Անգելների դէմ արշաւելիս։

ԺԳ դարի վերջի քառորդը առանձին կնիք է ստանում օսմանական և սերբական պետութիւնների հաստատութիւնով։ 1288 թ. Օսմանը, որ իւր նոր տէրութիւնը հաստատել էր Ռումի աւերակների վրայ, մի փառաւոր յաղթութիւնից յետոյ Յոյներից վերցրեց Մելանգինան (Կարաջիհասար)։ Արեւմուտքում Սերբիայի Ստեփան Ուրոշ (մեռաւ 1272) և Միլուտին (մեռաւ 1321) թագաւորները կարողացել էին Հեմոսի թերակղզու գերիշխանութիւնը ձեռք բերել։ Ընդհանուր պատմական մեծ դժբախտութիւն է, որ Կոսովօպոլիէի անբախտ օրը խլեց այդ ընտիր ժառանգորդից, որ բոլոր սլաւոնական ցեղերից ամենաազնիւն էր, Հեմոսի թերակղզու իշխանութիւնը, և այդպիսով ազատ ճանապարհ բաց արեց տաճկական բարբարոսութեան առաջ, որի դէմ անզօր էին Յոյները և Վենետիկեցիք։

Միքայէլի որդի Անդրոնիկոս Բ-ը (1282—1328) խելացիութեամբ շատ պեց

հաշտութիւն կապել օրթոդոքս հոգեւորականութեան հետ։ Եւ խաղաղութիւնը հաստատուեց, ինչպէս Բիւզանդիոնում սովորութիւն է նման դէպքերում, տեսլութեան ցոյցերով։ Հասկանալի է, որ Բեկկոսը տեղի տուաւ իր նախորդի՝ Յովսէփի առաջ։ Բայց եկեղեցական վէճերը որ տասնեակ տարիներ շարունակուեցին կենդանի վկայ են, թէ նոյն ժամանակուայ հոգեւորականութիւնը բարոյապէս և կրօնապէս ինչքան անկեալ վիճակ ունէր։ Աւարչապետական զզուելի կռիւները, որ վարում էին գլխաւորապէս աննշան և բարոյապէս անարգ եպիսկոպոսները, պտտում էր համարեա միայն տիեզերական պատրիարքութեան գահակալութեան շուրջը։ Այն կրօնական փայլը, որով շրջապատուած էր ս. Յովհան Ոսկեբերանի գահը բոլոր օրթոդոքս ժողովրդների առաջ շնորհիւ գլխաւորապէս սահմանափակ գահակալների այն չափով ընկաւ, ինչ չափով ընկնում էր հռովմէական կայսեր փառքը։ Միակ մարդը որ ճշմարիտ սրտով մտածում էր եկեղեցու բարօրութեան համար, ինքը, կայսրն էր, որ իր Նոր Էկթեսիսով եկեղեցու մէջ հաստատեց մի կարգ, որ համապատասխան էր տէրութեան իսկական դրութեանը, որ բաւականաչափ սահմանափակուած էր։

Նրա կարգադրութիւնը, եթէ դեռ արտաքին պատահարները չեն խանգարել, շարունակւում է դեռ մինչև այսօր գոյութիւն ունենալ։

Տնտեսութիւնը օրէցօր աւելի էր փատանում՝ տէրութեան ամբողջ անկման պատճառով։ Միքայէլը փորձ էր փորձել՝ օգտուելով յունական ծովափի և կղզիների ընտիր մի ծովագնաց ժողովրդից, վերականգնել նաւատորմիղը։ Որդին թողեց հօր սկսածը։ Ուստի տէրութիւնը ԺԳ դարու վերջի տագնապներում անզօր խաղալիք էր դարձել երկու ծովագնաց զօրեղ հասարակապետութիւնների վաճառականական կատաղի պատերազմների ժամանակ։ 1303 թ. Վենետիկեցիք Անդրոնիկոսին ստիպեցին խաղաղութիւն հաստատել, որ իրենց համար խիստ շահաւէտ էին։ Դրա հետևանքն այն եղաւ, որ կայսրը բոլորովին անցաւ աւելի ազնիւ Ջենովացիների կողմը։

Մինչդեռ կայսերական կառավարութիւնը եւրոպական հողի վրայ, առանց հետևանքի, շարունակում էր իր անվերջ կռիւները Անգելների հետ, Ասիայում օսմանական տէրութիւնը օրէցօր աճելով լուրջ վտանգ էր դառնում տէրութեան համար. և նոյն Բափէոնի մօտ 1301 թ. յաղթեցին Միքայէլ գահաժառանգին։ Միքայէլը Պետր Արագո-

նացաւ հետ բարեկամութիւն ունենալով, Բար-
սելոնայի վաճառականների առաջ բացել էր
Անատոլիայի նաւահանգիստները։ Արեւելեան
Սպանիայի սաստիկ աղքատ բայց քաջամար-
տիկ Հիդալգոները (սպանական ասպետները),
երբ 1302 թ. խաղաղութեամբ վերջացան
Կարլոս Անժուացու հետ մղած պատերազմ-
ները մտածեցին նոր գործ որոնել։ Անպար-
տելի Ռոգեր դը Փլորը 1302 թ. Անդրոնի-
կոսին առաջարկեց իր օգնութիւնը՝ 36 նաւ
և 6000 Սպանիացի։ Իրաւ է սաստիկ դժուար
էր այդ վայրենի զինուորների հետ վարուե-
լը։ Յամենայն դէպս բիւզանդական կառա-
վարութիւնը միանգամայն անզօր էր նրանց
զսպելու իր հին Փրանկեան աննշան զըն-
դերով և ախրահոչուկ բիւզանդական խարա-
մանկութեամբ, և ստիպուած էր անգործ
հանդիսատես լինել, թէ ինչպէս վայրենի վարձ-
կանները Բիւզանդիոնում կռուի բռնուելով
Ջենովացիների հետ 3000 մարդ սպանեցին։
1803 թ. յաջողուեց նրան տանել Ասիա,
այստեղ փառաւորապէս ցոյց տուին իրենց
քաջութիւնը։ 1304 թ. Տաճիկները արդէն
պաշարել էին Փիլադելֆիան, յունական Փոքր
Ասիայի ամենահաստատ և զօրեղ քաղաքը,
երբ Ռոգեր դը Փլորը իր կատալանցիներով
քաղաքին օգնութեան հասաւ։ Սպանական

տուրը սարսափելի կոտորածներ տալով բերեց Տաճիկների մէջ։ Բայց միանգամայն անզուսպ հիպալգոնները շուտով տէրութեան համար իսկական թշնամիներից աւելի մեծ պատուհաս դարձան։ Երբ գահաժառանգ Միքայէլը 1305 թ. խարդախ միջոցով սպանել տուեց Ռոգերին, այն ժամանակ նրա զինուորները վրէժխնդրութեամբ լցուած մի տեւական շարժուն հասարակապետութիւն կազմեցին և երկու տարի շարունակ սարսափալից կռիւ մղեցին Յոյների հետ։ Ի վերջոյ այդ անզուսպ զինուորներին քշեցին հարաւ, որտեղ նոքա երկար արկածներից յետոյ 1311 թ. սոսկալի փոխճան պատրաստեցին Աթէնքի և Թեբէի հերձոգութեանը Սկրիպուի ճակատամարտի մէջ։ Այնտեղի գըժբախտ Յոյները ստիպուած էին համեմատաբար մեղմ Ֆրանսիական իշխանութիւնը փոխել սպանական ծանր ստրկութեան հետ։

Յոյները գովելի եռանդով կռւում էին առաջ խաղացող Տաճիկների դէմ՝ Բուլղարների և Սերբերի օգնական գնդերով. բայց նոցա նշանաւոր քաղաքները՝ Նիկիան և Պըրուսան շարունակ վտանգի մէջ էին Տաճիկների յարձակումներից։ 1320 թ. մեռաւ Միքայէլ գահաժառանգը։ Սրա զեխ, բայց անձնապէս տատոփիկ յարգուած և ոչ անընդունակ Անդ-

րոնիկոս որդին մեծամեծների մէջ իր համար ստեղծեց զօրեղ կուսակցութիւն։ Դրա հետևանքն այն եղաւ, որ պապի, որ իր ժլատութեան պատճառաւ սաստիկ անժողովըրդական էր, և թոռան մէջ տեղի ունեցան անհաճելի ընդհարումներ և վերջն էլ ծագեց քաղաքացիական պատերազմ, մինչև որ թոռըն աւելի ուժեղանալով ստիպեց 1225 թ. Փետրուարի 1-ին իրան կայսր օծել և կայսերակից դարձաւ։

Ներքին կռիւները տէրութեանը բոլորովին թուլացրել էին։ 1326 թ. վերջապէս Սուլթան Որխանի ձեռքով ընկաւ Պրուսան (Brussa), որը դարձաւ տաճիկների մայրաքաղաքը։ 1328 թ. անձնատուր եղաւ Նիկոմեդիան։ Մինչ այդ երկու կայսրները շարունակում էին կռուել՝ ծերը օգնութեան կանչեց Սերբերին, երիտասարդը Բուլղարներին։ Սակայն 1328 թ. Միքայէլ ցարը յանկարծ անցաւ ծերի կողմը։ Այն ժամանակ երիտասարդը ցոյց տուեց իր եռանդը։ Սինադենոս պրոտեստրատորը անակնկալ առաւ մայրաքաղաքը. ծերը ստիպուեց հրաժարական տալ և 1330 թ. վանք մտնել, այնտեղ նա մեռաւ 1332 թ. Փետրուարի 2-ին։

Անդրոնիկոս Գ-ը մի քանի ընդհարումներից յետոյ խաղաղութիւն կապեց Բուլ-

գարների հետ, որ առաջ էին խաղացել մինչև Դիդիմոտեյխոս, որով Բուլգարները իրենց բոլոր ոյժը գործին Սերբերի դէմ։ 1330 թ. յուլիսի 28-ի Սերբերի թագաւոր Ստեփան Ուրոշը, օգնական ունենալով 300 զրահաւորուած գերմանական վարձկաններ, Վելբուժդի մօտ մի արիւնալից և վճռողական յաղթութիւն տարաւ Բուլգարների դէմ։ Միքայէլ ցարը պատերազմում մեռաւ։ Բուլգարների պետութեան ոյժը կոտրուած էր. թէև Սերբերի թագաւորը չոչնչացրեց նրանց կառավարութիւնը։ Մի տարի յետոյ Սերբերի ծեր թագաւորը զոհ գնաց ազնուականների դաւադրութեանը. և գահը բարձրացաւ նրա մանկահասակ Ստեփան Դուշան որդին՝ (1131=1355) սերբական մեծ պետութեան հզօր հիմնադիրը։ Յայտնի է, որ նրան չյաջողուեց, ինչպէս ծրագրել էր, բոլորովին հեռացնել Փրանկներին և Յոյներին և այդպիսով Հեմուս թերակղզու վրայ ստեղծել քրիստոնէական, գոյութիւն պահպանելու ընդունակ մի միապետութիւն, որով կարող կլինէր զօրեղ պատնէշ կանգնեցնել տաճիկների՝ քաղաքակրթութիւնը ջախջախող բարբարոսութեանը։ Այնու ամենայնիւ նրա իշխանութիւնը սաստիկ զօրեղացաւ։ Նա խնամութեամբ միացաւ Բուլղարների նոր ցար

*Յովհաննէս Աղէքսանդր Ասէնի հետ* (1331—1365)։ *Մեծ յաջողութեամբ ընթացաւ Մակեդոնիայում և Իլլիւրիայում։ Օխռիդան, Պրիլիպը, Կաստորիան* 1331 *թ. ընկան նրա իշխանութեան տակ։*

*Անդրոնիկոս Գ-ը* 1334 *թ. Թեսալիայում և Էպիրոսում Անգելների ժառանգի՝ գրաֆ Ջիովաննիի հաշուին հզօրապէս տարածել էր Յոյների իշխանութիւնը. իսկ վերջինի մահից յետոյ* 1335 *գրաւեց ամբողջ երկիրը։ Սակայն Սերբերի միջամտութիւնը փոփոխութիւն առաջ բերեց։* 1340 *թ. դոքա տիրեցին ամբողջ երկրին մինչև Յովհաննինան և իրենց տիրապետութիւնը պաշտօնապէս ընդունել տուին Յոյներին։ Ասիայի մէջ Յոյների ձեռին մնացել էր համարեա միայն Ֆիլադելֆիան։ Յունաց ծովափնեայ քաղաքները Օսմանցիներին հարկ էին վճարում։ Բայց երբ* 1337 *թ. Ուրխանը փորձեց եւրոպական հողի վրայ հաստատուն ոտք ձեռք գցել՝ Յոյները փառաւորապէս նրան յետ մղեցին։ Բացի այդ, Անդրոնիկոսը միանգամ էլ հասկացաւ Ջենովացիներին յարգանք ազդել։ Երբ որ Փոքր Ասիայի ծովափերում Սելջուկները կազմակերպել էին կանոնաւոր ծովահէնութիւն և մարդորսութիւն, և դրանով մի տեսակ պատուհաս էին ներկայացնում Արխիպելագի բա-*

ժան-րաժան մանր իշխանութիւնների համար, Բիւզանդացիները սկսեցին նորից ուշք դարձնել ծովային ուժի վրայ, որը այնքան ժամանակ անխնամ էին թողել: Այս-կաւկոսը 1329 թ. Ջենովացիներից առաւ Քիոսը, որը ծովի մէջ գլխաւոր կենտրոն դարձաւ Տաճիկների դէմ: Փոկէայի Զաքարիա տան ժառանգները՝ Կոստանտէնները սկսեցին գլուխ խոնարհեցնել Բիւզանդացիներին: Դրա փոխարէն Դոմենիկոն Փոկէայից Նաքսոս և Հռոդոս կղզիների բնակիչների հետ միացած 1333 թ. տէրութիւնից խլեց Լիսբոսը: Սակայն Անդրոնիկոսը, որ իւր միջոցների ընտրողութեան մէջ միանգամայն հաւասար էր Իտալացիներին, Սարուխանի Այդնի սելջուկեան էմիրների հետ դաշինք կապեց Օսմանցիների դէմ, որոնք քիչ առաջ նուաճել էին Կարասուի էմիրութիւնը: 1336 թ. Կայսրը առեց Լիսբոսին և 1340 թ. Ջենովացիները կորցրին Փոկէան յոյն բնակիչների ապստամբութեամբ:

Անդրոնիկոսի մահից յետոյ (1341 թ. յունիսի 15) գահ բարձրացաւ նրա որդի Յովհաննէս Ե. (1341—1391): Խնամակալութիւնը տուել էին այրի կայսրուհու՝ Աննա Սավոյեացու անզօր ձեռքը: Սակայն ամենակարող Յովհաննէս Կանտակուզէնոսը՝

զօրքի ընդհանուր հրամանատարը, խլեց խնամակալութիւնը, իսկ Ապոկաւկոսն անցաւ խնամակալուհու կողմը: Մինչդեռ Կանդակուզինոսը 1341 թ. Դիդիմատէյխոսի մօտ մեծ պատրաստութիւններ էր տեսնում որպէս զի անիշխանութեան մատնուած Մօրեան նորից գրաւի տէրութեան համար, Կոստանդնուպօլսում տեղի ունեցաւ նրան հակառակ յեղափոխութիւն և Ապոկաւկոսը անցաւ կառավարութեան գլուխը: Այն ժամանակ Կանդակուզենոսն այլ ևս երկար չհամբերեց, նա 1341 թ. հոկտեմբերի 26ին Յովհաննէս Զ. անունով կայսր օծուեց: Դրա հակառակը, արքունիքը հանդիսաւոր կերպով օծել տուաւ մանուկ Յովհաննէս Ե. օրինական պատրիարքի ձեռքով[1] և Ապոկաւկոսը կարգուեց Մեգաս դուքս—Մեծ իշխան. կուսակալների մեծ մասը Կանտակուզինոսի կողմն էին, մինչդեռ ժողովուրդը և տեղական պաշտօնեաները բռնել էին օրինական կառավարութեան կողմը: Այդ ձևով Ապոկաւկոսը կարողացաւ իւր հակառակորդից խլել Թրակիայի մեծ մասը: Ադրիանուպօլիսը իւր դըռները փակեց նրա առաջ: Իսկ Յովհաննէս

---

1. Յովհաննէս Զ. օծուեց եւ թագ ստացաւ Դիդիմօտէյխոսի եպիսկոպոսից:

Անգելոսը Էպիրոսի կուսակալը և Օմար բէկը՝ Այդնի էմիրը օգնում էին Կանտակուզենին․ մինչդեռ կառավարութիւնը արքայական թանկագին՝ քարերը գրաւ էր դնում Վենետիկեցւոց մօտ։ Կանտակուզենը օգնութեան կանչեց Սերբերին, իսկ նրա ամուսինը պաշարուած լինելով Դիդիմոտէյխոսում կանչեց Բուլղարներին։ Սոքա թէ և հալածեցին Յոյներին, բայց պահանջում էին բերդն իրենց տալ։ Միայն Այդնի Թուրքերը ազատեցին կայսրուհուն։ Սակայն Յովհաննէս Զ-ի գըժտութիւնը Ստեփան Դուշանի հետ կարծես արագացնելու էր նրա կորուստը, բայց Յովհաննէս Անգելոսի մի յաղթական արշաւանքը գրաւեց նրա համար ամբողջ հարաւային Մակեդոնիան, մինչ այդ 1343 Թ. պապի ձեռընտուութեամբ Վենետիկեցիների և Կիպրոս կըղզու և Արքիպելագոսի Փրանկների մէջ հաստատուած Լիգան նուաճեց Զմիւռնիան։ Թեսալոնիկէն Ապոկաւկոսն ազատեց իւր նաւատորմղով։ Անօգուտ անցաւ խնամակալուհու դեռ օգնութեան դիմումը՝ Բուլղարներին և Սերբերին։ Աղէքսանդր ցարը գրաւեց իբրև վարձ, իրեն խոստացած Փիլիպպուպօլիսը և Ռոդոպէ լեռներում մի շարք դղեակներ։ Ուրիշ ոչինչ չկարողացաւ կատարել։ 1344 Թ. Կանտակուզենոսը իւր կողմը գրաւեց Բուլղար-

ների աւազակապետ Մոմչիլոյին, որը սկիզբը օգնեց նրան 5000 սերբ և բուլղար վարձկաններով, բայց շուտով բաժանուեց և յարձակուեց Կանտակուզենի բանակի վրայ Մետենայի աւերակների մօտ։ Կայսրը հազիւ կարողացաւ ազատուել. Մոմչիլոն ամուր դիրք ստեղծեց Քսանթեյում և սկսեց կողոպտել Խալկիդիկէն։ Այն ժամանակ Կանտակուզինոսին օգնեց իւր հաւատարիմ Օմար բէկը։ Նա 1345 թ. Փրանկներին խիստ ջարդ էր տուել Զմիւռնիայի մօտ և կրկնակի պատճառ ունէր Մոմչիլոյի վրայ բարկանալու, որովհետև վերջինս կրակել էր նրա նաւերը Արդերայի մօտ։ Մոմչիլոն շրջապատուելով Պերիթէորիոնի մօտ կայսրից և նրա տաճիկ բարեկամից, սպանուեց իւր վարձկաններից շատերի հետ։

Նրա Քսանթէյա քաղաքն անձնատուր եղաւ։ 1345 թ. յունիսի 11ին սպանուեց նաև խստաբարոյ, բայց քաջ Ապոկաւկոսը. այնպէս որ խնամակալուհին առանձնացած մնալով, դիմեց Օսմանցիների օգնութեանը։ Սակայն հմուտ քաղաքագէտ Կանտակուզենը նոցա գրաւեց իւր կողմը։ Իւր բարեկամները 1347 թ. փետրվարի 3-ին բաց արին քաղաքի դռները։ Խնամակալուհին ստիպուեց ընդունել բոլոր պայմանները։ Յովհաննէս Զ. Կանդի-

սուր կերպով նորից օծուեց. նա մենակ պէտք է կառավարէր միայն տասն տարի, յետոյ պէտք է, Պալէօլօգին պաշտօնակից անէր։ Գահակալական այդ կռիւը, որ մղուել էր ամենայն խստասրտութեամբ և որի ժամանակ նուիրել էին հիւսիսային նահանգները ընդ միշտ թոյլացրել էին տէրութեան ուժերը։ Ճշմարիտ կայսրը Ստեփան Դուշանն էր, որը նուաճեց Սերէն և Ամփիպօլիսը (1345 թ.) և Յոյների ձեռքին թողեց միայն Թեսալոնիկէն՝ ու Խալկիդիկէն։ Իպեկի (Pec) ինքնագլուխ մետրապօլիտը Տրնովի պատրիարքի և Օխրիդոյի ինքնագլուխ արքեպիսկոպոսի համաձայնութեամբ կարգուեց Սերբիայի պատրիարք, որի անունը Յովհաննէս էր։ Նոր պատրիարքը Տրնովոյի Սիմէօն պատրիարքի հետ 1346 թ. Դուշանին օծեցին Սկոպիոյի մայր եկեղեցու մէջ Սերբերի և Յունաց ցար։[1] «Նրա իշխանութիւնը հասնում էր Արդայից մինչև Բելգրադ, Դալմատիայի ժայռոտ ափերից մինչև Մեստա»։

Այդ կենսունակ մեծ պետութիւնների մօտ, յոյները, որ արդէն երրորդ կարգի պետութիւնների շարքին էին հասել, շարունա-

1. Նա իր հրովարտակների մէջ իրեն անուանում էր ցար եւ իշխան Սերբերի եւ Յոյների, Բուլղարների եւ Ալբանացիների:

կում էին իրենց ողորմելի կախինները։ Յովհաննես Զ-ը իր Մատթէոս որդուն, որը ձգտում էր տէրութեան ժառանգը լինել, տուեց Ռոդոպէ հին եպարքոսութիւնը իբրև մի տեսակ սեփականութիւն։ Յետոյ դարձեալ Պալէոլոգների կուսակցութեան դժգոհութիւնը շարժելով, իր ընդունակ Մանուէլ որդուն ուղարկեց Միսիթրա, որը վերջինս կառավարում էր գեղեցիկ կերպով։ Կայսրութեան թուլութիւնը երևում էր Ջենովացիների բռնած հպարտ դիրքից, որոնք վաճառականական և մաքսային խնդիրներում այնպէս էին վարւում, որ կարծես թէ իրենք էին Յոյների տէրերը։ Այդ պատճառով երբ Վենետիկեցիների և Ջենովացիների մէջ շարունակւում էր կատաղի ծովային պատերազմը, որ մղւում էին ըստ մեծի մասին յունական ծովերում, կայսրը Վենետիկեցւոց կողմն էր, մինչև որ 1352 թ. Ջենովացիները ստիպեցին նրան նոր դաշնագրութիւն հաստատել։ Շուտով երկու կայսրների մէջ փրթկեց ներքին կռիւ։ Յովհաննես Ե-ին օգնում էին Վենետիկեցիք և Սերբերը, Յովհաննես Զ-ին Օսմանցիք։ 1353 թ. վերջիններս յաղթեցին Սերբերին Դիդիմատէյխոսի մօտ և Կանտակուզենոսը իր որդի Մատթէոսին կայսրակից կարգեց։

*Նրա պարտազանց խեղացնող փառասիրութեանը, որի պատճառով հրաւիրել էր Օսմանցիներին, իսկապէս զոհ գնաց Յոյների պետութիւնը։ 1354 թ. տաճիկները գրաւեցին Կալիպօլիսը. այդպիսով նոցա առաջ բացուած էր Եւրոպայի ճանապարհը։ Այն ընդհանուր ատելութիւնը, որին ենթակայ էր ծեր անարժան կայսրը, հեշտացրեց Պալէոլոգի գործը. և նա կարողացաւ 1354 թ. խորամանկութեամբ տիրել մայրաքաղաքին և իւր ծուղակի մէջ ընկած հակառակորդին ստիպել՝ հրաժարուելու։ Նա վանք մտաւ Յովասափ անունով, գրեց իւր պատմութիւնը և անձնատուր եղաւ աստուածաբանական ուսումնասիրութիւններին, մինչև իւր երկարատև կեանքի վերջին օրերը (1383 թ)։ Նրա Մանուէլ որդին, որ հզօրապէս պաշտպանում էր, ճանաչեցին Մեզիթրայի տէր։ Մատթէոսը ստիպուած էր 1357 թ. նոյնպէս հրաժարուել. այդպիսով վերջապէս Յովհաննէս Ե. մնաց միապետ և օրինաւոր հարստութիւնը վերահաստատուեց։*

*Մինչդեռ այդ ներքին պատերազմը, որ գաղափարից զուրկ էր, և ծագել էր միայն մի անհատի անձնական փառասիրութիւնից, մաշում էր հռովմէական զառամեալ պետութեան վերջին ոյժերը, մի և նոյն ժամանակ*

*տէրութեան մտածող դասակարգի մէջ շարժուել էր եկեղեցական կռիւ, որ պատկանում է բոլոր ժամանակների ամենազարմանալի և քաղաքակրթական պատմական ամենահետաքրքիր և արտասովոր երևոյթների կարգին, թէ և աւանդական առասպելը, որ ստորացնում են եկեղեցական պատմութեան անուան տակ համալսարաններում և սեմինարիաներում, սովորաբար հաղորդում է այդ դէպքը՝ միայն լոկ ժամանակ վրա ծաղր թափելու համար։ Թէ և, իրաւ է, այդպէս ծաղրելով, ցոյց են տալիս կատարեալ անհասկացողութիւն մարդկային պատմութեան կարևոր խնդիրների ըմբռնելու մէջ։ Մակեդոնիան կայսրների օրերից սկսած, Խալկիդիկէ Թերակղզին մի տեսակ սրբավայր էր դարձել, որտեղ Պերիկլէսի և Դիմոսթենէսի ժամանակները ծաղկում էին բազմաթիւ յոյն քաղաքներ։ Թերակղզին ծովն է մտնում դէպի հարաւ, կազմելով լեզուակներ, որոնք երեք մատների նմանութիւն ունին. դոցանից ամենահիւսիսայինը, Աթոսի լեռները, ժողովրդի մէջ «սուրբ լեռան» հռչակ ստացան, որովհետև այն տեղի խցերում սկսեցին ապրել սուրբ ճգնաւորներ։*

*Հռչակաւոր մենաստանի հիմնադիրը ս. Աթանաս է՝ Նիկեփորոս Փոկասի ժամանա-*

կակիցը, որին վերջինս շատ էր յարգում. նա նրան իւր հետ վերցրեց իբրև քարոզիչ Կրետէի արշաւանքի ժամանակ։ 962 Թ. Աթանասը վանքի հիմքը դրեց և ս. լեռան վրայ ոչ առանց հակառակութեան մտցրեց ս. Ստուդիոնի կանոնները։ Ցովհաննէս Ձմշկեկի սահմանադրութիւնը կարգի տակ դրաւ լեռնակեացներին, որոնք բաղկացած էին ճգնաւորներից և մենակեացներից. կառավարութիւնը կազմում էին վանականների ժողովն և կայսրից նշանակուած առաջնորդը։ Ո՛չ մի կանացի էակ չէ կարող մտնել խաղաղութիւնն այդ—Gens aeterpa. in qua nemo nascitur—յաւիտենական ցեղի, որի մէջ ոչ ոք չէ ծըն-ւում։

Կայսեր շնորհքը և հաւատացեալների ընծայաբաշխութիւնները ամենահեռու արեմուտքումն անգամ (Ամալֆիտանների վանքը) բազմացրին վանքերի թիւը մինչև Կոստանդին Մոնոմախոսի ժամանակ, որը հրատարակեց երկրորդ սահմանադրութիւնը։ Բոլոր կայսրները, Կոմնէնները ինչպէս նա և Պալէոլոգները մրցում էին միմեանց հետ, վերջինները մինչև անգամ իրենց թոյլ ոյժերից վեր, ոսկեգիր հրովարտակներ արձակելով և յունական բարեպաշտութեան այդ սրբավայրին հարուստ ընծաներ պարգևելով։ Բոլոր

*օրթոդոքս ժողովուրդների ճգնաւորները և միաբանակեացները այդ տեղ էին գտնում իրենց հայրենիքը։ Հելլենախօս բազմաթիւ միաբանակեացներին միանում էին սերբ, բուլղար, ռուս և վրացի վանականներ։ Ս. Սաւա Սերբիայի ազգային նուիրապետութեան մեծ հիմնադիրը, այդ տեղ հիմք դրեց հռչակաւոր Խիլանդարի վանքին — որը յետոյ ահագին նշանակութիւն ունեցաւ սլաւոնական քաղաքակրթութեան պատմութեան մէջ։ Այդտեղ վարդապետական խցերում, մտածողութեան նուիրած կեանքում ստեղծուել էր մի տեսակ աստուածային իմաստութեան ուսումն* (Theosophie) *որ խիստ յիշեցնում էր, — ինչ որ առանձնայատուկ է բոլոր խորհրդաւոր գաղտնի կրօններին —* (mystik) *—, պարսկական իմաստակութիւնը* (sofismus) *կամ հնդկական ջղաձգութիւնները* (Zogiverzückung)*։ Ինչպէս որ Գիմնոսոֆիստները, հիպնոզական զառանցմունքի մէջ, աչքերը անթարթ օճոռքին յառած, ընտրեալները նայում էին աստուածային անստեղծ լոյսին, որը շրջափակել էր Քրիստոսին Թափօր լերան վերայ այլակերպութեան ժամանակ։ Զանազան դաւանութիւնների այն օրթոդոքսութիւնը, որ միշտ ձգտում է բնական բացատրութիւն տալ բոլոր երևոյթներին և որ սովորաբար բնազդական ահաձնութիւն զգա-*

լով դէպի իւրաքանչիւր խորհրդաւորութիւն, հաշուում է այդ ուղղութեան մարդկանց իբրև հերձուածողների, այդպէս էլ վարուել է հին եկեղեցին Աւդիանցոց և Նաւքիտայոց հետ, համայնական եկեղեցին Ֆրատիկելների և Մոլինիստների հետ. վերջապէս «մաքուր ուսման» լուտերականութիւնը դէմ է եղել որ և է Շվենկֆելդի, Վ. Վեյգելի, Ի. Առնդի կամ Ի. Բեօմի «զառանցութիւններին», որոնք իբրև անձինք բարեպաշտութեամբ խիստ բարձր էին կանգնած։ Յունաստանում օրթոդոքսութիւնը խորհրդաւորական գաղտնի ուսման կողմը բռնեց, որովհետև դրա դէմ էին երկու մարդիկ՝ Բարաղամը և Ակինդինոսը, որոնք իբրև լատինասէրներ դիտականութեան մէջ ծաղրում էին զառանցքների նուիրուած վարդապետներին. մինչև անգամ Բարաղամը ծագում էր Կալաբրիայից, որ թէև յունական երկիր էր, բայց «հետեւալ էր»։ Այդ արդէն բաւական էր, որ ժողովուրդն ու հոգևորականութիւնը Լեռան սրբերի դատը յունական ազգային գործ համարէր։ Երբ 1341 մինչև 1351 թիւը երկիրը աւերակ էր դառնում ներքին վայրենի պատերազմներից, շարունակ ժողովներ էին գումարում, պատրիարքներ փոխում և հաստատում. սակայն «Օմփալոփսիւխիտները», փա-

ռաւոր յաղթութիւն տարան, որոնց գլխաւորներ ներկայացուցիչներն էին Թեսալոնիկէի վերջի արքեպիսկոպոսները՝ Գրիգոր Պալամասը և Նիկեփոր Կաբասիլասը, դոքա երկուսն էլ ներկայանում են իբրև յունական կրթութեան և խորհրդաւորութեան ճշմարիտ ականաւոր ներկայացուցիչներ։ Ս. Լեռը մնաց իբրև ճշմարիտ հաւատոյ Սիոն։

Մի ամբողջ ժողովրդի մահուան այն աշխարհասասան աղէտի և մրցման ժամանակ, երբ Յոյների տէրութիւնը անխնայ Օսմանցիների ոտի տակ ջախջախւում էր, Աթոսը ներկայանում էր այնպիսի մի ապաստանարան, դէպի ուր դիմում էին սրտաբեկները խաղաղութիւն որոնելու. մինչդեռ զօրեղ սրտերի տէր մարդիկը, աշխարհային կեանքից յուսահատուած և մոլորուած ուզում էին կռիւ մղել Աստուծոյ հետ այդ առանձնութեան մէջ։ Միայն վարդապետութիւնն էր որ այն ծանր ժամանակներում ճշմարիտ և յարատև մխիթարութիւն էր բերում դժբախտ ազգին։

Յունական ազգի միւս մասը, քանի որ երկրային կեանքի փոխարէն իւր համար չէր ընտրել «հրեշտակների վարքը», ապաստահար էր նայում քաղաքական դրութեան վրայ։ 1355 թ. Ստեփան Դուշանի մահը արևելեան քրիստոնէութեան նկատմամբ ընդ-

Հանուր պատմական մեծ աղէտ էր։ Աւստա-կանութեան և ցեղական առանձնացման կենտ-րոնախոյզ կործանիչ ոյժերը կտոր կտոր փշ-րեցին սերբական թագաւորութեան փառա-ւոր շինութիւնը, Սերբ և Ալբան իշխանները բաժանուեցին, Բոսնիան անկախութիւն ստա-ցաւ։ Այդպիսով քրիստոնեաները խելակորոյս կռուութեամբ իրանք իրենց անդամահատում և թուլացնում էին, երբ արդէն կորուստը ինքն իրեն մօտենում էր։

Օսմանցիների առաջի հարուածը ամե-նից առաջ հասաւ ողորմելի Յոյն տէրու-թեանը։ 1360 թ. սուլթան Մուրատ Ա-ը անցաւ Հելլէսպոնտը։ Արդէն մի տարի յետոյ առաւ Ցուռուլոն և Դիդիմոտեյխոս նշանա-ւոր բերդերը, և չնայած քաղաքացոց քաջ ընդդիմութեանը, Ադրիանուպոլիսն էլ նուա-ճեց, որ տէրութեան երկրորդ գլխաւոր քա-ղաքն էր, և որը նա 1365 թ. իր մայրա-քաղաքը դարձրեց։ 1363 տիրեց Փիլիպու-պօլսին, յետոյ Սեռէսին, իսկ 1365 թ. դա-շինք հաստատեց Ռագուզայի հասարակապե-տութեան հետ, որ իր ձեռին ունէր Բալ-կան թերակղզու ցամաքային վաճառականու-թիւնը, ընդունելով սորա առանձնաշնորհու-թիւնները,

Չնայած Օսմանցիները այդպիսի յառա-

ջադիմություն էին անում, քրիստոնեայ փոքրիկ պետությունները չկարողացան միանալ։ Յովհաննէս կայսրը վէճի մէջ էր իւր որդի Անդրոնիկոսի հետ, և երբ 1365 Թ. գնացել էր Տրնովո դաշինք կապելու Տաճիկների հետ, Շիշման ցարը՝ Անդրոնիկոսի ընկերը, նրան գերի բռնեց։ Կայսեր օգնութեան հասաւ 1366 Թ. իւր հօրեղբօր որդի Սավոյեայի գրաֆ Ամադէոն, որը առաջ Օսմանցիներից առաւ Կալլիպօլիսը և յետոյ ասպատակելով բուլգարական Պոնտոսի ծովեզերքը, Շիշմանին ստիպեց ազատել կայսեր։ 1369 Թ. կայսրը փորձեց գնալ Ավինիոն, որպէս զի պապից խնդրէ՝ նեղն ընկած տէրութեանը օգնութեան հասնել։ Բայց ի զուր անցաւ նա և, որ յունական ձեւով, առանց կարդալու ստորագրեց իւր առաջը դրած հաւատոյ հանգանակը. Ուրբան Ե. պապը չէր կարող, կամ չկամեցաւ զինուորական օգնութիւն տալ։ Թէ ինչքան խոր ընկել էր Յոյների կայսեր պատիւը, որ մի ժամանակ ամենակարող էին, ցոյց է տալիս Վենետիկեցոց արարմունքը։ Այնտեղի բանկիրները, որոնք պապի մօտ գնալու համար կայսեր ճանապարհորդական փող էին տուել, նրան պահեցին Վենետիկում. և նրա որդի Անդրոնիկոսը, որին Կոստանդնուպօլսի կառավարիչ էր կարգել, հրաժարուեց վճարել

նրա ծախքերը։ Միայն միւս որդի Մանուէլը, որ իշխում էր Թեսալոնիկէում, 1370 թ. մեծ զոհողութիւններով հօրը հնարաւորութիւն տուեց վերադառնալ հայրենիք։ Այդ աղքատ իշխանների խղճալի արարմունքները շարժում էր Եւրոպացոց արհամարհանքը, որոնցից շատ նշանաւոր իշխանական անձեր. հրաժարւում էին ամուսնական կապեր հաստատել Պալէոլոգների հետ, որոնք նոյն աչքում հաւասար աստիճանակից չէին։ Յովհաննէսը իւր վրէժը լուծելու համար, 1371 թ. իւր Անդրոնիկոս որդուն զրկել էր գահակալութեան իրաւունքից, և նրա տեղը նշանակել Մանուէլին։ Իսկ իւր փոքր տէրութիւնը դարձրեց տաճիկների աւատականութիւն։ Բայց երբ ստորացած կայսրը իւր զօրքի գլուխն անցած գնաց Ասիա, Անդրոնիկոսը և Մուրատի որդի Սանջին, որ նրա հետ բարեկամացել էր, ապստամբեցին։ Սակայն Մուրատը իւր սովորական արագութեամբ ընկճեց այդ շարժումը։ Տաճիկների իշխանին գլխատեցին, Անդրոնիկոսին կուրացրին։ Երբ կայսրը Վենետիկեցոց հետ բարեկամացաւ, Ջենովացիք օգնեցին նրա որդուն. նա բանտից ազատուեց, 1376 թ. ներս մտաւ քաղաքը, գահընկեց արեց հօրը, Հոկտեմբերի 18-ն Անդրոնիկոս Դ անունով օծուեց։ Յունական այս

*փոքրիկ խռովութիւնները շատ աննշան էին և ոչինչ էին համեմատած այն հզօր պատերազմների հետ, որ ծագել էին երկու հասարակապետութիւնների՝ Ջենովայի և Վենետիկի մէջ՝ միացած Միջերկրական բոլոր ծովային պետութիւնների հետ և որ վերջացան միայն* 1381 *թ. Տուրինի խաղաղութեամբ։*

*Ծեր Յովհաննէսը փախաւ բանտից, մի առժամանակ մնաց տաճիկների սուլթանի մօտ և* 1379 *թ. նորից մտաւ մայրաքաղաք։ Երկու տարի յետոյ հաշտուեց իւր մեծ որդու հետ, բայց սրա մահից յետոյ* 1385 *թ. իւր թոռ Յովհաննէսին ուղղակի հեռացրեց և յաջորդ թողեց Մանուէլին։*

*Ինչպէս Ասիայում, Եւրոպայում էլ Օսմանցիները շուտով դարձան բացարձակ հրամայողներ, երբ նոքա* 1389 *թ. Կոսովօ Պոլիէտաք ճակատամարտում ջախջախել էին Սերբերի տէրութեան ոյժը, որ երբեմն այնքան փառաւոր էր։ Սուլթան Մուրատը այդ յաջողութեանը, որ ընդհանուր-պատմական ահագին նշանակութիւն ունեցաւ, ինքը զոհ գնաց. բայց նրա որդի Բայազիտ Ա-ը կատարելապէս հասկացաւ օգտուել տարած յաղթութիւնից։ Պալէոլոգների հետ վարւում էր արհամարհանքով։ Փիլադելֆիան, որ միակն էր կարողացել Փոքր-Ասիայում պահպանել իւր*

յունական անկախութիւնը, ստիպուեց յարմար պայմաններով անձնատուր լինել։ Բայազիտը պահանջել էր դահաժառանգ Մանուէլին հետեւել նրան։ Այդ հանգամանքից օգուտ քաղեց Անդրոնիկոսի որդին՝ Յովհաննէս Է-ը, որը միացած Թեսալոնիկէի եւ Սելիւմբրիայի հետ, գլորեց իւր պապին եւ 1390 թ. ինքը գահ բարձրացաւ։ Արդէն նոյն տարուայ Սեպտեմբերին, Մանուէլը վերահաստատեց իւր հօրը։ Բայազիտը ստիպեց ծեր կայսեր իւր ձեռքով քանդել տալ քաղաքի պարիսպների ամրութեան համար կատարած վերանորոգութիւնները։ Յովհաննէսը այդ անպատուութեան վշտից մեռաւ 1391 թ. փետրուարի 16-ին երկարամեայ, անփառունակ կառավարութիւնից յետոյ։

Նրա ընտիր Մանուէլ որդին (1391—1423), որ ապրում էր Բայազիտի արքունիքում Բռուսայի մէջ, իսկոյն շտապեց մայրաքաղաք կառավարութեան գլուխն անցնելու։ Օսմանցին պատժեց նրա այդ ինքնագլուխ վարմունքը, աւերելով նրա փոքրիկ իշխանութիւնը մայրաքաղաքի շրջակայքում եւ ժամանակաւորապէս գրաւելով Թեսալոնիկէն։ Սակայն վայրենի աշխարհակալը իւր ուշքը շուտով դարձրեց հարաւային Սլաւոնների վրայ։ Նա նուաճեց Տրնովոն՝ ցարերի փառա-

ւոր քաղաքը և Բուլղարիան մի փաշայութիւն դարձրեց։ Մի և նոյն ժամանակ Կոստանդնուպօլիսը, ինչպէս երբեմն Նիկիան և Պրուսան, տաճկական հին փորձուած եղանակով, կանոնաւոր պաշարման մէջ դրին։ Տեսան որ դրութիւնը լուրջ է։ Բայազիտը կամենում էր Յոյների տէրութեան սուսերն էլ ջնջել։ Մանուէլը նեղն ընկած, դիմեց արևմուտքի օգնութեանը, այնտեղ էլ, տեսնելով տաճիկների անդադար յառաջադիմութիւնը, միանգամ ևս ոտքի կանգնեցին՝ միացեալ ուժերով անհաւատների դէմ կռուելու։ Հունգարիայի Սիգիզմունդ թագաւորը մի խառնակ խաչակիր զօրքի գլուխն անցած, որի մէջ գլխաւոր տեղը բռնում էին Ֆրանսիական ասպետները, երկաթի դռներից անցաւ դէպի հիւսիս։ Վալախիայում՝ երկրի Միրզա իշխանն էլ միացաւ նրա հետ, որին 1394 թ. Բայազիտը փառաւոր ջարդ էր տուել և Դանուբի միւս կողմը քշել։ 1396 թ. Սեպտեմբերի 12, քրիստոնեաների զօրքը հասաւ Նիկոպօլիս։ Բայազիտը արագ ընթացքով, թողնելով Կոստանդնուպօլսի պաշարումը, արշաւեց նոցա դէմ և իւր զօրապետական հանճարով փառաւոր յաղթութիւն տարաւ, մանաւանդ որ քրիստոնեաների մէջ կարգ չկար և Ֆրանսիական ասպետների գոռոզութեան

պաշտպանով անկարելի էր եղել պատերազմ համար խելացի ծրագիր կազմել։ Քրիստոնեաները զգացին պարտութեան հետևանքները։ Եվրենոս բէկը արշաւեց Պելոպոնէսի վրայ, որտեղ յունական մասի՝ Միստիթրայի իշխանութեան հրամանատարն էր կայսեր եղբայր Թէոդորոս Պալէոլոգը՝ 1384 թ. Կանտակուզէնի տան անկումից յետոյ։ Նա յաղթեց Լեոնտարիոնի մօտ և պարտաւորուեց հարկ վճարել թուրքերին։ Սակայն քաջ իշխանը միացաւ Վենետիկեցոց և Հոսպիտալիէրների հետ և նոցա յանձնեց Կորինթը և ուրիշ բերդեր։

Մանուէլի դէմ նորից սկսեցին մայրաքաղաքի շրջափակ պաշարումը. և Յովհաննէս Ը իշխանին էլ նրա դէմ հանդէս հանեցին իբրև գահի իրաւատէր։ Նրա օգնութեան աղաղակը Եւրոպայում առանց արձագանքի չմնաց։ Փրանսիան ուղարկեց Բուսիկօ քաջ մարշալին, որը իւր սակաւաթիւ բայց ընտիր զօրքով Կոստանդնուպոլսի շրջակայքը մաքրեց Տաճիկներից և կայսեր հաշտեցրեց իւր եղբօր որդու հետ։ Վերջինիս կառավարիչ կարգեցին, իսկ Մանուէլը պտտում էր արևմուտքի արքունիքները, որտեղ նրան փառաւոր ընդունելութիւն էին ցոյց տալիս. Փրանսիան մինչև անգամ տարեկան թոշակ կարգեց։

Նոյն եղանակով ապրում էր նաև երբեմն այնքան զօրաւոր տիեզերական պատրիարքը՝ ռուսական ողորմածութեամբ։ Բայց կայսեր օգնութեան եկաւ միայն Ասիան։ Թեմուր-Լանգը Անգորայի ահեղ ճակատամարտի մէջ 1402 թ. 20 Յուլիսի մի հարուածով ջախջախեց Օսմանցոց պետութիւնը։ Հպարտ սուլթանը մեռաւ գերութեան մէջ։ Այդպիսով Յոյները կէս դար էլ կեանք ունեցան։ Մանուէլը 1403 թ. Վենետիկցիների, Ջենովցիների և Հռոդոսցիների հետ բաւական նըպաստաւոր խաղաղութիւն հաստատեց, ինչպէս նաև Բայազիտի Սուլէյման որդու հետ, որ հրամայում էր եւրոպական մասում։ Կայսրը յետ ստացաւ Թեսալոնիկէն և վերջացրեց այն հարկը վճարելուց, որ տալիս էր մինչև այդ։ Բայազիտի որդիների վէճերին վերջ տուաւ Մոհամեդը 1413 թ. Զամոռլուի, որ Սոֆիայից հեռու չէ, դաշտի յաղթութիւնով։ Մոհամեդը, որ սերտ դաշն էր կապել Մանուէլի հետ, և նրա հետ լաւ յարաբերութեան մէջ էր, Մակեդոնական և Թեսալական շատ հողեր սրան վերադարձրեց, որ իւր այն եղբայրը էր խլել, որ պատերազմի մէջ յաղթուել և սպանուել էր։ Վերջին անգամ էլ Յոյների համար իրերի դրութիւնը կարծես աւելի բարեյաջող ձև էին ստանում։ Յովհաննէս Է

*խռովարար կայսրակիցը վանք էր քաշուել և շուտով էլ մեռել։ Նրա տեղ Մանուէլը նրա որդուն կարգեց Թեսալոնիկէի կուսակալ։ 1415 Թ. Մարտին նա գնաց Միւսինթրիա, որտեղ Թէոդորոս Ա իշխանի մահից յետոյ (1407 Թ.) ամէն ինչ տակն ու վրայ էր եղել։ Զօրեղ ձեռքով այնտեղ կարգ հաստատեց, Պեքսամիլիոնը վերանորոգելով. նորից ամրացրեց Իսթմոսի կիրճերը և Աքէային Զէնդուրիոնէ իշխանին ստիպեց ընդունել իւր գերիշխանութիւնը։ 1417 Թ. Յովհաննէս դահաժառանգը եկաւ Միւսիթրիա, որպէս զի սանձահարէ խռովարար Զենտուրիոնէին։ Բայց որովհետև իւր Ալբանացիներին թոյլ տուեց մտնել Վենետիկցիների երկիրները, հասարակապետութեան հետ խախտեց իւր ունեցած լաւ յարաբերութիւնը, որ սկսեցին օգնել Զենտուրիոնէին և 1419 Թ. Յոյներից առան նշանաւոր Մոնեմբազիան* (Nopoli di Malvasia)։

*Մոհամէդը, որ անդուլ գործունէութեամբ նորից ընկճել էր Փոքր Ասիայի էմիրներին, միշտ Յոյների հաւատարիմ դաշնակիցն էր։ Ուստի մեծ անհեռատեսութիւն էր, որ Մանուէլը ռումելական մեծ ապըստամբութեան ժամանակ այսպէս կոչուած կեղծ-Մուստաֆային թէև օգնութիւն ցոյց տուեց, և յետոյ էլ Թեսալոնիկէ ապաստա-*

նած Մուստաֆա և Ջունէյդ խռովարարնե-րին կալանաւորել էր և թոշակ կապելով պա-հում էր Լեմնոսում։ Այդ արդէն շատ էր վրդովել սուլթանին, որա վրայ էլ աւելացաւ այն, որ Մանուէլը սուլթանի մահուանից յե-տոյ իւր որդի Յովհաննիսին լսելով, Մուս-տաֆային հանդէս հանեց Մուրատ Բ երի-տասարդ գահաժառանգի դէմ։ Սակայն մի քանի յաջողութիւններից յետոյ Մուստա-ֆան հիմնովին ջարդ կրեց Մուրատից. Նա մտաւ Ադրիանուպոլիս, և իւր փախստական հակառակորդին բռնել տալով 1422 թ. գըլ-խատել տուեց։ Այնուհետև Թուրքերի սուլ-թանի միակ միտքը Յոյների կայսրից վրէժ առնելն էր։ 1422 թ. մայրաքաղաքի առաջ ժողովեց մօտ 80,000 զինուոր։ Բայց երբ Տաճիկները, յուսալով մի նախագուշակու-թեան վրայ, Բուխարայի շէյխի առաջնորդու-թեամբ, յարձակում գործեցին մայրաքաղաքի պարիսպների դէմ, կատարեալ անյաջողու-թիւն ունեցան կայսեր հերոսական ընդդի-մութեան շնորհիւ։ Տաճիկները մինչև անգամ զրկուեցին իրենց պաշարման գործիքներից։ Յոյները միացան սուլթանի դեռ տասներեք տարեկան Մուստաֆայ եղբօր հետ, որը ապստամբել էր իւր եղբօր դէմ և դրանով նրան ստիպեցին թողնել Կոստանդնուպոլսի

պաշարումը։ Սակայն 1422 թ. Մուստաֆային դաւաճանեցին և խեղդամահ արին։ Այս Թուրախանին մեծ զօրքով ուղարկեցին Թեսալոնիկէի դէմ, սակայն Վենետիկեցւոց օգնութեան պատճառաւ, յարձակումը անյաջող ելք ունեցաւ։ 1923 թ. Թուրախանը դիմեց Պելոպոնէս, կոտրեց և կործանեց Իսթմոսի ամրութիւնները, և ասպատակեց Յոյների ու Վենետիկեցոց սեպհականութիւնները։

Մանուէլը կաթուածահար լինելով, 1423 թ. հեռացաւ կառավարութիւնից և մտաւ վանք։ Նրա որդի Յովհաննէս Ը (1423-1448) մի կերպ խաղաղութիւն հաստատեց, որով պարտաւորուեց Պելոպոնէսի համար տարեկան 30·000 ոսկի հարկ վճարել և Տաճիկներին զիջանել Մակեդոնական և Սև ծովի ափերի իր սեպհականութիւններից շատ մասը։ Տէրութիւնը սահմանափակուած էր միայն Բոսփորի թերակղզիով մինչև Սելիւմբրիա և Դերկոս, բացի այդ նրան էին պատկանում Անքիալոսը, Մեսեմբրիան, Աթոսը, Թեսալոնիկէն և Զէյթունը։ Նա միացեալ սեպհականութիւն ունէր դեռ միայն Պելեպոնէսում։ Յովհաննէս Ը դեռ ստիպուած էր այդ խեղճուկ մնացորդներն էլ բաժանել իր եղբայրների հետ։ Թէոդորոսը և Թոմասը ստացան

*Միւսիթրիան, իսկ Կոնստանդինը Անքիալոսը և Մեսեմբրիան։*

*Վենետիկեցիք 1423 թ. մահամերձ Անդրոնիկոս իշխանից գնել էին Թեսալոնիկէն։ Այդ պատճառով կռիւ սկսեց Մուրատը։ 1426 թ. նա դինադադարի պայմանով քաղաքը թողեց Վենետիկեցիներին, պարտաւորեցնելով տարեկան հարկ վճարել։ Բայց հէնց որ Մուրատը վերջացրել էր իր պատրաստութիւնը, սկսեց քաղաքի դէմ յարձակումը, և կարողացաւ 1430 թ. Մարտի 29-ին վերջապէս նրան միացնել Տաճկաց իշխանութեան հետ, սոսկալի գազանական կոտորածներից և աւերումներից յետոյ։*

*Դրա հակառակ Պալէոլոգները, Պելոպոնէսում յաջողութիւն ունէին։ Կայսեր քաջ եղբայրները՝ Թոմասը և Կոնստանդինը 1428—1430 պատերազմներով խլեցին Ֆրանկների իշխանութեան վերջի մնացորդները՝ Պատռէի և Աքէայի իշխանութիւնները, և իրանց ձեռքի մէջ առան ամբողջ Պելոպոնէսը բացի վենետիկեան սեպհականութիւնները։*

*Քանի որ Տաճիկները իրենց իշխանութեան տակ էին գցել ամբողջ բալկանեան թերակղզու իշխանութիւնը· տիրել էին Սերբիային և Բոսնիային, իսկ Հունգարիային չէին տիրել միայն Յովհաննէս Հունիադ հերոսի*

շնորհիւ, Բոսֆորի անուանական կայսեր վիճակը անտանելի էր դարձել։ Ի մեծ բարեկութիւն Մուրատի, նա միանգամ էլ իր օգնութիւն հայցող հայեացքը յառեց դէպի Եւրոպա։ Որովհետև համարեա ամբողջ հինգ հարիւր տարի Յոյները միշտ, շատ անգամ ուղղակի անամօթաբար խաբել էին պապերին միաբանական առաջարկութիւնների ժամանակ, ուստի Եւգէն Դ պապը եռանդով աշխատում էր նորից հաստատել միութիւն։ Սնանկացած կայսեր և նրա հետևորդների համար ճանապարհորդելու և ապրելու փող ուղարկեց։ Այս անգամ, որովհետև դանակը ոսկրին էր հասել, թէ կայսրը և թէ հոգևորականներից շատերը՝ օրինակ տիեզերական Յովսէփ պատրիարքը, Բեսարիոնը և Իսիդորոսը որ յետոյ կարդինալ դարձան, ամենայն լրջութեամբ ցանկանում էին միութիւն։ Եւ Florentinun — Փլորենտիայի դաւանանքը, որ իբրև միութեան հրովարտակ 1439 թ. Յուլիսի 6-ին հանդիսաւոր կերպով կարդացուեց Փլորենտիայի մայր եկեղեցում, այնքան մեծ դրական նշանակութիւն ունեցաւ, որ դա իսկապէս հիմք ծառայեց Ռումինների, Ռութինների և ուրիշ օրթոդոքս եկեղեցիների իրական միութեանը, բայց Կոստանդնուպոլսում ուրիշ կերպ էին մտածում։ Ժողովուրդը և

վարդապետները չընդունեցին կառավարութեան և բարձր հոգևորականութեան կնքած դաշնագրութիւնը։ Աստուածաբանական վէճերն Բիւզանդացիների մահուան վերջի ժամերն էլ անգամ աւելի դառնացրին։

Յովհաննէս Ը արևմուտքից համարեա թէ օգնութիւն չստացաւ։ Դրա փոխարէն Մուրատը օգնում էր նրա անարժան Դեմետրիոս որդուն, որը իբր թէ պաշտպան հանդիսանալով ուղղահաւատներին, տաճիկ թափառականներով աւերում էր Կոստանդնուպօլսի շրջակայքը, մինչև որ Կոստանդին եղբայրը նրան ներս գցեց և կալանաւորեց,

Բայց Եւգէն Դ-ը սկսեց քարոզել խաչակրաց արշաւանք։ 1443 թ. եւրոպական զօրքը, որ բաղկացած էր գլխաւորապէս Հունգարներից, Լեհերից և Ռումիներից Վլադիսլավ Թագաւորի և Հունիւադի առաջնորդութեամբ, արշաւեց Տաճիկների դէմ և 1443 թ. Դեկտեմբերի 24-ին Կունովիցայի մօտ Տաճիկների դէմ փառաւոր յաղթութիւն տարաւ։ Մուրատը տեղի տուեց, և 1444 թ. Յունիսին Ծեգեդինում տասնամեայ խաղաղութիւն կապեցին, որ բաւական նպաստաւոր էր Մաճառների և Սերբերի համար։ Բայց երբ Մուրատը զբաղուած էր Ասիայում տաքարիւն Ջիուլիօ Ցեզարինի կարդինալ դես-

պանը իր ոգևորուած ճառով ազդեց այնպէս, որ հունգարական պետական խորհուրդը բացարձակ խոստմնադրուժ եղաւ։ Օգոստոսի սկզբին հաւատամարտների զօրքը ճանապարհ ընկաւ և հասաւ Բուլգարիա վառ կարգապահութեամբ։ Հազիւ էին հասել Վառնա, երբ Մուրատի մուտքը Եւրոպա սարսափեցրեց խաչակիր զօրքը։ Նա կարողացել էր ծովով անցնել, որովհետև Ջենովացիք անամօթաբար դաւաճանել էին քրիստոնէական հարցին։ 1444 թ. Նոյեմբերի 10-ին տեղի ունեցաւ Վառնայի ճակատը, որը քրիստոնեաները համարեա թէ տարել էին, երբ Վլադիսլավ թագաւորը հակառակ իրանց պայմանին, նախանձելով Հունիադի յաջողութիւններին, խելակորոյս քաջասրտութեամբ իր Լեհացի ասպետների հետ յարձակուեց ենիչարների վրայ, որոնք մինչև այդ դիմադրել էին. Վլադիսլաւը ընկաւ։ Նրա մահը թուլացրեց քրիստոնեաների ոյժը։ Բայց Հունիադը առաջնորդելով քրիստոնեաների կարգաւորեալ նահանջը՝ անցրեց Դանուբից, որով աւելի քիչ կորուստներ ունեցան քան Տաճիկները։ Երբ այդքան զօրեղ ջանքն էլ անյաջող անցաւ, արևմուտքում սկսեց տիրել մի տեսակ խորը վհատութիւն։ Իսկապէս անարդարութիւն է, եթէ արևմուտքին մեղադրում ենք, իբրև թէ

նա կարեկցութիւն չէ ցոյց տուել դէպի Արեւելահռոմի դժբախտ վիճակը։ Ընդհակառակը նա Նիկոպոլսի եւ Վառնայի արշաւանքներով արել էր, ինչ իր ուժերից էր կախուած։ Այժմ Յոյները անդառնալի յանձնուել էին իրենց դժբախտ վիճակին։

Յեւոյ Յովհաննէս Ը փորձեց ընծաներով մեղմացնել Մուրատի բարկութիւնը։ Վենետիկեցիք, որոնց նաւատորմիղը օգնել էր խաչակիրների զօրքին, 1446 թ. Տաճիկների հետ խաղաղութիւն հաստատեցին։ Միսիթրայի Կոստանդինն էլ էր 1444 թ. միացել հակատաճկական դաշնակիցներին։ Նա նուաճել էր Աթէնքի հերցոգութիւնը եւ դեռ Վառնայից յետոյ շարունակելով պատերազմը, յաղթանակով մտել էր Միջին-Յունաստան։ Նա յոյս ունէր Իսկանդար բէգի օգնութեան վրայ. սակայն վերջինս պատերազմի բռնուելով Վենետիկի հետ, միանգամայն դրանով էր զբաղուած։ Մուրատը ինքն անձամբ արշաւեց Պելոպոնէսի դէմ 60,000 զօրքի գլուխն անցած։ Չնայած Կոստանդինի եռանդուն եւ հմուտ ընդդիմութեան, Միջին-Յունաստանի բոլոր ամրոցները ընկան Տաճիկների ձեռքը։ Երկու իշխանները մեծ քաջութեամբ պաշտպանում էին Հեքսամիլիոնը։ Տաճիկները 1446 թ. Դեկտեմբերի 4-ին այդ գիծն էլ

անցան և առան Կորինթը։ Թոմասը և Կոնըստանդինը փախան Միսիթրիա, մինչդեռ Տաճիկները երկու անգամ աւերի ենթարկելով Պելոպոնէսը 60,000 մարդ գերեվարեցին։ 1447 Թ. Պալէոլոգներին խաղաղութիւն շնորհեցին և նոցա երկրից գլխահարկ էին առնում։ Այդքան տանելի պայմանների գլուխ գալու պատճառն այն էր, որ Հունիադի և Իսկանդար բէկի հետ պէտք էր հաշիւները վերջացնել։

Յովհաննէս Ը կայսրը 1448 Թ. Հոկտ. 3-ին մեռաւ։ Անընդունակ Դեմետրիոսը կամենում էր ինքը գահ բարձրանալ։ Բայց նախկին մինիստրները և հաւատարիմ Փրանցէսը ընդդիմացան և չթողեցին մայրաքաղաքն առնել։ Մուրադը որոշում տուաւ յօգուտ Կոստանդնի։ 1449 Թ. Յունուարի 6-ին նա Միսիթրիայի դղեակում ստացաւ թագը և իսկոյն շտապեց մայրաքաղաք։ Կայսեր մեծ ցընծութեամբ ընդունեցին իւր նոր քաղաքում, որը, ինչպէս հին յունական ժամանակը, իշխանութիւնը սահմանափակել էր միայն Պոլիսով-քաղաքով։ Միւս երկու եղբայրները Թոմասը և Դեմետրիոսը բաժանեցին Պելոպոնէսը։ Թոմասի դէմ, որը կամենում էր ընդարձակել իւր իշխանութիւնը իւր եղբօր հաշուին, վերջինս դիմեց Տաճիկների օգնու-

թեան որոնք ինկայպէս խաղաղութիւնը վերահաստատեցին։

Մինչ այդ 1451 թ. փետրուարի 5 Մուհամեդ Բ-ը յաջորդել էր իւր հօրը։ Ինչպէս միւս փոքր իշխաններին՝ այնպէս էլ Յոյներին հետ հանդիսաւոր կերպով նորոգեց խաղաղութիւն և բարեկամութիւն։ Մինչդեռ Մուհամեդը Ասիայում հետամուտ էր նուաճելու Կարամանի անհնազանդ էմիրին, Կոնստանտինը յղացաւ մի կործանարար միտք՝ Տաճիկներից պահանջել որ կրկնապատկեն Ուրխան իշխանին վճարելիք թոշակը, որը կալանաւորուած էր Կոստանդնուպոլսում։ Յունաստէր մեծ վէզիր Խալիլ-փաշան սարսափեց այդ յիմար պահանջից, երբ որ Աքշերի բանակում Յոյն դեսպանները յայտնեցին իրենց գալու նպատակը։ Բայց Մոհամեդ Բ-ը ուրախութեամբ օգտուեց այդ յարմար առթից, որպէս զի վերջ դնի Յոյների պետութեանը։

Մոհամեդը ղեկավարում էր պաշարումը ամենամեծ հմտութեամբ։ Յոյները շուտով հասկացան, որ նոցա վերջի ժամուայ մահուան և կեանքի կռիւն է այդ։ Սուլթանը բոլորովին կտրեց քաղաքի հաղորդակցութիւնը հիւսիսային կողմից, իսկ հարաւի ամենանեղ անցում ամրութիւն շինեց։ Երբ Կոնստանտինը բողոք բարձրացրեց նրա կառուցած ամրու-

*թյունների առթիվ, սուլթանը խիստ պատասխան տվեց։ 1452 թ. աշնանը սուլթանը Թուրախանին ուղարկեց Պելոպոնեսի դեմ, որպեսզի սոսկալի ավերումի ենթարկի ամբողջ երկիրը. այդպիսով այնտեղի իշխանները անկարող կլինեին որ և է կերպ օգնել իրենց եղբորը։ Կոնստանդինը 1453 թ. ձմեռը ըստ կարելույն շատ ուտեստի պաշար հավաքեց մայրաքաղաքում և վերանորոգեց պարիսպները։ Արևմտյան քրիստոնյաներից Կոնստանդինը օգնություն չստացավ։ Արևմուտքը քիչ քիչ հոգնել էր իր ուժերը գործ դնելով Հույների ազատության համար։ Պապը, որը 1452 թ. «Ռուս» Իսիդոր կարդինալին ուղարկել էր միություն հաստատելու, պատճառ եղավ որ դժբախտ կայսրը կորցրեց վարդապետների և ամբոխի համակրանքը։ Բայց մեծամեծներն էլ համարեա բոլորը բացարձակապես թշնամի էին միաբանությանը։ Կայսրի ճշմարիտ օգնություն տվին միայն մայրաքաղաքում ապրող օտարազգի պատերազմասեր բնակիչները։ Մինչդեռ Պերոանների մեծ մասը Մոհամեդի հետ խաղաղություն կապեցին, ընդհակառակը ծովերի սարսափը, Ջիովաննի Ջիուստինիանի ծովահենը երկու նավով և 700 զինվորներով եկավ քաղաքին օգնության։ Կոնստանդինի տրամադրությամբ*

տակ կային 9000-ից քիչ աւելի մարդիկ։ Այդ չնչին ուժերով նա սպասում էր դէմ գնելու օսմանական ահեղ ուժին, որոնք բացի այդ իրանց տրամադրութեան տակ ունէին հրեշաւոր մեծ թնդանօթներ, որ այդ ժամանակի համար ձուլել էր Օրբան ինժինները։ Ոսկեղջիւրը փակեցին շղթաներով։

Մոհամեդ Բ 1453 թ. Ապրիլի 5 երևաց քաղաքի առաջ։ Նա ինքն էր անձամբ ցամաքի կողմից ղեկավարում յարձակումը, ինչպէս Կոնստանտինը պաշտպանութիւնը։ 1453 թ. Ապրելի 11-ն սկսեցին յարձակումը. սակայն ակզբում առանց սպասած յաջողութեան։ Օրբանի հսկայ թնդանօթը փշրուեց, իսկ չորս քրիստոնէական նաւեր յունական կրակի օգնութեամբ յաջողութեամբ կռւում էին Տաճկաց նաւատորմղի դէմ։ Պարիսպները կոտրելը դադարեցին, և Ապրելի 8-ի՝ առաջի յարձակումը յետ մղուեց։ Այդ ժամանակ Մոհամեդը յարձակումը սկսեց նաև ծովի կողմից, այն էլ Ոսկեղջիւրի ներսից։ Վենետիկցիներից սովորած եղանակով-սոքա էլ օրինակ էին առել հին կորինթեան փիոկլոսներից, նաւերը տախտակների վրայ քաշելով տարան ցամաքի նեղ տեղը և սկսեցին Ցոյներին խիստ նեղը ձգել։ Մայիսի Դ-ից Օսմանցիները կրկին և կրկին անգամ փորձում

էին յարձակումները, բայց ամեն անգամ յաղթուելով, մեծ կորուստներով յետ էին մղւում։ Անյաջող անցաւ նաև Բլախեռնի դէմ ուղղած ական փորձը, որովհետև Յովհաննէս Գրանտ Գերմանացի ինջիները դրա դէմ հակառակ միջոցներ գործ դրեց։ Սակայն Տաճկաց լծնդանօթների հարուածներից պարիսպների մէջ այնպիսի պատռուածքներ էին առաջ եկել, որ Տաճիկները որոշել էին Մայիսի 29 ընդհանուր մեծ յարձակումը, և երբ վերջին անգամ էլ առաջարկեցին քաղաքը յանձնել, Կոնստանտինը հերոսաբար մերժեց առաջարկը։

Երեքշաբթի գիշերը, ժամի 2, 1453 թ. Մայիսի 29, սկսուեց ահեղ մրցումը։ Երկու յարձակում յաղթութեամբ յետ վանեցին։ Այն ժամանակ սուլթանը հրամայեց ենիչչարիներին առաջ անցնել։ Նոքա նորից մեծ կորուստներ ունեցան, երբ մի նէտ ծանր վիրաւորեց Ջիուստինիանուն, որ մինչև այդ մեծ հմտութեամբ ղեկավարել էր պաշտպանութիւնը։ Առաջի ուշագնացութիւնից յետոյ նա շտապեց նաւահանգիստը, որպէս զի նաւերից մէկի վրայ վէրքը կապել տայ։ Դրանից ծագեց մի տեսակ շփոթութիւն, որ նկատեց Սաղանոս փաշան և օգտուեց։ Զինուած պաշտպանողների կատաղի ընդդիմութեանը, մի խումբ ենիչչարիներ հասցին պարսպի վրայ

մինչդեռ մի ուրիշ խումբ նկատելով որ փոքրիկ Քսիլոպորտա դուռը բաց է, ներս խուժելով պարսպի վրայով՝ շտապեց դէպի Ադրիանուպոլսի մեծ դուռը։ Իրանց օգնող ընկերներով ուժեղացած, նոքա հեռուից կայսեր վրայ յարձակուեցին։ Այդ ժամանակ Տաճկաց թնդանօթներն էլ մի մեծ պատռուածք բացին պարսպի մէջ։ Կոնստանտինը քաջութեամբ կռուելով՝ մեռաւ հերոսաբար։ Յաղթողները սկիզբը կատաղութեամբ կոտորեցին սակաւաթիւ բերդականներին և ապա շտապեցին կողոպուտի։ Բնակիչներից 60,000 հոգու գերեցին։ Բաւական թւով դժբախտ անձինք, հաւատալով մի նախագուշակութեան, հաւաքուել էին Սոփիայի եկեղեցու մէջ. նոքա հաւատացած էին որ այդտեղ քրիստոնեաները յանկարծ անսպասելի և զարմանալի օգնութիւն են գտնելու։ Տաճիկները կացիններով ջարդոտեցին դռները, այնտեղ եղողների դէմ գործ դրին պատերազմում սովորական սարսափները։ Մայր եկեղեցին արիւնշաղախ արին և պղծեցին։

Ժամի 8-ին առաւօտեան Մայիսի 30 Մոհամեդը մտաւ տանուած մայրաքաղաքը և դրաւեց Սոփիայի եկեղեցին Իսլամի համար։

Ամբողջ արեւմուտքը բարձրաձայն ողբաց այն ծանր կորուստը, որ հասաւ քրիստոնէութեանը Յոյների հին մայրաքաղաքի ան-

կուռով։ Այն խղճուկ օգնութիւնը, որ ուղարկեցին պապն ու Վենետիկը, շատ ուշ հասաւ։ Պելոպոնէսի տէրերը եօթը տարի յետոյ մայրաքաղաքի վիճակին ենթարկուեցին։ Հռովմէական յունական պետութիւնը պատմութեան ասպարէզից ջնջուեց։

1453 թ. Մայիս ամիսը վերջնականապէս բիւզանդական կայսրութիւնը իջեցրեց գերեզման։ Վաղուց էին Յոյները ընկել իրենց աշխարհակալական դիրքից. յետոյ եղած կեղծ պատակերն էլ անհետացաւ։ Բայց Բիւզանդիոնը գտաւ մի հզօր ժառանգ։ Ռուսաց ցարն ամուսնացաւ Պալէոլոգների իշխանուհու հետ. Կոնստանտինի Մոնոմախոսի թագը Կրեմլի վրայ իր գլխին դրեց ընդհանուր Ռուսաց միապետը։ Ռուսական պետութիւնը իսկապէս բիւզանդական կայսրութեան շարունակութիւնն է։ Նա եթէ երբ և է Սուրբ Սոփիան նորից պէտք է վերադարձնի ճըշմարիտ քրիստոնէական հաւատին, եթէ երբ և է Փոքր Ասիան պէտք է ազատուի տաճկական բանակալական և աւերիչ անտանելի վարչութիւնից, այդ կարող է միայն ռուսական ցարը կատարել։ Անգղիայի հակառակութիւնը դէմ է բնութեան և պատմութեան, ուստի միանգամ ապահովապէս, գուցէ ուշ, կկատարուի այդ հակառակութիւնը։ Կոնստանդնուպոլսի

*կայսրը կարող է միայն օրթոդոքս եկեղեցու հովանաւորողը՝ Ռուսաց ցարը լինել, եթէ նա գիտակ մնայ այն լուրջ պարտաւորութիւններին, որ կապուած են այդ մեծ խնդրի հետ։*



# ՑԱՆԿ

## ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒԱՆՑ

